

Իբր 'ի կատարել օրինաց և մար
գարէից տէրն մեր յիսուս քրիստոս կուգայ
յաշխարհ, և մեք առաքեալք և
վարդապետք կու քարոզեն զմե
ծութին և զփառսն այ:
Այս սաղմոսումս կու խօսի մար
գարէն թէ ինչպէս ած կարէ ճա
նաչվիլ 'ի ստեղծուածս և կամ
'ի գիրս սբս նայելով:



յսինքն, այս մարմնաւոր
երկինքներս իւրեանց
արուեստաւոր շինու
ածովն և ահագին կամարներովն
կու պատմեն և կու յայտնեն այ
փառքն և մեծութիւնն * և այս մար
մնաւոր հաստատուիս, իբր աստ
ղերով լցած երկինքն, իւր զանա

զան

Ի կատարած Սաղմոս
դաւթի:

Սաղմոս ԺԸ:



րկինք պատ
մեն զփառս
այ * և զա
րարածս ձեռաց նր,
պատմէ հաստատու
թիւնն:



'Ի թուին հազար հարիւրեկին·
երից տասանց և հնկեկին·
'ի ժամանակս հայրապետին·
էջմիածնայ տէր աթոռին։
Եղիազար կաթուղիկոսին·
ընտիր և քաջ առաջնորդին·
լուսաւորչին փոխանորդին·
հայաստանեաց հովուապետին։
Յորդորանօք բարեսիրի·
յովսեփայ մեր վարդապետին·
զմիւռնոյ գաւհին առաջնորդին·
ճշմարտութե քարոզողին։
Ես նահապետ նուաստ հոգի·
որ եմ որդի դուլնազարի։
գեղջկու բնիկ ագուլեցի·
զոտանաւորս շարադրեցի։
'Ի նախերգան ըս մեկնչի·
բուն սաղմոսին մեծի դաւթի·
զոր փափքմամբ յոյժ խնդրեցի
և օգնութե տեառն ընդ ոտի։
Տեսանելով 'ի յայլ լեզուի·
յօժարեցայ յայսմ բանի։
'ի փառս փրկչին մեր յիսուսի·
և 'ի յօգուտ հայոց ազգի·
'Ի յիշատակ անքակտելի·
և 'ի սփոփանս ընթերցողի։
զի գանձ է սա անսպառելի·
ուղիղ սրտիւ սաղմոսողի։
Աշխատանօք յոհաննիսի·
ստամպօլցի վարդապետին·
զոր մաղթանօք աղաչեցի։
ձեռն արկանել այսմ գործի։

Ակնարկելով օրինակի·
հրէից ազգաց ըն թարգմանչի·
այլ և յունաց գաղափարի·
և լաթինաց շարադրողի։
Որ հաւանեալ իմում բանի·
արար զսկիզբըն այսմիկ սառի·
և աշխատամամբ իւրոյ ջանի։
հասոյց 'ի վերջ զեղձն իմ բարի։
Որով քաղցեալ ըն կերակրի·
և ծարաւեին արբուցանի։
մեղաւորաց յոյս պատրաստի։
տրտմեցելոց սիրտ ըն բերկրի։
Քան զի պարզ է և հեշտալի·
և դիւրապէս հասկանալի։
իւրաքանչ իւր ցանկացողի·
լուծ է զկապ մարակուսի։
Զի այս էր խղձ իմոյ սրտի։
և կատարումն իմոյ ուխտի·
բարեսիրաց մերոյ ազգի·
թողուլ զսա յիշման տեղի։
Բազում դրամ ըս վատնեցի·
'ի նեղութե ժամանակի·
մինչև ըզ սա տպագրեցի·
և 'ի վախճան իւր հասուցի։
Շնորհօք հոգւոյն պարգևողի
և աղօթիւք ածածնի·
անարժանիս նպաստողի·
և որկարիս ձեռն տուողի։
Զուարթ սրտիւ հնդէս մեր
ըզ ծանրութիւ 'ի յանձն առի·
վասն յուսոյն պարգևողի։
զվարձս յերկնային առատատի։

Մարդ եթէ որ սովամբ զմայլի։
և հոգեպէս մխիթարի։
յիշման առցէ զիս արժանի։
՚ի ժամու մեր պատարագի։

Եւ թէ գտցի սխալ լեզուի։
շարադրութեան անարհեստի։
խնդրեմ ներել վն քրիստոսի։
անվարժութեն ձեր ծառայի։



1370
1222
0148

1370
1135
0235

Առաջաբանութիւն Գրչոյս ։


վաղուց հետէ ցանկանալով աղուլեցի խօճայ դուլնազա
րի որդի խօճայ նահապետին մեկնութեանց սաղմոսացն
դաւթի մարգարէին, խնդրեալ էր բազմիցս զնոյնն 'ի
կոստանդնուպօլիս 'ի փաշտատումն տպրութեց իւրոց ·
և 'ի խափանս հոգւոյ իւրոյ ։ Նա՝ 'ի չկարելն գտանել զպար
զախօս ումն հեղինակ, կամ զ ընդհակառակ իմն, ուխտեալ էր յան
ձին իւրում տալ շարադրել զնա երբեմն 'ի դիպակում ժամու
'ի լրումն ըղձի և դիւրամասութե իւրոյ · Սակայն 'ի դառնալն
իւր վերստին առողջութբ շնորհօք այն 'ի քաղաքս այս վէնէտիկ ·
թախանձանօք խնդրեաց 'ի հեղքոյս պարզաբանել զնոյնն ։ Ոչ
մի մարմնաւոր օգտի և շահասիրութե իւրոյ, այլ մի հոգեկան
մխիթարութե ազգին հայկազունեաց · և 'ի յիշատակ անջնջե
լի ննջեցեան և ծնողաց իւրոց հանգուցելոց 'ի քս ։ Բայց ոչ
խրթին շարադրութբ, այլ աշխարհական լեզուաւ · ըստ
որում տեսեալ էր առ իտալացիս · զի ամենեքեան միահաղոյն
դիւրապէս հասկանալով, վայելիցեն զնոյնն ։ Իսկ ես ոչ թէ
յենլով 'ի զօրութիս և յուշիմութիս մտաց իմոց, այլ ապաւի
նելով միայն 'ի յօգնութիս շնորհաց հոգւոյն սրբոյ · և 'ի յօ
ժանդակութիս սրբազան վարդապետաց եկեղեցւոյ համար
ձակեցայ զբունն արկանել զնմանէ ։ Գիտելով հաստատա
պէս թէ առաջիկայ գործառնութես բարձրութին և վսե
մութին բազում աստիճանօք գերազանցիցէ զնուաստութի
ներհմտութեան իմոյ · Զի մատեանք ածայինք են բնաւին
հոգւոյ և կեանք, և մարդկային տկարութին թէև ոք բնական իմա
ցողութե ոչ կարէ ժամանել և լիապէս պարունակել զնոյնս ։
Համբառնամ ուրեմն զաչս իմ 'ի լերինս, և ասեմ ըստ մարգա
րէին, զարթո զաչս իմ տր, և նայեցայց 'ի սքանչելիս օրինաց
քոց · զի ճրագ է բան քո ոտից իմոց, և լոյս տայ շաւղաց իմոց ։
Նա այսպէս արկացել յուսով ձեռնտուութե ամենապարգևին
աստուծոյ, հեզութե հոգւոյ մտանեմ 'ի հանդէս կրակութես ։

Օ որ և հաւատամ դու վայելուչ , և շահաւէտ բնաւից ան-
ձանց բարեպաշտից և ճշմարտասիրաց . քան զի ընթերցմամբ
սորին լուսաւորին միտք , ուղղին կամք , և զգաստանան շարժ-
մունք զգայարանաց մերոց : Սովաւ զինիւք ընդդէմ հեթանո-
սական առասպելաբանութեանց . սովաւ յաղթահարեմք զհամա-
ռութիս հրէից . սովաւ հաստատեմք 'ի ճշմարիտ հաւատն որ
է 'ի քս յս . սովաւ հեռանամք 'ի յախտից մոլութեանց . և մերձե-
նամք 'ի յառաքինագործութիս . միայն թէ երկայնամտութբ
պարապիլ կամիցիմք 'ի հոգեզուարթ ընթերցուածս սորին .
իբրև կարօտք և փափաքողք իմանալոյ զբարեհաճութին այ .
Օ 'ի նախատեսուչն ած զորբազան գրեանս հիւանդացելոյ
մարդկային բնութեանս առողջարար ապեղանիս պատրաստեաց .
որով զինուքօք զվէրս հոգւոց մերոց բուժել կարիցեմք : Եւ
թէպէտ զանազանք են այսպիսի դեղք հոգեկանք . զի զայլ իմն
ուսուցանեն մեզ ածայլն օրէնք . և զայլ իմն ածայլն պատմու-
թիք . զայլ իմն խրատք բարոյականք . և զայլ իմն մարգարէա-
կանք : Բայց գիրք սաղմոսացն դաւթի միահաղոյն զամենե-
սեան պարունակէ յինքեան . որովք և յորդորէ զմեզ ածմիւ խո-
հեմութբ հետևել օրինաց և պատուիրանաց ճշմարտին այ .
փախչելով 'ի հեշտութեանց և 'ի ցանկութեանց մարմնականաց .
և հետևելով ամբողջութեան և ժուժկալութե . Օ ինչ
ուրեմն մնայ մեզ առ 'ի ստանալ զվարս ածպաշտութե , եթէ
ոչ մտադիւր ընթերցուածս սորին : Օ 'ի սովաւ կրթիմք 'ի
հաւատս , 'ի յիրաւունս , 'ի դատողութիս : Սովաւ ուսանիմք
զսէր , զբարութի , զորբութի , զյոյս , զանոխակալութի , զհամբե-
րութի , և զերկայնմտութի : Եւ թէ նրբանս աննարկլցեմք
'ի հոգեխորհուրդ առաջադրութի սորին , գտանեմք զանթիւ խոր-
հուրդս գերբնականս և զարմանալիս . և մանաւանդ զցանկա-
լի խորհուրդ մարդեղութե և չարչարանաց , խաչելութե և
թաղման , յարութե և համբարձման տն մերոյ յի քի : Գտա-
նեմք ևս զմխիթարութին և զախոյժս 'ի հոգեկան և 'ի
մարմնական տրտմութիս . զկերպ և զեղանակ աղօթելոյ առ
ած . և զճանապարհ գնալոյ անկասկած օրէն 'ի հայրենին մեր

երկնային ։ Ուստի և ըստ հրամանաց սրբոյ եկեղեցւոյն միշտ և հանապազ առ ձեռն ունիմք, իբրև զնուագարան իմն հա գւոյն սրբոյ. և իբրև զգանձարան խորոցն անճառելեաց անհա սին այ ։ Արդ ընկալարուք զսա ամենայն զուարթութբ և ողջմտութեամբ, և 'ի կիր արկէք 'ի փառս յի քի, և 'ի յօ գուտ անձանց ձերոց. յիշելով զպատճառս և զմա տակարարս սորին 'ի մաքրափայլ յաղօթս ձեր

միով հայր մերիւ. ընդ որս և դուք յի

շեալք լիջիք 'ի քսէ յուսոյն մերոյ

'ի միասնգամ գալստեան նո

րին. լսելով զերանաւէտ

բարբառն որ ասէ,

եկայք օրհն

եալք հօր իմոյ ժառանգեցէք զպատ

րաստեալ ձեզ զարքայութիւն

'ի սկզբանէ աշխարհի ։

Ողջ լերուք ։

* *
* * *



Խրատ Առ ընթերցօղս ։

Յոժ փայելուչ և հարկաւոր համարեցաք զմեկնութիւնս սաղ
մոսացն դաւթի մարգարէին շարադրել և 'ի լոյս ածել
'ի պէտս հայկազունեաց ։ Քանզի թէպէտ և այլք
քրիստոնեայք երգեն յարաժամ յեկեղեցիս իւրեանց
զնոյն սաղմոսն դաւթի ըստ պատշաճի աւուրն, և ըստ պիտա
նաւորութեն որպէս և հայք, բայց ոչ այնքան յաճախ ։ Զի
հայք ոչ միայն եկեղեցականք, այլև աշխարհականք, և ս ար
տաքոյ եկեղեցւոյն միշտ և հանապազ ունին զնա 'ի բերան ։
Ուստի 'ի տարակուսիլն նոցա ինչ դժուարիմաց բանի ուրուք,
կարեն սովաւ դիւրապէս լուծանել զտարակուսութիւս իւր
եանց ։ և առաւել յօժարութբ և ջերմեռանդութբ փառա
բանել զաստուած ։
Բայց նախ գիտելի է, զի զմեկնութիւս զայս այնու դիտաւորու
թեամբ շարադրեցաք մեք աշխարհօրէն, զի կարիցեն աշխար
հականք ամենեքեան դիւրապէս իմանալ զայն ։ քանզի եկեղե
ցականք ունելով զբաւական կրթութիւն և զուսումն, յարա
ժամ ճաշակեն զքաղցրութիւս սրբազանից դրոց ։ իսկ աշխար
հականք որք պարապին 'ի զբաղմունս և 'ի հոգս աշխարհի,
ամենևին մնան անմխիթարք 'ի յայսպիսեաց շնորհաց ։ Ուստի
մի՛ ոք արհամարհիցէ զմեզ իբրև զանհմուտս լեզուին հայոց,
որով հետև ոչ վասն եկեղեցականաց, այլ վասն օգտի և շա
հաւէտութե հասարակաց ժողովրդոց եղև առաջիկայ մերս
գործառնութիւն ։
Երկրորդ գիտելի է, զի զմեկնութիւս զայս ոչ եթէ յանդգնա
բար ըստ բնականի հանճարոյն մերում ճնարեցաք, այլ հետևե
լով զգուշապէս շաւղացն հարցն սրբոց, և վարդապետաց եկե
ղեցւոյ ։ ունելով միշտ առաջի աչաց մերոց զլուսաւոր գրեանս
նոցին ։ և մանաւանդ զբնաբանս հրէից և յունաց և զմեկնութիւս
նոցին, որոց և օժանդակութբն յօրինեալ աւարտեցաք զայն ։
Երրորդ գիտելի է, զի գիրք ծաշունչք են խորհրդք և խոր

հրդա

ըք , և զանազան մեկնութիւնս ընդունանք · ուստի
յս գտանեմք զբան իմն զանազանապէս մեկնեցեալ ՚ի
ազանից վարդապետաց եկեղեցւոյ · վն որոյ եթէ գտա
ըցի ինչ ՚իմեն այլապէս մեկնեցեալ , ոչ վն այնորիկ արհա
մարհելի է · քանզի բաւական է , թէ մեկնութին բնաբանի
իւրում համաձայնիցի · և հանդուցանիցէ զմիտս ընթեր
ցողաց ։

Զորրորդ գիտելի է , զի թէպէտ շարադրութի մեկնութեանս
է աշխարհօրէն , բայց բազում բանք գտանին ՚ի սմա դժուար
իմացք , վն դժուարութեն և խորութեն բնաբանին , ուստի
ոչ միայն միանգամ , այլև երկիցս և երիցս պարտ է ընթեռ
նուլ զնոյնս , զի խելապէս վերահասու լինիցիմք · իսկ եթէ ոչ
բաւիցի իմացողութիւն մեր , յայնժամ բարւոք է հարցա
նել զնա այլոց գիտնագունից ։

Հինգերորդ գիտելի է , զի առ ՚ի բարեպէս իմանալ զդժ
ուարութի բանի միոյ , պարտ է ընթեռնուլ զխորագիր
մեկնութեն սաղմոսին այնորիկ յորում է այն բանն · քանզի
իւրաքանչիւր սաղմոս ունի զիւրն խորհուրդ , զի թէպէտ
դաւիթ մարգարէն է որ խօսի , բայց երբեմն խօսի ՚ի բերանոյ
այ , երբեմն ՚ի բերանոյ քի , երբեմն ՚ի բերանոյ եկեղեցւոյ , եր
բեմն ՚ի բերանոյ առաքելոց , երբեմն ՚ի բերանոյ հրէից , եր
բեմն ՚ի բերանոյ հեթանոսաց , և երբեմն վասն յատուկ ան
ձին իւրոյ ։

Վեցերորդ գիտելի է · զի երբեմն ՚ի միում տան գտանին եր
կու և երեք բանք զանազանք զորս վասն յանկացուցանելոյ
եդաք զնշան աստեղն , զի մի շփոթիցին մեկնութիւնք նոցին ·
ուստի յորժամ հասանիս ՚ի յառաջին աստղն , իմա զի վճարե
ցաւ մեկնութի առաջնոյ մասի բնաբանին · նոյնպէս և երկ
րորդն և երրորդն , և այլն ։





Պարզաբանութիւն Սաղմոսացն Դաւթի Մարգարէին:

Սաղմոսս այս խորագիր չունի բայց չէ թէ դաւթի սաղմոսացն միայն, այլ և ամ՟ գրոց սրբոց խորագիր է. քանզի ուսուցանէ թէ զինչ է երանութիւն մարդոյն, և թէ ո՞պ՟ պարտ է խնդրել զնա, որ է դիտաւորութիւն և վախճան ամ՟ գրոց սրբոց: Այս սաղմոսումս կու խօսի մարգարէն բարեպաշտ մարդկանց համար թէ ինչպ՟ս երանելի են, և թէ ինչպէս անօրէն մարդիկ կործանիլ պիտին: Այլ և վ՟ քի. թէ ո՞պ՟ հօր ամ՟ հնազանդելով, նո՟ր օրէնքն և պատուիրանքն կատարեց:



ՅՍԻՆ, ՔՍՆ, ԵՐԱՆԻ այնպէս մարդոյն, որ անօրէն և թերահա



Գիրք Սաղմոսացն Դաւթի Մարգարէին:

Սաղմոս. Ա:



ՐԱՆԵԱԼ Է այր որ ո՛չ գը նաց ՚ի խոր

հուրդս ամպարշտաց
* 'ի ճանապարհի մե
ղաւորաց ոչ եկաց *
և յաթոռս ժանտից
ոչ նստաւ ։

Այլ յօրէնս տն են
կամք նր * և յօրէնս
նորա խորհեսցի նա 'ի
տուէ և 'ի գիշերի *
և եղիցի նա որպ ծառ
որ անկեալ է 'ի գնացս
ջուրց ։



ատ մարդկանց ականջ չի դներ ·
և նոցա խրատուն և խորհրդուն չի
շրջիր * և մեղաւոր մարդկանց չար
գործոցն հետևելով նոցա ճանա
պարհումն չի մնար * և վատաբե
րան և չարալեզու մարդկանց նման
չի նստիր այլոց չար խրատ տար, և
յայ ճանապարհէն հեռացներ զիւր
եանք ։
Պարծեալ երանի մարդացելոյն
այ տն մերոյ յի քի · որ ամպարիշտ
և օրինազանց հրէից խրատուն և
խորհրդուն չի շրջեցաւ * և մեղաւ
գործ քահանայից և քահանայապե
տաց չար գործոցն չի հետևե
ցաւ * և կեղծաւոր և խաբեբայ·
փարիսեցւոց աթոռն չի նստաւ, և
նց նման երեսպաշտութբ խրատ
տալով զայլս յայ ճանապարհէն չի
հեռացոյց ։
Այսինքն, այլ իւր միտքն և
կամքն այն է որ միշտ այ օրէնքն և
պատուիրանքն կատարէ * և գիշեր
և ցերեկ այ օրինացն 'ի վերա այլ
ուրիշ իքմին չի մտածէ * այնպէս
մարդն մէկ բարի ծառի կունմանի,
որ մէկ գետափի մի տնկած լինի ·
և այ շնորհաց և մխիթարութե
ջուրն նորանէ ամենևին չի պա
կասի ։
Պարծեալ · տն մերոյ յի քի կամքն
և դիտաւորութին այն էր միշտ,
որ այ օրէնքն և պատուիրանքն կա

տարէր ։ ըստ այնմ, ո՛չ եկի լուծա
նել զօրէնս, այլ լնուլ ։ Եւ ըստ
այնմ, ո՛չ խնդրեմ ես զկամս իմ,
այլ զկամս այնորիկ որ առաքեացն
զիս ※ Եւ գիշեր եւ ցերեկի ա՟յ օրինացն
՚իզաստ այլ որիշ իքմին չէր մտածէր,
զէրէ ցերեկն զժողովուրդս կու
սուսուցանէր, եւ գիշերն զիւր աշա
կերտքն կուխրատէր ※ վասն որոյ
եղեւ իբրեւ զծառն կենաց անկեալ
իմէջ դրախտին ՚ի գնացս փիսոնի,
գեհոնի, տիգրիսի, եւ եփրատէսի,
քանզի անկեցաւ ՚ի գնացս չորս
գլուխ աւետարանացն, մատթէո
սի, մարկոսի, ղուկասու, եւ յոհան
նու ։ ուստի եթէոք կամի գտանել
զքս խնդրեսցէ զնա ՚իմէջ սուրբ
աւետարանին ։

Այսինքն, որ իւր բարի գործոց
պտուղն անպակաս իւր ժամանա
կին ցոյց տայ ※ Եւ իւր բարի սո
վորութե, եւ ուղիղ դիտաւորու
թե տերեւն ամենեւին չի թափի ※
եւ ինչ բան եւ գործ որ սկսանի, ՚ի
բարին կատարի եւ յաջող գայ ։
Դարձեալ տրն մեր յս քս զիւր
փրկագործութե պտուղն տու
ած եւ պարգեւեաց ազգի մարդկան
՚ի ժամանակի մարդեղութե իւ
րոյ, զմեռեալս յարուցանելով,
զկոյրս լուսաւորելով, զբորոտս
սրբելով, եւ զդիւահարս բժշկե
լով ։ այլ եւ ՚ի միւսանգամ գալս

տեանն



Որ զպտուղ իւր ՚ի ժա
մու տացէ ※ Եւ տերե
ւն մի՛ թափեսցի ※ Եւ
զամ զորինչ արասցէ
յաջողեսցի նմա ։

Ո՛չ այսպէս են ամպա
րիշտք ո՛չ այնպէս * այլ
որպ͞ս փոշի, զոր հոսէ
հողմն ի վ͞ր երեսաց
երկրի։

Վասն այսորիկ ո՛չ յա
րիցեն ամպարիշտք 'ի



տեանն իւրոյ տայցէ՛ որբոց ըղ-
փտուս և զպատի՛ւս * և Նորա բա
նից և քարոզութեց տերեւն ամեն
ևին չի պիտի թափիլ, ըստ այնմ,
երկինք և երկիր անցցեն, և բանք
իմ ո՛չ անցանիցեն * և ինչ բան որ
սկսաւ 'ի բարին կատարվեցաւ,
իւր թէ ծնունդն, թէ թլփատու-
թիւն, թէ մկրտութիւն, թէ քարո
զութիւն, թէ չարչարանքն, թէ
մահն, թէ թաղումն, թէ յարու-
թիւն, և թէ համբարձումն, բո
վանդակն 'ի բարին յաջողեցաւ,
'ի յօգուտ որբոց, և 'ի յօրինակ
բարեպաշտ քրիստոնէից։

Այսինքն, այսպէս չեն անօրէն
մարդիք այսպէս չեն * այլ փոշու-
նման են, որ ամբարտաւանու-
թեան և փառասիրութեան քա
մուն միշտ աստ և անդ կուշարժին
այս աշխարհիս վերայ. և ինչպէս
որ իւրեանք անհանգիստ են, այս
պէս և այլ մարդիք իւրենց չար
օրինակովն անհանգիստ կանեն։

Դարձեալ, այսպէս չեն անօրէն
և նենգաւոր հրէայքն, այսպէս
չեն * այլ փոշունման են, որ այ
պատժի և պատուհասի քամին աստ
և անդ կու շարժէ, երբեմն 'ի ծա
ռայութի կու մտանէ, և երբեմն
'ի գերութի այս երկրիս վերայ։

Այսինքն, վ͞ն որոյ այսպէս անօ
րէն մարդիքս այնպէս է՛ թէ դա

տաս

տատանի օրն չի յարին ՚ի մեռե
լոց․ զի որ թէպէտ կու կենդանա
նան մարմնով, բայց հոգւով կու
դատապարտվին ՚ի դժոխս * և չէ
թէ միայն սոքա, այլ և ամ̃ ցեղ մե
ղաւոր մարդ արդարոց ժողովքն
չի մտանէր, և նց̃ խորհրդոցն և
փառացն չի մասնակցիր։

Դ՛արձեալ, անօրէն և նենգաւ
որ դպիրքն և փարիսեցիքն չէն յա
րիր ՚ի դատաստան, երբ չէն յարիր
՚ի մեռելոց որ մտանեն ՚ի դատաս
տան, զի որ նց̃ դատաստանն եղած
է․ այլ կու յարին ՚ի մեռելոց որ
դատապարտվին * այլ և ո՛չ մե
ղաւոր քահանայք և քահանայա
պետքն հրէից մտանել կարեն ՚ի
խորհուրդս և ՚ի ժողովս արդա
րոց, զի որ զրկեալ են ՚ի մասնակ
ցութե̃ նոցին։

Ա՛յսինքն, զի որ ա̃ծ իւր իմաս
տութե̃ն կու ճանաչէ արդարոց
կամքն և զխոնարհութիւն, որ
միշտ կու ցանկան իւրեանց հոգ
ւոյ փրկութե̃ն․ և կու ջանան հա
նապազ որ ա̃յ կամքն կատարեն *
այսպէս և կու ճանաչէ անօրէն
մարդկանց միտքն և խորհուրդն
որ միշտ չար գործելոյ յետնէ են․
և պիտին կորնչիլ և մտանիլ ՚ի
հուրն յաւիտենական։

Դ՛արձեալ, ո՛ր ա̃ծ կու ճանաչէ
իւր երկիւղած և արդար ծա
ռա

դատաստան * և ո՛չ մե
ղաւորք ՚ի խորհրդս
արդարոց։

Ք՛անզի ճանաչէ տ̃ր
զճանապարհս արդա
րոց * ճանապարհք
ամպարշտաց կորիցեն
Տունք․ 6

Անվերնագիր 'ի յեբրայեցւոց.
երկուքին սոքա ընդ մի
համար են ։

Սաղմոս Բ ։



Ընդէր խռովեցան
հեթանոսք * և ժողո
վուրդք խորհեցան 'ի
սնոտիս ։

Յանդիման եղեն
թագաւորք երկրի *
և իշխանք ժողովե
ցան 'ի միասին * վն
տն և վն օծելոյն իւր ։



ւայից վարքն. և կենցաղավարու
թին, որ կուտանէ զիւրեանք 'ի
կեանս յաւիտենականս * կուձա
նաչէ և ս կամապաշտ հրէից մոլո
րութին որ պիտի տանի զիւրեանք
'ի կորուստն յաւիտենական ։

Իբր սաղմոսս այս եբրայեցւոց ան
աչնչումն յատուկ թիւ և համար
չունի . այլ նոյն է առաջին սաղմո
սին հետ . և երկուքն մի սաղմոս
կու համարվին ։

Այս սաղմոսումն կու խօսի մար
գարէն քի բերանէն կուապաշտից
իշխանաց . և հրէից ժողովրդեննն
հետ . թէ ինչպէս փուչ տեղ ժո
ղովք և խորհուրդ արարին ընդէմ
քի . և ընդէմ կամացն այ ։

Այսինքն, այս ինչ խռովութի
եաղաղակ է, որ ծընեբր է կուապաշ
տից և այլազգեաց միջումն վն քի
* կամ թէ այս ինչպէս փուչ և
ընդունայն խորհուրդ է, որ
հրէից ժողովուրդն միտք են արա
րեր, թէ զանմահ որդին այ սպա
նանեն ։

Այսինքն, երկրիս թագաւորքն,
իբր հերովդէս և պիղատոս միաբա
ներ են * և մարմնաւէր հրէից եկե
ղեցական իշխանքն, իբր աննա և
կայիափա մէկ տեղ են եկեր * որ
լինի թէ մէկ ճարք մի գործեն

ընդ էմ իւրեանց ստեղծողին, և
ընդ էմ իւր միածին որդւոյն,
զոր ինքն հայրն ած օծեր է. և թա
գաւոր թագաւորաց է հաստա
տեր:

Մ_ասինքն, այնչափ լրբացեր են,
և յանդգներ են, որ կասեն թէ
կտրատենք և ձոթձոթ անենք նց
կապն և կապանքն, իւր հօր այ, և
իւր միածին որդւոյն օրէնքն և
պատուիրանքն * և դէն ձգենք
նց հին և նոր կտակարանաց լուծն
որ մեր վիզն են դրեր, և ծառայի
նման կուզեն մեզ վր հրամանք
բանացնեն, և այսպէս ազատենք
զմեզ 'ի ձեռաց նց:

Մ_ասինքն, բայց ած որ յերկինս
կու բազմի և կու բնակի, տեսանե
լով նոցա անմիտ խելքն տնազ կա
նէ զիւրեանք, և կու ծիծաղի * և
աշխարհիս վերայ յամօթ կանէ,
և կու խայտառակէ:

Մ_ասինքն, և ս առաւել դատաս
տանի օրն, երբ որ գայ յատեան
նստի, բարկութը կու խօսի, և
կու յանդիմանէ զիւրեանք * և
սաստիկ ցասմամբ և սրտմտութը
կու տրտմեցուցանէ, և կու խռո
վեցուցանէ, դատապարտելով 'ի
դժոխս:

Մ_ասինքն, այդ անմիտ և խելառ
մարդիկդ ինչ որ կուզեն ասեն 'ի
կրուստ իւրեանց. զէրէ ես յա





Խզեսցուք զկապանս
նոցա * և ընկեսցուք
'ի մէնջ զլուծ նց:

Բնակեալն յերկինս
ծիծաղեսցի զնոքօք
* և տր արհամարհեա
ցէ զնոսա:

Յայնժամ խօսեսցի
ընդ նս բարկութբ
իւրով * և սրտմտու
թեամբ իւրով խռո
վեցուսցէ զնս:

Ես կացի թագաւոր
'ի նմանէ 'ի վերայ լե
րին սիոնի սրբոյ նորա

* 'ի պատմել զհրամանս նորա ։

Տէր ասաց ցիս որդի իմ ես դու * և ես այսօր ծնայ զքեզ ։

Խնդրեա՛ յինէն, և տաց քեզ զհեթանոս 'ի ժառանգութիւն * և իշխանութիւն քեզ ընդ ա՟մ ծագս երկրի ։

Հովուեսցես զնոսա գաւազանաւ երկաթեաւ * և ո՟պ զանօթ բրտի փշրեսցես զն՟ս ։



քսս իմ հօր ա՟յ կամօքն և հաճութ՟ն թագաւոր եղայ և հաստատվեցայ ս՟բ սիոնի լերան վերայ ։ որ կու նշանակէ զս՟բ եկեղեցին * որ այն տեղն միշտ պատմեմ և քարոզեմ նորա ա՟ծային հրամանքն, և դիտաւորութ՟ին որ ունէր յառաջ քան զաշխարհիս լինիլն ինձ համար ։

Այսինքն, զերբ հայրն ա՟ծ որ աշխարհիս տ՟րն է ։ ասաց ինձ, թէ դու իմ յաւիտենական բանն, և որդին ես * և ես այսօր զքեզ ծնայ իբր յառաջ քան զամենայն ժամանակս զքեզ ծնայ ։ զերբ ա՟ծ ժամանակ չունի ։ ա՟մ ժամանակ թէ անցած, և թէ գալոց, ա՟յ առաջևն այնպէս է ինչպէս այսօր ։ այնոր համար ասաց ։ թէ ես այսօր զքեզ ծնայ ։

Այսինքն, և որովհետև դու իմ սիրելի որդին ես, խնդրէ՛ ինձանից ինչ որ կուզես, որ ես չէ թէ միայն հրէայքն, այլ և վկռապաշտից ազգերն քեզ մուլք և ժառանգութիւն տամ * և զքո իշխանութ՟իդ այնպէս մեծացնեմ, որ բոլոր աշխարհիս եզերքն հասանի ։

Այսինքն, և թէ քո հրամանացդ և պատուիրանացդ հակառակ կենան, դու երկաթէ գաւազանով որ կու նշանակէ զքո հաստատուն

իշխա

իշխանութեդ, սաստէ՛, խրատէ՛,
և կառավարէ՛ զիւրեանս * բայց
թէ ամենելին լրբանան և յանդգնին,
և քեզ չուզենան հնազանդիլ,
դու բրուտի շինած ցխէ ամաններին
նման, ջարդէ և փշրէ զիւրեանք:
Այսինքն, արդ ձեզ կասեմ ով
թագաւորք, որ այս աշխարհիս
վերայ անցաւոր իշխանութիւն ունիք
զայս բանս լաւ միտք արարէք. որ
ձեզ վերայ հրամայող և իշխող թա
գաւոր կայ հաստատած յերկինս *
դուք որ զայլս կու դատէք, և կու
դատապարտէք, ե՞ր չէք զձեզ խրա
տեր, և զձեր սիրտն ուղղեր 'ի ճա
նապարհս ճշմարտութեն:
Այսինքն, ամ ծառայութեն
հաստատ կացէք ահիւ և երկիւ
ղիւ, ինչպէս որ որդին իւր հօրն
հարազատ սրտիւ ծառայութիւն
կանէ * և ուրախացէք և ցնծա
ցէք, թէ որ ամ զձեզ արժանի
անէ իւր սբ օրէնքն և պատուի
րանքն ամբողջապէս կատարելոյ.
բայց այնչափ մի՛ լրբիք և յանդգ
նիք, որ նորա դողն և սարսափն
ձեր սրտէն 'իբաց ձգէք:
Այսինքն, ընդունեցէք սրտի
մտօք ամ շահաւէտ խրատն, որ
տուեր է ձեզ 'ի ձեռն սրբոց նախա
հարց և մարգարէից. և ճանաչե
ցէք և պատուեցէք կամաւ և յօ
ժարութբ զքս, որ թագաւորաց





Արդ թագաւորք
զայս 'ի միտ առէք *
և խրատեցարուք ամե
նեքեան, որք դատէք
զերկիր:

Ծառայեցէք տն եր
կիւղիւ * և ցնծացէք
առաջի նր դողութբ:

Ընկալարուք զխրատ
նր, զի մի՛ բարկասցի
տր * և կորնչիցիք 'ի
ճանապարհացն ար
դարութե:

՚Ի ժամանակի յորժամ բորբոքեսցի բարկութիւն նորա ։

Երանի ամենեցուն որք յուսացեալք են ՚ի տ՟ր ։
Տողք. 14

՚Ի ժամանակի զի փախուցեալ էր դաւիթ յերեսաց աբիսողոմայ որդւոյ իւրոյ ։

Սաղմոս. Գ.



թագաւորէ՛ որ չի լինի թէ բարկանայ ձեզ տ՟ր ա՟ծ * վերէ թէ որ մէկ անգամ մոլորիք այս ուղիղ ճանապարհէս, իսկոյն կու կորնչիք, և այլ ձեր հոգւոյն փրկութի՟ն չէք գտանէր ։

Այսինքն, զայս բարկութի՟ն ինչ ասացի, այն ժամանակն կու կրէք, երբ որ ինքն ք՟ս ա՟ծ իւր հօր փառօքն գայ ՚ի դատաստան, և պատժէ և պատուհասէ անօրէն և անհաւատ մարդիկն սաստիկ սրտմտութե՟բ, և բորբոքեալ բարկութե՟բ ։
Այսինքն, բայց երանի նոցա որ այս աշխարհումս մարդկային օգնութե՟ն չեն ապաւինիր. այլ զիւրեանց յոյսն դրեր են յա՟ծ. զերէ այն ժամանակն արժանի կու լինին փառաց և պսակաց ։

Իբր զայս սաղմոսս այն ժամանակն ասաց դա՛ւիթ, որ փախաւ իւր որդի աբիսողոմայ ձեռքէն, ինչպէս ճշմարիտ դա՛ւիթն ք՟ս երես դարձոյց և հեռացաւ սրտովն ՚ի յուդայէ, աբիսողոմ ծառի ճղքէն կախվեցաւ, և յուդա ինքն զինքն խեղդեց և հերձաւ ։
Այս սաղմոսումս կու խօսի մարգարէն ք՟ի չարչարանաց և յարութե՟ն համար. կամ թէ տ՟ն վշտից և ազատութեանց արդար մարդկանց հա՛ւատացելոց ՚ի ք՟ս ։

Այս

Այսինքն, տ՟ր ա՟ծ, է՛ր զիս նեղացնող և վշտացնող մարդիկն այսպէս շատացան * կամ թէ էր իմ թշնամիքն, իբր թէ հրէայք և թէ հեթանոսք այսպէս բազմացան, և ինձ վերայ խռովտալով կուզեն թէ զիս հալածեն, և կորուսանեն:

Այսինքն, այնչափ խեղճ և ողորմելի եղայ, որ շատ մարդիկք ինձ համար խօսելով կասեն, թէ ա՟ծ զդա յերեսաց ձգեր է, այլ դորա յիւր ստեղծողէն փրկութե յոյս չկայ. ըստ այնմ, եթէ յուսացաւ յա՟ծ, փրկեսցէ այժմ զդա. եթէ կամի զդա:

Այսինքն, բայց ես ամենևին քեզանէ զիմ յոյսս չի կտրեցի. զի՛րէ դու իմ օգնականն ես * դու իմ փառաւորիչն ես * և դու ես որ զիս ամէն փորձանքէ. թէ 'ի տանջանաց և թէ 'ի խմահո՛ւանէ ազատելով, զիմ գլուխն կու բարձրացուցանես, իբր զիս կու յարուցանես 'ի մեռելոց:

Այսինքն, քանի որ ես ձայնով դէպ յա՟ծ աղաղակեցի, թէ 'ի լեառն ձիթենեաց, և թէ 'ի վերայ խաչին, և 'ի նմանէ օգնութիւն խնդրեցի * իսկոյն իւր ս՟բ և յերկնային լեռնէն, իբր յիւր ա՟ծային աթոռոյն ինձ լսեց, և զիմ խնդրուա՛ծքն 'ի բարին կատարեց:







Տ՟ր զի բազում եղեն նեղիչք իմ * և բազումք յարեան 'ի վերայ իմ:

Բ՝ազումք ասէին զանձնէ իմէ, թէ չիք փրկութի սորա առ ա՟ծ իւր:

Այլ դու տ՟ր օգնական իմ ես * փառք իմ * և բարձրացուցիչ գլխոյ իմոյ:

Զայնիւ իմով ես առ տ՟ր կարդացի * և լուաւ ինձ 'ի լեռնէ սրբոյ իւրմէ.

Ես ննջեցի * և 'ի
քուն եղէ * զարթեայ
և տ̄ր ընդունող
իմ էր։

Ոչ երկեայց ես 'ի
բիւրուց զօրացն̄ *
որք շուրջանակի պա
տեալ պաշարեալ պա
հէին զիս։

Արի՛ տ̄ր և փրկեա՛
զիս ա̄ծ իմ * զի դու
հարեր զամենեսեան
որք էին ընդ իս թշնա
մութե̄ 'ի տարապար
տուց * և զատա
մունս մեղաւո
րաց փշրե
ցես։

Տեառնէ՛ փրկութի̄ *
և 'ի վ̄ր ժողովրդեան
քոյ օրհնութի̄ քո։
Տուն. 8.



Այսինքն, ես ննջեցի ի մ̄ր խաչին,
ա՛ւանդելով զ հոգի իմ * և քուն
մտայ և հանգեայ յորժամ թաղե
ցայ 'ի գերեզմանին * բայց իսկոյն
արթնացայ յառնելով 'ի մեռելոց.
և տեսի, որ տ̄ր ա̄ծ իմ օգնական
էր, և պատրաստ էր առ 'ի ընդու
նել զիս փառօք 'ի համբառնալն
իմ յերկինս։

Այսինքն, ուստի ես ամենեւին
չեմ երկնչեր հրէից զօրացն և զի
նուորացն, թէ տասն անգամ հա
զար հազար այլ լինէին * թէև
մէկ ժամանակ մի զիս պատէրէին,
պաշարէրէին, և կուպահէին։

Այսինքն, վերկաց ուրեմն տ̄ր
ա̄ծ. և քոյ ամենակարող զօրու
թեամբդ փրկէ զիս * զերէ դու
պատժեցիր և պատուհասեցիր
բոլանդակ զայնպիսի մարդիքն որ
ինձ հետ փուչ տեղ թշնամութի
ունէին * և այժմ կաղաչեմ զքեզ
հայր երկնաւոր, որ մեղաւորէր
դպրաց և փարիսեցւոց. և նոցա
սուտ վկայից ատամներն ջարդես
և կոտրատես, զէրէ զիս անիրա
ւ տեղ զրպարտեցին և հայհոյեցին։

Այսինքն, որ յայտնապէս իմա
նայ աշխարհ. թէ ա̄մ փրկութի̄
քեզանէ է՛ * և թէ քո ա̄ծային օր
հնութիդ միշտ քոյ հաւատացեալ
ժողովրդեանդ վերայ է՛։

Այս

Իբր զայս սաղմոս մինչև 'ի վերջն
դաւիթ մարգարէն է՛ ասացեալ
օրհնելով զա͞ծ վասն բարերարու
թեանն նորա :

Նաև 'ի վերջանալ օրինաց և մար
գարէից բանն ա͞ծ մարմին զգե
նու , և զայս սաղմոս երգելով
կուդոհանայ և կու օրհնաբանէ
զՀայրն ա͞ծ :

Այս սաղմոսումս կու աղօթէ
մարգարէն կամ 'ի բերանոյ ք͞ի ,
կամ 'ի բերանոյ ս͞բ եկեղեցւոյն ,
և կամ 'ի բերանոյ արդար մարդ
կանց որք նեղութեան և վշտի մի
ջում են :


յսինքն քանի որ ես աղաչա
նօք և աղօթիւք սրտի
մտօք դէպ յա͞ծ աղաղա
կեցի , իսկոյն ինձ լուեց . զէրէ իմ
Ճշմարիտ Հայրն է՛ . որ գիտէ զիմ
խղճութիս , զիմ անմեղութիս
և զիմ արդարութիս * և քանի
անգամ որ ես նեղութե մէջ ան
կայ , շուտով զիս հանդստացուց
և յանդորրացուց * նորա համար
այժմ ևս կուաղաղակեմ և կա
սեմ , ա͞ր ողորմեա՛ ինձ , և իմ աղօ
թիցս սիրով ականջ արա՛ :

Այսինքն , բայց դուք ո՛վ ադա
մայ որդիք , մինչև յերբ կուկե
նայք կամապաշտութե և խստասր
տութե միջումն , էր չէք ձեր ա͞յ

սէրն



'ի կատարած ընդ օրհնութե :

Սաղմոս Դ :


նկարդալ իմում
լու՛աւ ինձ ա͞ծ
արդարու
թեան * 'ի նեղութե
ինձ անդորր արարեր
* ողորմեա՛ ինձ , և
լուր աղօթից իմոց :

Որդիք մարդկան մին
չև յերբ էք խստա
սիրտք * ընդէր սիրէք
զնանրութիւն * և



խնդրէք զստութի։

Ծաներուք զի սքանչելիս արար տր սրբոյ իւրում * և տր լուիցէ ինձ ՚ի կարդալ իմում առնա։

Բարկանայք և մի մեղանչէք * զոր ինչ ասէք ՚ի սիրտս ձեր, յանկողինս ձեր զղջացարուք։

Մատուցէք զպատարագ արդարութե * և յուսացարուք ՚ի տր։



սէրն և խնամքն ճանաչէր * էր փուչ և ընդունայն խորհրդոց և մտածմանց յետևէ էք ընկեր * կամ էր կուրանայք այ տուած բարին․ և կուխնդրէք զստուին և զանկրաւութին ՚ի դործ ածել։

Այսինքն, գիտացէք ստուգիւ, որ այս մեծութիս որ ես ունիմ, այծ է տուեր․ վէրէ տեսանելով զիմ ուղիղ սիրտս, և զիմ սրբութիս, ինձ զարմանալի և սքանչելի բարիք է պարգևեր * և իմացէք, որ քանի որ ես դառնամ ուղիղ սրտիւ դէպ յած աղաղակեմ, իսկոյն ինձ կուլսէ, և զիմ խնդրուածքն ՚ի բարին կուկատարէ։

Այսինքն, այն որ համար կասեմ ձեզ զայս, որ թէ լինի որ երբեմն բարկանայք ինձ վերայ․ մի այնչափ սրտմտիք և զայրանայք․ և մի հաւանիք ձեր մտաց ախտին իբր թէ ինձ մէկ վնաս մի հասուցանէք, որ չի լինի թէ մեղաց մէջ անկանիք * այլ ինչ որ բարկութե ժամանակին ձեր սրտի մէջն միտք կանէք, և կասէք, գիշերն ձեր յանկողնոյ մէջն փոշիմանեցէք, և զղջացէք։

Այսինքն, և թէ կուզէք որ այ հաճոյանայք, ձեր չիտակութին, ձեր արդարութին, և ձեր ուղիղ սիրտնն պատարագ մատուցէք * ձեր յոյսն յած դրէք, և միայն ՚ի նա ապաւինեցէք։

Այս

Այսինքն, շատ մարդիք ո̃չ խնամոցն վ̃ր . և ո̃չ առատութենն վ̃ր թերահաւատելով կասկէին, թէ ով կարէ մեզ ցոյց տալ ո̃չ բարութի̃ն, իբր ո̃չ բարիքն, որ կու տայ իւր ստեղծուածոցն * եւ այնպէս մարդիքն ամաչեցուցանելոյ համար կասեմ, ո̃ր ա̃ծ թէ ես, և թէ ինձ համախոհ եղող մարդիքն, որ զքեզ կու սիրենք և կու պաշտենք, այնո̃ւ ենք ինչպէս գրդեր, և քոյ երեսին լոյսն, իբր քոյ բարերարութն և քոյ ողորմութն զանազան գործքն մեզ վ̃ր այնպէս գրվեր են և նշանվերեն, որ յայտնի կու երեւին . և դու միշտ զմեզ խնդացուցերես, և մեր սրտին ուրախութի ես տուեր 'ի յամօթ կարճամիտ մարդկանց :

Այսինքն, և ինչ բարեպաշտ մարդիք որ ինձ համաձայնելով քեզ ապաւինեցան, դու զնոսա իւրեանց ցորենի պտղովն, իւրեանց գինւոյ պտղովն . և իւրեանց ձիթոյ պտղովն լցիր և առատացուցիր այս աշխարհիս վերայ :

Այսինքն, վ̃ս որոյ միշտ մեք յիշելով զքո այդ չափ բարերարութիդ որ մեզ արարիր . հաստատ յուսով կու հաւատամք, որ չէ թէ քանի կենդանի ենք այս քո տուած բարութեանց միջումն պիտինք խաղաղութե̃ քնիլ, և խաղաղութե̃





Բազումք ասէին թէ ո՛ ցուցցէ մեզ զբարութի̃ ո̃ն * նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութի̃ սրտից մերոց :

'Ի պտղոյ ցորենոյ գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա :

Ի խաղաղութե̃ յայս և 'ի սոյն ննջեսցուք և զարթիցուք * զի դու տ̃ր միայն առանձին յուսով քով բնակեցուցեր զմեզ :

Տունք. 8





'Ի կատարած վասն ժառանգաւորին:

Սաղմոս · Ե·

Զբանից իմոց ունկն դիր Տր * և 'ի միտ առ զաղաղակ իմ։

Նայեաց 'ի ձայն աղօթից իմոց Թագաւոր իմ և Ած իմ։

Զի առ քեզ աղաչեմ Տր ընդ առաւօտս լուիցես ձայնի իմում



արթնանալ · այլև մեռանելոյն յետ
պիտինք խաղաղութե՛ հանգչիլ ·
և փառօք յարիլ 'ի մեռելոց * զի
ըէ դու Տր Ած միայն քոյ ջօկ և
առանձին յուսովդ այս աշխար
հումս զմեզ տեղաւորեցիր և հաս
տատուն պահեցիր ։

Իբր երբ որ ժողովարանն հրէից
կու խանգարվի · եկեղեցին քր
կու լինի ժառանգ Այ · և ժառան
գակից քի · և զայս սաղմոսս կու
երգէ առ Ած ։

Այս սաղմոսում կու աղօթէ
մարգարէն 'ի բերանոյ եկեղեց
ւոյն քի առ Ած որ զարդարան կե
ցուցանէ , և զանօրէնսն դատա
պարտէ ։

Այսինքն , Տր Ած , կաղաչեմ
զքեզ սրտի մտօք , իմ բանիս իմ
խօսքիս և իմ գանկատիս ականջ
դիր * և իմ գիշեր և ցերեկ արա
րած աղաղակն միտք արա՛ , և ինձ
'ի թիկունս հասիր ։

Այսինքն , իմ աղօթից և իմ
խնդրուածոց ձայնին նայիր · զէրէ
դու իմ Թագաւորն ես · որ զիս կու
պահես , և կու պահպանես · և իմ
Ածն ես որ զիս յոչնչէ ստեղծերես

Այսինքն , ես զքեզ կաղաչեմ
Տր Ած · որ առաւօտներն երբ որ
ես դէպ քեզ կաղաղակեմ , իմ

ձայնն լսես * և ես ամէն առա
ւօտ զիս պատրաստեմ և գամ քոյ
առաջևդ . զէրէ առաւօտեան ժա
մանակն այլ առնել պատշաճ է,
քո ս՛բ անունդ գովելոյ և փառա
բանելոյ :

Այսինքն, ես ստուգիւ գիտեմ,
որ դու այնպէս ա՛ծ չես, որ մեղքն
և անօրէնութիւնն քեզ դուր գայ
* և քեզ մօտ չար մարդիկը երկար
ժամանակ չեն կարեր կենալ և
երես գտնուլ * այլև քոյ աչաց
առաջևն անօրէն մարդիկը չեն կա
րեր հաստատ մնալ :

Այսինքն, զէրէ դու կու ատես,
և կու արհամարհես զայն մար
դիկքն, որ անօրէնութի կու գոր
ծեն * և կու փչացանես և կու կո
րուսանես զամէն այնպիսի մար
դիկքն որ սուտ կու խօսին, և սուտ
տեղ երդում կանեն :

Այսինքն, զայն մարդն որ զայլս
կու սպանանէ, և այլոց արիւնն
կու թափէ, կամ նենգաւորուի
կանէ, դու պիղծ կու համարիս,
և կու գարշիս նորանէ * և ես զայս
միտք անելով միշտ կուրախանամ,
և գովելով զքո առատ ողորմու
թիւդ համարձակ կու մտնում քո
տունդ, և երկիր կու պագանեմ
քոյ սուրբ տաճարիդ ահիւ և եր
կիւղիւ :

Այսինքն, ես զքեզ կաղաչեմ





* ընդ առաւօտս պատ
րաստեցայց յանդի
ման լինել առ
քեզ :

Ոչ թէ դու ա՛ծ կա
միս զանօրէնութի *
և ո՛չ բնակին առ քեզ
չարք * և անօրէնք մի՛
բնակեսցեն առաջի
աչաց քոց :

Ատեցեր զամենայն
որք գործեն զանօրէ
նութի * կորուսա
նես զամենեսեան,
որք խօսին զսուտ :

Զայր արիւնահեղ
և զնենգաւոր պիղծ
առնես դու տր * այլ
ես ըստ բազում ողոր
մութե քում մտից
'ի տուն քո. և երկրպա
գից 'ի տաճար ս՛բ քո
երկիւղիւ քով :

Տէր առաջնորդեա՛

'ինձ յարդարութե քում * վասն թշնամեաց իմոց ուղիղ արա առաջի իմ զճանապարհս քո.

Զի ոչ գոյ 'ի բերանս նոցա ճշմարտութի * և սիրտք նոցա նանրեալք են :

Որպէս գերեզման բաց է կոկորդ նոցա * և լեզուօք իւրեանց նենգաւորք եղեն :

Դատեա զնոսա ած, զի անկցին 'ի խորհրդոց իւրեանց * ըստ բազում ամպարշտութեանն նոցա մերժեա զնոսա զի դառնացուցին զքեզ :

Ուրախ լիցին ամե



տր ած , որ միշտ ինձ առաջնորդես քոյ տէ և արդար պատուիրանքովդ * և իմ թշնամեաց երեսն սև անելոյ համար, քոյ օրինաց ճանապարհն իմ առաջևս ուղիղ արա , և ինչպէս որ քեզ հաճոյ է, զիս այնպէս պահէ, և կառավարէ .

Այսինքն , զերե իմ թշնամեաց բերանումն ամենևին ճշմարիտ խօսք չկայ * և իւրեանց սիրտն փուչ և ընդունայն ցանկութեց և մտածմանց լեանէ է :

Այսինքն , նոցա կոկորդն իբր կուլն և պօղաղն բաց գերեզմանի կու նմանի , զերե միշտ իւրեանց սրտի ժահահոտութիւն զայլս կուգարշեցուցանեն * և իւրեանց նենգաւոր և չար լեզուօվն զայլս կուգայթակղեցուցանեն և կուվիրաւորեն :

Այսինքն , վն որոյ կուաղաչեմ զքեզ տր ած , որ զնոսա դատես և դատապարտես , որ իւրեանց չար խորհրդէն անկանին , և զիւրեանց ճշմարտախօսութին չի կարենան յառաջ տանիլ * և նոցա այնչափ անհամար անօրէնութեցն գօրայ , հալածեա զիւրեանք , և քշես քո երեսէդ , զերե խիստնեղացուցին և դառնացուցին զքո ածային քաղցրութիդ :

Այսինքն , և այնպիսի մարդիքն

որ

որ քեզ են յուսացեր և ապաւէն
ներ ուրախանան և ցնծան յաւի
տեանս յաւիտենից * զերէ դու
միշտ նոցա հետ կու բնակիս, և նց
հետն ես · և հանապազ զիւրեանց
սիրտն կումխիթարես սաստ և ՚ի
հանդերձեալն:

Այսինքն, և նոքա որ կուսիրեն
քո ա̄ծ անունդ, միշտ քեզնով պար
ծենան, զերէ դու անդադար
կուօրհնես զարդար և զանմեղ
մարդն * ա՜հ թէ ո՜ր չափ շնորհա
կալենք քեզանէ տ̄ր ա̄ծ, որ դու
քո բարի կամօքդ այնպէս · ինչպէս
թէ զէնքով և ղալխանով զմեզ
պահպանեցիր փառաւորեցիր և
պսակեցիր:

Երբ ՚ի գալն քո յաշխարհ ՚ի կատա
րիլ օրինաց և մարգարէից մեղա
ւորք կու զզջան, և թողութիւն
մեղաց կու խնդրեն ՚ի քէ օրհնե
լով և փառաբանելով զնա վասն
ութերորդին, երբ վ̄ն աւուր դա
տաստանին, որ լինելոց է յաւուր
կիրակէի · ինչպէս որ սկիզբն աշ
խարհիս եղերէ յաւուր կիրակէի ·
և զի ՚ի մի կիրակէէն մինչև ՚ի միւս
կիրակին են աւուրք ութն · վասն
որոյ ասէ, վ̄ն ութերորդին:

Այս սաղմոսս կուաղօթէ մար
գարէն մեղաւորաց բերանէն որ
կուխնդրեն զթողութիւն յա̄յ, և

կու



ներքեան որք յուսաց
եալք են ՚ի քեզ · յաւի
տեան ցնծասցեն *
և բնակեսցես դու ՚ի
նոսա:

Գործեսցին ՚ի քեզ
սիրելիք անուան քոյ,
զի օրհնեսցես դու
զարդարն * տ̄ր ո̄պ զի
նու հաճութե̄ քով
պսակեցեր զմեզ:
Տունք · 12 ·

՚Ի կատարած ընդ օրհնութե̄,
վասն ութերորդին:

Սաղմոս · Զ:



Տէր մի՛ սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս ∗ և մի՛ բարկութեամբ քով խրատեր զիս։

Ողորմեաց ինձ Տէր զի հիւանդ եմ ես ∗ բժշկեա զանձն իմ, զի խռովեցան ոսկերք իմ

Անձն իմ յոյժ խռովեցաւ ∗ և դու Տէր մինչև յերբ։

Դարձ Տէր և փրկեա զանձն իմ ∗ կեցո՛ զիս Տէր ըստ ողորմութեան քում։

Զի ոչ ոք է որ 'ի մահու յիշէ զքեզ ∗ կամ 'ի դժոխս խոստովան առնիցի առ քեզ։



կու խոստանան զղջալ և ապաշխարել զմեղս իւրեանց։

Այսինքն, Տէր Աստուած, մի՛ զիս դատաւորի պէս ցասմամբ և զայրանալով նախատեր և յանդիմաներ ∗ և մի՛ քո բարկութեամբդ զիս խրատեր և պատժեր, այլ Հօր նման զիս սիրով զգուշացուր և կառավարէ։
Այսինքն, ողորմէր ինձ, զէրէ ես հիւանդ եմ հոգւով, և տկար եմ ընութեամբ ∗ և բժշկէ և առողջացուր զիմ անձս, զէրէ մեղաց ցաւն մինչև իմ ոսկերքս է հասեր և թմրացուցեր է զիս։
Այսինքն, և հոգիս սաստիկ տխրութեան մէջ է. և միտքս և կամքս խիստ աղմկեր և շփոթեր է ∗ և դու Տէր Աստուած մինչև յերբ կու յետանաս, և չես ինձ շուտով 'ի յօգնութիւն հասանիր։
Այսինքն, դարձիր Տէր Աստուած, և փրկէ զիմ հոգիս ∗ և առողջացուր զիմ խղճմտանքս ոչ վասն իմ արժանաւորութեանն, այլ վասն քո առատ ողորմութեանդ։
Այսինքն, զէրէ ոչ ոք է որ հոգևոր մահուամբ մեռանի և զքեզ յիշէ. և կամ զքո բարութիւնդ 'ի միտ ածէ ∗ կամ թէ դժոխոց տանջանքի մէջն զքո Տէր անուանդ խոստովանի, վասն մեծի յուսահատութեան իւրոյ։

Այսինքն, ահա՛ ես որչափ որ կարողութիւն էր, դադարեցայ և վաստակեցայ Հոգւոյ Հանելով և փոշիմանելով յիմ մեղացն * այսուհետև ամէն գիշեր զիմ անօրէնութիւս միտք անելով, աչքիս արտասուքովս զիմ տեղերս կուլուանամ, և զիմ անկողինս կու տաղեմ:

Այսինքն, ահա՛ սաստիկ նեղութենէս և զայրացմանէս աչքս տկարացաւ և անզօրացաւ * և ես առաւել տրտմութենէս Հալեցայ և մաշեցայ իմ աներևոյթ թշնամեաց նենգագործութեն վերայ որ զիս խաբելով ձգեցին ՚ի մեղս:

Այսինքն, բայց Հաստատելով զիմ յոյս, և Հաւատքս կու Հալածեմ զիւրեանք ասելով, Հեռացէք ինձանէ ով թշնամիք Հոգւոյ իմոյ, որ կու գործէք զանօրէնութիւն, և այլոց ևս գործել կու տայք զձեր Հնարած չարիքն:

Այսինքն. զէրէ տ̅ր ա̅ծ իմ լացիս և աղաղակիս ձայնն լսեց. և իմ աղօթքիս իւր ողորմութեն ականջ դրեց * և տ̅ր ա̅ծ իմ սրտիս խնդրուածքն ընդունեց. և իմ ա̅մ յանցանաց և սխալանացն թողութի շնորհեց:

Այսինքն, զայս տեսանելով իմ ամէն երևելի և աներևոյթ թշնամիքն թող սաստիկ ամաչեն և խռովին * և յետ դառնան և կր





Վաստակեցայ ես ՚ի Հեծութե իմում * լուացից զա̅մ գիշեր զմահիճս իմ, և արտասուօք իմովք զանկողինս իմ թացից:

Խռովեցաւ ՚ի սրտմտութէ ակն իմ * և մաշեցայ ես ի վ̅ր ամենից թշնամեաց իմոց.

Ի բաց կացէք յինէն ամենեքեան. որք գործէք զանօրէնութի:

Լուաւ տ̅ր ձայնի լալոյ իմոյ, լուաւ տ̅ր աղօթից իմոց * և տ̅ր զխնդրուածս իմ ընկալաւ:

Ամաչեսցեն և խռովեսցին յոյժ ա̅մ թշնամիք իմ * դարձցին յետս և ամաչեսցեն

յոյժ փաղփաղուկի և
խռովեսցին ։
Տունք. 10.

Սաղմոս դաւթի զոր ասաց
տէառն վասն բանիցն քուս
եայ որդւոյ յեմենայ ։

Սաղմոս. Է:

Տ ած իմ ՚ի
քեզ յուսա
ցայ * փրկեա՛
զիս , և յամենեց հա
լածչաց իմոց ապրե
ցո՛ զիս ։

Գուցէ երբէք յափշ
տակիցէ ոպ առիւծ
զանձն իմ * ոչոք իցէ
որ փրկիցէ , և ո՛չ այն
որ ապրեցուցանիցէ ։

Տր ած իմ թէ արա



կին , ամաչեն և խռովին և սրամին
և գլխակոր լինին ։

Իբր սեմէի հայրն յերոբովամայ
՚ի զարմէն յեմենայ հայհոյեաց զ
դաւիթ յորժամ փախչէր ՚ի ձե
ռաց աբիսողոմայ որդւո՛յ իւրոյ .
և վս նորա հայհոյական բանիցն
ասաց դաւիթ զսաղմոսս զայս . և
առ ՚ի պարսաւել զսեմէի կոչէ
զնա քուսի . որ թարգմանի եթով
պացի . կամ սևերես ։

Այս սաղմոսում կու խօսի մար
գարէն քի բերանէն որ հայհոյե
ցաւ և ամբաստանեցաւ ՚ի հրէից
կամ թէ ՚ի բերանոյ արդարոց
վշտացելոց ՚ի հալածանս որ կու
խնդրեն զօգնութի յայ ։

Այսինքն , տր ած , իմ ամէն
յոյսս իքեզ եմ դրեր ,
և ՚ի քեզ եմ ապաւի
ներ * վս որոյ կաղաչեմ զքեզ .
փրկէ՛ զիս այս փորձանքէս , և զիս
իմ ամէն թշնամեաց և հալածո
ղաց ձեռքէն ազատէ ։

Այսինքն , որ չի լինի թէ առիւ
ծինման խլեն և յափշտակեն զիմ
անձս * և ո՛չ ոք չի գտնվի , որ զիս
փրկէ , կամ թէ այնպիսի մարդմի
այլ չի հանդիպի , որ զիս ազատէ
և ապրեցուցանէ նոցա ձեռքէն ։

Այսինքն , տր ած , թէ ես արար

երեմ

երեմ զայդ բաներդ որ դոքա կա սեն * կամ թէ իմ ձեռքէս այդ պէս մեղք և անօրէնութիւն դուրս ելած է ։

Այսինքն , թէ որ ես ինձ վնաս հասուցանողացն մէկ չար մի հա տուցի, կամ թէ նոցանէ զիմ ոխս առի * խնդրեմ քեզանէ որ թող տաս , որ ես այլ փուչ տեղ իմ թշնամեացն յաղթուիմ, և՚ի խայր անկանիմ ։

Այսինքն , այլև իմ թշնամին թող զիս հալածէ , յետանէս անկա նի և ինձ հասանի , և զիմ կեանքս ցխի նման կոխատէ , և երկրի հա ւասար անէ * և զիմ փառքս և պարծանքս հողի մէջ թաւալէ և ոչնչացուցանէ ։

Այսինքն , ապա թէ զուր է դո ցա ասմունքն, կու աղաչեմ զքեզ տէր , վեր կացիր քոյ ցասմամբդ և քոյ բարկութեամբդ * և քոյ զօրու թեամբդ մեծութիւն և բարձրութիւն ցոյց տուր , ոչնչացուցանելով և փչացուցանելով զիմ թշնամիքն ։

Այսինքն , զարթիր և յիշէ տէր աստուած , զայն հրամանքն զոր դու պա տուիրեցիր մարմնաւոր դատաւո րացն , թէ չի թողուն որ խեղճ և անմեղ մարդկանց վնաս հասանի * զէրէ թէ որ այսպէս անես զքեզ պաշտօղքն կուշատանան , և զա նազան ժողովրդներ ժողովքն





րի զայս * և թէ իցեն անօրէնութիւնք ՚ի ձեռս իմ։

Թէ հատուցի եր բէք այնոցիկ որք հա տուցին ինձ զչար * անկեալ և ես ՚ի թշ նամեաց իմոց ընդու նայն ։

Հալածեսցէ ապա թշնամին զանձն իմ, հասցէ և կոխեսցէ յերկիր զկեանս իմ * և զփառս իմ ՚ի հող բնակեցուսցէ ։

Արի տէր բարկութեամբ քով * և բարձր լեր ՚ի յապառնելն թշնա մեաց իմոց ։

Զարթիր տէր աստուած իմ ՚ի հրամանս քո զոր պա տուիրեցեր * և ժո ղովք ժողովրդոց շուրջ եղիցին զքեւ ։

Վ̃ն այսորիկ ՚ի բար
ձունս դարձ Տ̃ր * և
Տ̃ր դատէ զժողո
վուրդս իւր:

Դատ արա ինձ Տ̃ր
ըստ արդարութեան
իմում * և ըստ անմե
ղութեան իմում
որ յիս:

Սատակեսցին չարիք
իմ̃ն մեղաւորաց * և
յաջողեսցես դու ար
դարոյ:

Որ քննէ զսիրտս և
զերիկամունս է Ա̃Ծ
արդար * յիրաւ է ինձ
օգնութիւն յԱ̃յ, որ ապ
րեցուցանէ զայնո
սիկ, ոյք ուղիղք
են սրտիւք:

Ա̃Ծ դատաւոր ար



զքո բոլորքդ կուպատեն, և որ
ըստ օրէ յուսով կու առատանան:
Այսինքն, վասն որոյ Տ̃ր Ա̃Ծ, իմ
թշնամեացն մի՛ ներեր. և մի՛ թողլ
տար, որ չի լինի թէ զքեզ անզօր
կարծեն, այլ ՚ի բարձունս դար
ձիր, իբր զքո անուանդ մեծացուր
և քոյ զօրութեանդ բարձրութիւն
ըստ արժանաւոյն նշանաց տուր * որ
ամէն մարդ ճանաչէ զքեզ և ասէ,
թէ Տ̃ր Ա̃Ծ միայն կու դատէ զիւր
հաւատարիմ ժողովուրդն:
Այսինքն, ես իմ կողմանէս հնա
զանդ եմ Տ̃ր Ա̃Ծ, որ զիս դատես
քոյ դատաստանովդ իմ արդարու
թեանն գօրայ * և իմ անմեղութեան
և անարատութեան գօրայ որ ես
ինձնում կու տեսանեմ:
Այսինքն, քո պատիժդ և քո պա
տուհասդ և ամէն ազդ չար հան
դիպուածք կատարին մեղաւոր
մարդկանց վերայ * և դու խնամք
տանիս, և աջողութիւն տաս արդար
և անմեղ մարդկանց:
Այսինքն, այն որ կու քննէ և կու
իմանայ մարդկանց սիրտն և պոռ
ճիկներն, ինքն Ա̃Ծ արդար է * և
ես յոյս ունիմ որ նոյն ինքն Ա̃Ծ
իրաւունք անելով ինձ օգնութիւն
տայ, զէրէ միշտ կու փրկէ և կու
ազատէ այնպիսի մարդիկն որ սր
տերնին շիտակ է:
Այսինքն, բայց դուք ով չարա

գործք

գործք և անօրէնք, իմացէք որ ած արդար դատաւոր է, զօրեղ է և կարօղ, բայց երկայնամիտ է և կու համբերէ * և նր համար չուզէր որ հանապազ իւր բարկութիւն ձեզ վր ածէ, և զձեզ պատուհասէ:

Այսինքն, բայց թէ կամապաշտութի անէք, և ձեր չար ճանապարհէն չի դառնայք * իմացէք որ ած իւր արդարութե թուրն սրեր է, իւր բարկութե աղեղն լարեր է, և նորա միջումն ազգ և ազգ մահու և սպանման գործիք և անօթք է պատրաստեր * և իւր նետերի սլաքներն սաստիկ բորբոքած գործելով և կայծակեալ կրակով ջրեր է և պատրաստեր է:

Այսինքն, և այն ժամանակն թէ որ մարդ ինձ ասէ, թէ ահա՛ քո թշնամին յղի կնկան նման երկունք կրեց, եբեր, միտք արեց, և անօրէնութիւնք հնարեց * զէրէ զանազան ցաւեր և չարութիւնք յղացաւ իւր սրտի միջումն քեզ համար և ծնաւ զանիրաւութիւ և զստութի որ զքեզ զրպարտէ և դատապարտէ:

Այսինքն, ես պատասխանի կուտամ նորա, թէ գուբն և հորն որ նա փորեց և քանդեց, ինքն անկանի այն փոսի մէջն որ շինեց և պատրաստեց:

Այսինքն, այն ցաւերն և այն փորձանքներն որ ինձ համար պատ



դար, հզօր և երկայնամիտ * որ ոչ ածէ զբարկութի իւր զօր հանապազ:

Ապա թէ ոչ դառնայք առնա * զսուր իւր սրեալ է, և զաղեղն իւր լարեալ, և 'ի նմա է պատրաստեալ զանօթս մահու * և զնետս իւր այրեցելովք է գործեալ:

Ահաւասիկ երկնեաց զանօրէնութիւն * յղացաւ զցաւս, և ծնաւ զանիրաւութի:

Գուբն զոր փորեաց և պեղեաց, 'ի նոյն անկցի 'ի խորխորատ, զոր և գործեաց:

Դարձցին ցաւք 'ի գլուխ նր * և 'ի վր

գագաթան նո՛ր անօ
րէնութիւք իւր
իջցեն ։

Խոստովան եղէց տ՛ն
ըստ արդարութե՛ն նո՛ր
* և սաղմոս ասացից
անուա՛ն տ՛ն բար
ձրելոյ ։
Տ ունք ։ 17 ։

Ի կատարած խնձրոյ հնձա
նայն ։



Տ՛ր տ՛ր մեր * զի՛ սքան
չելի է անուն քո յա՛մ
երկիր ։

Զ ամբարձաւ մեծ



րատեր էր , իւր գլուխն դան *
և այն անօրէնութիւքն և ներդա
գործութիւքն որ ինձ կուզէր
անել , իւր գագաթին վե՛ր իջնուն ։
Մ՛այինքն , որ ես տեսանելով
խոստովանիմ և գոհանամ զա՛յ վե՛ր
իւր արարած արդար դատաստա
նին և սաղմոս ասեմ և փառք տամ
այն բարձր և անքննելի աստուծոյ
անուա՛նին ։

Իբր վասն քրիստոնէից եկեղեց
եացն , որք հնձանք կասվին ։ զերէ
անդ ճաշակելով սուրբք զբաժակ
քաղցրութե՛ն տ՛յ , կու արբենան
սիրով նո՛ր ։ և մոռանալով զվայել
չութիւս աշխարհի , կու գովաբա
նեն զանքննելի մեծութի՛ նորա ։
Մ՛յս սաղմոսումս կու խօսի մար
գարէն վ՛ս մեծութե՛ն տ՛յ , վասն
փառացն ք՛ի , և վ՛ս պատուա՛կա
նութե՛ մարդկային բնութե՛ն ։

Մ՛այինքն , ո՛վ բոլոր աշխարհիս
տ՛ր , և մանաւա՛անդ քոյ ծառայից
տ՛ր * ո՛ր չափ զարմանալի և հիանա
լի է՛ քո անունդ յամենայն երկ
րում , թէ քո մեծամեծ և սքան
չելի գործոցդ համար , և թէ քոյ
մ՛ե ա՛ետարանին քարոզութե՛ն
համար , որ սփռեցաւ ՚ի բոլոր աշ
խարհ ։
Մ՛այինքն , քո մեծութիւդ և քո

փառքդ

փառքդ քան զերկինքն այլ առաւել վեր համբարձաւ , զեր է չէ թէ միայն մարդիկք , որ այս երկրիս վերայ են , այլ հրեշտակք և ա̃եք որ երկնքումն են քեզ երկիրկու պագանեն , և քո որդիդ միածին յետ յարութեն փառօք և պատուօք քան զամ երկինք 'ի վեր համբարձաւ , և քո աջ կողմդ նստաւ * այնոր համար սահմանեցիր և հաստատեցիր , որ տղայք և կաթնակեր երախայքի ուրեանց թլվալեզուովն զքո սուրբ անունդ փառաբանեն , և եբրայեցւոց մանկունքն զքո որդիդ միածինն յս̃ քս̃ հօսաննայ ասելով գովեն , այլ քրիստոնեայք զնոյնն հաւատով միամիտ երախայից նման պաշտւոնեն և մեծարեն ։

Այսինքն , և զայս ապարիր դու զքո երևելի և աներևոյթ թշնամիքն յամօթ անելոյ համար * որ կործանիլի և ջնջվի թշնամին և հակառակն , և չկարենայ հալածել զքո ծառայքդ , որ զքեզ և զքո որդիդ միածին միշտ պաշտելով կու օրհնաբանեն ։

Այսինքն , բայց ես երբ որ կու տեսանեմ զերկինքն , կամ զլուսինն կամ զաստեղս , և կամ զայլ գեղեցիկ և զարմանալի իքմիններն որ դու քո մատներովդ գործեր ես , իբրքո ա̃ք հոդւովդ ստեղծեր ես ,

և հաս

վայելչութի քո 'ի վերոյ քան զերկինս * 'ի բերանոյ մանկանց տղայոց ստնդեայց հաստատեցեր զօրհնութի ։

Վ̃ս թշնամեաց քոց ա̃ր * զի եղծցի թշնամին և հակառակորդն ։

Տեսից զերկինս , և զըղ գործս մատանց քոց , զլուսինն և զաստեղս , զորս դու հաստատեցեր ։

Ո՜վ է մարդ զի յիշես
դու զնա * կամ որդի
մարդոյ . թէ այց ինչ
արասցես դու նմա ։

Փոքր ինչ խոնարհ
արարեր զնա քան զհր
րեշտակս քո * փառօք
և պատուով պսակե
ցեր զնա * և կացու
ցեր զնա 'ի վ՟ր ամենայն
ձեռակերտաց քոց ։

Զամենայն ինչ հնա
զանդ արարեր 'ի ներ

և հաստատերես . կամ թէ երբ որ
միտք կանեմ զառաքեալս , մարտի
րոսս , խոստովանօղս , և զայլ ա՟մ
սուրբս , չեմ կարեր ամենևին
համբերեր , այլ կու աղաղակեմ
և կասեմ ։

Այսինքն , ո՞րինչ իքմին է փուչ
և մահկանացու մարդս որ դու
կու յիշես և կու պատուես զնա *
կամ թէ ինչ է սխալական և մե
ղանչական որդին մարդոյ , որ դու
խնամք կու տանիս նորա , և զքո
միածին որդիդ 'ի մահ կու մատ
նես վ՟ս սիրոյ նորա ։

Այսինքն , դու զմարդն բնու
թեամբ և աստիճանօք քան զքո
հրեշտակներն քիչ մի այլ խոնարհ
և ցած ստեղծեցիր * բայց քոյ երկ
նային շնորհօքդ փառօք և պատ
ուօք պսակեցիր զնա * և քո ձեռ
ացդ շինած ստեղծուածոցն վ՟ր
որ և իշխան կացուցիր ։

Կամ թէ դու զքո որդիդ միա
ծին իւր առած մարդկային և ծա
ռայական բնութեան համար , քան
զքո հրեշտակներն փոքր ժամա
նակ մի ցածացուցիր և խոնարհե
ցուցիր * բայց յետ յարութեան
անմահական փառօք պսակեցիր *
և 'ի վեր քան զա՟մ ստեղծուածս
բազմեցուցիր ։

Այսինքն , բաց յայսմանէ դու
զա՟մ իքմին մարդոյ ոտաց տակն

ձգեցիր, և նորա կամացն հնազան
դեցուցիր * թէ զոչխարն, թէ
եզն, և թէ զայլ որիշ կենդա
նիքն։

Կամ թէ դու քո որդւոյդ միած
նի յի̃ քի իշխանութենն թէ զար
դարս և թէ զմեղաւորս և թէ
զայլ ա̃մ ստեղծուածս հնազան
դեցուցիր։

Այսինքն, այլ և հնազանդեցու
ցիր մարդոյ վայրի ոչխարքն, երկ
նից թռչունքն, և ծովու ձկներն,
և այլ որիշ կենդանիքն, որ ծո
վու ալեաց միջումն խուրեանց ճա
նապարհ կուգանուն և շուրջ կու
գան։

Կամ թէ հնազանդեցուցիր յի̃
քի որդւոյ քո զվայրի և զգազանա
բարոյ մեղաւոր մարդիկն, թէ
զհպարտս որք են թռչնոց նման,
և թէ զըղջախոհս որք են ձկանց
նման։

Այսինքն, վասն որոյ կրկին կու
դառնամ և կասեմ, տ̃ր ա̃ծ բոլոր
աշխարհի, և տ̃ր ա̃ծ մեր, որ չափ
զարմանալի է քո ահաւոր անունդ
յա̃մ երկրում։





քո ոտից ն̃ր * զխաշն
և զարջառ և զա̃մ ինչ։

Եւս և զէրէ վայրի,
զթռչունս երկնից ·
և զձկունս ծովու,
որք շրջին ընդ
շաւիղս ծո
վու։

Տ̃ր տ̃ր մեր, զի սքան
չելի է անուն քո յա̃մ
երկրի։
Տունք · Ց



՚Ի կատարած վասն գաղտ նեացն որդւոյ ։

Սաղմոս . Թ .


ոհացայց զքէն Տր բոլորով սրտիւ իմով * պատմեցից զա՟մ սքանչելիս քո ։

Ուրախ եղէց և ցնծացայց ՚ի քեզ * սաղմոս ասացից անուան քում բարձրեալ ։

՚Ի դառնալ յետս թշնամեաց իմոց * տկարասցին և կորիցեն յերեսաց քոց ։

Իբր վասն գաղտնի գիտութեց որ դ՛ւթին ար, որոց մինն է գիտութի վախճանի աշխարհիս, յորում դատելոց է զկենդանիս և զմեռեալս. ուստի ՚ի հարցանելն առաքելոց, ասաց, ո՛չ է ձեզ գիտել զժամն և զժամանակս զոր հայր եդ յիւր ում իշխանութե ։

Այս սաղմոսումն շնորհակալ կու լինի մարգարէն վս իւր յաղթութեն, կամ վս յաղթութեն քի ։


յսինքն, կուդոհանամ քե զանէ Տր ած, իմ բոլոր սրտիւս, որ զիս այսչափ փորձանաց ազատեցիր * և միշտ կուպատմեմ քո այդ չափ հրաշքդ և սքանչելիքդ որ ինձ արարիր ։

Այսինքն, կուրախանամ և կու ցնծամ քեզնով, որ միշտ ինձ խնամք տարիր * և քոյ սուրբ անուանդ սաղմոս կասեմ, որ բարձր և գերազանց ես քան զա՟մ իմացողութի մարդկան ։

Այսինքն, զէրէ երբ որ իմ թշնամիքն կու յաղթվին և ամօթով յետ կու դառնան * ես ստուգիւ կու հաւատամ, որ չէ թէ ինձանից, կամ իմ ուժէս կու յաղթվին, այլ քոյ կարող զօրութէդ կու յաղթուին և կու տկարանան և քո ահաւոր երեսէդ կու հե

ռա

ռանան և կուկորնչէին։

Այսինքն, դու զիմ դատաստանս և զիրաւունքս արարիր, և զիմ ոխս և զվրէժս իմ թշնամեացն առիր * զի էրէ նստար քո ածային աթոռդ դու որ արդարութե և շխտակութե դատաւոր ես։

Այսինքն, դաշեցիր և սաստեցիր կռապաշտներին, և քո ահէդ և երկիւղէդ կորաւ անօրէն և ամբարիշտ մարդն յերկրիս երեսէն, * և մինչև նց̃ զանունն ևս ջնջեցիր և անյայտ արարիր յաւիտեանս յաւիտենից, թէ այս աշխարհէս, և թէ քոյ կենաց դպրութե գրքէն * և թշնամիոյն թուրն բթացաւ և պակասեցաւ իւր զօրութէն, մինչև որ կործանեցաւ և վերջ եղաւ։

Այսինքն, նոցա քաղաքներն քակեցիր և աւերեցիր * և նոցա անունն և յիշատակն կորաւ լացով սգով և աղաղակով, և անդառնալի եղաւ։

Այսինքն, բայց ած միշտ կայ և կումնայ կենդանի յաւիտեանս յաւիտենից * և պատրաստեր է զիւր աթոռն որ պիտի գայ և նստի յատեան 'ի դատել զկենդանիս և զմեռեալս։

Այսինքն, զի էրէ ինքն պիտի դատէ զայս աշխարհս արդար դատաստանով, պատժելով զնա իւր անօ



Արարեր զդատաստանս իմ և զիրաւունս * նստար յաթոռ դատաւոր արդարութե։

Սաստեցեր 'ի հեթանոսս, և կորեաւ ամպարիշտն * զանուանս նոցա ջնջեցեր յաւիտեանս յաւիտենից * և թշնամւոյն զէն պակասեցաւ մինչև իսպառ։

Զքաղաքս աւերեցեր * և կորեաւ յիշատակ նոցա աղաղակաւ։

Տ՜ր կայ և մնայ յաւիտեան * պատրաստ արար զաթոռ իւր 'ի դատաստանի։

Ինքն դատէ զաշխարհս արդարութեամբ * և զժողովուրդս իւր

ուղղութեամբ։

Եղեւ տր ապաւէն տնանկի * օգնական 'ի նեղութեան 'ի դէպ ժամանակի։

Յուսասցին 'ի քեզ ամենեքեան ոյք գիտեն զանուն քո * զի ոչ թողցես զայնոսիկ որք խնդրեն զքեզ տէր։

Սաղմոս ասացէք տն որ բնակեալն է 'ի սիոն * պատմեցէք 'ի հեթանոս զգործս նր։

Խնդրել զարիւնն նոցա յիշեաց * և ոչ մոռացաւ զաղաղակս տնանկաց։



րէնութեն համար * և զխուր ժողովուրդն պխտի դատէ ուղղութբ և չխտակութբ փառաւորելով և պատկելով զնա իւր բարեպաշտութեն համար։

Այսինքն, զէրէ տէր աստուած միշտ հաւատարիմ և ապաւէն եղաւ տնանկին, երբ 'ի հարստութէ անկած մարդկին * և օգնական և պահապան եղաւ նորա իւր նեղութեն միջումն, և անճար մնացած ժամանակին։

Այսինքն, այնոր համար ինչ մարդ որ քո անունդ գիտէ որ ողորմած ես 'ի քեզ թող յուսայ և ապաւինի * զէրէ դու տր տծ ամենեւին բաց չես թողուր զայն մարդիկն որ զքեզ կուզեն և կու խնդրեն։

Այսինքն, արդ դուք ով խեղճ և զրկած մարդիկք, միշտ սաղմոս ասացէք տն այ որ բնակեր է 'ի սիոն երբ 'ի սուրբ եկեղեցին * և նորա գործքն և սքանչելիքն պատմեցէք կռապաշտից և զանազան ազգաց միջումն։

Այսինքն, զէրէ տծ յիշեց և մտքածեց, որ վրէժխնդիր լինի, և իւր ծառայից արիւնն որ անիրաւ տեղ թափուեր է, խնդրէ և պահանջէ * և աղքատաց և 'ի մեծութէ անկած մարդկանց աղօթքն և խնդրուածքն ամենեւին

չի մոռացաւ, և անտես չարար։

Մ՟այսինքն, ես այլ զայս միտք անելով, շատ անգամ կասեմ, թէ Տէր ա̄ծ ողորմիր ինձ, և տես զիմ խեղճութիս, թէ ինչ տեղ են հասուցեր զիս իմ թշնամիքն * զէրէ դուայն ես, որ զիս մեծամեծ փորձանքներէ ազատեցիր, և մահու վտանգներէն փրկեցիր, բարձրացուցիր և փառաւորեցիր։

Մ՟այսինքն, որ ես զքո օրհնութիւնդ և զքո բարերարութիւնդ դուկտ սանկըն պատմեմ և քարոզեմ 'ի դրունս դստեր սիոնի, իբր Տէր եկեղեցւոյ դռներուն, որ դուստր սիոնի կասվի * և ցնծամ և ուրախանամ քո այս չափ մեծ և զարմանալի փրկութեան վերայ, որ ինձ արարիր։

Մ՟այսինքն, և ասեմ, թէ ահա կռապաշտք և անօրէնք խրվեցան այն պատուհասի և այն փորձանքի մէջուն, որ ինձ համար պատրաստեր էին * և այն թակարքն որ ինձ համար սարքեր էին զիւրեանց ոտքն բռնէ։

Մ՟այսինքն, ահա այսպէս կուճանաչվի ա̄ծ, թէ ուղիղ և արդար դատաստան կանէ * երբ որ մեղաւոր մարդիք իւրեանց ձեռքով պատրաստած չարագործութե̄ մէջուն բռնվին և կապվին։

Մ՟այսինքն, և այս մեղաւորքս թէ



Ողորմեաց ինձ Տ̄ր, և տես զխոնարհութի̄ իմ 'ի թշնամեաց իմոց * ո՛ բարձր արարեր զիս 'ի դրանց մահու։

Ոպ̄ պատմեցից զա̄մ օրհնութիւնս քո 'ի դրունս դստեր սիոնի * և ցնծացայց 'ի փրկութե̄ քում։

Ընկլան հեթանոսք յապականութե̄ իւրեանց զոր արարին * և որոգայթն զոր թաքուցին առցէ զոտս նոցա։

Ճանաչի Տ̄ր յառնել զդատաստանս իւր * և 'ի գործս ձեռաց իւրեանց կապեցին մեղաւորք։

Դարձցին մեղաւորք

անդրէն 'ի դժոխս * և ա̃մ հեթանոսք որք մոռացան զա̃ծ ։

Զի ո՛չ իսպառ մոռանայ տ̃ր զաղքատն * և համբերութիւն տնանկաց մի՛ կորիցէ իսպառ ։

Արի՛ տ̃ր և մի՛ զօրասցի մարդ * դատեսցին հեթանոսք առաջի քո ։

Կացո՛ տ̃ր օրէնսդիր իվ̃ր նոցա * և ծանիցեն հեթանոսք թէ մարդիկ են ։

յարութե̃ն օրն մարմին այլ առնուն և դատաստան այլ գան, սակայն շուտով կու դատապարտվին, և կրկին կու դառնան 'ի դժոխս և չէ՛ թէ սոքա միայն, այլ և ամենայն կռապաշտ և անօրէն մարդիկ որ զա̃ծ մոռացեր են, և իւրեանց սրտի ցանկութե̃ն յետնէ են անկած ։

Այսինքն, զէրէ տ̃ր ա̃ծ չէ՛ թողուր և չէ՛ մոռանար ամենևին զաղքատն * և 'ի մեծութե̃ անկած մարդկանց համբերութի̃ն բնաւ չէ՛ կորիր և չէ՛ մոռացվիր ա̃յ առաջևն, այլ կու յիշէ զիւրեանք և նոցա ուժ անողին այս կերպիւս որ ասացի պատիժ կու տայ ։

Այսինքն, վեր կաց տ̃ր ա̃ծ քո արդար դատաստանովդ, և վրէժ խնդիր եղիր, որ հողեղէն մարդն խիստ չէ՛ զօրանայ և յանդգնի, և զիւր ընկերն ոտաց կոխան անէ * այլ ամենայն կռապաշտ և անօրէն մարդիկ քու առաջևդ դատվին և դատապարտվին իւրեանց հպարտութե̃ն համար ։

Այսինքն, տ̃ր ա̃ծ նոցա վերայ օրէնք դնող և սաստող և յանդիմանող մարդ հաստատէ * որ իմանան այդ կամապաշտ և անօրէն կռապաշտներդ թէ իւրեանք սխալական և մահկանացու մարդիկ են ։

Ընդ էր տր կացեր՚ի
հեռաստանէ * ան
տես արարեր ՚ի դէպ
նեղութե ժամա
նակի։

Այսինքն, բայց տր ած էր դու զմեզ բաց թողէր, և մեղանից հեռացար * զմեզ անտես արարիր, և յերեսաց ձգեցիր, մեր այնպիսի նեղութե և խղճութե ժամանակումն, որ քոյ օգնութեանդ կարօտ էինք։

Յամբարտաւանիլ
ամպարշտին այրի աղ
քատն * արգելցին ՚ի
խորհուրդս իւր
եանց զոր խոր
հեցան։

Այսինքն, զէրէ գիտես որ երբ որ անօրէն և անխղճմտանք մարդն կու ամբարտաւանի և կու հպարտանայ, նորա ձեռքէն կերվի և կու փոթոթվի խեղճ և աղքատ մարդն * այնոր համար դու յամօթ արա զիւրեանք, որ այն չար խորհրդների միջումն որ խորհեր են աղքատաց համար, իւրեանք արգելվին և կապեալ մնան։

Զի գովի մեղաւորն
՚ի ցանկութի անձին
իւրոյ * որ զրկէն,
նա գովի։

Այսինքն, զէրէ մեղաւորն պարծենալով իւր սրտի չար ցանկութենն մէ քան զինքն վատ մարդկանց առաջևն, նոցանէ կու գովվի, և կու փառաւորվի * և ինքն որ զրկող է և յափշտակող, այլոց գովասանք կառնու։

Իսկ ընդէր բարկա
ցոյց մեղաւորն զած
* ըստ բազում բար
կութե իւրում թէ
ոչ խնդրի։

Այսինքն, զայս տեսանելով սաստիկ հպարտութէն կու բացաւ և բարկացոյց զած * և իւր հանապազօրէն բարկութենն և զանազան չարութենն այնպէս յիմարեցաւ, որ կարծեց թէ իւր մեղացն և մոլորած գործոցն ամենևին համարք չի խնդրվիր։

Ոչէ ած առաջի աչաց

Այսինքն, նորա աչքի առաջևն

այն

նորա * պիղծք են ճա
նապարհք նորա
յա̄մ ժամ։

Բարձեալ են իրա
ւունք յերեսաց նո̄ր
* իշխ̄ր ամենից թշնամ
եաց իւրոց տիրեսցէ։

Ասաց ՚ի սրտի իւր
ում, թէ ո՛չ սասանե
ցայց յազգէ յազգ *
առանց չարի։

Անիծիւք և դառ
նութե̄ և նենգու
թե̄ լի՛ է բերան նորա
* ՚ի ներքոյ լեզուի
նորա ցաւք և վաս
տակք։
Նստի դարանէլ ընդ
մեծամեծս * ՚ի դաղտ
նիս սպանանել զամ
բիծն։

Աչք նո̄ր ՚ի տնանկս
հային * դ̄րանի ՚ի գաղ
տնիս որպէս զառիւծ
՚ի մորւոջ իւրում։



այնպէս կու թուի․ թէ ամենևին
ա̄ծ չկայ * այնոր համար ինչ ճա
նապարհ որ կու բռնէ, ողջ պիղծ
և աղտեղի է ա̄յ առաջև։
Այսինքն, իւր երեսէն հեռա
ցուցեր է և դէնէ ձգեր ա̄յ իրա
ւունքն և դատաստանն * և միայն
միտքն այն է որ իւր թշնամեացն
տիրապետէ, և զիւրեանք ոտաց
կոխան անէ։
Այսինքն, զէրէ ասաց իւր սրտի
մէջն, թէ այս փառքս և մեծու
թիս որ ես ունիմ, հանապազ հաս
տատ կու մնայ, և ես յազգէ յազգ
անսասան և անահ կու լինիմ * և
ինձ ամենևին չար չի հանդիպիր։
Այսինքն, անէծքով և դառն
զրուցներով և նենգաւոր խօս
քերով բերանն լի է * և իւր լե
զուին տակումն մէկ խօսք մի չի գտ
վիր որ լաւղի սիրտն չի՛ ցաւեցու
ցանէ և չի՛ տրտմեցուցանէ։
Այսինքն, ուստի թալաք սարքե
լու համար հանապազ մեծամե
ծաց հետ կու նստի և բարեկամու
թի կանէ * որ նոցա ուժովն կա
րենայ ծածուկ ըսպանանել և
կորուսանել զանմեղ և զանբիծ
մարդն։
Այսինքն, իւր աչքերն հանա
պազ խեղճ և աղքատ մարդկանց
վր̄ է * և միշտ ծածուկ թալաք
կու գործէ, ինչպէս մէկ առիւծ

մի որ

մի որ իւր բնուածնատի և որսերի վերայ ատամներն սրէ ։

Այսինքն, այսպէս նա միշտ թալաք կու սարքէ․ որ որսայ և ձեռք բերէ զաղքատ մարդն * որսայ յափշտակէ և խլէ զաղքատն և իւր ոտաց տակն ձգէ, և ոչնչացուցանէ ։

Այսինքն, այնչափ ճարպար որ ծուլթի կանէ, որ զաղքատն իւր թալաքն ձգէ * և երբ որ կու սկսանի տիրապետել նորա վերայ, և գերի ոյնման տակ կոխան կանէ, իսկոյն ինքն կու թեքվի և վայր կու անկանի, և այլոց տակ կոխան կուլինի ։

Այսինքն, զէրէ ասաց իւր սրտի միջումն, թէ ած իւր շատ և զանազան մոածմանց պատճառէն զիմ չարագործութիւնս մոռացաւ * և դարձոյց զիւր երեսն այլ որիշ կողմն, որ զիմ փոքրիկ սխալանքն չի տեսանէ ։

Այսինքն, բայց դու տր ած իմ, վեր կաց և զքո զօրութիւն նշանց տուր, և քո հզօր ձեռքդ բարձրացուր և պատժէ այսպէս ամբարտաւան մարդն * և մի՛ մոռանար զաղքատն, որ միայն ՚ի քեզ է՛ յուսացեր և ապաւիներ ։

Այսինքն, զէրէ ինչի համար բարկացոյց անօրէն մարդն զած * նր համար, որ ասաց իւր սրտի միջումն, թէ այն անիրաւութիւն որ

ես



Դարանի յափշտակել զաղքատն * յափշտակել զաղքատն և ձգել զնա ։

Որոգայթ իւր խոնարհեցուսցէ զնա * խոնարհեսցի և անկցի ՚ի տիրելն իւրում խեղճ տնանկաց ։

Ասաց ՚ի սրտի իւրում թէ մոռացաւ ած * դարձոյց զերեսս իւր զի մի՛ տեսցէ իսպառ ։

Արի տր ած իմ բարձր եղիցի ձեռն քո * և մի՛ մոռանար զտնանկս ։

Ընդէր բարկացոյց ամպարիշտն զած * զի ասաց ՚ի սրտի իւրում թէ ո՛չ քննի ։

Տեսանես դու զնա
՚ի ցաւս և ՚ի սրտմտու-
թիւն հայիս առ ՚ի մատ
նել զնա ՚ի ձեռս քո *
քեզ թողեալ է աղ
քատն, և որբոյն դու
ես օգնական ։

Խորտակեսցի բ՟զուկ
մեղաւորի և չարի *
խնդրեսցին մեղք նո
րա, և նա մի՛ գտցի։

Տ՟ր թագաւոր յաւի
տեանս յաւիտենից *
կորիցեն հեթանոսք
յերկրէ նորա ։

Զցանկութի տնան
կաց լուաւ տ՟ր * ՚ի
պատրաստութի սրտից
նոցա հայեցաւ
ունկն քո ։



ես կանեմ այլոց, բնաւ չէ՛ հար
ցուելու և չէ՛ քննուելու ։

Այսինքն, բայց չէ՛ գիտեր տ՟ր ա՟ծ
որ դու քո ամենատես աչօքդ երբ
որ կու տեսանես զաղքատն խեղ
ճութեան և ցաւի միջումն, կու
հայիս անօրէն մարդոյ սրտմտու
թիւն և գոռոզութիւն, և կու զես
ձեռն ձգել զինքն և պատուհասել
* զերէ քեզ է յանձնած և ապաստա
րած աղքատն, և որբ մարդոյն
դու ես օգնական և պահապան ։

Այսինքն, ուրեմն տ՟ր ա՟ծ քո ար
դար դատաստանովդ թող ջարդ
վի և կոտրատուի մեղաւոր և չարա
գործ մարդոյ թևերն * և իւր մե
ղացն համարք խնդրուի, և ինքն
այնպէս փչանայ, որ չկարենայ
գտնել և պատասխանի տալ քեզ ։

Այսինքն, ահա այսպէս է արդա
րութիւն տ՟յ, որ ինքն միշտ կենդա
նի է, և յաւիտեանս յաւիտենից
թագաւորութի կանէ * և կռա
պաշտ և անօրէն մարդիկ իւր եր
կրէն, իւր յերկրից արքայութե
նէն կու հալածուին և կու կորն
չին ։

Այսինքն, և մեք զայս տեսանե
լով ճշմարիտ կու հաւատանք և
կասենք, թէ աղքատների և խեղ
ճերի ցանկութին և խնդրուածքն
լսեց ա՟ծ * և նորա սրտի հաւանու
թենն ականջ դրեց, և իմացաւ որ

պատ

պատրաստէրէին զիւրեանք որ մ͞ն սիրոյն ա͞յ ա͞մ չարչարանաց և նեղութեց համբերեն ։

Այսինքն, ն͞ր համար կամեցաւ դատաստան անել որբերին և աղքատներին * որ այսու հետև այլ չէ իշխէ հողեղէն մարդ զինքն մեծացուցանել և բարձրացուցանել այս երկրիս երեսումն ։

Իբր զայս սաղմոս մինչև 'ի վերջն դաւիթ մարգարէն է ասացեալ ։

Այս սաղմոսումն պատասխանի կուտայ մարգարէն իւր բարեկամացն, թէ ինքն յա͞յ 'ի զատ յայլմէ օգնութի՛ չուզեր ։



Այսինքն, ո՛վ սիրելիք, չէ՛ թէ ես իմ ճշմարտութի՛ն եւ ապաւէներ, այլ յա͞ծ եմ յուսացեր * դուք էր կասէք ինձ, թէ ճնճղկան նման թռիր և փախիր և զքեզ երբեմն այս սարումն, և երբեմն այն սարումն գաղէ ։

Այսինքն, մի թէ ես չեմ կարեր աղաղակել և գանկատելով ասել, թէ տ͞ր ա͞ծ ահա մեղաւորք և չար մարդիկ զիւրեանց աղեղներն լարեցին * և իւրեանց նետերն թարքաշներումն պատրաստեցին * որ խաւար ժամանակումն ձգեն և





Դատ առնել որբոյն և տնանկի * զի մի՛ և ս յաւելցի մարդ 'ի մեծաբանել իւրում 'ի վե՛ր երեսաց երկրի ։

Տունք. 40

'Ի կատարած սաղմոս դաւթի ։

Սաղմոս. Ժ.



Ի տ͞ր յուսացայ * որպէս ասիցէք ցանձն իմ, փոփոխեաց 'ի լերինս ո͞պ ճնճղուկ ։



Զի ահա մեղաւորք լարեցին զաղեղունս իւրեանց * պատրաստ արարին զնետս 'ի կապարճս * ձգել 'ի մթ-խաւար այնոցիկ ո͞յք ուղիղք են սրտիւք ։

Զի զոր դու շինե-
ցեր, նք՟ աւերեցին *
իսկ արդարն զի՞
արար։

Տր՟ ՚ի տաճար սուրբ
իւրում * տր՟ յեր-
կինս յաթոռ իւր-
ում։

Աչք նր՟ ՚ի տնանկս
հային * արտեւան-
ունք նորա քննեն
զորդիս մարդ-
կան։

Տր՟ քննէ զարդարն
և զամպարիշտն * որ
սիրէ զմեղս ատէ
զանձն իւր։

խոցոտեն զայնպիսի մարդիկքն, որ
արդարք են, և սրտերն ուղիղ է։
Այսինքն, կամ թէ տր՟ ած՟ հայիր
և տես, որ ինչ որ դու շինեցիր,
նոքա աւերեցին, իբր, դու օրէնք
դրիր, և պատուիրանք տուիր,
աշխարհի, նք՟ քո օրէնքդ քակե-
ցին, և քո պատուիրանացդ չի՛ հնա-
զանդեցան, դու զիս թագաւոր
կացուցիր, նոքա զիմ թագաւո-
րութիւնս ուզեցին փչացնել *
բայց ես քանի միտք կանեմ, զիս
արդար և անմեղ կու գտանեմ,
զէրէ չեմ գիտեր թէ ինչ եմ արա-
րեր ես դոցա։
Այսինքն, զայս ամէն գանկատս
ես համարձակ կանեմ այ՟ հետ,
զէրէ տր՟ ած՟ միշտ պատրաստ է
իւր սբ՟ տաճարումն * տր՟ ած՟ հա-
նապազ բազմած է երկնքումն
իւր քրովբէական աթոռին վերայ,
և ուղիղ սրտիւ աւինքն գոչողաց
աղօթքին ականջ կանէ։
Այսինքն, իւր ողորմած աչքերն
միշտ դէպ ՚ի յաղքատներն և խղ-
ճերն կու նային * և իւր աչաց
թարթերն մահկանացու մարդ-
կանց գործքն և արարմունքն կու
քննեն։
Այսինքն, զէրէ միայն ինքն տր՟
ած՟ կու քննէ արդար մարդն, և
անօրէն մարդն * բայց այնպէս
մարդն որ իւր ցանկութեն յետնէ

կու

կուդնայ, և զմեղս կուսիրէ, խմա
նայ որ ինքն զիւր հոգին կու տայ
և իւր անձին վնաս կուհասու
ցանէ:

Այսինքն, զերէ անձրևին նման
կութափէ ած այս կեանքումս մե
ղաւոր մարդկանց վերայ ղանա
զան ներողութե և փորձանքի զորո
գայթն և զթալալքն * և այն կեան
քումն դժոխքի մէջումն զկրակն և
զքքուրդն * և կատաղած և մրր
կած ցաւերի և տանջանքներիքա
մին իւրեանց թասի բաժինն կու
լինի, որ դատապարտելոց հետ
խմեն ՝ի հուրն յաւիտենական:

Այսինքն, զերէ տր ած արդար
է, և զարդարութի և զիրաւունք
կուսիրէ * և իւր երեսն կունայի
միայն դէպ ՝ի մարդկային սրտից շի
տակութին և ուղղութին, և
ըստ իւրաքանչ իւրոց գործոցն
հատուցումն կանէ:

Իբր այս սաղմոսս մինչև ՝ի վերջն
վն աւուր յարութե տն մերոյ
յի քի է ասացեալ. որ ութերորդ
ասի օրն և օրն վերջին դատաստա
նին. յորում հրէայք զիւրեանց
սուտ թին և նենգախօսութին
կուստակացուցանեն և ընդդէմ
ճշմարտութե կու խօսին:

Այս սաղմոսումս կու խօսի մար
գարէն վասն ապականութե ժա





Տեղասցէ ՝ի վր մե
ղաւորաց որոգայթ *
հուր և ծծումբ *
այս մրրիկ բաժին բա
ժակի նց:

Արդար է տր զար
դարութի սիրէ * և
զուղղութի տեսանեն
երեսք նորա:

Տունք. Յ.

՝Ի կատարած ՝ի վերայ ութ
երորդին:

Սաղմոս. ԺԱ.



Ապրեցո՛ զիս Տէր զի՛ նուաղեցաւ սուրբ* նուաղեցան ճշմարտութիւնք յորդւոց մարդկան:

'Ի նանիր խօսեցաւ այր ընդ ընկերի իւրում* շրթամբք նենգաւորօք 'ի սրտէ 'ի սիրտ խօսեցաւ:

Սատակէ Տէր զամ շրթունս նենգաւորս * և զլեզուս մեծաբանս:

Որք ասացին զլեզուս մեր մեծս արասցուք* շրթունք մեր առ մեզ են, և արդ մեր ո՛վ է Տէր:

Վասն տառապանաց աղքատին և հեծութէ տնանկին այժմ



մանակին , և յուսայ գալստեանը փրկչին ազատիլ յամէ:

Այսինքն , ազատէ զիս Տէր ած այս չար ժամանակէս , զէրէ այլ ոք և բարի մարդ չէ՛ երևիր աշխարհիս վր * և պակասեցաւ ճշմարտութիւն և շիտակ խօսքն հողեղէն մարդկանց բերանէն:

Այսինքն ամէն մարդ իւր ընկերին հետ փուչ տեղ և մտայլի խօսեցաւ , և կամ խաբելու համար խօսեցաւ * և նենգաւոր և խաբեփայ պռնկներով երես պաշտութէ խօսեցաւ , և կամ նորա սրտին գօրայ խօսեցաւ:

Այսինքն , ած սատակէ և փչացնէ նենգաւոր և խաբեփայ շրթունքն և պռնկներն * և այնպիսի լեզուքն որ քան զիւրեանց չափին մեծ կու խօսին , և զիւրեանց խօսքն կուզեն յառաջ տանեն , վն սնոտի փառաց մարդկան:

Այսինքն , ասացին իւրեանց սրտի միջումն , թէ մեր լեզուն և մեր խօսքն մեծացնենք , որ ինչպէս որ ուզենք այնպէս խօսինք * մեր շրթունքն և պռնկներն մեզ հետ են , ո՛վ է մեզ վերայ Տէր , որ զմեր բերանն բռնել կարենայ:

Այսինքն , բայց ած տեսանելով աղքատներին խղճութին և տառապանքն , և 'ի մեծութէ և 'ի հարստու

տու

տուէ անկած մարդկանց լացն և
հեծեծանքն, կասէ թէ աՀա՛
այժմ վեր կու կենամ*ինքը զիմ որ
դիս կողարկեմ, և զիմ փրկութիս
նդ միջումն կուդնեմ և կուհաս
տատեմ* և համարձակ ցոյց կու
տամ այդ անզգամ մարդկանցդ
թէ որ չափ մեծ է իմ զօրութիս:
Նոյնինքն, և այսքանիս վերայ
չէ՛ պիտի տարակուսած, զէրէ նոյ
բանին, որ բանն է, և հեռի է յա
մենայն սուտ թենէ* ինչպէս ար
ծաթ մի որ ընտրած և փորձած լի
նի կրակով քուրայի միջումն* և
եօթն անգամ յստակած և պար
զած լինի իւր մասանի հողիցն:
Նոյնինքն վասն որոյ կաղաչենք
զքեզ տէր ած, որ զմեզ պահես և
փրկես այս չար ժամանակէս, և
այս չար ազգէս մինչև յաւիտեան:
Նոյնինքն, զէրէ կուտեսանենք
որ մեր բոլորքն պատեր են անօ
րէնմարդիք* բայց դու քո բարձր
և անքննելի նախախնամութեդ
և քո առատ ողորմութեդ ազատէ՛
և մեծացուր 'ի քեզ ապաւինած
հողեղէն մարդկանց որդիքս, որ
չէ՛ անկանինք 'ի փորձութի:

Իբր զայս սաղմոս մինչև 'ի վերջն
դաւիթ մարգարէն է ասացեալ:
Նյս սաղմոսումս կուաղօթէ
մարգարէն, և կուխնդրէ յայ որ





յարեայց ասէ տէր *
եդից զփրկութի իմ
* և համարձակեցայց
'ի նմա:

Բանք տն են բանք
սուրբ * որպ զարծաթ
ընտրեալ և փորձեալ
հրով * սրբեալ և
պարզեալ եօթնպա
տիկ 'ի հողոյ:

Դու տէր պահեսցես
զմեզ, և ապրեցու
ցես զմեզ յազգէ յայս
մանէ մինչև յաւտն:
Շուրջանակի ամ
պարիշտք շրջին * ըստ
բարձրութե քում
մեծացուցես դու
զորդիս մարդկան:

Տունք. Ը

'Ի կատարած սաղմոս
դաւթի.

Սաղմոս. ԺԲ.



Մինչեւ յերբ տ՟ր մոռանաս զիս իսպառ * մինչեւ յերբ դարձուցանես զերեսս քո յինէն։

Մինչեւ յերբ դնեմ զխորհուրդս յանձն իմ * եւ ցաւ՛ք սրտի իմոյ զաւուրս։

Մինչեւ ցերբ բարձրանայ թշնամին ՚ի վ՟ր իմ * նայեաց եւ լուր ինձ տ՟ր ա՟ծ իմ։

Լուսաւոր տ՟ր աչաց իմոց * զի մի՛ երբեք ննջեցից ՚ի մահ։

Մի ասիցէ թշնամին թէ յաղթեցի նմա * կամ նեղիչք իմ



օգնական լինի իւրն իմէջ նեղութեան եւ փորձութ՟ե։

Այսինքն, տ՟ր ա՟ծ մինչեւ յերբ զիս կու մոռանաս, եւ ամենեւին ինձ օգնութ՟ի չես հասանիր * կամ մինչեւ յերբ քո երեսդ ինձանից կու դարձուցանես, եւ ՚ի քոյ շնորհացդ զիս կու զրկես։

Այսինքն, մինչեւ յերբ զանազան խորհրդներ դնեմ իմ մտաց մէջն, եւ զիս հալեմ եւ մաշեմ * կամ մինչեւ յերբ օրն ՚ի բուն զիմ սիրտս տրտմութ՟ե ցաւօք լցուցանեմ։

Այսինքն, մինչեւ յերբ իմ թշնամին ինձ վերայ յաղթօղ լինի, եւ բարձրամտի եւ պարծենայ * նայիր տ՟ր ա՟ծ, իմ խղճութ՟իս, եւ իմ աղաչանքիս ականջ արա։

Այսինքն, տ՟ր ա՟ծ զիս այս խաւար տրտմութենէս ազատէ, եւ զիմ սիրտս մխիթարէ * որ չի լինի թէ յուսահատութ՟ե միջումն մնամ, եւ մահուան քունն զիս պատէ։

Կամ թէ տ՟ր ա՟ծ, դու քո երկնային շնորհօքդ զիմ միտքս լուսաւորէ, * որ չի լինի թէ ես մեղաց մէջ անկանիմ, եւ իմ հոգիս մահու քնով ննջէ եւ մեռանի։

Այսինքն, որ չի լինի թէ իմ թշնամին զիմ խղճութ՟իս տեսանելով պարծենայ եւ ասէ. թէ ես

զնա

զնա յաղթեցի * կամ թէ իմ հա
կառակներն որ զիս կու նեղացնեն
և կու վշտացնեն, ուրախանան և
ցնծան, թէ ես անկայ սասանեցայ
և աՀաբեկեղայ.

Այսինքն, զէրէ ես քո ողորմու
թիդ եմ յուսացեր տր ած * և
իմ սիրտս քո փրկութեդ վերայ
և քու միածին որդւոյդ վերայ կու
ցնծայ և կուրախանայ * և ես
միշտ կու օրՀնեմ և կու փառաբա
նեմ զքեզ որ իմ բարերար տրն ես

Իբր զայս սաղմոսս մինչև 'ի վերջն
դաւիթ մարգարէն է ասացեալ
ընդդէմ անՀաւատութեան մարդ
կանց :

Այս սաղմոսումս կու խօսի մար
գարէն վն մոլորութեան մարդկան,
վն պատժեցմանն նոցին, և վն դա
լստեանն քրիստոսի :

Այսինքն, մարդկային ազգս այն
չափ լրբեցեր է և 'թերաՀաւատեր
է, որ երբեմն այնպէս մարդ է գտ
նուում այս աշխարՀումս, որ թէ
պէտ բերանով չէ կարում զած
ուրանալ, բայց միշտ իւր սրտի մի
ջումն կասէ, թէ աշխարՀս անտէր
է, և ստեղծօղ տր և ած չկայ :

Այսինքն, այնպէս ապականվեր
են և պղծվեր են իւրեանց անօ
րէնութեամբ և չար գործոց միջումն

* որ



ցնծասցեն թէ ես սա
սանեցայ :

Ես յողորմութիւն քո
տր յուսացայ * ցնծա
ցաւ սիրտ իմ 'ի փր
կութեն քում * օրՀ
նեցից զտր զբարե
արդ իմ:
Տունք. Զ.

Կատարած սաղմոսի
դաւ թի :

Սաղմոս. ԺԳ :

Ասաց անզգամն 'ի
սրտի իւրում թէ ոչ
գոյ ած :

Ապականեցան և պղ
ծեցան յանօրէնու
թեն իւրեանց * և ոչ ոք



է որ առնէ զբարի ։

Տէր յերկնից նայե
ցաւ յորդիս մարդ
կան * տեսանել թէ
իցէ ոք իմաստուն, որ
խնդրիցէ զա՟ծ ։

Ամենեքեան խոտո
րեցան ի միասին և ան
պիտանացան ։

Ոչ ոք է որ առնէ զբա
րի, և չէ ոք մինչև
՚ի մի ։

Գերեզման բաց է
կոկորդ նոցա * լե
զուօք իւրեանց նեն
գաւորք եղեն *
թոյնք իժից ՚ի ներ
քոյ շրթանց
նոցա ։

Որոց բերանք անի
ծիւք և դառնութե՟
լի են * երագք են



* որ ո՛չ ոք չկայ որ յա՟յ երկնչելով
մէկ բարի գործ մի գործէ ։

Այսինքն , ուստի որ ա՟ծ իւր
երկնային աթոռէն նայեցաւ բո
վանդակ հողեղէն մարդկանց վր՟ա
* որ տեսանէ թէ մէկ այնպէս
իմաստուն մարդ մի այլ կուգտնուի
մի որ զա՟ծ ճանաչէ ․ կամ թէ կամե
նայ և խնդրէ իւրն սրտի մտօք ծա
ռայութիւն անել ։

Այսինքն , և տեսաւ , որ ամէնքն
միատեղ մոլորեր են , և այնպէս
անպէտ են դարձեր , որ այլ արժա
նի չեն որ զա՟ծ պաշտեն , և զնորա
բարերարութի՟ն ՚ի միտ ածեն ։

Այսինքն , ո՛չ ոք չէ գտնուած այդ
չափ մարդկանց միջումն որ մէկ բա
րի մի գործէ , և չկայ մինչև ՚ի մէկ
մարդ մի այլ , որ նր՟ ճշմարտութի՟ն
և բարութի՟ն իմանայ ։

Այսինքն , այլ նոցա կոկորդն ,
իբր կուլն և պօղազն բացված գե
րեզման կու նմանի , զէրէ իւր
եանց աղտեղի խօսքերովն զայլ
կուդարշեցուցանեն * իւրեանց
նենգաւոր և չար լեզուովն զայլ
կուդայթակղեցնեն * և իւր
եանց շրթանց և պռնկների տա
կումն իժ օձի զէհր և աղու կայ
դաղած ։

Այսինքն , անէծքով և դառն
զրուցներով նոցա բերանն լի է *
և իւրեանց ոտքերն արագ և պատ

րաստ է որ անմեղ մարդկանց արիւնն թափեն առանց երկիւղի և խղճմտանաց։

Այսինքն, նոցա չար սովորութե չար կենցաղավարութեան ճանապարհն, զմարդիկ սպանել և չարչարել և խեղճ անելն է * և ամենևին հաշտութե խաղաղութե սիրոյ և պարկեշտութե ճանապարհն չեն գիտեր * զէրէ նոցա աչաց առաջևն ա̃յ ահն և երկիւղն ոչինչ կու թուի։

Այսինքն, բայց ինչպէս կու լինի որ այդչափ մարդիքդ որ չարութի և անօրէնութի գործելոյ յետնէ են ամենևին չի ճանաչեն զա̃ծ և զնորա ահն և երկիւղն 'ի միտ չածեն։

Այսինքն, զիմ ժողովուրդն և զիմ ծառայքն կուտեն և կու փչացուցանեն հացապուրի նման * և ամենևին մէկ օր մի զմտքերն չի բարձրացուցին դէպ յա̃ծ, և իւրեանց մեղացն թողութի չի խնդրեցին։

Այսինքն, բայց ա̃ծ այնպէս տեղ կու վախեցնէ և կու զարհուրեցուցանէ զիւրեանք, որ ամենևին կարծիք չունենան թէ տեղն ահ և երկիւղ կայ * զէրէ ա̃ր ա̃ծ միշտ արդարոց ազգին և զարմին հետ է, որ զիւրեանք պահէ և պահպանէ, և իւրեանց թշնա



ոտք նոցա 'ի հեղուլ զարիւն։

Բեկումն և թշուառութի 'ի ճանապարհս նո̃ց * և զճանապարհն խաղաղութե ոչ ծանեան * ոչ է երկիւղ ա̃յ առաջի աչաց նո̃ց։

Որպէս ոչ ծանիցեն ամենեքեան ոյք գործեն զանօրէնութի։

Ոյք ուտէին զժողովուրդ իմ ո̃պ զկերակուր հացի * և առ ա̃ր ոչ կարդացին։

Անդ երկիցեն զերկիւղ ուր ոչ էցէ երկիւղ * զի ա̃ր է յազգս արդարոց։

Զ խորհուրդ աղքատին յամօթ արարին * զի տր՟ է յոյս նորա:

Ո՛ տացէ 'ի սիոնէ զփրկութ՟ին իսրայէլի * 'ի դարձուցանել տ՟ն զգերութ՟ի ժողովրդեան իւրոյ * ցնծասցէ յակոբ, և ուրախ եղիցի իսրայէլ:

Տուն. 13.

Սաղմոս Դաւթի:

Սաղմոս. ԺԴ:

Տէր ո՛վ կացցէ 'ի խորանի քում * կամ ո՛վ բնակեսցի 'ի լերան սբ՟ քո:



միքն պատուհասէ, և կործանէ:

Այսինքն, դուք աղքատ և խեղճ մարդոյ խորհուրդն որ միշտ յա՟ծ ապաւինիլն է տնազ արարին * ասելով թէ այնոր համար այդ մարդդ զիւր յոյսն ա՟ծ է դրեր, որ ձեռնէն բան չի գար:

Այսինքն, ա՛հ ո՛վ կուտայ մեզ 'ի սիոնէ, իբր 'ի յերկնային քաղաքէն. զփրկութիւնն իսրայէլի, իբր զորդին ա՟յ, զոր և զփրկիչն հաւատացելոց * որ գայ փրկէ և դարձուցանէ զիւր ժողովուրդն 'ի գերութ՟էն սատանայի * զէրէ այն ժամանակն կուցնծայ յակոբ, իբր սուրբ և բարեպաշտ քրիստոնեայք, և կուրախանայ իսրայէլ, իբր ա՟մ հաւատացեալք առհասարակ:

Իբր զայս սաղմոս ինքն դաւիթ մարգարէն է շարադրեալ:

Այս սաղմոսումս կու խօսի մարգարէն այնպիսի բարեգործութեանց համար որ զմարդն արժանի կանեն արքայութ՟են երկնից:



յսինքն, տ՟ր ա՟ծ, ինչպէս մարդ է այն, որ արժանի կու լինի քոյ ա՟ծային փառացդ, և կու հանգչի քոյ երկնային խորանումդ * կամ ով է այնպիսի մարդն, որ կու բնակի քոյ սբ՟

լեռ

լեռնումդ, իբր 'ի յարքայութն քում։

Այսինքն, միայն այն, որ իւր մէջ հաւատքէն 'ի զատ զայս բարի գործքերս այլ ունենայ. իբր իւր կենաց մէջն միշտ շրջի և ապրի առանց պակասութն * իւր արարմունքն արդարութի և շիտակութի լինի * և չէ թէ միայն բերանով, այլև սրտովն հանապազ ճշմարտութիւն խօսի, և ճշմարտութն հետևի։

Այսինքն, այն որ իւր լեզուովն խաբեփայութի և նենգաւորութիւն չի անէր * և իւր ընկերին նեղութիւն և վնաս չի հասուցաներ, կամ յափշտակելով և կամ հարկանելով։

Այսինքն, այն որ այնպէս մէջ է, և պարկեշտ, որ ամենևին 'ի յիւր մերձաւորացն և բարեկամացն նախատինք չի լսեր * և չարագործ մարդն իւր առաջևն ոչինչ կու համարվի, և անպատիւ կու լինի։

Այսինքն, այն, որ ա͞ծավախ մարդիկն կու փառաւորէ և կու պատուէ * և իւր ընկերին, երբ որ մէկ բանի մի համար երդում կանէ, իւր խօսքն հաստատ կու պահէ և զինքն սուտ չի հաներ։

Այսինքն, այն որ զիւր դրամն և փողն այլոց շահով չի տար * և դատաստան և իրաւունք անելոյ մէջ

Որ գնայ ամբիծ * գործէ զարդարութի * խօսի զճշմարտութի 'ի սրտի իւրում։

Որ ոչ նենգաւորեաց լեզուաւ իւրով * և չար ընկերի իւրում ոչ արար։

Նախատինս 'ի մերձաւորաց ոչ առնու * արհամարհեալ է առաջի նորա չարագործն։

Զերկիւղածս տ͞ն փառաւորէ * որ երդնու ընկերի իւրում և ոչ ստէ։

Զարծաթ իւր 'ի վարձու ոչ տայ * և կաշառս 'ի վերայ իրա

ա՛նց ո՛չ առնու ✳ որ
զայս արասցէ, նա մի՛
սասանեսցի աւ՛ի-
տեան :

Տունք: Զ.

Արձանագիր դաւթի :

Սաղմոս ԺԵ:



Պահեա՛ զիս տր՟ ած՟, զի
ես ՚ի քեզ յուսացայ
✳ ասացի տն՟, տր՟ իմ
ես դու ✳ և բարիք իմ
չեն քեզ ինչ պիտոյ.

Սրբոց քոց որք են
յերկրի քում, սքան



կաշառք չի առնուր ✳ զէրէ այսպիսի
բարի գործոց կատարօղ մարդն
միշտ հաստատ կու մնայ, և բնաւ
ամենևին չի սասանիր, և չի վնաս
վիր իւր կենաց մէջն :

Արձանագիր քարի վերայ գրած
գիր ասել է. բայց աստ կու նշանա
նակէ պղինձ տախտակին որ դրին
իւրե՟ գլխոյ Ճշմարիտ դաւթին յի՟
քի՟. որ ասէր, յս՟ Նազովրացի Թա
գաւոր Հրէից :

Այս սաղմոսս կու աղօթէ
մարդարէն՚ի բերանոյն քի՟, և կու
խնդրէ զկարողութի՟, որ իւր չար
չարանքովն հաստատէ զեկեղեցին

Այսինքն, տր՟ ած՟ զիս ամուր ձե
ռօք պահէ, և ինձ կարողութիւն
տուր այս չարչարանացս միջումն,
զէրէ ես քեզ եմ յուսացեր ✳ ես
հողեղէն մարդոյ նման ասացի իմ
տիրոջն, թէ դու իմ տրն՟ ես, զիս
քոյ ձեռացդ մի՛ թողուր ✳ և թէ
պէտ իմ այս չարչարանքս, և իմ
արիւնս որ կու թափեմ, իմ վար
ձքս, և իմ բարիքն որ կու շահիմ,
քեզ պէտք չեն, բայց մարդկային
ազգին համար հարկաւոր են, որ
փրկվին՚ի գերութէն սատանայի
և՚ի խանջանաց դժոխոց :
Այսինքն, և մանաւանդ որ դու
զիմ ամենայն կամքս և յօժարութիւ

որ

որունիմ չարչարվելոյ և խաչվե
լոյ համար, վն փրկութե մարդ
կան, զքանչելի և զարմանալի արա
րիր քոյ սրբերի մասաց մէջումն, որ
քոյ այս ստեղծեալ երկրիս վր կու
բնակին, որ թէպէտ դեռ անճա
նաչ են, բայց յետ ժամանակաց
կու յայտնվլին և կու ճանաչվլին
թէ ովքեն:

Այսինքն, և թէպէտ նոցա հո
գևոր հիւանդութին, իբր հրէից
մեղքն և կռապաշտից մոլորութին
մէկ ժամանակ մի կու աճելանայ
և կու սաստկանայ * բայց յետ այ
նորիկ ըշտապելով կու դառնան և
կու գան 'ի յիմ որ հաւատքն և 'ի
ճշմարիտ աստուածպաշտութի:

Այսինքն, և ես նոցա ժողովք
ներն չեմ ժողովեր, և մէկ զմէկէ
ջոկեր և զանազաներ, իւրեանց
զանազան արեանցն համար, իբր
իւրեանց զանազան մատաղներին,
կամ զոհերին համար * և նց զանա
զան անունն այլ բերանս չեմ բե
րեր ասելով թէ սա հրէայ է, կամ
կռապաշտ է այլ զամէնքն միապէս
կու ընդունիմ, և կու պատուեմ:

Այսինքն, զէրէ տր ած նք իմ ժա
ռանգութե և իմ հարսանիքի բա
ժակին բաժինն են * և դու ես որ
զիմ ժառանգութիս դէպ յիս կու
դարձուցանես, ինչ պէս որ խոս
տացերէիր թէ զհրէայս և զհեթա





չելի արարեր զամ
կամս իմ 'ի նոսա:

Յաճախեսցին հի
ւանդութիւնք նոցա *
յետ այսորիկ ապա վաղ
վաղեսցին:

Ոչ ժողովեցից զժո
ղովս նց յարեանց *
և ոչ յիշեցից զան
ուանս նց 'ի շր
թունս իմ:

Տր, բաժին ժառան
գութե իմոյ և բաժա
կի իմոյ * դու ես որ
այրէն դարձուցա
նես զժառանգու
թի իմ յիս:

Վիճակք ելին ինձ ընդ ընտիրս * և ժառանգութ̃ի իմ հաճոյ եղև ինձ։

Օրհնեցից զտ̃ր որ իմաստուն արար զիս * մինչ 'ի գիշերի ևս խրատեցին զիս երիկամունք իմ։

Յառաջագոյն տեսանէի զտ̃ր առաջի իմ յա̃մ ժամ * զի է ընդ աջմէ իմէ, զի մի սասանեցայց։

Վ̃ս այսորիկ ուրախ



նոսա։ քեզ ժառանգութիւն կուտամ։

Այսինքն, այն վիճակներն որ ինձ անկան, ընտիր և պատուական բաժիններէ էին, իբր այն մարդիկն որ զիս քս̃ ա̃ծ հաւատացին, ընտիր և պատուական աղբերէ էին, կամ ընտիր, և պատուական առաքինութեանց և բարուց տէր էին * և իմ ժառանգութիւնս, որ հայրն իմ երկնաւոր ինձ տվեց, ինձ սաստիկ դուր եկաւ, և հաճոյացաւ, իբր, թէ հաւատացեալ հրէայքն և թէ հեթանոսքն։

Այսինքն, այս ժառանգութ̃իս թէպէտ ես պիտիմ ստանալ իմ չարչարանօքս և մահուամբս բայց միշտ կու գոհանամ և կու օրհնեմ զտ̃ր ա̃ծ հայրն իմ, որ ինձ այնչափ համբերութ̃ե և երկայնամտութեան իմաստութիւն է տուեր, որ մինչև գիշերն այլ իմ երիկամունքն որ արիութ̃ե գործիք են, զիս կու խրատեն և կու զգուշացուցանեն։

Այսինքն, և ինչպէս որ յառաջ կու տեսանէի զտ̃ր ա̃ծ հայրն իմ հանապազ իմ աչքիս առաջևն, այսպէս իմ չարչարանքիս մէջն տեսանել պիտիմ * զէրէ իմ աջ կողմն է կանգներ, որ չի՛ վախեմ և չի՛ տարսափիմ յիմ թշնամեացն։

Այսինքն, այսոր համար իմ սիրտս

ուրա

ուրախացաւ, և իմ լեզուս ցն
ծաց* այլ և իմ մարմինս կուընա
կի և կուհանգչի գերեզմանի մի
ջումն յուսով յարութեան:
Այսինքն, զէրբ երբ որ իմ հո
գիս ելանէ 'ի դժոխս արդարոց
դասքն ազատելու համար, դու
չես թողուր որ 'ի տեղն մնայ* այլ
և չես թողուր, որ իմ մարմինս որ
սբ է՛ և մաքուր յամմեղաց, գե
րեզմանումն փտի և ապականի:
Այսինքն, այլ կուցուցանես ինձ
կենաց ճանապարհն, որ յառաջ
քան զամ մարդիկ ելանեմ յեր
կինս* և 'ի տեղն կուլցնուս զիմ
սիրտս քոյ պայծառ երեսաց ուրա
խութեննովն* և քոյ հայրական
աջոյդ քաղցր վայելչութեննովն
իբր պատուօքն և մեծարանօքն յա
ւիտեանս յաւիտենից:

Իբր դաւիթ իւր հալածանաց
և նեղութե միջումն զայս սաղ
մոս ասելով աղօթեաց առ ած:
Այս սաղմոսումս կու աղաչէ մար
գարէն զած 'ի բերանոյ արդար
մարդկանց որ ազատէ զիւրեանք
'ի հալածանաց:

Այսինքն, տր ած կաղաչեմ զքեզ
լսէ ինձ քոյ արդարութեննովդ, իմ
անմեղութենն դօրայ, և հայիր իմ
խնդրուածքիս* և ականջ դիր
սիրով



եղև սիրտ իմ, և ցն
ծացաւ լեզու իմ*
ևս և մարմին իմ բնա
կեսցի յուսով:
Զի ոչ թողցես
զանձն իմ 'ի դժոխս*
և ոչ տացես սրբոյ
քում տեսանել զա
պականութի:

Ծանուցես ինձ զճա
նապարհս կենաց*
լցուսցես զիս ուրա
խութե երեսաց քոց
*'ի քաղցրութե վայել
չութե աջոյ քոյ մինչ
իսպառ:

Տունք. II.

Աղօթք Դաւթի:

Սաղմոս. ԺԶ.

Լուր տր արդարու
թեամբ. նայեաց 'ի
խնդրուածս իմ*
ունկն դիր աղօթից



իմոց, զի ո՛չ շրթամբք
նենգաւորօք։

Յերեսաց քոց իրա
ւունք իմ ելցեն *
և աչք քո տեսցեն
զուղղութի։

Փորձեցեր զսիրտ իմ
և քններցեր ՚ի գիշերի
* փորձեցեր զիս, և
ո՛չ գտաւ յիս անի
րաւութի։
Մի՛ խօսեսցի բերան
իմ զգործս որդւոց
մարդկան * վսն բանից
շրթանց քոց ես պա
հեցից զճանապարհս
խիստս։

Հաստատեա՛ զշաւիղս
իմ ՚ի ճանապարհի
քում * զի մի՛ դայ
թակղեսցին գնացք
իմ։

Ես առ քեզ տր կար
դացի զի լուար ինձ



սիրտով իմ աղօթքիս, զէրէ նեն
գաւոր և խաբեփայ շրթամբք և
պռնկներով երեսահանց չեմ աղա
չեր զքեզ։
Այսինքն, քո երեսէդ ինձ դա
տաստան և իրաւունք ելանէ * և
քո ածային աչքդ զիմ շիտակու
թին և ուղղութին տեսանէ, և
ինձ հաստուցումն անէ։
Այսինքն, զէրէ դու փորձեցիր
և քննեցիր զիս նեղութն և վշտի
գիշերումն * փորձեցիր և տեսար,
որ ինձնում անիրաւութի և սուտ
թիւն չկայր։
Այսինքն, թող ամենևին իմ բե
րանս չի խօսի և չի բամբասէ ու
րիշ մարդկանց սխալական արար
մունքն և գործքն, թէ ինձ անի
րաւութիւն այլ անեն * զէրէ ես
քո բերանիդ խօսքին համար, իբր
քո տբ պատուիրանքին համար,
այս դժուար և խիստ ճանապարհս
կու պահեմ, իբր կու համբերեմ,
և մունձ կու կենամ։
Այսինքն, և կաղաչեմ զքեզ որ
զիմ հետքս և զիմ իղս, քո պա
տուիրանաց ճանպարհումն հաս
տատ պահես * որ իմ քայլքն, և
գնացքն. իբր իմ կենցաղավարու
թիս չի թեքվի, և չի ծռվի դէպ
՚ի անպատեհ շարժմունս։
Այսինքն, տր ած, ես միշտ դէպ
առ քեզ աղաղակեցի, զէրէ դու

հանապազ քո ողորմութեդ ինձ
լուեցիր * այժմ ևս ցածացուր քո
ականջդ, և զիմ աղօթական բանս
լուր, և ինձ 'ի թիկունս հասիր։
Այսինքն, դու զքո առատ ողոր
մութիդ իմ մնաց մէջն սքանչելի
և զարմանալի արարիր * զէրէ դու
այն ա͞ծն ես, որ կու փրկես 'ի քեզ
յուսացող մարդիկն, և կու ազա
տես այնպիսի չար մարդկանց, որ
քոյ աջ ձեռացդ, իբր քոյ միածին
որդւոյդ հրամանացն և պատուի
րանացն կու հակառակին։
Այսինքն, պահէ և պահպանէ
զիս քոյ ողորմութեն քոյ աչաց բի
բինանման իբր քո սիրելի և հաւատա
րիմ առաքելոց և վարդապետաց
նման * և քոյ թևերի շուքի տա
կումն, իբր քոյ նախախնամութե
ներքևն ծածկէ և դաղէ զիս անօ
րէն մարդկանց երեսէն. որ զիս
սաստիկ տառապեցուցին և վշտա
ցուցին իւրեանց չարութեն։
Այսինքն, զէրէ թշնամիք զիմ
չորս կողմն պատեցին քոյ ո͞ք հա
ւատքիդ խոստովանութեն հա
մար * և իւրեանց ձրադուի մի
ջումն արդելվեցան, իբր իւր
եանց հարստութե ընչից և մե
ծութեան միջումն առատացան
խրվեցան և մնացին * և նոցա բե
րանն ինձ վերայ պարծենալով ամ
բարտաւանն և հպարտ խօսքեր խօ





ա͞ծ * խոնարհեցո՛
ուխ զունկն քո և
լուր բանից իմոց։

Սքանչելի արարեր
զողորմութիս քո *
որ փրկես զայնոսիկ
ոյք յուսացեալք են
'ի քեզ. յայնցանէ
ոյք հակառակ
կան աջոյ
քոյ։

Պահեա՛ զիս ո͞պ բիբ
ական * ընդ հովան
եաւ թևոց քոց ծած
կեսցես զիս յերեսաց
ամպարշտաց ոյք տա
ռապեցուցին զիս։

Թշնամիք զանձն իմ
պաշարեցին * և 'ի
ձարպս իւրեանց ար
գելան * և բերանք
նց խօսեցան զամբար
տաւանութի։

Մերժեցին զիս, և այժմ դարձեալ պատեցան զինև * ուշ եդին խոնարհեցուցանել զիս յերկիր։

Համարեցան ինձ ոպ առիւծ զի պատրաստի յորս * և ոպ կորիւն առիւծու, զի նստի դարանեալ։

Արի՛ տր ժամանեա՛ նոցա, և խափանեա՛ զնս * փրկեա՛ զանձն իմ յամբարշտաց, 'ի սրոյ և 'ի ձեռաց թշնամւոյն։

Տր կորո՛ զնոսա յերկրէ * բաժանեա՛ * և խափանեա՛ զնոսա 'ի կեանս իւրեանց։

Գաղտնեօք քովք լցան որովայնք նց * յագեցան կերակ



սեցաւ, և զիս դառնացոյց։

Այսինքն, մէկ ժամանակ մի զիս քշեցին և հալածեցին յերկրէ յերկիր, այժմ կրկին զիմ բոլորքս պատեր են * և իւրեանց հոգին և դիտաւորութին այն է որ զիս հողէ հաւասար անեն, իբր զիս 'ի յերկնային ցանկութէն զրկեն, և սնոտի վայելչութեց աշխարհի հետևեցուցանեն։

Այսինքն, և ինձ մէկ առիւծի նման կութուին, որ զինքն պատրաստէ, որ որսերի վերայ թռչի * կամ թէ մին առիւծի ձագինման, որ մէկ տեղ մի դաղլի և նստի, որ զայլ կենդանիքն որսայ և կլանէ։

Այսինքն, վասն որոյ կաղաչեմ զքեզ տր ած, վեր կաց, հասիր նոցա քո կարող զօրութեդ, և զիւրեանց չար խորհուրդն խափանէ՛ * զիմ անձս փրկէ և ազատէ յանօրէններէ, 'ի թրէ, և 'ի թշնամի մարդկանց ձեռքէն, զէրէ 'ի քեզ եմ յուսացեր։

Այսինքն, տր ած կորցուր զդն երկրիս երեսէն * բաժանէ՛ և ջոկ ջոկտէ մէկ զմէկէ և ցրուէ զիւրեանք * և դոցա չար միտքն և դիտաւորութին խափանէ քանի որ կենդանի են այս աշխարհիս վր։

Այսինքն՝ քոյ այս երկրիս վերայ սրբոց համար պատրաստած և դաղած բարի պարգևքներուն նոցա

փո

փորերն լցվեցաւ * այն չափ կշտա
ցան զանազան կերակրներով, և
զանազան ընչիւք և ապրանօք, որ
թողին զաւելորդն և զմնացածն
իւրեանց տղայոցն, իբր իւրեանց
չար ժառանգներին։

Այսինքն, բայց ես հեռանալով
նոցա չար ճանապարհէն, կուզեմ
արդարութբ և անմեղութեամբ
երևիլ քոյ երեսաց առաջեն յա
ւուր ահեղ ատենին * և կուզեմ
կշտանալ, երբ որ յարութեն օրն
երևի քո փառքն, իբր երբ որ որ
դին քո միածին, քոյ հայրական
փառօքդ գայ ՚ի դատաստան։

Իւր զայս սաղմոսս մինչև ՚ի վերջն
դաւիթ մարգարէն վասն իւր է
ասացեալ, և կամ վասն ճշմարիտ
դաւիթին յի. քի․ զի որպ դաւիթ
զերծաւ ՚ի ձեռաց թշնամեաց իւ
րոց, նոյնպէս և ք.ս զերծաւ ՚ի ձե
ռացն հրէից։

Այս սաղմոսումս շնորհակալ
կուլինի մարգարէն զայ որ փրկեց
զինքն յիւր թշնամեաց ձեռքէն։
Կամ շնորհակալ կուլինի ՚ի բե
րանոյ քի, որ փրկեց զնա ՚ի դաւա
ճանութէ հրէից։
Նաև կամ շնորհակալ կուլինի ՚ի
բերանոյ արդարոց, որ փրկեց զիւ
րեանք ՚ի փորձութէ։





րովք, և թողին
զմնացուածս տղ
այոց իւր
եանց։

Ես արդարութբ եր
ևեցայց երեսաց քոց
* յագեցայց յերևիլ
փառաց քոց։

Տունք․ 15․

՚Ի կատարած ՚իվերայ պատե
րազմաց նահատակի ծառայի
տեառն դաւթի, որ խօսե
ցաւ ընդ տեառն զբանս օրհ
նութեան, յաւուր յորում
փրկեաց, զնա տէր ՚ի ձեռաց
ամ թշնամեաց, և ՚ի ձեռացն
սաւուղայ:

Սաղմոս. ԺԷ:

Սիրեցից զքեզ
տր զօրութի
իմ * տր հաս
տատիչ իմ * ապաւէն
իմ. և փրկիչ իմ։

Ած օգնական իմ. և
ես յուսամ 'ի նա *
ապաւէն իմ. եղջիւր
փրկութե իմոյ * ըն
դունող իմ է։



Այսինքն, կու սիրեմ զքեզ
տր ած բոլորով սրտիւ
զէրէ դու իմ կարողու-
թիւն և զօրութիւն ես * դու իմ
ամրութիւն և հաստատութիւն ես
* և դու իմ ապաւէնն և փրկիչն
ես, իմ ամ պատերազմի, իմ ամ
փորձութե, և իմ ամ նեղութե
միջումն 'ի մանկութէ իմէ։

Դարձեալ, կու սիրեմ զքեզ
հայր իմ երկնաւոր, ես որդիդ քո
միածին յս քս բոլորով սրտիւ
իմով, ինչպէս որ կու սիրէի զքեզ
յառաջ քան զլինիլն աշխարհի.
զէրէ դիտեմ ստուգիւ, որ այս
չարչարանաց և խաչելութե ժա
մանակիս դու իմ կարողութիւն և
զօրութիւն ես * դու իմ ամրու-
թիւն և հաստատութիւն ես * և
դու իմ ապաւէնն և փրկիչն ես.
որ կու փրկես զիս 'ի խորամանկու-
թենէ և 'ի նենգաւործութէ
հրէից, և զթշնամին ազգի մարդ-
կան զսատանայ, իմ ոտաց տակն
կու ձգես, և յամօթով կանես։

Այսինքն, ած իմ օգնականն է.
և ես 'ի նա եմ յուսացեր * իմ ապա
ւէնն է. և իմ փրկութե և ապա
տութե պողն է. իբր իմ յաղթու-
թիւն և իմ պարծանքն է. իմ ըն
դունող և խնամք տանողն է։

Դար

Դարձեալ, հայրն իմ երկնաւոր տծ, իմ օգնականն է այս չարչարանաց և խաչելութե ժամանակիս. և ես 'ի նա միայն եմ յուսացեր * իմ ապաւէնն է և իմ փրկութե և ազատութե պոզն է. իբր իմ յաղթութին և պարծանքն է զէրէ նորա կարող զօրութեն պիտիմ յաղթահարել զմահ և յարել 'ի մեռելոց * և իմ ընդունողն և խնամք տանողն է. զէրէ 'ի համբառնալն իմ յերկինս, նա պիտի ընդունի զիս փառօք, և նստուցանէ ընդ աջմէ իւր:

Այսինքն, վն որոյ միշտ օրհնելով և գովելով կու աղաղակեմ դէպ իմ տէրն և տծն * և յոյս ունիմ, որ ամէն իմ թշնամեաց ձեռքէն նր կարողութեն պուծանիմ և ազատիմ:

Դարձեալ, վն որոյ միշտ օրհնելով և գովելով կու աղաղակեմ առ հայրն իմ երկնաւոր թէ 'ի լեառն ձիթենեաց և թէ 'ի վերայ խաչին * և հաստատուն յոյս ունիմ, որ թէ հրէից քահանայից և քահանայապետաց, թէ դպրաց և փարիսեցւոց, և թէ նենգաւոր յուդայի ձեռքէն, նորա կարող զօրութեն պուծանիմ և ազատիմ:

Այսինքն, զէրէ շատ անգամ մեռանելոյ ահն և երկիւղն զիս

Օրհնելով կարդացից առ տր * և 'ի թշնամեաց իմոց ապրեցայց:

Շուրջ եղեն զինև երկունք մահու *

Եւ ուղխք անօրէնութեան
խռովեցուցին զիս ։

Վիշտք դժոխոց պա
շարեցին զիս * և ժա
մանեցին ինձ որո
գայթք մահու ։

Ի նեղութեան իմում
ես առ Տէր կարդացի



պատեց * և անօրէնութեան ուղխքն,
իբր հալածանաց և փորձութեան
սէլաւներն զիս խռովեցուցին և
վախեցուցին ։

Դարձեալ, ահա՛ հայր իմ երկ
նաւոր մահուան ահն և երկիւղն
զիս պատեց * և անօրէնութեան
ուղխքն զիս խռովեցուցին . իբր
հրէից զօրականաց ամբոխն սուսե
րօք և բրօք հանդերձ յուդայի
սէլաւներին նման ինձ վերայ վազե
ցին, և զիս ահաբեկ արարին ։

Այսինքն, այնպէս ծանր վիշտք
և նեղութիւնք զիս պատեցին, որ
դժոխոց տանջանացն կու նմա
նէին * և մահուան որոգայթքն,
իբր թալաքներն և ճնարագոր
ծութիւնքն որ իմ թշնամիքն ինձ
համար պատրաստերէին, ինձ ժա
մանեցին, և քիչ մնաց թէ զիս կոր
ծանէր էին ։

Դարձեալ, ահա՛ հայր իմ երկ
նաւոր, այնպէս դառն չարչա
րանք և նեղութիւնք զիս պատեցին,
որ դժոխոց տանջանացն կու նմա
նէին * և մահուան որոգայթքն,
իբր հրէից և յուդայի թալաքներն
և ճնարագործութիւնքն որ ինձ հա
մար պատրաստեր էին, ինձ ժամա
նեցին . զէրէ կապեցին զիս, և քար
շելով տարան 'ի մահ մատնեցին ։

Այսինքն, ես այնչափ զանազան
նեղութեան միջումն, երբ որ զիմ

տ՟րն 'ի յօգնութ՟ի կանչեցի * և
դէպ իմ Ա՟ծն աղաղակեցի ։

Դարձեալ, ես իմ անտանելի նե
ղութե միջումն 'ի լերինն ձիթենե
եաց, առ հայրն իմ երկնաւոր զա
նազան կերպիւ աղօթք արարի
ասելով, հայր եթէ կամիս, անցո
զբաժակս զայս յինէն․ և իմ՟ր խաչին
առ Ա՟ծն իմ աղաղակեցի ասելով,
էլի էլի լամա սաբաքթանի, իբր
Ա՟ծ իմ Ա՟ծ իմ, ընդէր թողեր զիս։
Այսինքն, շուտով իւր սուրբ և
երկնային տաճարէն զիմ աղօթից
ձայնն լսեց * զէրէ իմ աղաղակն և
դանկատն իսկոյն Ա՟յ առաջեն
դնալն 'ի բաց կումննու իւր ս՟բ
ականջն ։

Դարձեալ, շուտով իմ հայրն
Ա՟ծ յիւր ս՟բ և երկնային տաճա
րէն, իբր յիւր Ա՟ծային խորհրդա
րանէն զիմ աղօթից ձայնն լսեց *
զէրէ իմ աղաղակն իմ հօր Ա՟յ առա
ջեն հասանիլն իբաց մտաւ նորա
յականջն, և երևեցաւ ինձ հրեշ
տակ յերկնից, և զօրացոյց զիս ։
Այսինքն, ինչպէս որ յեդիպտոս
իսրայէլացւոց ժողովրդեան աղա
ղակն շուտով իւր ականջն մտաւ,
և այնպէս զայրացոյց զնա կուապաշ
տից թագաւորացն վերայ, որ բո
վանդակ երկիր նորա յահէն խռո
վեցաւ և դողաց * և լեռների
հիմքերն շարժեցան, սասանեցան

և խռո

* և առ Ա՟ծ իմ աղա
ղակեցի ։

Լուաւ 'ի տաճարէ
սրբոյ իւրմէ ձայնի
աղօթից իմոց * և աղա
ղակ իմ առաջի նորա
մտցէ յականջս նոր՟ ։

Խռովեցաւ և դո
ղաց երկիր * և հի
մունք լերանց սասա
նեցան և խռովեցան
* զի բարկացաւ 'ի վ՟ր
ն՟ց Ա՟ծ ։

Ել ծուխ ՚ի բարկու-
թէ նր, և հուր յե-
րեսաց նր բորբոքե-
ցաւ * և փայլատա-
կունք հատան ՚ի
նմանէ։

և խռովեցան, ՚ի յանդունդս կար
միր ծովուն, զեր բարկացեր էր
նց վր ած վս իւր ժողովրդեանն։
Դ. արձեալ, ես յորժամ իմն խա
չին աւանդեցի զհոգիիմ, երկիր
շարժեցաւ, և վէմք պատառեցան
* և հիմունք լերանց սասանեցան
և խռովեցան, իբր ոչ միայն քա
հանայապետքն հրէից, և հերով
դէս և պիղատոս որք են լերինք,
այլ և բոլոր տէրութիւնն հռով
մայեցւոց որք են հիմունք լերանց
լսելով զհրաշալի մահն իմ, սասա
նեցան և խռովեցան, զեր բար
կացեր էր նոցա վերայ հայրն իմ
երկնաւոր։

Այսինքն, և առաւել բարկու-
թէն այնպէս կու թունէր, թէ
քթի ծակերէն վրէժխնդրութե
մուխ դուրս կուգայր, և յերե
սէն սրտմտութե կրակ կուբորբո
քէր * և կայծակներ և փայլակ
ներ կու թափէին յիւրմէն։

Դ. արձեալ, և սաստիկ բարկու-
թենէն, վրէժխնդրութե մուխ
ելաւ ՚ի նմանէ, և սրտմտութեան
կրակ բորբոքեցաւ ՚ի վերայ տիրա
սպան հրէից և հեթանոսաց * և
պատժի և պատուհասի փայլատա
կունք թափեցան նց վերայ. ըստ
այնմ, որ բարկութբ իւրով խռո
վեցուսցէ զնոսա. և հուր կերի
ցէ զնոսա. և ըստ այնմ հուր բոր

բղխեցաւ 'ի բարկութէ իմէ · այ
րեսցէ և իջցէ մինչև 'ի դժոխս
ներքինս ։

Մաշխինքն, և այնպէս կու երև-
էր թէ կուցածացնէր զերկինս
և կու իջնայր երկրիս վերայ * և
իւր ոտաց տակն մէկ սև ամպ մի
կայր, որ կու նշանակէր զիւր սրտի
ոխն, որ ունէր իմ անօրէն թշնա
մեացն հետ ։

Դարձեալ, խոնարհեցոյց յաւի
տենական բանն ած ողորմութե
իւրով զերկնային և զանհաս
նելի փառս իւր, և էջ 'ի յարգանդ
կուսին մարիամու, և զգեցաւ
զկերպարանս ծառայի * և իւր
ոտաց տակն մէկ մութ ամպ մի կայր
որ կու նշանակէր զմեղաւորս սև
ացեալս մեղօք, զորս պիտէր ինա
զանդեցուցանել իւր սբ հաւա
տոյն, և դարձուցանել 'ի դիտու
թիւն ճշմարտութե · ըստ այնմ,
ժողովուրդ որ նստէր 'ի խաւարի
եւտես զլոյս մեծ ։

Դարձեալ, ոտքն քրիստոսի են
առաքեալք, և խաւարն ամպն է ·
առաքելոց խորին և ածաբանս
կան քարոզութե ։

Մաշխինքն, և այնպէս շուտ հա
սաւ 'ի յերկինս, որ կու թռչէր
թէ թևաւոր քերովբէից վերայ
հեծաւ և թռաւ * և սլացաւ,
իբր սաստիկ արագ թռաւ, այն

Խոնարհեցոյց եր
կինս և էջ * և մէգ 'ի
ներքոյ ոտից նորա ։

Հեծաւ 'ի քերոբէս և թռ
եաւ * սլացաւ նա 'ի
թևս հողմոց ։

Եդ զխաւար 'ի ծած-
կոյթ իւր * և շուրջ
զնովաւ են յարկք
իւր * և խաւարային
ջուրք մինչև յամպս
օդոց :



պէս, ինչպէս թէ քամի թևեր ու-
նենայր .

Դարձեալ, տրն մեր յս քս յետ
յարութեն իւրոյ 'ի պարս սերով-
բէից և քերովբէից հրեշտակաց և
հրշտկպաց համբարձաւ 'ի յերկինս
* և սլացաւ 'ի վր թևոց հողմոց,
իբր գերազանցեաց զամ իմացո-
ղութիս մտաց բանականաց անձա-
ռելի փառօք և պատուօք իւրովք:
Այսինքն, խաւարն իւրն ծած-
կոց և փարատայ դրեց երբ որ զամպս
ժողովեց և զերկինս մթնացոյց
* և ամպերն իւր բոլորքն այնպէս
էին, ինչպէս տներ և օթաղներ *
և մթնած ջուրն և անձրևն բռ-
նեց զաշխարհս մինչև այս օդիս մի-
ջին կամարի ամպերն :

Դարձեալ տրն մեր յս քս զմարդ-
կային կերպարանքն որ է իբրև խա-
ւար, իւր ածութեն իբրև ծած-
կոյթ և փարատայ դրեց, վս որոյ ոչ
երկրպագեցաւ 'ի մարմնապաշ-
հրէիցն իբրև որդի այ * և շուրջ
զնովաւ են յարկք իւր, իբր պարք
երկնային զօրացն, դասք սուրբ
առաքելոցն, և երամք ընտրելոցն,
ըստ այնմ ես յս հանգեայց եթէ
ոչ 'ի հեզս և 'ի խոնարհս * և խաւա-
րային ջուրք, իբր մոլորեալ իմացո-
ղութիւք հրէից և յիմար քննութիւք
հեթանոսաց. մինչև յամն օդոց,
իբր մինչև 'ի խորին աստուածա-

մարգարէից, զորս ո՛չ կարելով և ո՛չ կամելով իմանալ, զրկեցան 'ի լուսոյ ածպաշտութե, և 'ի մաս նակցութե՛ն քի։

Այսինքն, և երբ որ սկսաւ փայ լակն փայլփայլել նորա առաջին, ամպերն անց կացին * և կար կուտն և կրակի կայծակներն թա փեցաւ երկրիս վերայ։

Դարձեալ 'ի փայլատակելն լու սազարդ առաքելոցն առաջի այ, մարգարէութիւնք անցան և վերջա ցան, որք էին իբր և զամպս * և բանք և քարոզութիւնք առաքելոցն կարկուտի նման թափեցան 'ի վերայ երկրիս. և կայծակունք հրոյ սի րոյն Ճշմարտութե բորբոքեցան 'ի սիրտս հաւատացելոց. ըստ այնմ հուր եկի արկանել յերկիր, և կա միմ զի արդէն իսկ բորբոքեսցի։

Այսինքն, տր ած յերկնից որո տաց և զաշխարհս սասանեցոյց * և նոյն ինքն ած որ բարձր է՛ քան զերկինս, կարկտով և կրակի կայ ծակներով ձայն տուեց. և զեր կիրս դողացոյց։

Դարձեալ, տր ած առաքելոց բերանովն յայտնեաց զաւետա րանական Ճշմարտութիւն իբրև զորոտումն, և զհրէայս և զհե թանոս սասանեցոյց * և բարձր եալն ած զիւր ձայնն, 'իբր զառա քելական քարոզութիւն կարկտի

Ի փայլատակելն առա ջինք, ամպք անցին * զկարկուտ և զկայծա կունս հրոյ։

Որոտաց տր յերկնից * և բարձրեալն ետ զձայն իւր 'ի կար կուտ. և 'ի կայ ծակունս հրոյ։

Առաքեաց զնետս
իւր և ցրուեաց զնս
* յաճախեաց զփայ
լատակունս իւր , և
խռովեցոյց զնոսա ։

նման թափեց 'ի վերայ երկրի . և
զիւր սիրոյ կայծակներն բորբո
քեց 'ի սիրտս հաւատացելոց ։
Այսինքն , ուղղարկեց իւր կայ
ծակի նետերն , և ցրուեց և փա
խոյց զամէն կենդանիք * և սաստ
կացոյց իւր փայլակներն , և վախե
ցոյց զիւրեանք ։
Դարձեալ , առաքեաց զերկնային
նետս իւր 'ի ձեռն որդւոյն որոտ
մանց յոհաննու և յակոբայ , և
ցրուեաց նոցա մոլութիւն և զըն
դունայն գիտութիւն * սաստկա
ցոյց զիւր ածային սիրոյ փայլակ
ներն , և խռովեցոյց զնոսա , ըստ
այնմ , և թշնամիք առն , ընտա
նիք իւր ։

Երևեցան աղբիւրք
ջուրց * և յայտնե
ցան հիմունք աշ
խարհի ։

Այսինքն , երևեցան նոր և ան
տես ջրոց աղբերներ 'ի բազում տե
ղիս * և բացվեցան և յայտնվե
ցան երկրիս և աշխարհիս հիմ
քերն ։
Դարձեալ , երևեցան զանազան
ածաբան վարդապետք , որք են
աղբիւրք ջրոյ կենդանութե * և
նոցա քարոզութբն յայտնեցան
բանք մարգարէիցն , որք են հի
մունք աշխարհի . ըստ այնմ , շի
նեալք 'ի վր հիման առաքելոց և
մարգարէից ։

Ի սաստէ քումմէ տր
* և 'ի շնչել հոգւոյ
բարկութեան քոյ ։

Այսինքն , երբոր դու տր զայրա
ցար անօրինաց վերայ . և սաստե
ցիր և գուշեցիր երկրիս * և փչե
ցիր ։

ցիր քոյ բարկութեան քամին, և
զինքն շաժեցիր և դողացուցիր։
Դարձեալ, և ՚ի քոյ սաստէդ, և
՚ի բարկութէդ որ ծանուցերես
՚ի մէջ դրո՛ց սրբոց առ ՚ի պատժել
և ՚ի պատուհասել զկամապաշտս,
և զչարագործս, ՚ի լսելն սասանե
ցաւ և զարհուրեցաւ բովանդակ
աշխարհ։
Այսինքն, ահա՛ այսպէս ողարկեց
զիւր օգնութին ՚ի բարձանց, ի՛բր
յերկնից, և զիս ընդունեց, ի՛բր
զիմ ազգն և զիմ նախահարքն
իւր խնամքի տակին առաւ և զիս
ընդունեց և փրկեց շատ ջրերէն,
ի՛բր կարմիր ծովէն, կամ ՚ի յեգիպ
տոսի ծառայութէն։
Դարձեալ, քանզի ողարկեց տ̃ր
ա̃ծ յերկնից ՚ի սրբութէ իւրմէ
զիւր ողորմութին, ի՛բր զփրկիչն
մեր յ̃ս ք̃ս, և ընդունեց զիս, ՚ի
յորդեգրութի իւր * և ընդու
նեց և փրկեց զիս ՚ի սնոտի և ըն
դունայն հոգոց աշխարհի։
Այսինքն, այժմ ևս կաղաչեմ
զքեզ տ̃ր ա̃ծ, որ զիս փրկես իմ
ուժեղ թշնամեաց ձեռքէն, և իմ
ատելեաց հնարագիտութենէն *
զէրէ քան զիս ուժովացան, և զօ
րացան։
Դարձեալ, այժմ ևս կաղաչեմ
զքեզ տ̃ր ա̃ծ, որ փրկես զիս ՚ի հնա
րագիտութէն սատանայի ՚ի հա

Առաքեաց ՚ի բար
ձանց և ընկալաւ զիս
ընկալաւ զիս ՚ի ջուրց
բազմաց։

Փրկեա՛ զիս տ̃ր ՚ի թշ
նամեաց իմոց հզօրաց
և յատելեաց իմոց *
զի հզօրք եղեն քան
զիս։

Ժ. ամանեցին ինձ յաւուրս չարչարանաց իմոց * և եղև տր հզօրիչ իմ. և եհան զիս յանդորր, և փրկեաց զիս տր. զի կամեցաւ զիս:

Հատուսցէ ինձ տր ըստ արդարութեան իմում * ըստ ամբծութե իմում հատուսցէ ինձ:

Զի պահեցի զճանապարհս տն * և ոչ ամպարշտեցայ յայ իմէ:

Զի ամենայն իրաւունք նր առաջի իմ են * և զարդարութի իւր, ոչ 'ի բացեայ արար յինէն:



լածչաց և 'ի բռնաւորաց, որ կուտեն զիս վս հաւատոյն քո որդւոյ քոյ * զերծ հզօրք են բռնութեամբ և իշխանութե քան զիս:

Սոյնպէս, իմ թշնամիքն և ատելեքն այն ժամանակին ինձ վր հասան որ ես չարչարանաց և տրտմութե միջում էի, և առ իշխանս և առ դատաւորս քարշեցին զիս * բայց տրն իմ ուժովացոյց զիս, և հաստատեց 'ի հաւատս. և հանեց զիս 'ի հանդիստ տեղ, իբր ազատեց զիս 'ի նեղութէ, փրկեց զիս տրն իմ իւր առատ ողորմութեն յամ փորձութէ. զերծ սիրեց զիս յանուն միածնի որդւոյ իւրոյ:

Սոյնպէս, վասն որոյ կու խնդրեմ միշտ, որ տր ած ինձ հատուցու անէ իմ արդարութե և չխտակութենն գօրայ * և իմ անմեղութե և անարատութենն գօրայ ինձ հատուցումն անէ, զերծ ողորմած և արդար դատաւոր է:

Սոյնպէս, զերծ ես միշտ պահեցի իմ այ օրինաց և արդարութե ճանապարհն * և ամենևին 'ի պատուիրանացն այ չի' ապստամբեցայ և չի հեռացայ իբրև անզգամ:

Սոյնպէս, իւր ամէն իրաւունքն և դատաստաննն իմ աչաց առաջևն է' * և զիւր արդարութիւն և ճշմարտութիւն ընաւ ամենևին իմ միտացս և իմ սրտէս չի հեռացոյց:

Այսինքն, ես միշտ սրտիւ անբիծ և անարատ կեցայ իմ աստուծոյն հետ * և այսու հետև ևս կու զգուշանամ իմ ամէն չար սովորութենէս և յանօրէնութենէս ։

Այսինքն, վ՟ս որոյ կու խնդրեմ, որ տ՟ր ա՟ծ ինձ հատուցումն անէ իմ արդարութե՟ և իմ շիտակութե՟ն գօրայ * և իմ ձեռաց յստակութե՟ և սրբութե՟ն գօրայ որ մինչև ցայսօր ապրեցայ իւր աչաց առաջևն ։

Այսինքն, զէրէ դու տ՟ր ա՟ծ, ս՟բ մարդոյ հետ սրբութե՟ կու վարիս անբիծ և անարատ մարդոյ հետ, անբծութե՟ և անարատութեամբ կու վարիս * ընտիր և կատարեալ մարդոյ հետ, ընտիր և կատարեալ բարերարութե՟ կու վարիս * իսկ թիւր և ծուռ մարդոյ հետ, իւր թիւրութե՟ն և իւր ծռութե՟ն գօրայ կու վարիս, իբր իւր մոլոր և ախտաւոր գործոցն գօրայ, զինքն կու պատժես և կու պատուհասես քո տ՟ր և արդար դատաստանովդ ։

Այսինքն, դու զայնպիսի ազգն և զայնպիսի ժողովուրդն որ հեզ և խոնարհ է, կու փրկես և կու պահպանես * և ամբարտաւան և հպարտ մարդկանց աչքերն դէպ 'ի գետինն կու խոնարհեցնես . իբր ամօթով և պատկառանօք 'ի





Եղէ ես անբիծ ընդ նմա * և զգուշացայց յանօրէնութենէ իմմէ ։

Հատուսցէ ինձ տ՟ր ըստ արդարութեան իմում * ըստ սրբութե՟ ձեռաց իմոց առաջի աչաց նորա ։

Ընդ սրբոյն ս՟բ եղիցիս * ընդ առն անմեղի անբիծ եղիցիս * ընդ ընտրելոյն ընտրեալ եղիցիս * և ընդ թիւրոյն թիւրեսցիս ։

Դու զժողովուրդս խոնարհս կեցուցանես * և զաչս ամբարտաւանից դու խոնարհեցուցանես ։

Դու լուսաւոր առնես զճրագ իմ * Տր Ած իմ, լոյս արա ինձ 'ի խաւարի :

Զի և փրկեցայց 'ի փորձութէ * աստուծով իմով անցից ընդ պարիսպս :

Ած իմ ամբիծք են ճանապարհք քո * և բանք Տն ընտրեալք են * և ապաւէն են ամենեցուն որք յուսան 'ի նա :

Ո՛ զի ով է Ած բաց 'ի Տնէ * կամ ով է Ած բաց յԱյ մերմէ :



վայր կու նայեցնես :

Այսինքն, դու միայն կարես լոյս տալ իմ ճրագին, իբր իմ շփոթած և մթնած միտքիս, որ իմ հոգւոյս ճրագն է, և զիս քո աստուածային գիտութեդ լուսաւորել և պայծառացուցանել * վն որոյ և կաղաչեմ զքեզ Տր աստուած լոյս արա ինձ այս խաւարիս միջումն, իբր ազատէ զիս այս իմ առաջի կայ տառապանքէս և փորձանքէս :

Այսինքն, զէրէ իմ յոյսս այն է, որ քո օգնութեդ փրկվիմ յամ փորձանաց * և իմ Այ շնորհօքն և կարող զօրութեն սատանայական ճարտարագործութեց, և աշխարհական հոգւի պարսպներին փուլ ածեմ և անցկենամ, և հեշտութեամբ մտանեմ յարքայութին երկնից :

Այսինքն, զէրէ իմ Այ ճանապարհներին, իբր օրէնքն և պատուէրանքն ամբիծ և անարատ են * և Այ բանքն և խոստմունքն ընտրած և յստակ են, իբր հաստատուն և հաւատարիմ են * և միշտ ապաւէն և օգնական է այնպիսի մարդկանցն, որ կու յուսան և կու ապաւինին 'ի նա :

Այսինքն, զէրէ ով է ճշմարիտ Ած և կենդանի, իմ տիրոջէն 'ի զատ * կամ ով է աստուած ամենա

մեծ և ամենակարող, մեր աստու-
ծոյն 'ի զատ․ ըստ որում ասէ ինքն
իձեռն եսայեայ մարգարէի․ ես
տ̄ր, և ո՛չ գոյայլ․ բաց յինէն ո՛չ
գոյ ա̄ծ։

Այսինքն, դու ուրեմն տ̄ր ա̄ծ,
այն ես, որ ինձ զօրութի զգեցու-
ցիր, իբր ինձ ուժ և կարողութի
տուիր յա̄մ փորձանաց և նեղու-
թե միջում ✳ և զիմ ճանապարհս
իբր զիմ գործքս և արարմունքս
յիստակ և անարատ պահեցիր։

Այսինքն, դու զիմ ոտքերս եղնի
կի և ձէյրանի ոտքերի նման արագ
և չուստ արարիր, և հաստատուն
պահեցիր, որով միշտ փախայ 'ի
չար ճանապարհէն, և հեռևեցայ
քո ս̄բ պատուիրանացն ✳ և զիս
բարձր սարերի վերայ կանգնեցու-
ցիր․ իբր զիս զանազան աստիճա
նաց առաքինութեանց ժամանե
ցուցիր։

Այսինքն, դու իմ ձեռքերիս
կռվիլ սովորեցուցիր, իբր դու
զիմ միտքս քո ա̄ծային իմաստու-
թեդ վարժեցիր ընդդէմ սատանայ
ական պատերազմաց ✳ և զիմ կռ
ներս պղնձէ աղեղի նման զօրեղա
ցուցիր․ իբր զիմ դիտաւորութիս
իվ̄ր քո ս̄բ և ճշմարիտ հաւատոյդ
ամրացուցիր և հաստատեցիր ✳ և
ա̄մ փորձանաց միջում զքո օգ-
նութիւնդ և պաշտպանութիդ

Ա̄ծ որ զգեցուցեր
ինձ զզօրութիւն ✳ և
եդիր յամբծութե
զճանապարհս իմ։

Հաստատեցեր զոտս
իմ ո̄պ զեղջերուի ✳
և իվ̄ր բարձանց կա
ցուցեր զիս։

Ուսուցեր զձեռս իմ
'ի պատերազմ ✳ և արա
րեր զբազուկ իմ ո̄պ
զաղեղն հաստ ✳ և-
ետուր ինձ զպաշտպա
նութի փրկութե
քո։

Աջ քո ընկալաւ զիս * և խրատ քո կանգնեաց զիս իսպառ * և խրատ քո ուսուսցէ զիս։

Ընդարձակեցեր ըզգնացս իմ ՚ի ստորև իմ * և ոչ տկարացան շաւիղք իմ։

Հալածեցից զթշնամիս իմ, և հասից նոցա * և ոչ դարձայց ՚ի նոցանէ, մինչև սպառեցից զնոսա։



ինձ տուիր, և զիս փրկեցիր և պատեցիր։

Այսինքն, քո աջ ձեռքդ զիս ընդունեց, երբ քո որդիդ միածին զիս ՚ի մահուանէ ՚ի կեանս վերափոխեաց * քո խրատդ զիս կանգնեցոյց ոտից վերայ մինչև ՚ի վերջն, երբ քո ա̃ծային գրոց օրէնքն և պատուիրանքն զիս ՚ի մեղաց զգուշացոյց, և հաստատեց ՚ի բարեգործութիս մինչև ՚ի մահ * բայց կաղաչեմ զքեզ, որ քո նոյն ա̃ծային գրոց խրատն միշտ իմ մտքումս հաստատ մնայ, և զիս վարժէ հանապազ ՚ի բարեգործութիս։

Այսինքն, իմ քայլքս և գնացքս իմ տակումն լայնացուցիր, երբ ինձ ամենայն դժուարին և փոսան դամ որ պատերազմի և փորձանաց միջումն քո ա̃ծային խնամութե̃դ հեշտ ճանապարհ նշանց տուիր * և ես դէպ ՚ի քո ցոյց տուած առաքինութեան ճանապարհն գնալով, ամենևին չի վաստակեցայ · և իմ հետքս, երբ իմ չի մոլորեցաւ։

Այսինքն, ուսափ իմ յոյս հաստատունէ, որ ես միշտ զիմ երևելի և աներևոյթ թշնամիքն քո կարող զօրութե̃դ հալածեմ * յետնէ անկանիմ և հասանիմ նոցա չարագործութեցն * և յետ չի դառնամ ամօթով, մինչև որ զիւր եանք փչացնեմ։

Այսինքն, և այնպէս կոտր ձգեամ
և նեղ լծեամ զիւրեանք ,իբր զիմ
երևելի և աներևոյթ թշնամիքն
որ այլ ինձ հետ չի կարենան պա
տերազմիլ * և անկանին իմ ոտաց
տակն , իբր իմ առաքինութե՟ս և
բարեգործութե՟ս յաղթահար
վին, և յամօթ լինին ։

Այսինքն , զէրբ ինչպէս ասացի,
դու ինձ զզօրութի՟ և զկարողու
թիւն զգեցուցիր , իբր ինձ ուժ,
և կարողութի՟ տուիր * և իմ եր
ևելի և աներևոյթ թշնամիքն որ
ինձ վե՟ր կուխրոխտային և առի
ծի նման ինձ վերայ կուվաղէին,
իմ ոտաց տակն ձգեցիր , իբր յա
մօթ արարիր ։

Այսինքն, զիմ ամէն թշնամիքն
հալածեցիր և փախուցիր * և
զհրէայս և զհեթանոսս որ զիս
կուատէին վա՟ ճշմարիտ ա՟ծպաշ
տութե՟ և վա՟ սիրոյ բարեգործու
թե՟, սատակեցիր և փչացուցիր ։

Այսինքն , և թէպէտ այն ա՟ծ
ատպան հրէայքն իւրեանք յաղ
թուած և կոտր անկած ժամանա
կին , աղաղակեցին , լացին, և ող
բացին , բայց ո՛չ ոք չի՛ գտնեցաւ
որ զիւրեանք փրկէր ՚ի տառապա
նաց * դէպ յա՟ծ կանչեցին, և զօգ
նութի՟ խնդրեցին , և նա ևս չի՛
լսեցնոցա , ըստ այնմ, դարձուցից
զերեսս իմ ՚ի նոցանէ , և ցուցից

Նեղեցից զն՟ս, և այլ
մի՛ կարասցեն կալ *
և անկցին ՚ի ներքոյ
ոտից իմոց ։

Զգեցուցեր ինձ
զօրութի՟ ՚ի պատերազ
մի * և զյարուցեալսն
՚ի վե՟ր իմ , ներքոյ իմ
արարեր ։

Զթշնամիսն իմ հա
լածականս արարեր *
և զատելիսն իմ սա
տակեցեր ։

Աղաղակեցին , և
ոչոք էր որ փրկէր զն՟ս
* կարդացին առ Տ՟ր ,
և ոչ լուաւ նոցա ։

Մանրեցից զն՛ս ո՛պ փոշի առաջի հողմոյ * և ո՛պ կաւդուեհաց կոխեցից զնոսա:

Փրկեցեր զիս տ՛ր 'ի հակառակութէ ժողովրդոց * և կացուցեր զիս գլուխ հեթանոսաց:

Ժողովուրդ զոր ո՛չ գիտէի ծառայեաց ինձ * և 'ի լուր ականջաց լուաւ ինձ:

Որդիք օտ՛րց ստեցին ինձ * որդիք օտարաց մաշեցան * և կաղացն իշաւղաց իւրենց



նց, թէ զինչ լինելոց իցէ յապայ ժամանակի:

Այսինքն, այլ ասաց, ես զնոսա այնպէս փշրեմ և մանրեմ, ինչպէս որ փոշին կումանրվի և կուցրուի քամույ առաջևն, երբ ես զնոսա իմ բարկութե և սրտմտութե քամուն ցիր և ցան անեմ և 'ի դերութի մատնեմ աշխարհիս վերայ * և փողոցի ցեխի նման կոխատեմ զիւրեանք, երբ ոտ՛մ աղբաց տակ կոխան անեմ զիւրեանք:

Այսինքն, բայց ես ով հայր իմ երկնաւոր կուդոհանամ զքեն, որ զիս այդ անօրէն և կամապաշտ հրէից ժողովրդեան հակառակութէն փրկեցիր * և զիս կուապաշտից և հեթանոսաց տ՛ր և թագաւոր կարգեցիր:

Այսինքն, զէրէ այն ազգերն և այն ժողովրդներն որ ես յառաջ չէի գիտեր. ինձ սեփհական ժողովուրդ չէի ճանաչեր, և իմ շնորհացն մասնակից չէի աներ, խոկոյն լսելն 'ի բաց զիմ աւետարանական ճշմարտութին ինձ ծառայ եղան * և իմ օրինացն և պատուիրանացն ականջ դրին և հնազանդեցան:

Այսինքն, բայց այդ օտարաց զաւակներդ. երբ այդ անօրէն հրէայքդ որ յառաջ աստուծոյ որդիք էին, և զիս ատելով վ՛ն նա

խանձու․ և 'ի մահ մատնելով որ
դիք օտարաց եղան, իբր որդիք բե
լիարայ և պաշտօնէից նորա, դոքա
ինձ ատեցին, և խաբեբայք եր
ևեցան․ զերէ հաստատուն չէ
մնացին 'ի ճշմարտութե․ այլ ար
համարհելով զբանս մարգարէից
երես դարձուցին * այդ օտարաց
որդիքդ մաշեցան և հնացան մե
ղօք հնոյն ադամայ, և զնորն ադամ
չուզեցին ընդունիլ * և կաղացան
յայն շաւղէն, և յայն ճանապար
հէն, որ դու հայրդ իմ երկնաւոր
նոցա նախահարցն տուեր էիր։
Այսինքն, վն̃ որոյ կու աղաղա
կեմ և կասեմ, թէ իմ տ̃րն որ զիս
իւր հայրական գթութե̃ն միշտ կու
նախախնամէ, կենդանի է յաւի
տեանս յաւիտենից և իմ ա̃ծն, որ
ինձ յաղթութի տուեց, օրհնեալ
է և բարեբանեալ է 'ի յերկինս և
'ի յերկրի * և նոյն հայրն իմ ա̃ծ
որ զիս փրկեց 'ի հնարագիտութե̃է
հրէից և իմաստամանկութե̃ դպ̃րցն
և փարիսեցւոցն, փառաւորի և
բարձրանայ 'ի մէջ ա̃մ ազգաց․
Այսինքն, զէրէ ինքն հայրն ա̃ծ
է, որ զիմ վրէժս և զիմ ոխս կու
առնէ յիմ թշնամի հրէից * և
զնոսա յամօթ անելոյ համար, այս
քան զանազան կուապաշտից ժո
ղովրդներն ինձ կու հնազանդե
ցուցանէ։

Այս



Կենդանի է տ̃ր, և
օրհնեալ է ա̃ծ * և
բարձր եղիցի ա̃ծ փր
կութե̃ իմոյ։

Ա̃ծ է որ խնդրէ
զվրէժ իմ * և հնա
զանդ առնէ զժողո
վուրդս ընդ ինև։

Փրկիչ իմ ՚ի թշնամեաց իմոց բարկացողաց * յայնցանէ որք յարուցեալ են ՚ի վր իմ բարձր արարեր զիս և յառնէ անիրաւէ փրկեցեր զիս ։

Վս այսորիկ խոստովան եղէց քեզ ՚ի հեթանոսս * և անուան քում սաղմոս ասացից ։

Մեծ արարեր զփրկութի թագաւորին * առնել ողորմութի ընդ օծելոյ նորա դաւթի * և ընդ զաւակին յազգէ յազգ մինչև յաւիտեան ։

Տունք · 50



Այսինքն , դու ուրեմն տր ածզիս փրկեցիր իմ բարկացող և զայրացող թշնամեաց ձեռքէն , իբր ՚ի հրէից նենգաւործութէն * և քան զդպիրս և զփարիսեցիս որ գոռոզութբ ՚ինձ վերայ կուվաղէին զիս բարձրացուցիր և փառաւորեցիր * և այն անիրաւ և անխղճ մտանք մարդէն , իբր ՚ի յուդայէ , զիս ազատեցիր ։

Այսինքն , վասն որոյ թողելով զհրէայս կամապաշտս , հեթանոսաց և կռապաշտից միջումն , ՚ի ձեռն հաւատացեալ ծառայից իմոց զքեզ ճշմարիտ ած և տր երկնի և երկրի խոստովանիմ * և քոյ սուրբ և երկրպագելի անուանդ սաղմոս ասեմ , և փառք տամ ։

Այսինքն , զէրէ քո ամենազօր ածութիւդ զարմանալի և մեծամեծ հրաշքներով փառաւորեց և բարձրացոյց նորա վերայ կարգած և հաստատած թագաւորի փրկագործութն · իբր որդւոյ իւրոյ միածնի յի քի զիշխանութին և զտրութին * որ ողորմութի և այցելութիւն անէր իւր ածային էութն օծեալ նոր դաւթին * և նորա հարազատ զաւակներին · իբր առաքելոց և վարդապետաց և նոցին փոխանորդաց յազգէ յազգ մինչև յաւիտեան ։

Օրհնութի հաւատացելոց քրիստոնէից փրկելոցն ՚ի դերութենէն սատանայի։



յսինքն, օրհնենք և գովենք միաբերան զած ով որդիք իսրայէլի * որ այսօր զարմանալի փառօք փառաւորեցաւ և բարձրացաւ իւր տր անուանն ՚ի մէջ եգիպտացւոց. և իւր զօրութին և ճշմարտութին յայտնեցաւ ամենայն աշխարհի։

Դարձեալ, օրհնենք և գովենք միաբերան զքրիստոս ած ով որդիք նոր իսրայէլի * զի այսօր խաչիւն իւր ով հերձեաց և բաժանեաց զծով աշխարհիս, և ազատեաց զմեզ յանմարմին փարաւոնէ. իբր ՚ի ձեռացն բելիարայ. և փառաւորեցաւ անուն նորա ՚ի մէջ հաւատացելոց իւրոց. և իւր աւետարանական ճշմարտութինն սփռեցաւ ընդ ընդհանուր աշխարհ։

Այսինքն, զերբ եգիպտացւոց ձիաւորներն և ձիանքն ձգեց ծովի մէջն. և զեւրեանք յամօթ արաւ * այն տէրն որ միշտ ինձ օգնական և պահապան էր. և զիս կու ընդունէր և կու նախախնամէր իմ ամէն խղճութե մէջուն * և այսօր զիս փրկեց և ազատեց կապանս եգիպտացւոց դերութենէն։





Օրհնութիւն Մովսիսի և որդւոցն իսրայէլի։



րհնեսցուք զտր * զի փառօք է փառաւորեալ։



Օ հեծեալս և զերիվարս ընկեց ՚ի ծով * օգնական և ընդունող իմ տր * և եղև ինձ ՚ի փրկութի։

Սա՛ է իմ տէր * եւ փա ռաւոր առնեմ զնա * տէր Հօր իմոյ * եւ բարձր արարից զնա:

Տէր խորտակէ զպատերազմունս * եւ տէր է անուն նորա:

Դարձեալ, զէրէ եգիպտացւոց ձիաւորքն, իւր զդեւս, եւ զձիանքն իւր զդիւապաշտս եւ զկռապաշտս ձգեց՝ ի խորս անդնդոց դժոխոց * այն տէրն որ միշտ ինձ օգնական էր եւ իւր տէրային նախախնամութեն զիս կու պահպանէր * այսօր իւր պատուական արեամբն ինձ փրկութի եղաւ, եւ ազատեց զիս՝ ի գերութենէն սատանայի:

Այսինքն, այս է իմ ճշմարիտ տէրն որ ստեղծեր է զերկինս եւ զերկիր * այնոր համար կու փառաւորեմ զնա * եւ այս է իմ Հօր պաշտած տէրն. իւր թէ աբրահամու, թէ իսահակայ, եւ թէ յակոբայ * այնոր համար կու բարձրացուցանեմ իւր տէր անունն:

Դարձեալ, սա է իմ ճշմարիտ տէրն եւ որդի տէր կենդանւոյ. բանն Հօր եւ նկարագիր էութե նորա * այնոր համար կու փառաւորեմ զնա * սա է իմ Հօր պաշտած տէրն. իւր մարգարէից, առաքելոց եւ հայրապետաց եկեղեցւոյ * այնոր համար կու բարձրացուցանեմ եւ կու պաշտեմ իւր տէր եւ երկրպագելի անունն:

Այսինքն, այս իմ տէրն է. որ կու ջարդէ կու յաղթէ եւ կու փչացնէ փարաւոնի եւ իւր զօրաց պատերազմն եւ զհակառակութիւն * զէրէ իւր անունն, տէր ամենակարող է:

Գործել տէրն մեր յս քս որ կարող է 'ի պատերազմի, իւր խաչիւն և մահուամբն յաղթահարեց զբելիար ընդ պաշտօնէից իւրոց * և իւր անունն տէր զօրութեանց է:

Այսինքն, այն ընտրած և ուժեղ մարդիկքն, և այն ընտրած և քաջ կուվարարներն * այն երկաթակապ արապաներն, և նոցա զօրեղ ձիանքն * և փարաւոնի այնչափ մեծութիւն, այնչափ ուժն և կարողութիւն ձգեց կարմիր ծովի մէջն:

Այսինքն, ծովն վերայ դարձաւ և իւր ալիքներովն ծածկեց զիւրեանք * ընկղմեցան և իջան գնացին խորունկ անդունդների յատակն քարի նման:

Այսինքն, տր ած քո աջ ձեռքդ փառաւորվեցաւ իւր ամենակարող զօրութեամբն * տր ած քո աջ ձեռքդ խորտակեց և պատուհասեց քո թշնամիքդ:

Այսինքն, դու քո փառացդ մեծութեամբն մանտրեցիր փշրեցիր և փչացուցիր քո հակառակներն * ուղարկեցիր քոյ սրտմտութիւն և նեղասրտութիւն բորբոքած բարկութիւն, որ այրեց և կուլ տվեց զիւրեանք եղէգի նման, խէր ղամշի նման:

Այսինքն, քո սաստիկ և զօրեղ սրտմտութեամբդ և նեղասրտութեամբդ





Զընտիրս արանց և զընտիրս սպառազինաց * զկառս և զերիվարս * և զամ զօրութիւն փառաւոնի ընկեց 'ի ծով:

Ծովու ծածկեաց զնոսա * ընկլան յանդունդս խորոց իբրև զվէմ:

Աջ քո տէր փառաւորեալ է զօրութեամբ իւրով * և աջ քո տէր խորտակեաց զթշնամիս քո:

Եւ մեծութեամբ փառաց քոց մանրեցեր զհակառակորդս քո * առաքեցեր զբարկութի սրտմտութե քոյ, և եկեր զնս ոպ զեղէգն:

Հողմով զօրութեան սրտմտութեան քոյ պա

տառեցան ջուրք *
դիզան կացին ոպ̃ պա
րիսպ քարեայ ջուրք
ծովուն * և պաղեցա̃ն
դիզան ալիք ջուրցն
'ի մէջ ծովուն ։
Ասաց թշնամին ,
թէ , հալածեցից *
հասից և հարից * բա
ժանեցից զաւարն *
և լցուցից 'ի նոցանէ
զանձն իմ ։

Խաւար իմ արկից զնո̃ւ
* տիրեսցէ և բարձ
րասցի 'ի վե̃ր նոցա
աջ իմ ։

Առաքեցեր զհողմն
քո * և ծածկեաց զնո̃ւ
ծով * ընկղմեցան և
իջին որպէս կապար 'ի
ջուրս սաստիկս ։

Ո՛ նմանի քեզ յա̃ծս
տ̃ր * կամ ո՛վ նմանի
ցի քեզ փառաւոր
եալդ 'ի ս̃բս ։



քամուն ծովին ջրերն ժողվեցան և
պատառեցան դիզվեցան մին զմի
նու վերայ և մնացին քարէ պարս
պի նման այն ահագին ծովին ջրերն
* և սառեցան և դիզվեցան ջրի
ալիքն կարմիր ծովին միջումն ։
Այսինքն , ասաց իմ թշնամի փա
րաւոնն իւր մեծամեծաց հետն ,
թէ երթամ հալածեմ զիսրայէ
լացիքն * յետանէ անկանիմ , հասա
նիմ և ջարդեմ զիւրեանք * և
թալանած կէմնա բաժանեմ իմ
ծառայներին * և լցուցանեմ և
հարստացուցանեմ զիմ անձս նո
ցա ապրանքովն ։
Այսինքն , իմ թրիս բերանին
մատնեմ զիւրեանք առանց խնայ
ելոյ * և իմ աջ ձեռքս տիրապե
տէ և բարձրանայ իսրայէլացւոց
ազգին վերայ ։
Այսինքն , նա այս խորհրդումս
քէն , դու տ̃ր ա̃ծ ողարկեցիր քո
սաստիկ քամին * և ծովն ալէկո
ծեցաւ , և ծածկեց զիւրեանք *
և ընկղմեցան և իջան արճճի նման
այն սաստիկ խորունկ ջրի տակն ։
Այսինքն , այժմ տ̃ր ա̃ծ այնչափ
կուապաշտից սուտ ա̃ծներէ մի
ջումն որն քեզ կու նմանի * կամ
թէ ո՛վ կարէ քեզ նմանիլ , որ
մեծ ես սրբութե̃ , և կու փառա
ւորվիս քո սրբերի միջումն , իբր
հրեշտակաց և մարդկան միջումն։

Այսինքն, դու սքանչելի ես և ահաւոր, դու փառաւորեալ ես և գովելի * դու զարմանալի և զանազան նշաններ և արուեստներ կանես ՚ի քո ճշմարիտ ա̃ծութիդ ցոյց տալոյ համար * դու իսկոյն որ քո ձեռքդ բարձրացուցիր, գետինն կուլ տուեց փարաւոնի ասքարն։

Այսինքն, դու քո ժողովրդիդ առաջնորդեցիր, և ճանապարհ նշանց տուիր քո արդար դատաստանովդ, զէրէ քեզ էին ապաւիներ * այս խեղճ ժողովրդիս կասեմ, որ դու փարաւոնի ձեռքէն փրկեցիր։

Այսինքն, դու մխիթարեցիր քո ժողովուրդդ քո ա̃ծային զօրութենդ, ՚ի բանակետեղ սրբութե քոյ, իբր քոյ ո̃ր ժողովրդեան օրտուվումն * զայս լսելով կուապաշտից ազգերն բարկացան, և սկսան վախել փղշտացւոց երկրի մարդիկքն որք էին ՚ի սահմանս հրէաստանի։

Այսինքն, այն ժամանակն վրա զեցին և կուվի պատրաստութիւն տեսին եդոմայեցւոց երկրի դատաւորներն * և մովաբացւոց երկրի իշխաններն որ տիրեր էին երուսաղէմայ գաւառներին։

Այսինքն, զէրէ դողն բռնեց զիւրեանք * և քանանացւոց երկրի մարդիկքն որք էին ՚ի սահմանս





Սքանչելի, փառաւորեալ * որ առնես զնշանս և զարուեստս * ձգեցեր զձեռն քո և եկուլ զնոսա երկիր։

Առաջնորդեցեր արդարութբ ժողովրդեան քոյ * այսմ զոր փրկեցեր։

Մխիթարեցեր զօրութբ քով ՚ի բանակետեղ սրբութեան քոյ * լուան ազգք և բարկացան, և երկունք կալան զբնակիչս փղշտացւոց։

Յայնժամ փութացան դատաւորք եդոմայ * և իշխանք մովաբացւոց։

Կալաւ զնս̃ դողումն * հալեցան ա̃մ բնակիչք քանանացւոց։

Անկցի 'ի վերայ նց՟
ահ և դողումն * և 'ի
զօրութե՟ն բազկի քոյ
քարացցին ։

Մինչև անցցէ ժողո
վուրդ քո տ՟ր * մինչև
անցցէ ժողովուրդ
քո այս զոր ստացար ։

Տարեալ տնկեսցես
զնոսա 'ի լերին ժա
ռանգութե՟ քոյ * 'ի
պատրաստութե՟ բնա
կութե՟ ժառանգու
թե՟ քոյ ։

Զոր ստացար իսկ
զբանէ տ՟ր ստացար
սրբութե՟ * և զոր պատ
րաստեցին ձեռք քո
* տ՟ր թագաւոր յա
ւիտեանս յաւիտե
նից և ևս ։

Զի եմուտ փարա
ւոն կառօք և երիվա
րօք և ընտիր սպառա



եգիպտոսի խուրեանց վախէն հա
լեցան և մաշվեցան ։
Այսինքն , խնդրեմ քեզանից տ՟ր
ա՟ծ որ քո ահդ և քո դողդ նոցա
վերայ անկանի * և քոյ բազկիդ
զօրքէն և ուժէն քար դառնանն և
անշարժ մնան ։
Այսինքն , մինչև որ քո այս ժո
ղովուրդս անցանի նոցա երկրովն
տ՟ր ա՟ծ մինչև որ անցանի այս քո
ժողովուրդս որ այնչափ աշխատա
նօք ստացար և ձեռք ձգեցիր ազա
տելով 'ի ձեռացն փարաւոնի ։
Այսինքն , մինչև որ տանիս տն
կես և հաստատես զիւրեանք քոյ
սարումն , որ քո ժառանգութի՟դ
և մուլքդ է , իբր յերուսաղէմայ
երկրումն * որ զարդարեն և պատ
րաստ պահեն քո ժառանգած
բնակութի՟դ ։
Այսինքն , զայն բնակութի՟ն
կասեմ , որ դու ստացեր ես և քեզ
մուլք ես արարեր իսկզբանէ տ՟ր
ա՟ծ , և ստացեր ես սրբութե՟ և
արդարութե՟ * զայն որ սահղծեր
է և պատրաստեր է քո ձեռքդ քոյ
ծառայիցդ համար * զերէ դու
տ՟ր ես և թագաւոր ես յաւիտ
եանս յաւիտենից և դեռ այլ
առաւել ։
Այսինքն , զերէ մտաւ փարա
ւոն իւր արքաներովն , իւր ձիանք
ներովն , և իւր ընտրած կավա

լար

բարներաւն ծովի մեջն:
Ա. յսինքն, և ո̃ր ա̃ծ ծովի ջուրն
Թափեց նց̃ վերան * և իսրայէ
լի որդիքն գնացին ցամաք ճանա
պարհով ծովի միջովն, օրհնե
լով և փառաբանելով զա̃ծ:



զինոք 'ի մէջ ծովուն:
Եւ եած իվերայ նց̃
ո̃ր զջուրս ծովուն *
և որդիքն իսրայէլի
գնացին ընդ ցամաք
'ի մէջ ծովուն:

Տունք · 24·



Սա՛ է իմ Ա̄ծ և փառաւոր առնեմ զնա, Ա̄ծ հօր իմոյ և բարձր արարից զնա։

Մարդասէր Տ̄ր բարեխօսութ̄բ սրբուհւոյ անարատի մօր քո և կուսի, և վասն խաչի քո պատուականի, ընկալ զաղաչանս մեր և կեցո զմեզ։

Քարոզ երանեալին և իբրևին:

Վասն ՚ի վերուստ խաղաղութ̄ե և փրկութ̄ե անձանց մերոց զՏ̄ր աղաչեսցուք։

Վասն լսելի լինելոյ Ա̄ն Ա̄յ ձայնի աղաչանաց մերոց զՏ̄ր աղ։

Վասն քաւիչ և ներող լինելոյ Ա̄յ ՚ի վ̄ր մեղաց մերոց զՏ̄ր։

Վասն թողլոյ մեզ զա̄մ յանցանս մեր, զկամայ և զակամայ զՏ̄ր։

Վասն զի մի՛ ընդ խոտանս դատեսցիմք յաւուրն պատասխանատուութեան զՏ̄ր աղ։

Վասն հոգւոյն հանգուցելոց որք ճշմարիտ և ուղիղ հաւատով ՚ի Ք̄ս ննջեցին. զՏ̄ր։

Նաև և վասն միաբանութեան ճշմարտի և սրբոյ հաւատոյս մերոյ զՏ̄ր աղաչեսցուք։

Զանձինս մեր և զմիմեանս, Ա̄ն Ա̄յ ամենակալին յանձն արասցուք։

Ողորմեա մեզ Տ̄ր Ա̄ծ մեր ըստ մեծի ողորմութ̄ե քում, ասասցուք ամենեքեան միաբանութ̄բ Տ̄ր ողորմեա. Գ։

Տ̄ր տուընջեան և գոյացուցիչ գիշերոյ, որ արարեր զտիւ ՚ի զբօսանս բարեգործութ̄ե, ՚ի փրկութ̄ի անձանց մերոց, և զգիշեր ՚ի հանգիստ քնոյ տկարացեալ բնութեան մերոյ։ Իսկ այժմ զարթուցեալ բացեր զբերանս մեր յօրհնաբանութ̄ի ահաւոր և փառաւորեալ անուանդ քում սրբոյ։ Ընկալ և այժմ զաղաչանս մեր և յաջողեա մեզ, ուղիղ հաւատով և առաքինասէր գործոց վարուք, ՚ի նոյն պահ

տօն քո կանխել միշտ , և նովին կանօնիւ անդադար փառաւորել զՀայր և զորդի և զսուրբ Հոգին ։ Այժմ , և միշտ , և յաւիտեանս յաւիտենից ։

## Խաղաղութիւն ամենեցուն ։

Զքեզ որ յամենայնի գթած և մարդասէր Տէր ես, աղաչեմք Հանապազ , զի զօրացուսցես զմեզ օր ըստ օրէ , կալ 'ի կարգի կրօնաւորութեան մերում ։ Թեթևացո՛ Տէր զքաղցր լուծ քո , զոր եդիր 'ի վերայ մեր զի կարասցուք կալ 'ի պատուիրանի քում , և զՀաճոյսն առնել առաջի քո յամենայն ժամ 'ի տուէ և 'ի գիշերի ։ Հրեշտակային երգակցութբ զքեզ օրհնել , զքեզ գովել գոհութիս և փառս մատուցանել ամենազօր տէրութեանդ ։ Այժմ, և միշտ և յաւիտեանս յաւիտենից ։

Սաղմոսիւք և օրհնութբ և երգօք Հոգևորօք , անդադար փառաւորեմք զՀայր և զորդի և զՍբ Հոգին ։ Այժմ և ։

Օրհնեալ Տէր մեր Յս Քս ․ ամէն ։ Հայր մեր որ ։





Արեգակն 'ի յերկինս, աստեղք 'ի լուսինն․ քրիստոս 'ի յառաջեալս, վար-
դապետք յեկեղեցին։ պատմեն մարդկան զփառս․ և զպատիւն այ։



Իբր ՚ի կատարիլ օրինաց և մար
գարէից որն մեր յս քս կուգայ
յաշխարհ, և սբ առաքեալք և
վարդապետք կու քարոզեն զմե
ծութիւն և զփառսն այ:
Այս սաղմոսումն կու խօսի մար
գարէն թէ ինչպէս ած կարէ ճա
նաչվիլ ՚ի ստեղծուածս և կամ
՚ի գիրս սբ նայելով:



Երկինքն, այս մարմնաւոր
երկինքներս իւրեանց
արուեստաւոր շինու
ածովն և ահագին կամարներովն
կու պատմեն և կու յայտնեն այ
փառքն և մեծութիւն * և այս մար
մնաւոր հաստատութիս, իբր աստ
ղերով լցած երկինքն, իւր զանա

զան

Ի կատարած Սաղմոս
դաւթի:

Սաղմոս ԺԸ:



Երկինք պատ
մեն զփառս
այ * և զա
րարածս ձեռաց նր,
պատմէ հաստատու
թիւնն:



Օր աւուր բղխէ զբան * և գիշեր գիշերի ցուցանէ զգիտութի։

Ո՛չ են բանք և ո՛չ են



զան աստղերուն և զարմանալի լուսաւորներուն կու պատմէ և կու ցուցանէ ա̃յ ձեռաց գործքն և արուեստն։

Դարձեալ, ս̃բ առաքեալքն ք̃ի որ հոգևոր երկինք կասեն, կու պատմեն և կու քարոզեն մեզ ա̃յ կարօղութին, և իմաստութին և փառքն * և ս̃բ վարդապետք եկեղեցւոյն ք̃ի որ խորհրդաւոր հաստատութի կասեն, կու պատմեն և կու սուցանեն մեզ ա̃յ օրէնքն և պատուիրանքն։

Նախնիքն, օրն և գիշերն երկինքի շարժմունքովն փոխփոխվելով, անցած օրն գալոյ օրէն բան կու բղխէ, իբր ա̃յ մեծութին և՛ իմաստութին կու յայտնէ * և անցած գիշերն գալոյ գիշերվան ա̃յ յաւիտենական լինելութե գիտութին կու ցուցանէ։

Դարձեալ, սուրբ վարդապետք եկեղեցւոյ որ իւրեանց լուսաւոր իմաստութեն այնպէս են ինչ պէս օրեր և միմեանց բան կու բղխեն, իբր ա̃յ օրինաց և պատուիրանաց ճշմարտութին կու յայտնեն * փիլիսոփայք որ իւրեանց խորունկ և ծածուկ խօսքերուն գիշեր կու նմանին, միմեանց ա̃յ լինելութե և էութե գիտութին կու ցուցանեն։

Նախնիքն, երկինք և աստեղք

մար

մարդոյ նման բանք և խօսք չու-
նին, որ շատ հեռաւորութեն հա
մար, իւրեանց ձայնն չի լսվի և չի
մացվի · այլ բնական կերպիններ են,
այնոր համար ինչ երկրում որ կու-
պտըտին մունձ մարդի նման իւր
եանց բնութին կու յայտնեն ։
Պարձեալ, առաքելոց բանքն
և խօսքն մարդկային բանիցն և
խօսիցն նման չեն, որ մէկ երկ
րում միայն իւրեանց ձայնն լսվի
և հասկացվի, և միւս երկրնե
րումն չի լսվի և չի հասկացվի,
այլ ա̃ծային և երկնային են,
այնոր համար ամենայն երկրում
կու լսվին և կու հասկացվին ։
Նախինքն, աստեղաց և լուսաւո
րաց մունձ ձայնն, իբր աղ-
մունքն, յա̃մ երկիր հասաւ * և
մինչև աշխարհքիս ծայրերումն
այլ նոցա բնութին իմացվեցաւ ։
Պարձել, առաքելոց ասմունքն
և զրոյցն և քարոզութին յա̃մ
երկիր հասաւ, թէ ՚ի յարևելս
և թէ յարևմուտս * և մինչև աշ
խարհքիս ծայրերումն այլ նոցա
բանքն և խօսքն կու դավի ։
Նախինքն, կու թուի թէ ա̃ծ
իւր չատրն արեգական միջումն
է դրեր · զէրէ արեգակն իւր
պայծառութին քան զամէն աստ
ղեր այլ առաւել կու ծանուցա
նէ մեզ ա̃յ մեծութին և փառքն





խօսք, որոց ոչ լուի
ցին ձայնք նոցա ։

Ընդ ա̃մ երկիր ել
բարբառ նոց * և մին
չև ՚ի ծագս աշխարհի
են խօսք նոցա ։

Յարևու եհար զխո
րան իւր * և ինքն՚ որ
փեսայ զի ելանէ յա
ռագաստէ իւրմէ *
և ցնծայ նա որպէս
հսկայ յընթանալ ըզ

Ճանապարհս իւր։

'Ի ծագաց երկնից են
ելք նր * և հանգիստ
նորա մինչև 'ի ծագս
նորուն * ոչ ոք իցէ որ
թաքիցի 'ի տապոյ նր։



* և երբ որ կու ծագէ յարևելից, այնպէս է ինչպէս մէկ փեսայ մի որ իւր օթաղէն դուրս գայ * և գլորելով և վազվազելով կու գնայ յիւր ճանապարհն, յարևելից յարևմուտք, ինչպէս մէկ քաջ մարդ մի որ պատերազմ երթայ։

Դարձեալ, կու թուի թէ ած իւր խորանն և չատիրն տնկեր և սարքեր է սուրբ աւետարանի մէջումն, որ արեգականն արդարութեան. իբր քի արևն և ճառագայթն է, զէրէ սբ աւետարանն քան զամենայն սբ վարդապետաց գրքերն այլ առաւել պարզ և յիստակ կու ծանուցնէ մեզ զած * և ինքն արեգակն իւր քս, փեսայի նման կու ելանէ իւր օթաղէն. իբր իւր հօր ծոցէն, և կու գայ 'ի սբ կուսէն մարմին կառնու * և կու ցնծայ և կու րախանայ հսկայի նման. իբր քաջ մարդի նման որ գայ աշխարհիս ընթացքն կատարէ, և սատանայի հետ պատերազմի և յամօթ անէ։

Այսինքն, արեգակն կու ելանէ երկնից մէկ ծայրէն * և զաշխարհս լուսաւորելով և տաքացնելով կու գնայ մինչև 'ի միւս ծայրն, և 'ի տեղն կու հանգչի, իբր կու դադարի 'ի լուսաւորելոյ այս աշխարհիս երեսն * և ոչ ոք չի գտվիր որ զինքն գաղէ և պահէ

նորա տաքութենէն , և ջերմու-
թենէն :

Դարձեալ , որդին այ 'ի ծայրա-
գոյն երկնից և իւր հօր ծոցէն
կու ելանէ և կու գայ յաշխարհ և
մարդկանց հոգիքն կու լուսաւո-
րէ , և իւր սիրովն կու տաքացնէ
* և երեսուն և երեք տարէն յետ
այլմի կու դառնայ յերկինքն ,
դէպ իւր երկնաւոր հայրն , և նը-
աջ կողմն կու նստի , և կու հանգս-
տանայ * և ոչոք չի գտվիր աշխար-
հիս վերայ , որ նորա հաւատոյ ջեր-
մութենէն և շնորհաց լուսոյն
զինքն կարենայ դաղել և յետ
քարշել . թէ որ կամենայ :

Այսինքն , և թէպէտ երկինք և
աստեղք այ մեծութին և փառքն
կու ծանուցանեն , բայց այ ամ-
բիծ և անարատ օրէնքն որ սուրբ
գրքերն կու սուցանեն , ամէն
և ին մարդոյ հոգին և միտքն կու
դարձուցանեն դէպ առ այծ *
և այ հաւատարիմ և հաստատ
վկայութին խօսելով ներսեհանց
կու իմաստնացնէ պարզամիտ մար-
դիքն որ կարենան ճանաչել այ
կամքն և բարեհաճութին :

Այսինքն , այ արդարութին այն-
պէս ուղիղ և շիտակ է , որ միտք
անողի սիրտն կու ուրախացնէ * այ
պատուիրանքն այնպէս պայծառ
է , որ պահողի մտաց աչքն կու լու-



Օրէնք տն ամբիծ ք
են , և դարձուցանեն
զհոգիս * վկայութի
տն հաւատարիմ է ,
և իմաստուն առնէ
զտղայս :

Արդարութիք տն
ուղիղ ք են , և ու-
րախ առնեն զսիրտս
* պատուիրանք տն
լոյս են , և լոյս տան

աչաց * երկիւղ տ̃ն ս̃բ է, և մնայ յաւի տեան:

Դատաստան տ̃ն ճշ մարիտ է * և արդար է նոյնն.

Ցանկալի է նա քան զոսկի, և քան զականս պատուականս բա զում * քաղցր է նա քան զմե ղու խորիսխ:

Բանզի ծառայ քո պահեսցէ զայս * ՚ի պահել նմա հատու ցումն բազում:

Զանցուածս իւր ո՛վ կարէ առնուլ ՚ի միտ * ՚ի գաղտնեաց իմոց ս̃բ արա՛ զիս ս̃ր և յօտարէն պահեա՛ զծառայ քո:



սաւորէ * ա̃յ անձն և երկիւղն այն պէս քաղցր և ս̃բ է, որ չէ թէ միայն այս կեանքումս, այլև այն կեանքումն իւր սիրելեաց սրտումն կու մնայ:

Այսինքն, ա̃յ դատաստանն ճշմա րիտ և ուղիղ է * և նոյն դատաս տանն արդար է, և առանց երես պաշտութեան, թէ թագաւորաց հետ և թէ իշխանաց հետ, թէ հարստաց հետ և թէ աղքատաց հետ. զէրէ զամենեսեան միապէս կու տեսանէ:

Այսինքն, ա̃յ դատաստանն և հրամանքն քան զպատուական ոսկի, և քան զբազում պանազան ճէվահիր այլ ցանկալի է * և քան զփեթակէ նոր կտրած մեղրի համն այլ քաղցր է:

Այսինքն, զէրէ ո՛վ որ քեզ հա ւատարիմ ծառայ է, քո օրինաց և պատուիրանաց համն կառնու և հաստատուն կու պահէ զնա * և պահելով զայն, շատ վարձուց հա տուցումն կառնու ՚ի քէն:

Այսինքն, բայց ո՛վ է որ կարենայ իւր ներելի մեղքն և յանցանքն միտք անել, և զգուշանալ * վ̃ա որոյ կաղաչեմ զքեզ տ̃ր ա̃ծ որ զիս այս ծածուկ փոշետեսակ և անճանաչ մեղքերէս սրբես * և պահես զ քո սխալական ծառայդ ՚ի յօտար մեղքէ, իբր պահես զիս

քո

քո շնորհօքդ որ ես որիշ մարդի
պատճառով մեղք չի անկանիմ :
Այսինքն, զէրէ թէ որ այսպէս
մեղքերս ինձ չի տիրեն, այն ժա
մանակին ես ամբիծ և անարատ կու
լինիմ քոյ առաջևդ * և կու սրբ
վիմ 'ի մեծամեծ մեղքերէ, իբր 'ի
մահացու մեղքերէն :

Այսինքն, և այն ժամանակին իմ
բերանիս աղօթական խօսքերն
քեզ դուր կու գան * և իմ սրտիս
խորհրդներն միշտ ընդունելի կու
լինին քոյ առաջևդ տր ած, որ իմ
օգնական և փրկիչն ես :

Իբր երբ որ տրն մեր յս քս կու
գայ յաշխարհ առ 'ի փրկել զմեզ.
իւր ածային տնօրէնութեքն այս
սաղմոսիս խորհրդաւոր բանքն
այն ժամանակին կու կատարվին :
Այս սաղմոսումս կու խօսի մար
գարէն քի չարչարանաց արժա
նաւորութեն և զօրութեանն
համար :

Այսինքն, ո՛վ քս փրկիչ աշխար
հի, քոյ նեղութե և չարչարանաց
օրն, ած քո աղաչանքն և խնդր
ուածքն կու լսէ * և այն ածն որ
յակոբայ ածն է, ըստայնմ ես եմ
ած աբրահամու իսահակայ և յա
կոբայ, նորա անունն քեզ օգնա
կան և պահապան կու լինի :

Այս



Ապա թէ ո՛չ տիրես
ցեն ինձ, յայնժամ
ամբիծ եղէց * և ան
եղէց 'ի մեղաց մե
ծաց :

Եղիցին քեզ հաճոյք
բանք բերանոյ իմոյ *
և խորհուրդ սրտի
իմոյ առաջի քոյ յամ
ժամ տր օգնական
իմ և փրկիչ իմ :
Տունք · 14·

'Ի կատարած սաղմոս
դաւթի :

Սաղմոս · ԺԹ :

Լուիցէ քեզ տր յա
ւուր անձկութե *
օգնական եղիցի
քեզ անուանն ած
յակոբայ :



Առաքեսցէ քեզ տր զօգնութի 'ի սրբութե իւրմէ * և 'ի սիոնէ ընկալցի զքեզ:

Յիշեսցէ տր զամ պատարագս քո * և զուխտս քո ընդունելի արասցէ:

Տացէ քեզ տր ըստ սրտի քում * և զամ խորհուրդս քո նա կատարեսցէ:

Ցնծասցուք մեք 'ի փրկութե քում * յանուն այ մերոյ մեք մեծք եղիցուք:

Լցուսցէ տր զամ խնդրուածս քո * այժմ ծանեաք զի կեցոյց տր զօծեալ իւր:



Այսինքն, տր ած քեզ օգնութի կղարկէ յիւր սրբուէն, իւր իւր սբ աթոռէն * և 'ի սիոնէ. իւր 'ի վերինն երուսաղեմէ զքեզ կու նախախնամէ կու փրկէ, և կու ընդունի:

Այսինքն, կու յիշէ քո զամէն պատարագներդ, թէ զայն որ կու մատուցանես խաչին վերայ, և թէ զայն որ կու մատուցանես սբ սեղանին վերայ * և զքո ուխտ որ արարեր ես, որ քո չարչարանօքդ և քո պատուական արեամբդ զմարդկային ազգն փրկես, 'ի գերութենն սատանայի, կու ընդունի սիրով հայրն երկնաւոր:

Այսինքն, տր ած քո սրտիդ ցանկութեանն և դիտաւորութենն դորայ քեզ կուտայ * և ինչ որ քո մտաց խորհուրդն է, կու կատարէ իւր կու հաշտի մարդկային ազգին հետ, և նց մեղացն զթողութի կու շնորհէ:

Այսինքն, վասն որոյ մեք կու ցնծանք և կու ուրախանանք այն փրկութենն վերայ որ դու մեզ կանես * և քո սբ անուամբդ որ մեր տր ածն ես, կու մեծանանք, կու պարծինք և կու փառաւորվինք:

Այսինքն, երբոր դու յետ քոյ յարութեդ կու համբառնաս 'ի յերկինս, և քոյ հօրդ աջ կողմն կու նստիս, այն ժամանակն ած քո

ամէն խնդրուածքդ կու լցնու ,
երբ քու հաւատացելոցդ կեանք
յաւիտենական կու խոստանայ *
և մեք տեսանելով այնչափ շնորքն
և բարերարութիւն որ հայրն ած
քու սիրոյդ համար մեզ կանէ , կա
սենք , թէ ահա՛ այժմ իմացանք որ
տր ած փրկեց և փառաւորեց
զիւր օծեալ քն ։
Այսինքն , և լսեց ած նորա , 'ի
յերկնից և իւր սբ աթոռէն * և
իւր աջ բազկի զօրութբն փրկեց
զնա իւր հաւատացելոցն հետ ,
և յամօթ արաւ զիւր թշնամիքն ։
Այսինքն , գէրէ թէ որ սոքա ,
երբ թէ , քո երևելի և աներև
ոյթ թշնամիքդ իւրեանց արապա
ներովն և ձիանքներովն պարծե
նան * մեք աղաղակելով քո սուրբ
անունդ. մեզ օգնական կու խնդ
րենք , և յաղթող կու լինինք ։
Այսինքն , և յաղթելով մեր թշ
նամիքն կասենք , թէ ահա՛ սոքա
կապվեցան խափանեցան և ան
կան * իսկ մեք կանգնեցանք ու
ղիղ ոտաց վերայ , և հաստատամնա
ցինք ։
Այսինքն , ուրեմն տր ած փրկէ
զքո հաստատած քն թագաւորն
յիւր չարչարանաց և իւր թշնա
մեաց ձեռացն * և նորա սբ անու
անն համար , այն օրն որ դէպ քեզ
կու աղաղակենք , լսէ մեր խնդր
ուածքն



Լուաւ սմա յերկ
նից 'ի սրբութէ իւր
մէ * 'ի զօրութե փր
կութե աջոյ իւրոյ ։

Սոքա կառօք և ոմ
երիվարօք * այլ մեք
զանուն տն այ մերոյ
կարդասցուք ։

Սոքա խափանեցան
և անկան * մեք յար
եաք և ուղիղ եղաք ։

Տր կեցո՛ զթագա
ւորն և լուր մեզ յա
ւուր յորում կար
դասցուք առ
քեզ ։

Տունք . 10

'ի կատարած սաղմոս դաւթի :

Սաղմոս . Ի.



Տէ՛ 'ի զօրութեն քում ուրախ եղիցի թագաւորն * 'ի փրկութեն քում ցնծասցէ յոյժ ։

Զցանկութին սրտի նորա ետուր նմա * և զկամս շրթանց նորա ո՛չ արգելեր 'ի նմանէ ։

Քամանն արարեր զնա յօրհնութիւն քաղցրութեն քոյ * և եդիր 'ի գլուխ նորա պսակ 'ի քարէ պատուական ։



ուածքն, և մեզ 'ի յօգնութիւն հասիր ։

Իբր երբոր տրն մեր յս քս կու յարի 'ի մեռելոց և կու համբառնայ յերկինս, այս սաղմոսիս խորհրդաւոր բանքն կու կատարվին ։

Այս սաղմոսումս կու խօսի մարգարէն քրիստոսի փառաց և յաղթութեն համար և նր թշնամեաց յամօթ լինելոյն համար ։

Այսինքն, տր ած հայր երկնաւոր քոյ յաղթօղ զօրութեամբդ միշտ ուրախ կու լինի քս թագաւորն, զէրէ քեզնով կու յաղթէ զիւր թշնամիքն իմերայ խաչին * և վս քոյ փրկութեն որ արարիր յարուցանելով զնա 'ի մեռելոց, և ազատելով զիւր հաւատացեալքն 'ի դժոխոց, կու ցնծայ, և կու զուարճանայ ։

Այսինքն, ինչ որ իւր սրտի ցանկութին էր տուիր նմա * և ինչ որ նորա շրթունքի կամքն և խնդրուածքն էր, նորանէ չի արգելեցիր, և չի խնայեցիր ։

Այսինքն, զէրէ հասուցիր զինքն քոյ ածային և քաղցր օրհնութեդ և պատուական ակներով զարդարած թագ դրիր իւր գլուխն, և բոլոր աշխարհիս տր և թագաւոր կացուցիր զինքն ։

Այս

Այսինքն , քեզանից կեանք խնդրեց , որ յարուցանես զինքն ’ի մեռելոց * և տուր նորա , և իւր հաւատացելոցն երկար կենք տուիր որ կենդանի մնան յաւիտեանս յաւիտենից :

Այսինքն , մեծ է նորա փառքն և պարծանքն քո փրկութեան համար , որ արարիր նորա չարչարանօքն բոլոր աշխարհի * բայց այլ առաւել փառք և այլ առաւել մեծ պատիւ և վայելչութիւն կու դնես նորա վերայ , յորժամ համբառնայ ’ի յերկինս և նստի ընդ աջմէ քո .

Այսինքն , երբ որ զնա բոլոր աշխարհի օրհնութիւն կու տաս , յաւիտեանս յաւիտենից , որ ամէն մարդ նորանով օրհնութիւն և փառք ըստանայ * և կուրախացուցանես զինքն և զիւր հաւատացեալքն քո ուրախ և զուարթ երեսիդ տեսութեան յերկնից արքայութեան միջումն :

Այսինքն , զերէ քո թագաւորն յուսացաւ և ապաւինեցաւ ’ի տր̄ մեծ հայրն ամենակարող իւր չարչարանաց միջումն * վն̄ որոյ այն բարձրեալ այ̄ ողորմութեան չէ զրկվիր , չէ հեռանար . և չէ սասանիր իւր թշնամեաց նենգաւործութեան :

Այսինքն , զերէ քո ամենակարող

Կեանս խնդրեաց ’ի քէն * և ետուր նմա ընդ երկայնաւուրս յաւիտեանս յաւիտենից :

Մեծ են փառք նր̄ ’ի փրկութեան քում * զփառս և զմեծ վայելչութիւն դիցես ’ի վր̄ նորա :

Տացես զնա յօրհնութիւն յաւիտեանս յաւիտենից * և ուրախ արասցես զնա յուրախութեան երեսաց քոց :

Թագաւոր յուսացաւ ’ի տր̄ * յողորմութէ բարձրելոյն նա մի՛ սասանեսցի :

Գտցի ձեռն քո ’ի վր̄

թշնամեաց քոց * և աջքո գտցէ զա̃մատե լիս քո :

Դ· իցես զնոսա ո̃պ̃ հնոց հրոյ * 'ի ժամանակի երեսաց քոց :

Տ̃ր բարկութեամբ իւրով խռովեցուսցէ զն̃ս * և հուր կերիցէ զն̃ս :

Պտուղ նոցա յերկրէ կորիցէ * և զաւակ նոցա յորդւոց մարդկան :

Խորհեցան ի քէն չարութ̃ի և խորհեցան զխորհուրդ զոր ոչ կարացին հաստատել :

Դարձուցես զն̃ս հալածեալս * 'ի մնաց



և զօրեղ ձեռքդ կուգտնէ միշտ քու թշնամեացն վերայ, որ պատժես զիւրենք * և քու աջ բազուկդ կուգտնու հանապազ զքու ատելիքն, որ դատապարտես զիւրենք 'ի դժոխս և 'ի հուրն յաւիտենական :

Այսինքն, և դնես զիւրեանք որ քուլխանի կրակի նման այրին որ և բորբոքին * այն ժամանակին որ քու բարկացած երեսդ քու միածին որդւոյդ նշանից կուտաս յաւուր դատաստանին :

Այսինքն, զէրէ տ̃րն ինքն իւր բարկութ̃ն կուխռովեցուցանէ և կուտրտմեցուցանէ զիւրեանք * և դժոխոց կրակն կուտէ և կումաշէ զիւրեանք :

Այսինքն, նոցա պտուղն, ի̃ էր նոցա համախոհքն և հետևօղքն երկրիս երեսէն կուկորնչին * և նոցա զարմն և զաւակն այլ հողեղէն մարդկանց միջումն չէն յիշվիր :

Այսինքն, զէրէ քեզանից երես թեքեցին, և ապստամբեցան * և այնպէս խորհուրդ խորհեցան և միտք արարին ընդդէմ քու սուրբ անուանդ, որ չկարացին գլուխ տանիլ. և իւրեանց դիտաւորութ̃ին չկարացին հաստատել :

Այսինքն, վասն որոյ դատաստանի օրն կուքշես զն̃ս քո երեսէդ

և հալածական կանես զիւրեանք * և քո մնացածներովդ, իբր քոյ որբերովդ որ մարդկային ազգէն քեզ բաժին կու լինին մնացած, կու պատրաստես նոցա երեսն, իբր դէմ կու կանգնիս, և յամօթ կանես զիւրեանք, զէրէ երբոր դու քո որբերն կու հրաւիրես դէպ քեզ ասելով, եկայք օրհնեալք հօր իմոյ, նոքա գլխաւոր և սև երես կու մնան:

Այսինքն, ուրեմն տր ած միշտ բարձրացիր և փառաւորվիր քոյ կարող զօրութեամբդ * և մեք հանապազ օրհնենք և սաղմոս ասենք քոյ զարմանալի և անհասանելի և ամենակարող զօրութեանցդ:

Իբր վն առաւօտու յաւուր յարութեան տն մերոյ յի քի. յորում աւուր հայրն ած օգնեաց նմա. և ազատելով զնա յամ վշտաց և չարչարանաց իւրոց փոխարկեաց զնա 'ի մահուանէ յանմահութիւն: Այս սաղմոսումս կու խօսի մարգարէն յայտնապէս վն քի չարչարանացն վասն կռապաշտից և հեթանոսաց դարձմանն, և վասն հաղորդութեան կենարար մարմնոյ և արեան տն:





ուածս քո պատրաստեսցես զերեսս նոցա:

Բարձր լեր տր 'ի զօրութեան քում * օրհնեսցուք և սաղմոս ասասցուք զօրութեանց քոց

Տունք: 14.

'Ի կատարած վասն առաւօտեան օգնութեան:

Սաղմոս. ԻԱ:



Ա՟ծ իմ նայեաց առ իս * ընդ էր թողեր զիս * հեռի եղեր 'ի փրկութէ իմէ * վասն բանից յանցանաց իմոց։

Այսինքն , ա՟մ ստեղծօղա ծող ա՟ծ , և իմ խղճմ ա՟ծդ , կաղաչեմ զքեզ դարձուր զքո երեսդ և նայիր դէպ ինձ * էր զիս երեսաց ձգեցիր , և էր զիս 'իբեաց թողիր * իմ փրկութենէս հեռացար , իբր ինձ մօտ չէկիր , որ զիս փրկէիր * իմ սխալանաց և մեղաց բաներին համար , իբր մարդկային բնութե մեղացն համար , որ ես ինձ վր՟ բարձի և ինձ համարեցի մարդ լինելովս , որ իմ չարչարանօքս վճարեմ քոյ ա՟ծային հայրութեդ ։

Ա՟ծ իմ, 'ի տուէ կարդացի առ քեզ , և ինձ ոչ լուար * 'ի գիշերի և ինձ ոչ անսացեր ·

Այսինքն , տ՟ր ա՟ծ իմ , ցերեկն դէպ քեզ աղաղակեցի խաչին վր՟, և ինձ չէ՛ լսեցիր * և գիշերն աղաչեցի զքեզ 'ի ձիթենեաց լեառն, և ինձ ականջ չէ՛ դրիր , որ եկեր էիր , և զիս փրկեր էիր իմ դառն տանջանքէս ։

Դու 'ի սուրբս բնակեալ ես * և գովեալդ իսրայէլի ։

Այսինքն , դու սրբոց միջումն կու բնակիս , իբր հեզ և խոնարհ և երկիւղած մարդկանց սրտի միջումն կու հանգչիս * և դու իսրայելացւոց ազգի գովութիւն և պարծանքն ես ։

'Ի քեզ յուսացան հարքն մեր * յուսացան 'ի քեզ և 'փրկեցեր զնոսա ։

Այսինքն , 'ի քեզ յուսացան մեր առաջին ծնօղքն և հարքն իբր թէ աբրահամ թէ իսահակ և թէ յակոբ * 'իքեզ յուսացան և փրկեցիր

զիւրեանք յամ վշտաց և 'ի նեղութէ կռապաշտից և անհաւատից:

Այսինքն, դէպ քեզ աղաղակեցին, և կեցութի և փրկութիւն գտան * 'ի քեզ յուսացան, և չի ամաչեցին իւրեանց թշնամեաց առաջևն. իւր թէ եգիպտացւոց և թէ այլ կռապաշտ թագաւորաց առաջևն:

Այսինքն, բայց ես իմ տառապանաց միջումն այնչափ աղաղակեցի և հոգւոց հանեցի դէպ քեզ ո՛վ հայր իմ երկնաւոր, որ իմ թշնամեաց առաջևն այնպէս կութուի իմ թէ ես մարդ չեմ, այլ մին որդ մի եմ, կամ մին ճճու մի եմ * զէրէ այսպէս կունախատեն զիս մարդիք, և այսպէս անարգ կանեն զիս նենգաւոր հրէից ժողովուրդքն:

Այսինքն, ինչ մարդ որ զիս կուտեսանէր, անարգ կանէր * պռնկներովն կու խօսէր, և կու հայհոյէր, և զիւր գլուխն ինձ վերայ դիրուր կուտայր և կասէր, վա՛հ որ քակէիր զտաճարն, և այլն:

Այսինքն, ուստի, թէ դա՛ Ածէ յուսացեր, և ապաւիներ, և կուպարծենայ ասելով, թէ ես որդի Այ եմ * թող փրկէ ուրեմն Ած զինքն այս չարչարանքէս * և ազատեցուցանէ զինքն 'ի մեռանելոյ, թէ որ Ած կուսիրէ և կու կամի զդորա արարմունքն:

Առ քեզ աղաղակեցին, և կեցին * 'ի քեզ յուսացան և ոչ ամաչեցին:

Այլ ես որդն եմ և ոչ եմ մարդ * նախատինք մարդկան, և արհամարհանք ժողովրդոց:

Ամենեքեան որք տեսանէին զիս, արհամարհէին զինև * խօսէին շրթամբք, և շարժէին զգլուխս իւրեանց:

Յուսացաւ 'ի Տր * և փրկեսցէ զնա * կեցուսցէ զնա, զի կամի զնա:

Դու ես որ հաներ զիս յարգանդէ * յոյս իմ 'ի ստեանց մօր իմոյ ։

Ի քեզ անկեալ եմ յարգանդէ * յորովայնէ մօր իմոյ դու ես ա՟ծ իմ ։

Մի՛ 'ի բացեայ առներ յինէն * զի նեղութի՟ք մերձեալ են, և ոչոք է որ օգնէ ինձ ։

Հորթք եղեն զինև զօ՛րաւորք բազումք * և ցուլք գէրք պաշարեցին զիս ։

Բացին 'ի վ՟ր իմ զբերանս իւրեանց ոպ՟ առիւծ * զի մռնչէ և յափշտակէ ։

Աս ոպ՟ զջուր հեղայ * և ցրուեցան ա՟մ ոսկերք իմ * և եղև սիրտ իմ ոպ՟ մոմ հալեալ իմէջ որովայնի իմոյ ։



Այսինքն, դու տ՟ր ա՟ծ որ զիս իմ կոյս մօրս փորէն հանեցիր առանց հօր և առանց օգնութեան մարդկան * և իմ մօրէս ծիծ կերած ժամանակէն մինչև այս օրս դու իմ յոյսն ես ։

Այսինքն, ես իմ մօրս յարգանդէն քեզ վիճակ անկայ, որ դու զիս խնամես, և պահպանես * և իմ մօր փորէն ծնած ժամանակէն 'ի վեր դու իմ ճշմարիտ հայրն ես և ա՟ծն ես ։

Այսինքն, կաղաչեմ զքեզ մի՛ հեռանար ինձանից * զէրէ կուտեսանեմ որ զանազան նեղութի՟ք ինձ մօտկացերեն, և ոչոք չկայ որ ինձ օգնութի՟ հասանի, և զիս մխիթարէ ։

Այսինքն, չորս կողմն որձ հորթերն պատերեն, իբր հրէից ժողովուրդն * և գէր եզներն զիս պաշարեր են, իբր քահանայապետքն և իշխանքն հրէից ։

Այսինքն, ինձ վերայ բերաններն բացերեն, մէկ առիւծի նման * և կումռնչան, և կուզեն թէ զիս իւրեն յափշտակեն և կտրատեն ։

Այսինքն, նոցա չար միտքն տեսանելով ջրի նման ծորվեցայ և թափեցայ * և իմ ոսկերքս իւրեանց տեղերէն շարժեցան և ցրուեցան * և իմ սիրտս փորիս միջումն մոմի նման հալեցաւ ։

Այս

Այսինքն, իմ զօրութիւնս և իմ կարողութիւնս թրծած ամանի նման չորացաւ * իմ լեզուս քիմքս կպաւ * և զիս մահուան հողն հասուցին այն անօրէն հրէայքն անողորմաբար։

Այսինքն, զէրէ ինչպէս որ ասացի շատ կատաղած և փրփրած շներ զիս պատեր են * և չար և անխիղճ մտանք մարդկանց ժողովքն զիս պաշարեր են։

Այսինքն, իմ ձեռքերս և իմ ոտքերս բևեռով ծակեցին * և խաչին վերայ զիս այնպէս լարեցին որ զիմ ոսկրտանքս ամէն համարեցին * և դէպ յիս նայելով զիմ խղճութիւնս տեսան, և տեսաք անելով զիս հայհոյեցին և անարգեցին նոքա։

Այսինքն, զիմ զգեստս և զիմ շորերս իւրենց միջումն զինուորքն բաժանեցին * և իմ կապայիս վր̅ վիճակ ձգեցին, որ տեսնուն թէ ում կանկանի։

Այսինքն, զիմ խղճութիւնս նայիր և տես տէր աստուած, և քո գթութիւնդ մի՛ հեռացուցաներ ինձանից * տէր աստուած հայր երկնաւոր ինձ օգնական լինելոյ և խեղճ դալոյ աչքով նայիր,

Այսինքն, փրկէ զիմ անձս դոցա թրի նման սրած լեզուէն * և այդ կատաղած շներիդ ձեռքէն





Զօրացաւ որպէս խեցի զօրութիւն իմ * լեզու իմ 'ի քիմս իմ կցեցաւ * և 'ի հող մահու իջուցին զիս։

Շուրջ եղեն զինև շունք բազումք * և ժողովք չարաց պաշարեցին զիս։

Ծակեցին զձեռս իմ և զոտս իմ * և թուեցին զամենայն ոսկերս իմ * նոքա հայեցան և տեսին զիս։

Բաժանեցին զհանդերձս իմ 'ի միջ իւրեանց * և 'ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկանէին։

Դու տէր մի՛ հեռի առներ զգթութիւն քո յինէն * և տէր յօգնել ինձ նայեաց։

Փրկեա՛ 'ի սրոյ զանձն իմ * և 'ի ձեռաց շանց զմիամօրութիւն իմ։

Փրկեա՛ զիս ՚ի բերանոյ առիւծու * յեղջերէ միեղջերու՛ի զխոնարհութի իմ։

Պատմեցից զանուն քո եղբարց իմոց * ի մէջ եկեղեցւ՛ոյ օրհնեցից զքեզ։

Երկիւղածք տն օրհնեսցեն զնա * ամ զաւա՛կք յակոբեան փառաւ՛որ արասցեն զնա։

Երկիցէ ի նմանէ ամ զաւա՛կն իսրայէլի * զի ո՛չ արհամարհեաց եւ ո՛չ անարգեաց զաղօթս աղքատի * եւ ո՛չ դարձոյց զերեսս իւր յինէն * այլ ՚ի կարդալ իմում առնա լուա՛ւ ինձ։



զիս աղաղակէ, որ իմ մօր մինն հաոգին եմ ինչպէս որ դու գիտես․ Այսինքն, փրկէ զիս այս առիւծներիս բերանէն * և ազատէ զիմ խոնարհութիւնս և զխղճութիս այդ կատաղած և հպարտ քերկէտաններիդ պողերէն որ զիս իւրեանց դառնութենն կուզէն պողտահարել։ Այսինքն, երբոր դու զիս փրկես դոցա ձեռքէն, և ինձ կենդանութի պարգևես, և յարուցանես ՚ի մեռելոց, ես քո տէր անունդ պատմեմ և քարոզեմ իմ հաւատարիմ եղբարց առաքելոցն * և զքեզ օրհնեմ և գովեմ իմ հաւատացելոց բերանովն քոյ տէր եկեղեցւոյ միջումն։ Այսինքն, և ասեմ, թէ ինչ մարդ որ այ կու վախէ, թող օրհնէ և գովէ զնա * և ինչ մարդ որ յակոբայ զաւակն է․ իւր ինչ մարդ որ տէր աստուածնին ծնունդն է, և ՚ի քս մկրտուեր է թող փառաւորէ զնա։ Այսինքն, որչափ որ իսրայէլացւոց զարմ և զաւակ կայ թող վախէ նորանէ * զէրէ փուչ և ընդունայն չի համարեց, և չի անարգեց իմ աղքատիս աղօթքն * և իւր բարեգութ երեսն ինձանից չի դարձոյց * այլ իսկոյն երբ որ աղաղակեցի դէպ ինքն, ինձ լսեց և յօգնութի հասաւ։

Աս

Այսինքն, իմ գովութիւս և պար
ծանքս քեզանից է տր ած * վասն
որոյ այն մեծ եկեղեցին որ ես հաս
տատել պիտիմ յետ մահուան իմոյ
նորա մէջումն իմ հաւատացելոց
բերանովն կու օրհնեմ և կու փա
ռաւորեմ զքեզ:

Այսինքն, զիմ ուխտս կու կատա
րեմ, իբր զիս քահանայից ձեռօքն
մն փրկութն մարդկան քեզ պա
տարագ կու մատուցանեմ սուրբ
խաչի և սբ սեղանի վերայ * ածա
վախ և երկիւղած քրիստոնէից
առաջին:

Այսինքն, և այս ածային պատա
րագէս ուտեն և ճաշակեն հոգ
ւով աղքատներն, և կշտանան,
և օրհնեն զտր ած հայրն ամենա
կալ այն մարդիկն որ կու սիրեն և
կու խնդրեն զնա ուղեղ սրտիւ:

Այսինքն, և կերողաց սիրտն,
իբր հոգին յաւիտեանս յաւի
տենից անմահ և կենդանի մնայ
* և բոլոր աշխարհիս ծայրերէն
վերկենան մարդիք, յիշեն զմար
դարէից խօսքերն, և դառնան
առ նա ճշմարիտ ածպաշտութբ:

Այսինքն, և հաւատով երկրպա
գանեն նմա ամէն ազգերի զար
մերն և զաւակներն * զէրէ նորա
է աշխարհիս թագաւորութիւն *
և նա կու տիրէ ՚ի վր ամ կռապաշ
տից պղծազգեաց և հեթանոսաց:



Ի քէն է գովութի
իմ * յեկեղեցիս մեծս
օրհնեցից զքեզ:

Զուխտս իմ կատա
րեցից * առաջի ամ
երկիւղածաց նորա:

Ուտեսցեն տնանկք և
յագեսցին * օրհնես
ցեն զտր որք խնդրեն
զնա:

Կեցցեն սիրտք նոցա
յաւիտեանս յաւիտե
նից * յիշեսցեն և
դարձցին առ տր
ամ ծագք
երկրի:

Երկրպագեսցեն նմա
ամ տոհմք ազանց *
զի տն է արքայութի
* և նա տիրէ ՚ի վերայ
ամ հեթանոսաց:

Կերան և երկրպա
գին նմա ամենայն պա
րարտք երկրի * առա
ջի նորա անկցին ամե
նեքեան որք իջանեն
'ի հող։

Անձն իմ նովաւ կեցյ
* և զաւակ իմ ծա
ռայեսցէ նմա։

Պատմեսցի տն ազգ
որ գալոց է * պատ
մեսցեն երկինք զար
դարութի նորա ժո
ղովրդեան որ ծնանե
լոցն է, զոր արար
տր։

Տուն. 32

Սաղմոս Դաւթի.

Սաղմոս. ԻԲ.



Այսինքն, այս որ պատարագ էս
կերան և երկրպագեցին իւրն որ
չափ որ երկրիս երեսին քրիստոնէ
ական հաւատքի շնորհօքն պարար
տացած մարդ կայր * և որ չափ
մարդ որ քրիստոնէական հաւատ
քով կումեռանի, և կու իջանէ 'ի
հող, նորա առաջեւն անկանի, և
երկրպագութի անէ, զէրէ ամէն
օր նորա շնորհացն մասնակից կու
լինի։

Այսինքն, զէրէ իմ անձն նորա
նովմ կենդանի է * իմ զաւակ
ներն, որ 'ի քր աւազանէն ծնած
են, կուզեմ որ նորա ծառայու
թիւն անեն։

Այսինքն, և նորանով պատմելի
և յայտնի լինի իմ այ հօրս, որչափ
քրիստոնէից ազգ որ գալ պիտի յաշ
խարհ * և պատմեն և յայտնեն եր
կինք, իբր առաքեալք, այն ժո
ղովրդներին որ ծնանելոց պիտին
զայն արդարութին որ տր ած
արար ազգի մարդկան, իբր զիր
կութին որ արար 'ի ձեռն որդւոյ
իւրոյ։

Իբր զայս սաղմոս ինքն դաւիթ
մարգարէն է ասացեալ վս քի։
Այս սաղմոսովս կու խօսի մար
գարէն եկեղեցւոյ բերանէն քի
համար թէ ով զմեզ կու հովուէ
իւր խրատովն, իւր եկեղեցւոյ

խոր

խորհրդներովն, և իւր չարչարա-
նաց շնորհօքն։

Մայինքն, տրն իմ յս քս որ է՛ հո-
վիւ բարի, զիս կու հովուէ և կու
արածէ իւր շնորհօքն * և ինձ
ոչինչ բարի իքմին պակաս չի լինիր
աստ և 'ի հանդերձեալն։

Մայինքն, զիս կանանչ և դա-
լար տեղ բնակեցույց, իբր իւր տե
եկեղեցւոյ մէջն տեղաւորեց, որ
լի է այ քարոզութե անուշ խո-
տերովն * և տե աւազանի ջրին
մօտ զիս սնույց և պահպանեց, որ
մարդոյ հոգին կու մաքրէ և կու
հանգուցանէ։

Մ. յինքն, և թէ իմ մարմնոյս
տկարութենէն մեղքանկայ, և
զիմ հոգիս կորուսի և դերի արա-
րի մեղաց և սատանայի, նա խոստո-
վանութե խորհրդովն զիմ հոգիս
կրկին դասաւ, ազատեց և դար-
ձոյց 'ի յիս * և ինձ իւր սուրբ պա-
տուիրանքներովն առաջնորդեց
դէպ 'ի յարդար և ուղիղ ճանա-
պարհ իւր տե անուան փառացն
համար։

Մայինքն, և թէ շուրջ այլ դամ
մահուան շուքներին միջումն,
իբր մարդկային տկարութեններէլն
մեղքեր այլ անկանիմ * սակայն
չեմ վախեր 'ի չար յուսահատու-
թէ. զերէ դու միշտ ինձ հետ ես։







Տր հովուեսցէ զիս
* և ինձ ինչ ոչ պա-
կասեսցի։

'Ի վայրի դալարոջ
անդ բնակեցոյց զիս
* և առ ջուրս հան-
գստեան սնոյց զիս։

Դարձոյց զանձն իմ
առ իս * և առաջնորդ-
եաց ինձ 'ի ճանա-
պարհս արդարութե
վասն անուան իւրոյ։

Թէպէտ և գնացից
ես 'ի մէջ ստուերաց
մահու * ոչ երկեայց
'ի չարէ, զի դու ըր
ընդ իս ես։

Ցուպ քո և գաւազան նոքա մխիթարեսցեն զիս։

Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան * այն յանդիման նեղչաց իմոց։

Օծեր իւղով զգլուխ իմ * բաժակ քո տ̃ր անապակ արբեցոյց զիս։

Ողորմութիւն քո տ̃ր զհետ իմ եկեսցէ զա̃մ աւուրս կենաց իմոց * բնակել ինձ՝ ի տան տ̃ն ընդ երկայ նաւուրս։

Տունք. Զ

Սաղմոս միաշաբաթուց Դաւթի:

Սաղմոս. ԻԳ:



Այսինքն, քո ճպոտդ և քո գաւազանդ զիս մխիթարեն. իբր քո նեղութիւն և փորձութիւն ճպոտիդ զիս խրատէ, և քո շնորհաց գաւազանովդ զիս հաստատէ՝ ի հաւատս։
Այսինքն, իմ առաջևս տ̃ր սեղան պատրաստեցիր, և քո կենաւոր մարմինդ և արիւնդ ինձ կերակուր տուիր * իմ երևելի և աներևոյթ թշնամեաց և ատելեաց աչաց առաջևն։
Այսինքն, զիմ գլուխս մեռոնով օծեցիր, քոյ սուրբ եկեղեցւոյ խորհրդներին ինձ տալով * և քո տ̃ր բաժակին անապական դինունման զիս քո սիրովդ հարբեցոյց և ուրախացոյց։
Այսինքն, քո ողորմութիւնդ և քո շնորհքդ միշտ և հանապազ ինձ յետևէ գայ քանի որ կենդանի եմ * որ ես երկար կենօք քոյ տ̃ր եկեղեցւոյդ միջումն բնակիմ և մնամ անշարժ հաւատով և հաստատուն յուսով։

Իբր, սաղմոս կիրակէից յորում աւուր արար Ա̃ծ զերկինս և զերկիր. յորում յարեաւ Ք̃ս՝ ի մեռելոց, և յորում գալոց է՝ ի դատել զկենդանիս և զմեռեալս։
Այս սաղմոսումս կուխօսի մարգարէն թէ ինչ ճանապարհով կարենք մտանել յերկինս, և թէ Ք̃ս

ինչ

ինչպէս փառօք համբարձաւ յերկինս։

Նախինքն, ո՞րպէս է այս երկիրս իւր բովանդակ միջի եղած ստեղծուածներովն * և չէ թէ միայն երկիրս, այլ և բոլոր աշխարհս իւր միջի բնակած կենդանիներովն, իբր հրեշտակօք մարդովք և անասնօք։

Նախինքն, զէրէ ինքն ած նորա հիմքերն ծովի վերայ հաստատեց * իբր անդնդական ծովովն շրջապատեց և նոր վերայ հաստատեց զնա անշարժապէս, և ամրացոյց * և գետերի վր պատրաստեց զնա, իբր գետերով զարդարեց զնա ՚ի պէտս մարդկան։

Նախինքն, բայց այսչափ երկրիս վերայ բնակած մարդկանցէն ո՞վ արժանի կուլինի որ փառօք և պատուօք ելանէ յայ լեառն, իբր յերկինս * կամ ո՞վ կարէ կանգնիլ նորա սրբութե տեղումն, իբր նոր լուսակաղմ արքայութե միջումն։

Նախինքն, այնպիսի մարդն, որ ձեռքն յիստակէ, և սրտումն նենգութի և հիլայ չկայ * և աշխարհիս փուչ և ընդունայն փառքն իւր յանձն չի առնուր * և իւր ընկերին խաբելով սուտ տեղ երդում չի աներ։

Նախինքն, այսպէս մարդս յայ օրհնութի և խնամք կառնու * և

իւր





Տեառն է երկիր լրիւ իւրով * աշխարհ, և ամ բնակիչք նր։

Նա ինքն ՚ի վերայ ծովու հիմունս էարկ նմա * ՚ի վերայ գետոց պատրաստեաց զնա։

Ո՞վ ելցէ ՚ի լեառն տն * կամ ո՞վ կացցէ ՚ի տեղւոջ սրբութե նորա։

Որ սուրբ է ձեռօք և ամբիծ սրտիւ * որ ո՛չ էառ զնանրութիւն յանձն իւր * և ո՛չ երդուաւ նենգութե ընկերի իւրում։

Սա առցէ զօրհնութի ՚ի տնէ * զողորմութի



յայ փրկչէն իւրմէ ։

Այս ազգ է որ խնդրէ զտր * խնդրէ տեսանել զերեսս այ յակոբայ ։

Համբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր * համբարձցին դրունք յաւիտենից և մտցէ թագաւոր փառաց ։

Ո՞վ է սա թագաւոր փառաց * տր հզօր զօրութբ իւրով * տր հզօր 'ի պատերազմի ։

Համբարձէք իշխանք զդրունս ձեր 'ի վեր *

իւր փրկչէն, որ է տրն մեր յս քս՝ յաւիտենական ողորմութիւն և գթութի կու գտանէ ։

Այսինքն, ահա այսպէս ազգ է որ միշտ զած կու խնդրէ, և կու քըննէ * և միշտ կու խնդրէ և կու ցանկայ, որ յակոբայ այ երեսն տեսանէ, իբր ճշմարիտ հաւատացելոց այ երեսն երկնից արքայութե մէջումն տեսանէ ։

Այսինքն, բայց ես այս չափ աղւերի մէջումն տեսանելով զայն մէկ ածացեալ մարդն որ յառաջ քան զամենեան փառօք կու ելանէ յերկինս, կու աղաղակեմ և կասեմ դռնապան հրեշտակներին, թէ ով իշխանք, վեր պատեցէք ձեր դռներն, * այդ յաւիտենական և հին ժամանակէ փակած դռներդ վեր պատըլին և բացվին, որ քս թագաւորն փառաց մտանէ յիւր տէ արքայութին ։

Այսինքն, բայց թէ ինձ հարցանեն թէ ով է այդ փառաց թագաւորդ * ես նոցա պատասխանի կու տամ, թէ այս այն տրն է, որ զօրեղ և ուժեղ է իւր զօրութբն և կարողութբն * և այս այն տրն է, որ իւր մահուամբն պատերազմեցաւ, և յաղթեց զսատանայ և զպաշտօնեայս նորա ։

Այսինքն, այնոր համար ձեզ կասեմ, ով 'իշխանք, վեր պատեցէք

ձեր

ձեր դռներն * այդ յաւիտենից
փակած դռներդ, վերպատմլին և
բացվլին որ փառաց Թագաւորն
քս մտանէ յիւր տէ արքայութին:
Այսինքն, բայց թէ կրկին հար
ցանեն, թէ ո՛վ է այդ փառաց Թա
գաւորդ, ես կու պատասխանեմ,
թէ սա՛ ձեր բովանդակ երկնային
զօրութեանց տրն է. և սա՛ ինքն է
փառաց Թագաւորն, իբր համա
գոյակից որդին հյ. և յաւիտենա
կան փառօք փառաւորեալ:

Իբր զայս սաղմոս ինքն դաւիթ
մարգարէն է՛ ասացեալ:
Այս սաղմոսումս կու խօսի մար
գարէն արդար մարդկանց համար
որ փորձանաց և նեղութե մի
ջումն յած կու աղաւինին և օգ
նութի կու խնդրեն, կամ ինքն
դաւիթ հալածանաց միջումն յայ
օգնութի կու խնդրէ:



յսինքն, տր աճ, այս աշ
խարհիս վշտերի և տա
ռապանքների միջումն
դէպ քեզ բարձրացուցի զիմ
անձս, իբր զիմ միտքս դէպ քեզ
ուղղեցի * տր աճ, քեզ եմ յու
սացեր, դու ինձ օգնական եղիր,
որ ես չամաչեմ * և չի լինի թէ իմ
թշնամիքն տեսանելով զիս՛ կատր





համբարձցին դրունք
յաւիտենից, և մտցէ
Թագաւոր փառաց:

Ո՞վ է սա Թագաւոր
փառաց * տր զօրու
թեանց, սա՛ ինքն է Թա
գաւոր փառաց:

Տունք. 10.

Սաղմոս Դաւթի:

Սաղմոս ԻԴ.



ռ քեզ տէր
համբարձի
զանձն իմ
* աճ իմ 'ի քեզ
յուսացայ, մի՛ ամաչե
ցից * և մի՛ ծիծաղես
ցին զինև թշնամիք
իմ:



Ամենեքեան որք համ
բերեն քեզ մի՛ ամա
չիցեն * այլ ամաչես
ցեն անօրէնք յունայ
նութեան իւրեանց։

Զճանապարհս քո
Տէր ցոյց ինձ * և զշա
ւիղս քո ուսո՛ ինձ։

Առաջնորդեա՛ ինձ
'ի ճշմարտութեան
քում, և ուսո՛ զիս *
զի դու ես Աստուած փրկիչ
իմ * և ես քեզ համբե
րի զօր հանապազ։

Յիշեա՛ Տէր զգթու
թիւնս քո , և զողոր
մութիւնս քո , որք են
յաւիտենից։

Զմեղս մանկութեան
իմոյ և զանգիտութեան
իմոյ մի՛ յիշեր * այլ
յիշեա՛ զիս Տէր ըստ
ողորմութեան քում, և



ընկած , ինձ վերայ ծիծաղին և
զիս տնազ անեն։

Այսինքն , զէրէ ինչ մարդ որ
համբերութենով քեզ կու յու
սայ , չի՛ ամաչեր * այլ անօրէնն և
չարագործ մարդիքն կամաչեն ,
որ իւրեանց փուչ և ընդունայն
խորհրդոցն կու հետևին և սուտ
ցանկութեան յետևէ են ընկած։

Այսինքն , վասն որոյ կաղաչեմ
զքեզ Տէր Աստուած , որ միշտ քո ճանա
պարհդ , իբր քո սուրբ պատուի
րանքդ ինձ ցոյց տաս * և քո շա
ւիղդ , իբր քեզ ծառայելոյ կերպն
և եղանակն ինձ ուսուցանես։

Այսինքն , քո օրինաց ճշմարտու
թեամբն զիս ուղղես , և քո սուրբ կամքդ
ինձ ուսուցանես * զէրէ դու իմ
Աստուածն ես , և փրկիչն ես * և ես հա
նապազ համբերութեամբ քո Աստուածային
ողորմութեանդ և գթութեանդ ապա
ւինեցայ։

Այսինքն , յիշէ՛ Տէր Աստուած քո գութն
և քո ողորմութիւն , որք են յաւի
տենից , իբր զայն գութն և ողոր
մութիւն , որ ի սկզբանէ աշխար
հիս մարդկային ազգիս հետ արա
րիր։

Այսինքն , և իմ տղայութեան և
տխմարութեան ժամանակի գործած
մեղքերն մի՛ յիշեր * այլ թէ կու
յիշես , յիշէ՛ զիս քո ողորմութեամբդ ,
և քոյ քաղցրութեանդ համար այ

ռա՛ւինձ, զէրէ քաղցր ես, և ուղիղ ես, իբր ողորմած ես և արդարադատ ես:

Այսինքն, և քո քաղցրութեանդ համար մեղաւոր մարդիկքն շուտով չես դատապարտեր, այլ գիտակ և վերահասու կանես զիւրեանք քոյ տր օրինաց ճանապարհին * և հեզ և հնազանդ մարդկանց միայքն կուղղես, որ իմանան քո արդար դատաստանդ * և կուսուցանես խոնարհ մարդկանց քո պատուիրանաց ճանապարհն:

Այսինքն, որ դիտենան, թէ այ ամ բանից և արարմանց ճանապարհն ողորմութիւն և ճշմարտութիւն է այնպիսի մարդկանց հետ, որնոր ուխտն և զկտակն և զվկայութիքն կուխնդրեն, իբր միշտ կու ջանան արժանի լինիլ որդեգրութեան կենաց. ըստ որում ուսուցանեն և վկայեն առաքելական և մարգարէական գրեանք:

Այսինքն, ուստի կու աղաչեմ զքեզ տր ած որ այդ քո ողորմած և ճշմարիտ անուանդ համար զիմ մեղքս քաւես, զէրէ խիստ շատ են * որ ես խնդամ և աղաղակեմ ասելով, թէ ինչ մարդ որ այ կու վախէ, ած զնա իւր օրինաց ճանապարհին գիտակ կանէ, իբր այն ճանապարհին, որ ինքն ընտրեր և հաճեր է:





վա քաղցրութեան քոյ տր, զի քաղցր և ուղիղ ես:

Վա այսորիկ օրէնս դնես առնես զմեղաւորս ՚ի ճանապարհի * առաջնորդես հեզոց ՚ի դատաստանի * և ուսուցանես հեզոց զճանապարհս քո:

Ամ ճանապարհք տն ողորմութիւն և ճշմարտութիւն են այնոցիկ, որք խնդրեն զուխտ և զվկայութի նորա:

Վա անուան քոյ տր քաւեա զմեղս իմ, զի բազում եղեն * ո՞վ է մարդ որ երկնչի ՚ի տնէ, օրէնսդէտ առնէ զնա ՚ի ճանապարհի յոր հաճեցաւ:

Անձն նորա 'ի բարութեան հանգիցէ * և զաւակ նորա ժառանգեսցէ զերկիր։

Զօրութի է Տ՟ր երկիւղածաց իւրոց * և զկտակարանս իւր ուսուցանէ նց՟։

Աչք իմ յա՟մ ժամ առ Տ՟ր * և նա հանէ յորոգայթէ զոտս իմ։

Նայեաց առ իս և ողորմեաց ինձ * զի միամօր և աղքատ եմ ես։

Նեղութիւնք սրտի



Այսինքն, և այնպէս մարդի անձն իբր հոգին, ա՟յ բարեաց միջուին մշտակու հանգստանայ * և նորա զաւակն թէ իւր հօր գործոցն հետևօղ լինի, նաևս կենդանեաց երկրի բարիքն կու ժառանգէ և կու վայելէ։

Այսինքն, զէրէ ա՟ծ յիւրմէն վախօղ մարդկանց զօրութի և կարօղութին է, իբր թև և թիկունք է * և իւր կտակարանքն, իբր իւր ո՟ւ պատուիրանքն մշտա նոցա կու սուցանէ։

Այսինքն, այս պատճառէս իմ մտաց աչքն հանապազ դէպ յա՟ծ է * և նա միայն զիմ ոտքս իմ թշնամեաց սարքած թակարքէն կու պրծացնէ, իբր զիմ կենցաղավարութիս կու ուղղէ 'ի բարին։

Այսինքն, և ես մշտա կաղաչեմ և կասեմ, թէ Տ՟ր ա՟ծ նայիր ինձ, և ողորմիր ինձ * զէրէ ես միայնակ և աղքատ եմ, միայնակ եմ, իբր այնպէս ամենեքեան ինձ ձանէ երես են դարձուցեր, որ կու թուի թէ ոչ բարեկամ ոչ ազգական, և ոչ եղբայր և քոյր ունենամ աշխարհիս վերայ, աղքատ եմ, իբր ոչ ինչ կողմանէ օգնութի և յոյս չունիմ. դարձեալ միայնակ և աղքատ եմ ես, իբր մինակ և խեղճ եմ։

Այսինքն, իմ թշնամեաց դիտա

նորու

հորութիւն տեսանելով սրտիս նե-
ղութիւն շատացաւ * վս որոյ կու-
խնդրեմ քեզանից, որ զիս իմ
վշտէս փրկես և ազատես տր ած:
Այսինքն, տես զիմ մնաց խոնար-
հութիւն, և զիմ սրտիս ցաւն և
իմ մեղացս և յանցանացս թողու-
թի շնորհէ վս քո անչափ ողոր-
մութեդ, զի երկայնամիտ ես:
Այսինքն, տես զիմ թշնամեաց
նենգութիւն և չար դիտաւորու-
թիւն * զերէ խիստ շատացան այն
պիսի մարդիքն, որ անիրաւ տեղ
և փուչ ատելութեամբ զիս կու-
ատեն, և կու հալածեն:
Այսինքն, պահէ զիմ անձն նոցա
չարագործութենէն, և փրկէ
զիս նոցա ձեռքէն * որ ես յամօթ
չի լինիմ, զերէ քեզ եմ յուսացեր
և ապաւիներ:
Այսինքն, անմեղ մարդիք և չի
տակ մարդիք ինձ համախոհ և բա
րեկամ եղան * զերէ ես համբե
րութբ քո ողորմութեդ սպասե
ցի * վասն որոյ կաղաչեմ զքեզ,
որ զնոսա և զբովանդակ իսրայէլա
ցիքն. իբր զբոլոր եկեղեցին հա
ւատացելոց փրկես իւրեանց ամե
նայն նեղութենէն:

Իբր, զայս սաղմոս ինքն դաւիթ
մարգարէն է ասացեալ:
Այս սաղմոսումս կու խօսի մար





իմս բազումք եղեն
յոյժ * 'ի վշտաց իմոց
հան զիս:



Տես զխոնարհութի
իմ և զվաստակ իմ *
և թող ինձ զամ
զմեղս իմ:

Տես զթշնամիս իմ *
զի բազումք եղեն
ատելութբ որք 'ինա
նիր ատեցին զիս:

Պահեա զանձն իմ և
փրկեա զիս * և մի յա
մօթ եղէց, զի յուսա
ցայ 'ի քեզ:

Անբիծք և ուղիղք
կցորդք եղեն ինձ *
և ես քեզ համբերի
* փրկեա ած զիսրայ
էլ յամենից նեղու
թեցնր:

Տունք. 12.

Սաղմոս դաւթի:

Սաղմոս. ԻԵ.



Դատ արա ինձ տէր * զի ես յանմեղութեան իմում գնացի * 'ի տէր յուսացայ, զի մի՛ եղէց հի՛ւանդ:

Փորձեա՛ զիս տէր և քննեա՛ զիս * փորձեա՛ զերիկամունս իմ, և զսիրտ իմ:

Ողորմութիւնք քո տէր առաջի աչաց իմոց * և հաճոյ եղէց ճշմարտութեան քում:

Ո՛չ նստայց ես յաթոռս նանրաց * և ընդ անօրէնս ես ո՛չ մտից:

Ատեցի ես զժողովս չարաց * և ընդ ամ

դարէն մտ̃ քի, կամ մտ̃ իւր, և կամ մտ̃ արդարոց. թէ ինչպէս անիրաւ տեղ չարչարվեցան 'ի թշնամեաց իւրեանց:

Այսինքն, իմ դատաստանս դու արա՛ տէր աստուած իմ չարախօսացն հետ * զէրէ դու գիտես որ ես անմեղութենով շուրջ եկայ քոյ առաջեւդ * և ես իմ տէր աստուածն եմ յուսացեր, որ չի հի՛ւանդանամ. իբր իմ թշնամեաց միջումն տկար և անուժ չի դառնամ, և յաղթվիմ:
Այսինքն, դու զիս փորձէ և քննէ տէր աստուած * դու փորձէ զիմ երիկամունքն և զիմ սիրտն, զէրէ դու մարդոյ երեսն չես նայիր, այլ զմիտքն և զխորհուրդն կու քննես:
Այսինքն, քո դութն և քո ողորմութիւն միշտ իմ աչաց առաջեւն է՛ և ես յոյս ունիմ, որ իմ անմեղութիւս և շխտակութիւս քոյ ճշմարտութեանդ դուռ գամ և հաճոյ լինիմ:
Այսինքն, ես փուչ մարդկանց նման չեմ նստիր այլոց սուտ և առասպել բաներ ուսուցաներ * և անօրէն մարդկանց հետ ել և մուտ չեմ աներ. իբր բարեկամութի չեմ աներ:
Այսինքն, զէրէ ես խիզզանէ չար մարդկանց ժողովքն և խոր

հուրդն

հուրդն ատեցի * և անօրէնն և ան-
հաւատ մարդկանց հետ ընաւ
ամենևին չեմ նստեր բարեկամու-
թիւն և խօսակցութիւն անեմ ։

Այսինքն , և այս դիտաւորու-
թեամբ զիմ ձեռքս յստակ կու լու-
անամ . իբր ՚ի յանիրաւութենէ
և ՚ի մեղաց կու հեռանամ * և
միշտ քոյ սուրբ սեղանիդ բոլորքն
քեզ երկրպագանելով պտուտ
կուգամ ։

Այսինքն , որ միշտ քո սուրբ ան-
ուան օրհնութեան ձայնն լսեմ * ՚ի
բերանոյ սրբազան քահանայից ,
և քո արարմունքդ և սքանչելիքդ
այլոց պատմեմ ։

Այսինքն , զէրէ Տէր Աստուած ես քոյ
եկեղեցւոյդ պայծառութիւն և
գեղեցկութիւն յոյժ սիրեցի * և
քոյ փառաց բնակութեան տեղն ,
իբր քո սուրբ սեղանն ինձ սաստիկ
դուր է եկեր , և քաղցր է թուա-
ցեր ։

Այսինքն , ուստի կու աղաչեմ
զքեզ , որ զիմ անձս անօրէն և
չարագործ մարդկանց հետ չի կո-
րուսանես * և զիմ կեանքս մար-
դասպան մարդկանց հետ չի դա-
տապարտես ։

Այսինքն , զէրէ նոցա ձեռքերն ,
անօրէնութեան և անիրաւութեան
միջում են * և նոցա աջ ձեռքն
կաշառքով լի է ։





պարիշտս ես ոչ
նստայց ։

Լուացից սրբութեամբ
զձեռս իմ * և շուրջ
եղէց զսեղանով քով
Տէր ։

Լսել ինձ զձայն օրհ-
նութեան քո * և պատ-
մել զամենայն սքանչե-
լիս քո ։

Տէր սիրեցի զվայել-
չութիւն տան քո * և
զտեղի յարկի փառաց
քոց ։

Մի կորուսաներ ընդ
ամպարիշտս զանձն իմ
* և մի՛ ընդ արս արիւ-
նահեղս զկեանս իմ ։

Որոց ձեռք իւրեանց
յանօրէնութեան են *
և աջ նոցա լի է կաշա-
ռօք ։

Ես յամբծութն իմ, ուր գնացի * փրկեաւ զիս տր և ողորմեաց ինձ։

Ոտն իմ կացցէ յուղղութն * յեկեղեցիս մեծս օրհնեցից զքեզ

Տունք: 12·

Սաղմոս դաւթի մինչ չև օծեալ էր։

Սաղմոս․ ԻԶ․



Տր լոյս իմ և կեանք իմ, ես յումէ երկեայց * տր ապաւէն կենաց իմոց ես յումէ դողացայց։

Իմերձենալ առ իս չարաց ուտել զմարմին



Այսինքն, և ես քո շնորհօքդ միշտ անմեղութբ ապրեցայ քոյ առաջիդ * վասն որոյ կաղաչեմ զքեզ որ զիմ անձս փրկես, և ինձ ողորմիս քո ամենառատ գթութեամբդ։

Այսինքն, զերէ այսու հետև որ չափ իմ ջանքս է զիմ ոտքս ուղիղ կենցաղավարութեան միջումն այն դեմ և հաստատեմ * և քոյ մեծ եկեղեցներոյդ մէջն, իբր քոյ ճշմարիտ հաւատացեալ ժողովրդոց միջումն քո տր անունդ օրհնեմ և փառաբանեմ։

Իբր զայս սաղմոս ասաց դաւիթ յառաջ քան զօծանիլն իւր թագաւոր 'ի յեբրոն, այն օրերն որ սաւուղ սպանվեցաւ։

Այս սաղմոսումն կու յորդորէ մարդարէն զինքն և զայլս չէ երկնչել 'ի թշնամեաց օգնութբն տյ։

Այսինքն, թէ որ տր տծ իմ մոաց լոյսն է, և իմ հոգւոյս և մարմնոյս կենդանութին է, ես յումնից կու վախեմ * թէ որ տր տծ ինձ ապաւէնն է, և զիս կենդանի կու պահէ, ես յումնից կու դողամ և կու սարսափիմ աշխարհիս վերայ։

Այսինքն, երբոր չար և անօրէն մարդիկք կատաղած շան նման ինձ

մօտկացան և ինձ վերայ վաղեցին
որ զիմ միս ուտէին նոքա որ զիս
կունեղացնէին, և ինձ թշնամու
թի կանէին, իւրեանք տկարացան
անուժացան, և 'ի վայր անկան։

Նայինքն, վն որոյ իմ յոյս այն
պէս հաստատէ որ թէ իմ թշնա
միքն ինձ վերայ կուիւ և պատե
րազմ այլ պատրաստեն, իմ սիրտս
չի վախեր * և թէ ինձ վերայ զօրք
և ասքար այլ գայ, և դէմադէմ
ինձ հետ կուիւ այլ անեն, սակայն
այն ժամանակին այլ քեզ եմ յու
սացեր տր ած։

Նայինքն, իմ խնդիրքս այ միայն
մէկ իքմինէ և հանապազ զայն կա
ղաչեմ * որ ինձ այնչափ շնորհ տայ
որ քանի որ ես կենդանի եմ իւր
տը եկեղեցւոյ մէջն բնակիմ և
իւր օրհնաբանութենն մասնակից
լինիմ։

Նայինքն, և այն տեղն ես իմ տն
այ փառքն և վայելչութիւն միշտ
տեսանեմ * և վարդապետաց եկե
ղեցւոյ, և դրոց սրբոց յածակոյս
կողմանէ պատմիրանք և հրա
մանք տալն, մեկնելն զբանս ած
այինս և քարոզելն, իւր տաճարի
միջումն լսեմ։

Նայինքն, զերէքանի որ ինձ փոր
ձանք և վատ օր հանդիպեցաւ, նա
զիս ծածկեց և պահեց իւր տաճա
րի միջումն * և իւր խորանի ծա

ծուկ



իմ * նեղիչք իմ և
թշնամիքիմ, նքա տկա
րացան և անկան։

Թէ պատրաստիցի 'ի
վր իմ պատերազմ,
ոչ երկիցէ սիրտ իմ *
թէ յարիցէ 'ի վր իմ
ճակատամարտ սակայն
և յայսմիկ 'ի քեզ տր
յուսացայ։

Զմի խնդրեցի 'ի
տնէ և զայն աղաչեմ
* բնակել ինձ 'ի տան
տն զամ աւուրս կե
նաց իմոց։

Տեսանել ինձ զվայ
ելչութի տն * և հրա
մանատալ 'ի տաճարի
նորա։

Ծածկեաց զիս 'ի խո
րանի իւրում յաւ
ուր չարի * ընդ յար
կաւ արար զիս ի ծած
կոյթ խորանի իւրոյ։

Ի վիմի բարձր արա րեր զիս * և այժմ բարձր արա՛ զգլուխ իմ ի վե՛ր թշնամեաց իմոց ։

Շուրջ եղէց և մա տուցից ՚ի խորանի նր զպատարագ օրհնու թե * օրհնեցից և սաղ մոս ասացից տն ։

Լուր տէր ձայնի իմում զի կարդացի առ քեզ * ողորմեաց ինձ , և լուր ինձ , զի քեզ ասաց սիրտ իմ * և խնդրեցին երեսք իմ * զերեսս քո տր խնդրեցից ։

Մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն *

ծուկ տեղումն զիս ընդ յարկաւ արար , իբր դաղեց , կամ գաղ տուկ տեղ մոցոյց ։

Մասինքն , դու տր ած զիս իմ նե ղութեն և իմ վշտերի միջումն այն պէս անփորձ պահեցիր ինչպէս թէ զիս մին բարձր ապառաժ քարի վր հանեէիր , որ ոչ ոք չկարենայր ինձ վնաս հասուցանել * այժմ և ես կա ղաչեմ զքեզ․ որ զիմ գլուխս իմ թշնամեացն վր բարձրացուցա նես , իբր ինձ կարօղութի և յաղթու թի տաս ընդդէմ թշնամեաց իմոց ։

Մասինքն , որ ես իմ այ տէր սեղա նի բոլորքն շուրջ գալով , նր տէր տաճարի միջումն իւրն օրհնութեն պատարագ մատուցանեմ * օրհնեմ զիւր տէր անունն , և սաղմոս ասեմ իմ ճշմարիտ և կենդանի այն ։

Մասինքն , ուստի կուաղաչեմ զքեզ տր ած , որ իմ աղօթից ձայնն լսես , զէրէ դէպ քեզ աղա ղակեցի * ողորմիր ինձ , և ականջ դիր ինձ , զէրէ իմ սիրտս քեզ ասաց , իբր իմ սիրտս քեզ միայն ցանկացաւ * և իմ երեսս զքեզ խնդրեց , իբր իմ անձս և իմ հո գիս զքեզ սիրեց * և ես տր ած միշտ քո երեսդ կուխնդրեմ , իբր քո շնորքդ , քո ողորմութիդ կու զեմ , որ ինձ պարգևես ։

Մասինքն , վն որոյ կրկին կաղա չեմ զքեզ , քո երեսդ մի՛ դարձու

ցանէր ինձանից * և մի՛ հեռանար քոյ ծառայէդ բարկանալով իմ մեղացն վերայ ․ իբր զիս քոյ շնորհացդ մի՛ զրկեր ։

Այսինքն , ինձ օգնական եղիր տր ած , իմ նեղութե միջումն * զիս իմ սխալանացն համար մի՛ անարգեր , և զիս 'ի ձեռաց մի՛ թողուր , զերէ դու իմ ածն ես , իմ տրն ես , և փրկիչն ես ։

Այսինքն , որ ես զիս մխիթարելով ասեմ , թէ իմ ծնող հայրս , և իմ ծիծ տուօղ մայրս զիս բաց թողին և մոռացան * և իմ տրն և ստեղծօղն զիս ընդունեց և նախախնամեց ։

Այսինքն քոյ օրինաց և պատուիրանաց ճանապարհին տր ած զիս գիտակ և վերահասու արա՛ * և ինձ առաջնորդէ դէպ 'ի քո շիտակ շաւիղն , իբր դէպ 'ի քո կամքդ կատարելոյ ուղիղ և բարակ ճանապարհն ։

Այսինքն , և կաղաչեմ զքեզ որ զիմ թշնամիքն ինձ վր չի ծիծաղացնելոյ համար , զիս ինձ նեղացնօղ և վշտացնօղ ատելի մարդկանց ձեռքն չի մատնես , և 'ի մէջ փորձութե չի ձգես ։

Այսինքն , զէրէ մեղաւոր և անիրաւ վկայք ինձ վերայ են թափեր * և իւրեանց անօրէնութեն և չարութեն ինձ վերայ սուտ կա





և մի՛ խոտորիր բարկութե 'ի ծառայէ քումմէ ։

Օգնական իմ լեր տր * մի՛ անարգեր զիս , և մի՛ թողուր զիս ած փրկիչ իմ ։

Հայր իմ և մայր իմ թողին զիս * և տր իմ ընկալաւ զիս ։

Օրէնսդիր արա՛ զիս տէր 'ի ճանապարհի քում * և առաջնորդեա՛ ինձ 'ի շաւիղս քո ուղիղս ։

Մ̈ թշնամեաց իմոց մի՛ մատներ զիս 'ի ձեռս նեղչաց իմոց ։

Յարեան իմ վերայ իմ վկայք մեղաց * և ստեցին ինձ յանօրէնութե իւրեանց ։





Հաւատացի տեսա
նել զբարութի՛ տն
յերկրին կենդանեաց
համբեր տն և քաջա
լերեաց * զօրասցի
սիրտ քո, և համբեր
տն:

Տունք. 16

Սաղմոս Դաւթի.

Սաղմոս. ԻԷ:

Առքեզ տր կար
դացի ած
իմ, մի՛
լռեր յինէն * մի՛ եր
բէք լռիցես յինէն,
նմանեցիմ այնոցիկ
ոյք իջանեն՛ի
գուբ:

Լուր տր ձայնի իմ



սեն և զիս կու բամբասեն:
Այսինքն, բայց ես հաստատ յու
սով հաւատացերեմ, որ իմ այ
բարութին տեսանեմ կենդանեաց
երկրումն, իբր յերկնից արքայու
թեան միջումն * ուստի զիս կու
յորդորեմ հանապազ և կասեմ,
թէ համբերէ՛ քոյ այ ողորմութեն
և մի՛ վախեր * սիրտդ պինտ բռնէ
և համբերէ՛ և ըսպասէ՛ հաստա
տուն յուսով քո աստուծոյդ,
մինչև որ քեզ ճար անէ, և ողորմի:

Իբր, զայս սաղմոս իմքն դաւիթ
է ասացեալ:
Այս սաղմոսումն կու աղաչէ մար
դարէն զած որ իւրն օգնական լի
նի, և յետ ընդունելոյ զօգնութին
շնորհակալ կու լինի:

Այսինքն, տր ած դէպ քեզ
աղաղակեցի, ինձանից
մունջ մի՛ կենար, ինձ
ականջ արա՛, և քո մխիթարական
խօսքն և պատասխանին ինձանից
մի՛ պակաս աներ * և քո ականջդ
և բերանդ ամենևին դէպ ինձ մի՛
խփեր, որ սաստիկ տրտմութենէս
չի՛ նմանիմ մեռած մարդկանց որ
կու իջանեն՛ի գուբ, իբր՛ի գե
րեզման:
Այսինքն, իմ խնդրուածքիս

ճանապարհում պատրաստ գտանե
ցաւ * և 'ի մեղք գործելոյ բնաւ
չի ձանձրացաւ, ինչ 'ի բամբասե
լոյ, 'ի յափշտակելոյ, և 'ի սպանա
նելոյ ամենևին չի կշտացաւ։

Ամենքն, և դու տեսանելով
նո՟ր չարութիւն երկայնամիտ եղար
դէրէ քո ողորմութիւդ բոլոր աշ
խարհս լցեր է, և ս առաւել երկն
քում երանելի հոգիքն զարդա
րեր և պսակեր է * և քո ճշմար
տութիւդ և հաստատրիմ խոստ
մունքդ յերկրէս մինչև 'ի յամպս
մինչև ուր որ մեր աչքի տեսու
թիւն կարէ հասանիլ, նայելով յայ
տնի կուերևի։

Ամենքն, քո արդարութիւնդ
սարերի նման բարձր և անհաս է
* քո իրաւունքդ և դատաստանդ
զանազան խորունկ տեղերի նման
անքննելի և անխմանալի է * և չէ
թէ միայն բանական և բարեգործ
մարդիկքն, այլ և անասնաբարոյ և
չարագործ մարդիկքն, կու փրկես
և կու կեցուցանես քո առատ
ողորմութե՟դ, միայն թէ իւրենց
սրտում ճշմարիտ զղջումն և փո
շիմանութիւն ունենան։

Ամենքն, ա՛հ տ՟ր ա՟ծ թէ ո՛ր չափ
առատ է քո ողորմութիւնդ քոյ
ստեղծուածոցն վերայ * ուստի
հողեղէն մարդիկք չէ թէ յիւր
եանց կարողութիւն, այլ 'ի քոյ տ՟է





նապարհ որ ոչ է բա
րի * և 'ի չարէնս ոչ
ձանձրացաւ։

Տ՟ր յերկինս է ողոր
մութի՟ւ քո * ճշմար
տութի՟ւ քո մինչև
յամպս։

Արդարութիւն քո
ո՟պ լերինք ա՟ծ * իրաւ
ունք քո ո՟պ խորք բա
զումք * զմարդիկ և
զանասունս կեցու
ցանես դու տ՟ր։

Որպէս զի բազում
արարեր զողորմութի
քո ա՟ծ * այլ որդիք
մարդկան 'ի հովանի
թևոց քոց յուսասցին

Արբեսցինք ՚ի պա
րարտութէ տան քոյ
* Եւ զուղխս փափկու
թե քոյ տացես ըմ
պել նոցա :

՚Ի քէն է տր աղբիւր
կենաց * եւ լուսով
երեսաց քոց տեսա
նեմք զլոյս :

Ձգեա՛ զողորմու
թիս քո որք ճանաչեն
զքեզ * զարդարութիս
քո որք ուղիղք են սր
տիւք :



Թեւերիդ շուքի տակումն պահ
վելով ՚ի քեզ յուսան եւ ապաւէ
նին, իբր ՚ի քո ամենայն նախախնա
մութիդ եւ օգնութիդ յուսան
եւ ապաւինին, զերէ նովաւ միայն
կարեն յաղթահարել զբռնութիս
սատանայի :

Այսինքն, եւ այսպէս քո երկնային
տանդ առատ սիրոյ գինովն կու
հարբենան, իբր քոյ սբ եկեղե
ցւոյ հոգեւոր ուրախութենն կու
ցնծան * եւ դու քոյ ամենայն
քաղցրութն եւ քոյ սբ հոգւոյդ
շնորհաց սելավն նոցա կու խմց
նես :

Այսինքն, զերէ քեզանէ կու
բղխէ աղբիւրն կենաց, իբր ամ
կենդանութի թէ հոգեկան եւ
թէ մարմնական քեզանից է * եւ
ինչպէս արեգական լուսովն զարե
գակն կու տեսանենք, այսպէս եւս
քո շնորհաց լուսովն զքեզ կու
տեսանենք որ ճշմարիտ լոյս ես, եւ
քոյ միածին որդւովդ զքեզ կու
ճանաչենք, որ ճշմարիտ ած ես,
եւ տր երկնի եւ երկրի :

Այսինքն, ուստի կաղաչեմ զքեզ
որ ծագես զքո ողորմութն լոյսդ
այն մարդկանցն վր, որ զքեզ ճշ
մարիտ ած կու ճանաչեն * եւ զքո
արդարութիւնդ եւ իրաւունքդ
այն մարդկանցն վերայ պահես,
որ սրտերն շիտակ եւ ուղիղ է :

Աղաչինքն, որ չի լինի թէ ամբարտաւան եւ հպարտ մարդկանց ոտացն կոխան լինինք * եւ մեղաւոր եւ անօրէն մարդկանց ձեռքն իւր չարագործութիւնքն զմեզ չի վախցնէ եւ դողացնէ ։

Աղաչինքն, այլ այնպիսի ամբարտաւան եւ մեղաւոր մարդիքն այն փոսն անկանին, ինչ տեղ որ անկաւ սատանայ * եւ քշվին եւ հալածվին քո երեսէդ, եւ այլ չի կարենան մեծանալ եւ զօրանալ այս աշխարհիս վերայ ։

Այս տաղովս կու խրատէ եւ կու զգուշացուցանէ մովսէս մարգարէն զ. հրէայս եւ մանաւանդ ըզքրիստոնեայս առ՚ի ճանաչել զեր ախտիքն քի ։



ղաչինքն, նայեցէք դէպ ինձ ով երկինք, իբր ով վարդապետք եւ եպիսկոպոսունք, քահանայք եւ քահանայապետք, որ խրատեմ եւ զգուշացնեմ զձեզ * եւ լսէ երկիր, իբր հաւատացեալ ժողովուրդն զիմ բերանիս խօսքն, եւ քարոզութիւնն ։

Աղաչինքն, ինչպէս որ ծարաւ երկիրն անձրեւներս կու ծծէ, այսպէս իմ զրոյցս ձեզ ընդունելի

* եւ



Մի՛ եկեսցեն ի վերայ մեր ոտք ամբարտաւանից * եւ ձեռք մեղաւորաց մի՛ դողացուսցեն զմեզ ։

Անդ անկցին ամենեքեան ոյք գործեն զանօրէնութիւն * մերժեցին եւ այլ մի՛ կարասցեն հաստատիլ ։

Տունք ․ 13

Օրհնութիւն մեծին մովսէսի ա̄ծատես մարգարէին, երկրորդ օրինաց : ԼԲ :



այեցարուք երկինք եւ խօսեցայց * լուիցէ երկիր զպատգամս բերանոյ իմոյ ։

Ընդունելի լիցի ո̄պ զանձրեւ բարբառ իմ եւ իջցէ որպէս ցօղ



պատգամ իմ ։

Որպէս զանձրև ՚ի վ՟ր սփռոյ * և ոպ՟ս տարափ ի վ՟ր խոտոյ * զի զանուն Տ՟ն կարդացի * և տուք օրհնութի Տ՟ն Այ՟ մերում ։

Ա՜ծ որոյ ճշմարտութ՟ են գործք նորա * և ամ՟ ճանապարհք նորա իրաւամբք են ։

Ա՜ծ հաւատարիմ է * և ոչ գոյ ՚ի նմա անիրաւութի * արդար և ճշմարիտ է Տ՟ր ։

Մ՝եղան * և ոչ նմա որդիքն արատոյ * ծնունդք խոտորեալք և թիւրեալք ։



* և իմ խօսքս գիշերվան շաղի նման իջնու ձեզ վերայ, և ձեր սիրտն կակղացնէ ։

Ա՜յսինքն, ինչպէս որ կու իջնու անձրևն կանանչ սաղի վ՟ր * և ինչպէս երկնից թացութին պուտ պուտ կու կաթ կաթէ խոտի վ՟ր և զինքն կու դալարացնէ այսպէս իմ խօսքս ձեր սիրտն ջերմացնէ ՚ի սէրն Այ՟ * զէրէ ես այս բանումս Այ՟ անունն կու յիշեմ * և դուք լսելով զիմ խրատս, Այ՟ օրհնութի և փառք տուէք ։

Ա՜յսինքն, Այ՟ գործքն ճշմարտութ՟ է, իբր ինչ որ կանէ իւր ծառայից հետն, ուղիղ և մեկին սրտով կանէ, և ինչպէս որ խոստացեր է, այնպէս գլուխ կու տանի * և իւր ամէն օրինաց և պատուիրանաց ճանապարհն իրաւունքով և դատաստանով է ։

Ա՜յսինքն, Ած՟ հաստատ և հաւատարիմ է իւր խոստմունքին վ՟ր * և նորանում ստութի և անիրաւութի չի գտնվիր * զէրէ արդար է, և ճշմարիտ է իւր ամ՟ բանումն ։

Ա՜յսինքն, ընդդէմ Այ՟ մեղանչեցին իւրեանց օրհնազանցութենովն * և այնպէս անխղճմտանք և անհոգ են, ինչպէս թէ ընդդէմ նմա, իբր ընդդէմ Այ՟ ոչինչ չէլէնին արարած կամ գործած այն որդիքն

տրատոյ, իբր այն որդիքն մոլորու-
թե՛ հրէայք, որդիքն մեղաց * այն
ծնունդն, որ իսկզբանէ մոլորած
և ծռւած էր ած հետ և չէր ուզեր
ուղիղ սրտիւ նմա հնազանդիլ:
Այսինքն, այդ չէ՞ մի որ կու հա
տուցանէք այ փոխանակ իւր բա
րերարութեն * ո՛վ ժողովուրդ
անխելք և անդէտ, որ թողեր էք
զնա, և կուռց կու երկրպագանէք:
Այսինքն, այս չէ՞ մի քո երկնային
հայրդ, որ զքեզ այնչափ հոգւով
և խնամքով վաստակեց այնչափ
սիրով պահպանեց և մեծացոյց *
զքեզ 'ի հողէ կազմեց և մարդ չի
նեց, և զքո հոգիդ յոչնչէ ըստեղ
ծեց և դոյացոյց:
Այսինքն, յիշէ անցած ժամա
նակի օրերն, թէ որ չափ բարերա
րութի արաւ քեզ ած * և միտք
արէք զանազան ազգերի անցած
տարիքն և տեսէք, թէ մէկ ազգէն
մինչև 'ի միւս ազգն որչափ հրաշք
և սքանչելիք է՛ արարեր ած ձեզ
համար:
Այսինքն, թէ դու չես գիտեր,
հարցուր քո հայրերիդ և քո պա
պերիդ, որ քեզ պատմեն * և քո
ազգիդ հալևոր և ծեր մարդիքն
աղաչէ որ քեզ ասեն, թէ որչափ
երախտիք ունի քեզ վր ած:
Այսինքն, թէ ինչպէս այն ժա
մանակն բարձրեալն ած բաժա





Ո՛չ այդ այն է զոր ած
հատուցանէիք դուք
* ժողովուրդք յի
մարք և ո՛չ իմաս
տունք:

Ո՛չ սա ինքն է հայր
քո որ ստացաւ զքեզ
* արար զքեզ և ըս
տեղծ զքեզ:

Յուշ լիցին քեզ աւ
ուրքն յաւիտենից *
իմացարուք զամս
յազգաց մինչև
յազգս:

Հարցջիր դուցհարս
քո, և պատմեսցեն
քեզ * ցծերս քո և
ասասցեն քեզ:

Իժամանակի յորժամ
բաժանեաց բարձր

եալն զազգս ամ̃* և
որպէս սփռեաց նա
զորդիսն ադամայ ։

Կացոյց զսահմանս
հեթանոսաց, ըստ
թուոյ հրեշտակացն
աստուծոյ ։

Եղև բաժին տ̃ն ժո
ղովուրդ իւր յակոբ
* և վիճակ ժառան
գութ̃ե իւրոյ իս
րայէլ ։

Բաւական եղև նմա
յանապատի * 'ի ծա
րաւ տօթոյ յանջրդ
ւոջ պաշտպանեաց
զնա ։

Խրատեաց զնա և
պահեաց որպէս զբիբ
ական * ոպ̃ զարծուի
'ի թևս իւր ընկալաւ
զնա * և ոպ̃ ի վեր ձա



նեց ազգերն սէնէարայ դաշտումն
յետ ջրհեղեղին * և թէ ինչպէս
տարածեց և սփռեց ադամայ որ
դիքն երկրիս վերայ, և զցեղ իւր
հարազատ որդւոց նման նախախ
նամեց ։

Այսինքն, թէ ինչպէս զանազան
հեթանոսաց ազգերին չափ և սահ
մանք դրեց ա̃յ հրեշտակներն պա
կասած թուոյին դօրայ, իբր նոցա
կենաց չափն և սահմանքն այնչափ
երկարեց, մինչև որ 'ի նոցանէ բա
րի և ընտիր մարդիք դուրս գային,
և անկած հրեշտակաց տեղն ժա
ռանգէին, և ա̃յ հրեշտակաց
թիւն լցուցանէին ։

Այսինքն, բայց այնչափ ազգերի
մէջն միայն յակոբայ ազգն իւրն
բաժին ընտրեց * և իսրայէլի
ազգն իւրն վիճակ և ժառանգու
թի̃ անկաւ, իբր հրէից ազգն ։

Այսինքն, քառասուն տարի յա
նապատումն նորա կարիքն լցոյց *
և այն սաստիկ ջերմ և տօթ ժամա
նակին ջուր չէ գտված տեղե
րումն, զինքն խնամեց և պահպա
նեց, յագեցոյց և արբեցոյց, և
ամ̃ բարեօք առատացոյց ։

Այսինքն, խրատեց զինքն զանա
զան օրինօք և պատուիրանօք, և
պահեց իւր աչքի բիբին նման 'ի
զանազան փորձանաց * և արծվի
նման իւր թևերի վերան առեց

զինքն,

զինքն , և շուրջ ածեց յերկրէ երկիր * և իւր ձագերի նման գութք և խնամք տարաւ , սիրեց և կերակրեց զինքն , և պահեց 'ի ձեռաց թշնամեաց և ատելեաց իւրոց :

Այսինքն , իւր թևերն փռեց և տարածեց , և սիրով ընդունեց զնա * և իւր քամակին վերայ բարձաւ , և բերաւ 'ի տեղ հանգիստ իբր 'ի յերկիրն աւետեաց յերուսաղէմ և զիւր խնամքն միշտ նր վերայ պահեց :

Այսինքն , միայն տր ած ստեղծօղն երկնի և երկրի նոցա ճանապարհ ցոյց կուտայր և կու առաջնորդէր * և այլ որիշ կռապաշտից օտար և սուտ ած չի կայր նոցա հետ , որ կարծէին թէ նա զիւրեանք կու նախախնամէր :

Այսինքն , տարաւ զիւրեանք նոցա երկրի բերքերին և բարութեանն տէր և ժառանգորդ արաւ * և կերակրեց և յագեցոյց զիւրեանք նոցա շինած և սերմանած արտերի պտուղներովն :

Այսինքն , քարէն մեղր ծծել տվեց իւրեանց , իբր ած քարէ տախտակներովն իւր օրինաց և պատուիրանաց քաղցրութիւնն իմացոյց նց * և ապառաժ քարէն իւղ իմացոյց նց , իբր նոյն քարէ տախտակներովն զիւր արդարու



դուց իւրոց դթացաւ :

Տարածեաց զթևս իւր և ընկալաւ զնա * և բարձեալ բերէր զնա 'ի վր միջնողաց իւրոց :

Տր միայն ածէր զնս * և ոչ գոյր ընդ նս ած օտար :

Նած եհան զնոսա 'ի զօրութիւն երկրի * և կերակրեաց զնս արդեամբ անդաստանաց :

Դիեցոյց նց զմեղր 'ի վիմէ * և զիւղ յապառաժ վիմէ :

Իւղ կովուց և կթն մաքեաց * ճարպով հանդերձ խոյոց, որթուց ցլուց և նոխազաց :

Ը պարարտութիւն երիկամանց ցորենոյ * և զարիւն խաղողոյ ըմպէին գինի :

Եկեր յակոբ և յագեցաւ * և անդուշեաց սիրելին :

Գիրացաւ, ստուարացաւ, լայնացաւ * եթող զՏր Ած զարարիչ իւր * և յետս եկաց յԱյ փրկչէն իւրմէ :

Բարկացուցին զնա օտարատիւք իւրեանց



թիւն և ճշմարտութիւն նց հասկացոյց, և ապառաժ կանէ քարէ տախտակներին, վասն մովսիսական օրինաց և պատուիրանաց դժուարութիւն ցուցանելոյ և յայտնելոյ նց :

Այսինքն, և երբ որ զՈվգ թագաւորն բասանու մատնեց Ած 'ի ձեռս իսրայէլացւոց, նորա երկրի կովերի իւղովն ոչխարների կաթովն * ղոչերի հորթուկների, եզների, և այծերի ճրադուովն կերակրեց զիւրեանք :

Այսինքն, նորա արտերի պարարտ շարմաղած հացն կերաւ * և նորա այգեստանեաց պատուական խաղողի կարմիր գինին խմեց և Այ օրէնքն և պատուիրանքն մոռացաւ :

Այսինքն, և երբ որ կշտացաւ յակոբ, իբր յակոբ նահապետի զարմն * ըսկսաւ ընդդէմ իւր ըստեղծողին անհնազանդ ջորու նման աքացի տալ, այն որ յառաջ Այ սիրելի և անդրանիկն էր :

Այսինքն, չէրէ գիրացաւ հաստացաւ և լայնացաւ, իբր թէ մեծացաւ զօրացաւ * և բացթողեց զիւր արարիչ Ածն * և իւր փրկող և ազատող Այ օրինացն և պատուիրանացն հեռացաւ :

Այսինքն, ուստի ասաց Ած, թէ բարկացուցին զնա դոքա իւրեանց

օտար

օտար ածներովն * և իւրեանց կուռքերովն զնա դառնացուցին, և զայրացուցին, և 'ի նախանձ շարժեցին ։

Այսինքն, Թողին զած և դեւերի մատաղներ և պատարագներ մատուցին * այնպէս կուռքերին երկրպագութիւն արարին, որ ամենևին չէին գիտեր * զէրէ նոր էին և այն մօտ ժամանակներումն գըտած կուռքեր էին, որ իւրեանց հարքն և պապերն բնաւ չէին ճանաչեր ։

Այսինքն, Թողին զիւրեանց ածն որ զիւրեանք ըստեղծեր էր, և հօր նման աշխատանօք ծներ էր * և մոռացան զած, որ այն չափ տարի զիւրեանք յանապատումն կերակրեր էր ։

Այսինքն, զայս տեսանելով ըստեղծօղն ած նախանձեցաւ * զայրացաւ և սրտմտեցաւ նոցա որդւոցն և դստերացն և նոցա զարմին և զաւակին վր, և ասաց ահ տալով ։

Այսինքն, ես զիմ երեսս դարձուցանեմ 'ի դոցանէ, երբ զիմ ածային խնամքս բառնամ 'ի դոցանէ, և բացթողում զիւրեանք * և ցոյց տամ, թէ որ չափ փորձանք և պատուհաս պիտի հանդիպի դոցա յետին ժամանակն, թէ 'ի ձեռն հռոմայեցւոց իշխանացն





* և կռովք իւրեանց դառնացուցին զնա ։

Զոհեցին դիւաց, և ոչ այ * դիցն զորս ոչ գիտէին * նորք և առժամայնք, զորս բնաւ ոչ ճանաչէին հարք նոցա ։

Թողին զած որ ծնաւ զնոսա * մոռացան զած, որ կերակրեաց զնոսա ։

Ետես տր և նախանձեցաւ * և սրտմտեցաւ իվր ուստերաց և դստերաց նոցա և ասէ ։

Դարձուցից զերեսս իմ 'ի նոցանէ * և ցուցից նոցա, զինչ լինելոց իցէ յապայ ժամանակի ։

Զի ազգ մի թիւրք
են նոքա * և որդիք
անհաւանք * նոքա
նախանձեցուցին զիս
'ի չաստուածս իւր
եանց * և դառնա
ցուցին զիս 'ի կուռս
իւրեանց։
Արդ և ես նախան
ձեցուցից զնո՞ յազգ
անպիտան * և անմ
տիւ ազգաւ զկծե
ցուցից զնոսա։

Տունք. 30.



և թէ 'ի ձեռն օտար այլազգեաց։
Այսինքն, զէրէ այդ ազգդ ծու-
ռած ազգ մի է՛ * և դոքա որ կան
անհաւան և կամապաշտ զարմի
ծնունդք են * դոքա զիս նախան
ձեցուցին իւրեանց սուտ ա̃ծնե
րովն * և զիս դառնացուցին և
զայրացու ցին իւրեանց կռքե
րովն 'ի սկզբանէ մինչև ցայսօր։
Այսինքն, ես այլ զդոսա նախան
ձեցնեմ կռապաշտից և հեթանո
սաց անպիտան ազգերն յառաջ
քաշելով * և անմիտ և տգէտ
ազգերով զդոսա կսկծացնեմ և
կատաղացնեմ, իբր դէրի չինեմ
զիւրեանք իմէջ զանազան ազ
գաց, և տնազատեղ անեմ աշ
խարհիս վերայ։



Տուք փառս Տեառն տուք զօրհնութիւն մարդասիրին Թագաւորին յաւիտենից, որ փրկէ զծառայս իւր և կեցուցանէ: Մարդասէր Տէր վասն ողորմութեան:

Քարոզ երկինք պատմենին և տէր ապաւինենին:

Վասն ՚ի գիշերի և ՚ի տուընջեան և յամ ժամու խօսել մեզ զբան Տեառն, զՏէր աղաչեսցուք:
Վասն չանկանելոյ մեզ ՚ի փորձութիւն, որում ոչ կարեմք համբերել, զՏէր աղա:
Վասն անբիծ և անդատապարտ կալոյ մեզ, առաջի ահեղ ատենին Քրիստոսի, զՏէր աղ:
Վասն առաջնորդելոյ մեզ ՚ի նաւահանգիստն կենաց անվախճանից, զՏէր աղա:
Վասն արժանի լինելոյ մեզ վերին կոչմանն և երկնից արքայութեանն, զՏէր աղա:
Վասն հոգւոյն: Նաև ևս և վն: Զանձինս: Ողորմեա:

՚Ի գիշերի և ՚ի տուընջեան և յամ ժամու զքեզ աղաչեմք և ՚ի քէն խնդրեմք մարդասէր Տէր: Լուր մեզ Տէր փրկիչ մեր, խոնարհեսցի ունկն քո ՚ի խնդրուածս մեր, զի մի ունայն լիցին վաստակք ծառայից քոց: Այլ համարեաց զաշխատութիւնս մեր ՚ի գործ արդարութեան և ՚ի պտուղ աստուածպաշտութեան: Ընկալ զաղօթս և զերկրպագութիւնս մեր, և հասո մեզ զողորմութիւն քո առատապէս: Ծածկեա զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյ քոյ: Զօրացո զմեզ Տէր զօրութեամբ սրբոյ հոգւոյդ, պահեա զմեզ որպէս բիբ ական: Նաև արա առ մեզ զնշան բարի, ՚ի գովեստ և ՚ի փառաբանութիւն անուանդ քում սրբոյ: Զի ՚ի քո փառս կատարի, Տէր արարածոց մշտնջենաւոր փառաբանութիւն ՚ի բարձունս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ. այժմ, և միշտ, և յաւիտեանս յաւիտենից: Ամէն:

# Խաղաղութիւն ամենեցուն ։

Հովիւ քաջ հովիւ բարի և յաւիտենական ։ Նայեաց և այց արա՛ բանաւոր հօտի քում, զոր ժողովեցեր առ քեզ գթութեամբ քով ։ Զի քո առաջի կամք մ̄ր, և առ 'ի քէն ողորմութեանցն և գթութեանցն ակն ունիմք ։ Զամենեսեան օրհնեա՛ զամենեսեան խնամատանացո՛, զամենեսեան լուսաւորեա՛, և ամենեցուն պարգևեա՛ զերկնից արքայութիւնդ ։ Վասն զի դու ես տ̄ր կենաց, և ա̄ծ ողորմութեան, և քեզ վայել է փառք իշխանութիւն և պատիւ․ այժմ, և միշտ, և յաւիտեանս յաւիտենից ։ Ամէն ։ 'Ի գիշերի և 'ի տուընջեան, և յա̄մ ժամու անդադար փառաւորեմք զՀայր, և զՈրդի և զՍուրբ Հոգին․ այժմ, և միշտ, և յաւիտեանս յաւիտենից ։ Ամէն ։







Իբր զայս սաղմոս ինքն Դաւիթ
է ասացեր:
Այս սաղմոսուն կու մխիթարէ մարգարէն բարի և խեղճ մարդիկն որ երբոր կու տեսանեն չար մարդկանց աջողութիւնն չի յուսահատին:



Այսինքն, մի՛ նախանձիր և մի՛ ցանկանար չարագործ մարդկանց փառացն և մեծութեն և աջողութեն * և մի՛ հետևիր այնպիսի անխղճմտանք մարդկանց, որ աշխարհիս վերայ անօրէնութի և ամբարշտութի կու գործեն:
Այսինքն, զէրէ նոցա մեծութիւն և փառքն շուտով կու փչանայ և խոտի նման կու ցամաքի * և նոցա



Սաղմոս Դաւթի:

Սաղմոս. ԼԶ.



Մի՛ նախանձիր ընդ չարս * և մի՛ ընդայ նոսիկ որք գործեն զանօրէնութի:

Զի որպէս զխոտ վաղվաղակի ցամաքեսցին * որպէս դդալարն խո

տոյ փաղփաղակի անկ ցին ։

Յուսա՛ 'ի տ̃ր և արա՛ զքաղցրութ̃ի * բնակեաց յերկրի * և հովուեսցիս 'ի մեծութ̃ե նորա ։

Զ· տեա՛ 'ի տ̃նէ , և նա տացէ քեզ զխնդրուա՛ծս սրտի քոյ * յայտնեա՛ առաջի տ̃ն զճանապարհ քո և յուսա՛ 'ի նա ։

Ե · 'ի նա արասցէ * և հանցէ ո̃պ զլոյս զարդարութ̃իս քո * և զիրաւունս քո ո̃պ զօր հասարակ ։

Հնազանդ լեր տ̃ն , և ծառայեա՛ նմա * և մի՛ նախանձիր ընդ

փայլչութ̃ին դալար խոտի նման շուտով երբոր մահուան տապ նայն կու հասանի փայր կու ան կանի և կու ոչնչանայ ։

Այսինքն , յուսա՛ դու յա̃ծ , և քաղցրութիւն արա՛ , իբր ամենե ցուն սէր և գութք և խոնարհութիւն նշանց տուր * բնակիր միշտ այս երկրումն իւր սուրբ եկեղեցւոյ միջումն * որ ա̃յ մեծութ̃են իբր շնորհօքն և ողորմութեամբն ապրիս և կերակրիս քոյ կենաց մէջն ։

Այսինքն , ինչ բարի խնդրի որ կու ցանկաս , յա̃յ խնդրէ , որ նա քո սրտիդ խնդրուածքն 'ի բարին կատարէ * քոյ մտացդ դիտաւորութ̃ին ա̃յ առաջեն յայտնի արա՛ , և յուսացիր և ապաւինիր 'ի նա , որ նա քեզ հոգեկան և մարմնական աջողութ̃ի պարգևէ ։

Այսինքն , զէրէ նա կու հոգայ և կու պահապանէ զքեզ * և քո արդարութ̃իդ և շիտակութ̃իդ և քո մեկնութ̃իդ կու հանէ և յայտնի կանէ աշխարհի * և քո իրաւունքդ և անմեղութ̃իդ կէսօրվան նման ա̃մ մարդկանց առաջեն կու պայծառացնէ , և զքեզ գովութ̃ե արժանի կանէ ։

Այսինքն , դու միայն հնազանդ դիր ա̃յ , և իւր ս̃բ պատուիրանքն կատարելով նորա ծառայութ̃ի

արա՛

տրա՛ և մի՛ նախանձիր այն մարդկանցն որ խուրեանց չար գործքն և անամօթ արարմունքն յայտառակ և տնազ է դարձած աշխարհիս վերայ * Իբր այնպէս մարդկանց, որ միշտ անօրէնութիւն և անիրաւութիւն գործելոյ յետնէ են ։

Այսինքն, դադարիր քո բարկութենէդ, և հանգչիր քո նեղսրտութենէդ * և մի՛ նախանձիր այնպէս մարդկանց որ բարկութե յետնէ անկանելով առաջի այ և մարդկան ատելի կուլինին, և զխուրեանց հոգին կուդատապարտեն ՚ի դժոխս ։

Այսինքն, զերէ այնպէս կատաղած չար մարդիկն շուտով կուսատակին և կուկորնչին * բայց այնպիսիքն որ այ կամացն հնազանդելով ամ փորձութենց կուհամբերեն, նոքա չէ՛ թէ միայն զայս երկիրս, այլև զերկնից արքայութիւն կուժառանգեն, և յաւիտենական փառացն արժանի կուլինին ։

Այսինքն, մէկ կարճ ժամանակ մի է՛ անօրէն և ամբարիշտ մարդոյ կենաց ժամանակն այս աշխարհիս վերայ, և յետոյ անյայտ կուլինի և չի՛ երևիր * և թէ խնդրես, չէ՛ թէ միայն զինքն, այլև զխուր տեղն և զյիշատակն այլ չես գտաներ ։





այնոսիկ որոց առակեալք իցեն ճանապարհք խուրեանց * ընդ մարդոյ որ գործէ զանօրէնութիւն ։

Լուեա՛ ՚ի բարկութէ, և հանգիր ՚ի սրտմտութէ * և մի՛ նախանձիր ընդ չարս ։

Զի չարք վաղվաղակի սատակեսցին * բայց որք համբերեն տն նք ժառանգեսցեն զերկիր ։

Փոքր մի ևս, և այլ ոչ իցէ ամպարիշտն * խնդրեսցես զտեղի նորա և ոչ գտցես ։

Այլ որք հեզքն են՝ նոքա ժառանգեսցեն զերկիր * և փափկասցին ի բազում խաղաղութե՟ն իւրեանց։

Սպասէ մեղաւորն արդարոյ * և կրճտէ 'ի վերայ նորա զատամունս իւր * այլ Տ՟ր ծիծաղեսցի զնովաւ։

Քանզի յառաջագոյն տեսանէ * զի հասեալ է օր նորա։

Սուր հանին մեղաւորք, և լարեցին զաղեղունս իւրեանց * հարկանել զաղքատն և զտնանկն * սպանանել զայն որ խոնարհն է սրտիւ։

Սուրք նց՟ մտցեն 'ի սիրտս նոցա * և աղեղունք նց՟ փշրեսցին։

Այսինքն, բայց նոքա որ հեզ և խոնարհ են, չէ թէ միայն զերկնից արքայութիւն կու վայելեն, այլ և զայս երկիրս կու ժառանգեն * և հոգւով և մարմնով միշտ խաղաղութե՟ն միջումն հեշտանալով կու հանգստանան ա՟յ տուած բարեաց միջումն։

Այսինքն, մեղաւոր և անօրէն մարդն չար սրտով կու նայի դէպ 'ի արդար մարդն * և առիւծի նման ատամներն կու սրէ և կու կրճրտէ նորա վերայ * բայց ա՟ծ տեսանելով նորա նենգութիւն տնազ կանէ զնա, և կու ծիծաղի նորա վերայ։

Այսինքն, զէրէ իւր ամենատես աչօքն յառաջ քան զժամանակն կու տեսանէ * որ նորա համարք տալոյ օրն հասեր է, և քիչ է մնացեր որ ա՟յ արդար դատաստանովն դատապարտուի։

Այսինքն, մեղաւոր և անխիղճ մտանք մարդկքն թրերն հանեցին, և իւրեանց աղեղներն լարեցին * որ զարկեն և վիրաւորեն զաղքատն և 'ի մեծութէ անկած մարդն * և սպանանեն այնպէս մարդն, որ խեղճ և անտէր է, և խոնարհ է սրտով։

Այսինքն, բայց ա՟յ կարող զօրութե՟ն նց՟ թուրն իւրեանց սիրտն կու մտնու * և նոցա աղեղներն

կու

կուկորուիլ և կու փշրուիլ, և իւր
եանք յամօթ կուլինին։

Ա․յսինքն, լաւ է արդար մար
դոյն, քիչ ապրանքն, իբր քիչ
իքմինն որ միամիտ սրտով կու
վայելէ և կու գոհանայ զայ * քան
թէ մեղաւոր մարդկանց շատ ապ
րանքն և մեծութին, որ ամենևին
չեն կշտանար, այլ հանապազ
ագահութե մէջ կու տանջուին,
և իւրեանց ցանկութեն չեն հա
սանիր * զերէ մէկ կողմանէ այլ
այ հրամանաւն միշտ այնպս մարդ
կանց կուներն կու կոտրատուի, իբր
մեծութին և փառքն կու պակա
սի, և թերատ կու մնայ, և իւր
եանք անհանգստութե մէջ կու
չարչարուին։

Ա․յսինքն, իսկ արդար մարդկանց
չափաւոր կարիքն և պիտոյքն ած
միշտ կու աճեցնէ, և կու հաստա
տէ * և անմեղ և անարատ մարդ
կանց կեանքն և բարեգործութին
կու ճանաչէ * և գիտէ որ երկնից
արքայութե միջումն յաւիտենա
կան ժառանգութի պիտի ունե
նան արդարոց և երանելեաց
հետ։

Ա․յսինքն, չեն ամաչեր այնպէս
արդար և բարի մարդիքն փորձա
նաց և նեղութե ժամանակին *
և սով եղած օրերն, իբր հալածա
նաց ժամանակին ընաւ երկնային

մխի



Լաւ է սակաւիկ ինչ
արդարոյ * քան զբա
զում մեծութի մե
ղաւորաց * և բա
զուկք ամբարշտաց
խորտակեսցին։

Հաստատէ տր զար
դարս * և ճանաչէ
զաւուրս ամբծից *
ժառանգութիւն
նց յաւիտեան
եղիցի։

Ո՛չ ամաչեսցեն նք
՚ի ժամանակս չարու
թե * այլ յաւուրս
սովու յագեսցին։

Ահա՛ մեղաւորք կո
րիցեն * այլ թշնա
միք տ՟ն 'ի փառաւո
րել և 'ի բարձրանալն
իւրեանց պակասես
ցին, որ՟պ ծուխ զի պա
կասի:

Փոխ առնու մեղա
ւորն և ո՛չ հատուցա
նէ * այլ որ արդարն
է՛ ողորմի և տայ:

Որք օրհնեն զնա
ժառանգեսցեն զեր
կիր * և որք անիծա
նեն, սատակեսցին 'ի
նմանէ:



մուխթարութենէն քաղցած չեն
մնար, այլ ա՟յ ողորմութե՟ն և շնոր
հօքն միշտ կու կերակրին, և կու
կշտանան հոգւով և մարմնով:
Այսինքն, և մեղաւոր մարդիկն
ա՟յ պատուիրանաց հացէն, և ա՟յ
շնորհաց ջրէն քաղցած մնալով
կու պատուհասվին և կու պատ
ժվին, և շուտով կու կորնչին *
այլև ա՟յ օրինաց և պատուիրանաց
թշնամիքն երբոր կու ըսկսանին
փառաւորիլ և բարձրանալ, այն
ժամանակն կու պակասին, և ծխի
նման կու փչանան, և անյայտ կու
լինին:
Այսինքն, մեղաւոր և անխղճ
մտանք մարդն փոխ կառնու յայ
լոց և չի՛ ուզեր յետ տալ, կամ
ագահութե՟ համար, և կամ չա
րասրտութե՟ համար * բայց ար
դար մարդն թէ մէկ քիչ իքմին մի
այլ ունենայ, փոխ առնողին կու
խղճայ և կու հատուցանէ նմա
զիւր դրամն:
Այսինքն, ինչ մարդ որ բանիւ և
գործով կու օրհնէ և կու փառաբա
նէ զա՟ծ, նա կու վայելէ զերկիրս
և զերկնից արքայութի՟ն * և ինչ
մարդ որ կու հայհոյէ զա՟ծ, թէ
խորհրդով թէ բանիւ և թէ գոր
ծով, նա կու կործանվի և կու սա
տակի և կու ջնջվի 'ի դպրութե՟ն
կենաց:

Ա՝յսինքն, բարի մարդկանց քայլքն և գնացքն ած կու ուղղէ և կու շիտակէ * և կու ցանկայ որ իւր օրինաց և պատուիրանաց ճանապարհումն շրջին, և արժանի լինին երկնից արքայութեն :

Ա՝յսինքն, այսպէս մարդն թէ պատահմամբ գլորի այլ, իբր թէ մէկ փորձանքի մէջ, կամ մէկ ներելի մեղաց մէջ այլ անկանի, չի՛ ամենևին կործանվիր յուսահատութբ * զիրէ տր ած իւր շնորհօքն և գթութբն նորա ձեռքն կու բռնէ, և օգնական կու լինի, և կու կանգնացնէ տեղից վերայ :

Ա՝յսինքն, ես երախայ էի և ծերացայ, և բնաւ չի՛ տեսի, թէ մէկ արդար մարդ մի իւրն պէտք եղած իքմինէն կարօտ մնայր, կամ թէ իւր կարեաց պակասութեն համար մարդկանց միջումն տնաղ լինէր * և չէ՛ թէ ինքն, այլև իւր բարի զաւակն այլ չի՛ տեսի որ հաց մուրանայր :

Ա՝յսինքն, այլ մանաւանդ տեսեցի և տեսի, որ օր ըստ օրէ իւր ապրանքն այնպէս առատացաւ, որ այլոց այլ ողորմութի բաշխեց և զիւր իքմիննն փոխ տվեց * զիրէ այնպիսի բարի մարդոյ դուստր և որդիքն այ օրհնութիւնն կու ժառանգեն, և կու վայելեն :



Ի՝ տեառնէ ուղղին գնացք առն * զճանապարհս նորա նա կամի յոյժ :

Թ՝էպէտ և գայթակղեսցի, նա մի՛ կործանեսցի * զի տր ձեռն կալու է նորա :

Մ՝անուկ էի ես և ծերացայ, և ո՛չ տեսի զարդարն արհամարհեալ * և ո՛չ զաւակ նորա, թէ մուրանայ հաց :

Զ՝, որ հանապազ ողորմի, և տայ փոխ * և զաւակ նր օրհնեալ եղիցի :

Խոտորեաց 'ի չարէ, և արա զբարի * և բնակեսցես յաւիտեանս յաւիտենից 'ի նմա։

Տէր սիրէ զիրաւունս * և ոչ ընդ վայր հարկանէ զսուրբս իւր * այլ յաւիտեան պահէ զնոսա։

Անօրէնք հալածեսցին իմիասին * և զաւակ ամպարշտաց սատակեսցի։

Այլ արդարք ժառանգեսցեն զերկիր * և բնակեսցեն յաւիտեանս յաւիտենից 'ի նմա։

Բերան արդարոյ խորհի զիմաստութիւն * և լեզու նորա խօսեսցի զիրաւունս։



Այսինքն, վա որոյ հեռացիր դուն չար գործքերէն, և բարի գործէ՛ * որ յաւիտեանս յաւիտենից այ մէջն բնակիս, իբր այ շնորհաց և նախախնամութե միջոցաւ մնաս, և նորա երկնային օրհնութիւնն միշտ քեզ հետ լինի։

Այսինքն, զէրէ տր ած զիրաւունքն և դատաստանն կու սիրէ * և իւր անմեղ և սբ ծառայքն ամենևին ոտաց տակ չի՛ ձգեր * այլ յաւիտեանս յաւիտենից կու պահպանէ զիւրեանք 'ի հոգեկան և 'ի մարմնական փորձութե։

Այսինքն, անօրէն մարդիքն թէ այս կեանքումս և թէ այն կեանքումն այ երեսէն կու հալածվին միատեղ * և ամբարիշտ և անհաւատ մարդկանց զաւակն և յիշատակն կու սատակի և կու կորնչի 'ի փառս սատանայի։

Այսինքն, բայց արդար և երկիւղած մարդիքն կու ժառանգեն և կու վայելեն կենդանեաց երկիրն իբր զերկնից արքայութիւն * և կու բնակին յաւիտեանս յաւիտենից այն անմահական ուրախութե միջոցաւ։

Այսինքն, նորա համար կասեմ զայս, զէրէ արդար մարդոյ բերանն, իբր արդար մարդոյ մտաց բերանն, միշտ այ իմաստութիւն և երկիւղն կու խորհի և կու մտա

ծէ * իւր լեզուն միշտ ա՟յ իրաւունքն և ճշմարտութիւն կու խօսի ՚ի մէջ մարդկան քարոզելով և խրատելով զնոսա։

Այսինքն, զիւր ա՟յ օրէնքն և պատուիրանքն միշտ իւր սրտի միջումն կու պահէ * և ամենևին իւր քայլքն իբր իւր կենցաղավարութիւն չի՛ սխալիր, և ա՟յ կամացն չի՛ հեռանար և չի՛ մոլորիր ՚ի գիտութիւն քրիստոնէական հաւատոյ։

Այսինքն, մեղաւոր մարդն նենգութ՟ով կու հայի դէպ ՚ի արդար և անմեղ մարդն, և կուզէ թէ զնա սպանանէ և կորուսանէ * բայց տ՟ր ա՟ծ չի՛ թողուր զնա մեղաւոր մարդոյ ձեռքումն, իբր մեղաւոր մարդոյ իշխանութ՟ն տակումն * և դատաստանի օրն երբոր կու դատէ զարդարն, չի՛ դատապարտեր զնա, այլ կու պսակէ անմահական փառօք։

Այսինքն, վ՟ս որոյ ինչ փորձութի որ կու հանդիպի քեզ, ուրախ սրտով ընդունիր, և յուսով համբերէ՛ և հնազանդիր ա՟յ * և իւր օրինաց և պատուիրանաց ճանապարհն սիրով պահէ՛, և նա քո միտքդ իւր շնորհօքն կու բարձրացուցանէ, որ արժանի լինիս ժառանգելոյ և վայելելոյ զերկիրն կենդանեաց * և շուտով մեղաւոր և անօրէն մարդկանց սատա

Օրէնք ա՟յ իւրոյ, են ՚ի սրտի իւրում * և մի՛ գայթակղեսցին գնացք նորա։

Հայի մեղաւոր ընդ արդար, և խնդրէ սպանանել զնա * այլ տ՟ր ոչ թողու զնա ՚ի ձեռս նորա * և ոչ դատապարտէ զնա յորժամ դատէ զնա։

Համբեր տ՟ն * և պահեա զճանապարհս ն՟ր * և բարձր արասցէ զքեզ ՚ի ժառանգել զերկիր * և զսատակումն մեղաւորաց տեսցես։

Տեսի զամբարիշտն վերացեալ * և բարձրացեալ որպէս զմայրս Լիբանանու։

Անցի և ահա ոչ էր * խնդրեցի և ոչ գտաւ տեղի նորա։

Պահեա զանմեղութիւն * և տես զուղղութիւն * զի գոն մնացուածք առն խաղաղարարի։

Անօրէնք հալածեսցին ՚ի միասին * և զաւակ ամպարշտաց կորիցէ։

կնի և կորնչին քո աչօքդ կու տեսանես, և կու փառաւորես զԱստուած։

Այսինքն, զէրէ տեսայ ես շատ անգամ որ անօրէն և ամբարիշտ մարդն փառօք և մեծութեամբ վերացեր և բարձրացեր էր, և ամբարտաւանութեամբ զլուր քիթն ՚ի յերկինս էր հասուցեր, Լիբանանու սարի մայրի ծառերին նման, որ տերև էն ՚ի զատ այլ ոչինչ չունին։

Այսինքն, բայց մէկ քանի օրէն յետ այլ մի այն տեղովն անցկացայ։ տեսայ որ ամենևին չէր երևիր * հարցուցի շատ մարդկանց և խնդրեցի, և իւր բնակած տեղն այլ չի գտավեցաւ։

Այսինքն, ուստի դու զանմեղութիւն և զուղղութիւն միշտ քո սրտիդ մէջն պահէ * և շիտակութիւն և արդարութիւնն քո մտաց աչքին առաջևն դիր * զէրէ թէ մէկ մնացական իքմին մի կայ թէ այս կեանքումս և թէ այն կեանքումն, խաղաղութիւն սիրող մարդոյն է, ըստ այնմ երանի խաղաղարարաց, զի նոքա որդիք Աստուծոյ կոչեսցին։

Այսինքն, իսկ անօրէն մարդիկն կու հալածվին յԱստուծոյ երեսէն, և կու ցրվին, և կու փչանան իւրեանց ապրանաց և մեծութեան հետ * և անհաւատ և չարագործ մարդկանց զարմն և յիշատակն կու կորի և անյայտ կու լինի։

Այս

Այսինքն, զէրէ արդար մարդկանց փրկութիւն և փառքն ած կուտայ * նեղութե և վշտի ժամանակումն նոցա վերակացու և հովաբարձու կուլինի, և կու փրկէ զիւրեանք յամ վտանգէ։

Այսինքն, կու օգնէ նոցա և կու փրկէ զիւրեանք յամ փորձութէ * կու ազատէ զիւրեանք 'ի սատանայի ճնարագործութէն և 'ի մեղաւոր մարդկանց ձեռքէն, և կու կեցուցանէ զիւրեանց հոգին * զէրէ բոլորով սրտիւ 'ինա յուսացան և ապաւինեցան իւրեանց կենաց մէջն։

Իբր զայս սաղմոս ասաց դաւիթ ապաշխարելով զմեղս իւր, և յիշելով զշաբաթն, այսինքն զհանգիստն յաւիտենական կենաց, զի շաբաթն հանգիստ թարգմանի։

Այս սաղմոսումս կու խօսի մարգարէն վս մեղաւորաց, թէ որ չափ դժուարուԹի կու քաշեն երբ որ կու զեն դառնալ իւրեանց չար ճանապարհէն, կամ վս քի որ մեղ համար մեղաւոր անուանեցաւ 'ի մէջ անհաւատից։



Փրկութիւն արդարոց 'ի տնէ է * վերակացու է նոցա 'ի ժամանակս նեղութե։

Օգնեսցէ նոցա տր և փրկեսցէ զնոսա * ապրեցուսցէ 'ի մեղաւորաց և կեցուսցէ զնոսա* զի յուսացան 'ի նա։

Տունք. 38.

Սաղմոս դաւթի առ 'ի յիշատակէ շաբաթու։

Սաղմոս. ԼԷ.



Տ մի՛ սրտմտութե՛ քով յանդիմաներ զիս * և մի՛ բարկութե՛ քով խրատեր զիս ։

Զի նետք քո հարան յիս * և յիս հաստատեցաւ ձեռն քո ։

Ո՛չ գոյ բժշկութի՛ մարմնոյ իմոյ յերեսաց բարկութե՛ քոյ ։

Ոչ է՛ խաղաղութիւն ոսկերաց իմոց, յերեսաց մեղաց իմոց ։



Այսինքն, տ̃ր ա̃ծ մի՛ սրտնեղեր ինձ վերայ, և զիս դատաւորի նման մի՛ նախատեր և դատապարտեր * զիս քո բարկութենովդ մի՛ պատժեր և պատուհասեր, և մի՛ մասներ դժոխոց տանջանացն ։

Այսինքն, զէրէ քոյ պատուիրանաց զարհուրելի խօսքերն մտվեցան իմ սրտիս մէջն, և զիս գիշեր և ցերեկ կու տանջեն խղճմտանքի միջոցով * և քո ձեռքդ ինձ վերայ հաստատվեցաւ, իբր քո արդար հատուցումն և պատիժն, որ պատրաստեր ես մեղաւորաց համար, իմ մեղաց մէջն տպաւորվեցաւ, և զիմ հոգիս սաստիկ վախեցոյց ։

Այսինքն, քո ա̃ծային սաստիկ բարկութիւնդ և զայրացմունքդ մտածելով, այնչափ կու լամ և յոգնոց կու հանեմ, որ բոլոր մարմինս տկարացեր է և անբժշկելի է դարձեր ։

Այսինքն, իմ մեղքն և յանցանքն որ գործեր եմ, այնպէս զիս կու սարսափեցնեն և կու վշտացնեն, որ բովանդակ ոսկրտանքս տեղէն շարժեր են, և հանգստութիւն և դադար չունիմ ամենևին ։

Ա՜յսինքն, զէրէ իմ անօրէնութիւնն ջրհեղեղի նման բարձրացաւ, և զիմ գլուխս ծածկեց և անցկացաւ * և ծանր բեռան նման ինձ վերայ ծանրացաւ, ինչ զիս խղճմտանքահար արաւ։

Ա՜յսինքն, իմ հոգւոյս խոցերն որ ըստ օրէ շատանալով հոտեցան և փտեցան քոյ առաջևդ, իմ անզգամութեանն համար, և կուզեն զիս ձգել 'ի յուսահատութի̃ ճնարիւքն սատանայի։

Ա՜յսինքն, զիմ արարմունքս մտածելով սաստիկ վշտացայ և տառապեցայ, գլուխս կոր ձգեցի և խոնարհեցայ * օրն 'ի բուն իմ խղճմտութիւնս նայելով տրտում շուրջ կուգայի * զէրէ հոգիս չարչարանօք լցվեցաւ, ինչ զանազան խղճմտանքներով տանջվեցաւ * և շատ ծոմ պահելով, մարմնումս առողջութի չի՛ մնաց։

Ա՜յսինքն, սաստիկ փոշիմանելոյս խղճմտանքահար եղայ, և զիմ անձս խոնարհեցուցի * և սրտիս առած լալոյն և ողալոյն առիւծի նման կու մռնչայի զօրն 'ի բուն և հոգւոց կու հանէի։

Ա՜յսինքն, իմ սրտիս ցանկութիւնն քոյ առաջևդ յայտնի է տր̃ ա̃ծ, զէրէ կուզեմ միշտ քո ո̃ղ կամքդ կատարեմ * և իմ լացն և սուգն քեզանից ամենևին չի՛ ծածկվեցաւ։

Ա՜յս



Անօրէնութիւնք իմ բարձրացան քան զգլուխ իմ * ո̃պ զբեռն ծանր ծանրացան ի վ̃ր իմ։

Նեխեցան և փտեցան վէրք իմ, յերեսաց անզգամութե̃ իմոյ։

Տառապեցայ և խոնարհ եղէ մինչև յոյժ * զօրհանապազ տրտում գնայի * զի անձն իմ լի եղև չարչարանօք * և ո՛չ գոյ բժշկութի̃ մարմնոյ իմոյ։

Զարչարեցայ և խոնարհ եղէ մինչև յոյժ * մռնչէի առհեծութե̃ սրտի իմոյ։

Տ̃ր առաջի քո է ա̃մ ցանկութի̃ իմ * և հեծութի̃ իմ 'ի քէն ո՛չ ծածկեցաւ։

Սիրտ իմ խռովեցաւ յիս * և եթող զիս զօրութիւն իմ * լոյս աչաց իմոց, և այս ոչ եղև ընդ իս:

Բարեկամք իմ և մերձաւորք իմ առաջի իմ մերձեցան և կացին * և մերձաւորք իմ հեռի եղեն յինէն:

Բռնադատէին զիս և խնդրէին զանձն իմ որք խորհէին չար ինձ իմ * խորհեցան զանօրէնութիւն և զնենգութիւն * զօր հանապազ խորհեցան:

Բայց ես որպէս զխուլ ոչ լսէի * որպէս համր որ ոչ բանայ զբերան իւր:

Եղէ ես որպէս զմարդ



Այսինքն, իմ սիրտս իմ միջումս տրտմեցաւ և վրդովեցաւ զիմ անօրէնութիւնքն մտածելով * զօրութիւնս և կարողութիւնս հաստատ և սաստիկ վշտանալովս զիս բաց թողեց * աչացս լոյսն այլ նուազեցաւ շատ արտասուք թափելովս և այլ լոյս չի մնաց ինձ հետ:

Այսինքն, իմ երեսահանց բարեկամներն և մերձաւորքն զիմ խղճութիւնս տեսանելով եկին իմ առաջևս մօտկացան և կանգնեցան զիս այպանելով և տնազ անելոյ համար * և նոքա որ հանապազ ինձ մօտ էին, և ինձ հետ կու նստէին և կու կանգնէին, զիս բաց թողին և հեռացան:

Այսինքն, այն մարդիկքն որ ինձ վերայ չար միտք ունէին, ինձ ուժ կանէին, և կու ջէին զիմ անձս կորուսանել և փչացնել * ինձ վերայ անօրէնութեն և նենգութեն խորհուրդ արարին * և հանապազ միտք կանէին թէ զիս մէկ փորձանքի կամ մէկ ցաւի մի մէջ ձգեն:

Այսինքն, բայց ես խուլ մարդի նման որ չի լսեր ամենևին նոցա նենգաւոր խօսքերն և հայհոյանքն չի լսեցի * և մունջ մարդի նման որ բերանն չի բանար և խօսիր, բնաւ նոցա պատասխանի չի տվի:

Այսինքն, զիս այնպէս մարդի

նման

նման ցոյց տալի որ ամենևին չի լսեր * և իւր բերանումն խօսք չիկայ որ կարենայ պատասխանի տալ։

Այսինքն, զէրէ ես քեզ եմ յուսացեր տր ած * և կուխնդրեմ որ դու ինձ լսես, և ինձ օգնական լինիս, և փրկես զիս նորա նենգութէն։

Այսինքն, իմ խնդրուածքն այն է որ իմ թշնամիքն ինձ վր չի ուրախանան և ծիծաղեն * զէրէ շուտով որ իմ ոտքս կու թեքվի, իբր շուտով որ կու տեսանեն թէ ես մէկ փորձութե մէջ կու անկանիմ կու ըսկսնուն ինձ վերայ ամբարտաւանութբ մեծ մեծ խօսիլ։

Այսինքն, ես այս աշխարհիս վր ամէն տանջանքի և վշտի և նեղութեան պատրաստ եմ, միայն թէ դու զիս յաւիտենական տանջանացն չի՛ մատնես * և իմ մեղաց և անօրէնութե ցաւն հանապազ իմ աչքիս առաջևն է, որ զիս կու հալէ և կու մաշէ։

Այսինքն, ես զիմ անօրէնութիս քեզ պատմեմ և խոստովանիմ իմ կամաւս և յօժարութբս * և հոգամ քո շնորհօքդ ազատել զիս իմ մեղացն և իմ անօրէնութեցն ՚ի ձեռն խոստովանութե։

Այսինքն, բայց իմ թշնամիքն դեռ կենդանի են, և զօրեղացեր

են

որ ոչ լսէ * և ոչ գոն խօսք ՚ի բերան նր։

Եւ ՚ի քեզ տր յուսացայ * և դու լուիցես ինձ տր ած իմ։

Ասացի թէ մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ * ՚ի սասանիլ ոտից իմոց ի վր իմ մեծամեծս խօսեցան։

Եւ ՚ի տանջանս պատրաստ եմ * և ցաւք իմ առաջի իմ են յամ ժամ։

Զանօրէնութիս իմ պատմեցից * և հոգացայց վս մեղաց իմոց։

Իսկ արդ թշնամիք իմ կենդանի են, և

զօրացեալք եղեն քան զիս * և բազումք են ոյք ատեն զիս տարապարտուց:

Ոյք հատուցին ինձ չար փոխանակ բարւոյ չարախօսէին զինէն * զի ես երթայի զհետ արդարութե:

Մի՛ թողուր զիս տր ած իմ, և մի՛ բացեայ առնիր յինէն * հայեաց յօգնել ինձ տր փրկութե իմոյ:

Տունք . 21.

՚Ի կատարած ՚ի դիթումայ Սաղմոս դաւթի:

Սաղմոս . ԼԸ:

Ասացի թէ պահե



են և ուժովացեր են քան զիս * և նոքա որ փուչ և անիրաւ տեղ զիս կու ատեն, խիստ շատ են, և խիստ նենգաւոր են:

Այսինքն, այն մարդիկն որ փոխանակ իմ բարերարութեն ինձ չար կու հատուցանէին, զիս կու բամբասէին, և ինձանէ վատ կասէին * զէրէ իմ միտքն և դիտաւորութիւն այն էր, որ միշտ արդարութե և շխտակութե յետևէ գնայի, և ամենեցուն հետ խաղաղութե կենայի:

Այսինքն, ուստի կաղաչեմ զքեզ տր ած, զիս քո ձեռացդ բաց մի՛ թողուր, և ինձանից մի՛ հեռանար * այլ հայիր դէպ ինձ, և ինձ յօգնութի հասիր, զէրէ դու իմ փրկութե, և ազատութե տրն ես, և ածն ես:

Ի դիթում, անցումն կամ անցաւոր թարգմանի զի զայս սաղմոսս ասաց դաւիթ ցուցանելով թէ վայելչութի և փառք աշխարհիս ընդունայն է և անցաւոր:

Այս սաղմոսումս կու խօսի մարգարէն մարդկային լեզուն զգուշացնելոյ համար, և ցոյց տալոյ համար, թէ ինչպէս խեղճ է մարդոյս կեանքն աշխարհիս վր:

Այսինքն, ասացի իմ մտաց մէջն





Թէ զիս պահեմ ՚ի վատ սովորու-
թեանց, և զգուշ կենամ ՚ի չար
գործքերէն * որ չի՛ լինի թէ լե-
զուովս մեղանչեմ թէ զիս որ
դարացնելով, և թէ զայլս անիծա-
բանելով, և բամբասելով:
Այսինքն, քո աջն և երկիւղն իմ
բերանիս փակ և պահապան դիր *
երբ որ երբեմն մեղաւոր և անի-
րաւ մարդիք հակառակեցան իմ
առաջևս և զիս ոչինչ տեղ բարկա-
ցուցին և զայրացուցին, և կու-
զէին մեղաց տեղ անել:
Այսինքն, սուս կացայ անիրաւ
մարդկանց առաջևն, և զիս խո-
նարհեցուցի և տգէտ ցոյց տվի *
լռեցի ՚ի բարի և ՚ի խրատական
խօսքերէն, և պատասխանի չի՛
տվի, նց̃ չարասրտութե̃ կամապաշ-
տութե̃ և անարժանութե̃ն համար
* և իմ սրտիս ցաւն նորվեցաւ նց̃
հոգւոյ կորուստն տեսանելով:
Այսինքն, սաստիկ նեղանալոյս
սիրտս փորիս մէջն տաքացաւ և
կեծացաւ * և իմ խորհրդոյս և
մտացս միջումն սիրոյ կրակն վա-
ռեցաւ և բորբոքեցաւ, և այլ-
վի նց̃ փրկութե̃ն համար աղօթք
արարի, որ ա̃ծ նոցա արարմունքն
մեղք չի՛ համարի:
Այսինքն, այն տրտմութե̃ մի-
ջումն խօսեցայ լեզուովս և ասա-
ցի, թէ տ̃ր ա̃ծ, իմ կատարածն





ցից զճանապարհս իմ
* զի մի մեղայց լե-
զուաւ իմով:

Դիր պահապան բե-
րանոյ իմոյ * ՚ի հակա-
ռակել մեղաւորին
առաջի իմ:

Լուռ եղէ և խոնար-
հեցայ * լռեցի ՚ի բա-
րութէ * և ցաւք իմ
նորոգեցան յիս:

Ջեռաւ սիրտ իմ
՚ի փորի իմում * և
՚ի խորհուրդս իմ վա-
ռեցաւ հուր:

Խօսեցայ լեզուաւ
իմով և ասացի, ցոյց
ինձ տ̃ր զկատարած-

իմ * և զթիւ աւուրց իմոց քանիօն է * զի գիտացից թէ որչափ ինչ պակասեալ է յինէն ։

Ահա չափով եդիր զաւուրս իմ * և կարողութն իմոյ ոչ ինչ է առաջի իմ * սակայն ամենևին ընդունայն է ամ մարդ մնեղի ։

Ապաքէն ոպ 'ի պատկերի շրջի մարդ * սակայն 'ի զուր խռովի * գանձէ և ոչ գիտէ ում ժողովէ ։

Իսկ արդ ով է համբերութի իմ թէ ոչ դու տր * կամ կարողութն իմոյ թէ ոչ 'ի քէն ։



ինձ ցոյց տուր, իբր իմ կենաց վերջն ինձ նշանց տուր * իմ օրերիս թիւն ինձ իմացուր թէ քանի է * որ գիտենամ թէ որ չափ է պակասեր, և որչափ է մնացեր, որ ես այս վշտէս և տառապանքէս ազատիմ, և գնամ հանգչիմ 'ի յերկիրն կենդանեաց ։

Այսինքն, դու զիմ օրերս կարճացուցեր ես, և չափով ես դրեր * և իմ զօրութիս և կարօղութիս այնպէս է ինչպէս ոչինչ իմ առաջևս * և յայտնի կու տեսանեմ, որ ամենևին հողեղէն մարդն փուճ է, և իւր ընդունայն ջանքն և աշխատանքն անշահ է, և վերջ չունի ։

Այսինքն, ճշմարիտ է որ մարդս այ կերպարանքումն և պատկերքումն է ստեղծվեր և շուրջ կու գայ * բայց իւր պատիւն չի իմանալով անշահիքմըններին վր փուճ տեղ կու տրտմի և կու խռովի * միտքն և գիտաւորութիւն այն է որ, իւր գանձն ինչն և ապրանքն շատացնէ և պահէ, և չի միտք աներ, թէ ում համար կու ժողովէ զայն ։

Այսինքն, բայց այժմ այս իմ տրտմութես միջումն իմ համբերութին և յոյսն ով է եթէ ոչ դու * կամ թէ իմ զօրութես կարօղութին, իբր իմ մեծութին և

փառքն ումիցէ՛ եթէ ո՛չ քեզա
նից տ̃ր ա̃ծ ։

Այսինքն, դու զիս իմ ամէն մեղացն և անօրէնութեացն փրկեցեր և ազատեցիր * զերէ նց պատճառովն զիս անզգամ և անխղճ մտանք մարդկանց առաջևն անարգ և ծաղր արարիր ։

Այսինքն, ես այնչափ տառապանաց միջումն մունձ կացայ և ամենևին բերանս չի՛ բացի * զերէ գիտէի որ դու արարիր, իբր գիտէի որ դու զիս իմ մեղացն համար այն փորձանքներին մատնեցիր, որ զիս խրատէիր և զգուշացուցանէիր ։

Այսինքն, ուստի կաղաչեմ զքեզ որ այժմ ևս դու ազատես զիս իմ նեղութեէս և չարչարանքէս * զերէ քո ա̃ծային ձեռացդ զօրութենէն, որ զիս իմ մեղացն համար տանջել և խրատել կուզէ, ես ՚ի յուժէ և ՚ի կարօղութէ անկայ և պակասեցայ ։

Այսինքն, գիտեմ որ դու ըզմարդն միշտ իւր մեղաց և անօրէնութեն համար յանդիմանելով և նախատելով պատժեցիր և խրատեցիր * և իւր անձն սարդի ոստայնի նման, իբր գործարարի գործին նման մաշեցուցիր և բարակացուցիր * բայց յիշէ՛ տ̃ր ա̃ծ որ ամենայն մարդ մահկանացու սխա

Յա̃մ անօրէնութէ իմմէ փրկեցեր զիս * և նախատինս անզգամաց արարեր զիս ։

Լուռ եղէ և ո՛չ բացի զբերան իմ * զի դու արարեր ։

՚Ի բաց արա՛ յինէն զտանջանս իմ * զի ՚ի զօրութէ ձեռին քո ես պակասեցայ ։

Սշտամբութեամբ վ̃ս մեղաց խրատեցեր զմարդ * մաշեցեր ոպ̃ սարդի ոստայն զանձն նորա * սակայն ընդունայն է ա̃մ մարդ ։

Լուր տ՟ր աղօթից իմոց, ունկնդիր խնդրուածաց իմոց * արտասուաց իմոց մի՛ լռեր։

Պանդուխտ եմ ես առաջի քո * նշդեհ եւ անցաւոր ոպ՟ ա՟մ հարք իմ։

Թո՛ղ արա՛ ինձ զի հանգեայց մինչչեւ երթեալ իցեմ * եւ այլ ո՛չ եւս գտանիցիմ։

Տունք: 16·

Ի կատարած սաղմոս դաւթի :

Սաղմոս. ԼԹ :



Համբերելով համբերի տ՟ն * եւ նայեցաւ առ իս, եւ լուաւ



լալկան եւ ընդունայն է։

Այսինքն, ուստի կաղաչեմ զքեզ որ իմ աղօթքիս լսես, եւ իմ խնդրուածքիս ականջ անես * իմ արտասուքն որ կու տեսանես չի՛ բարկանաս, այլ 'ի գութ շարժիս ինձ վ՟ր եւ ողորմիս։

Այսինքն, զէրէ ես քո առաջեւդ ղարիպ օտար եւ անցաւոր եմ * ինչպէս ամէն իմ առաջին հարքն եւ ծնօղքն, որ զիւրեանց կեանքն վճարեցին, եւ փոխեցան յերկիրն կենդանեաց։

Այսինքն, վասն որոյ ողորմեա՛ ինձ եւ գթա՛ յիս եւ թող զիս որ սա կաւ մի հանգչիմ խաղաղութ՟ այս երկրիս վերայ յառաջ քան թէ մեռանիմ եւ վճարեմ զիմ կեանքս եւ յայս երկրէս ելանեմ եւ երթամ իմ հայրենի երկիրն * բայց թէ գնացի, այլ այս աշխարհումս չեմ գտվիր եւ չեմ երեւիր, եւ իմ յիշատակն կու բարձվի ամենեւին։

Իբր զայս սաղմոս մինչեւ 'ի վերջն դաւիթ մարգարէն է՛ ասացեալ։

Այս սաղմոսումս կու խօսի մարգարէն վասն յարութե՟ն ք՟ի, եւ վասն մարդեղութե՟ նորա։

Այսինքն, հաստատուն յուսով երկար համբերութ՟ համբերեցի եւ յուսացայ յիմ հայրն ա՟ծ * եւ

ինչ

ինչ որ ուղիղ սրտիւ խնդրեցի նո
րանէ առի, զէրէ հայրական սիրով
նայեցաւ դէպ յիս, և իմ աղօթ
քիս և աղաչանքիս ականջ արեց,
և ինձ յօգնութի̅ հասաւ։

Այսինքն, զիս հանեց տառապա
նաց հորէն, իբր զիմ հոգիս փա
ռօք և պատուօք հանեց 'ի դժոխ
քէն * և ազատեց 'ի ցխէն և ձմ
ձմայէն, իբր զիս կենդանացոյց և
յարոյց 'ի դերեզմանէն։

Այսինքն, զիմ ոտքերս պնտեց և
ամրացոյց քարի վերայ, իբր զիս
անմահութեան յուսով հաստա
տեց, որ այլ չեմ մեռանիր և մահն
այլ ինձ չի' կարեր տիրեր * և զիմ
քայլքս ուղղեց իւր ա̅ծային զօ
րութե̅ն դէպ 'ի յերկինս, վերա
փոխելով զիս 'ի փառս անմահա
կանս։

Այսինքն, իմ բերանս նոր օրհ
նութիւն դրեց, իբր զիմ մարդ
կային և ծառայական կերպա
րանքս իւր շնորհօքն այնպ̅ փառա
ւորեց, որ այսուհետև ծառայի
նման ո̅ր և ա̅ծ ասելով միայն
չէ' օրհնեմ զինքն, այլ և երկնային
հայր կոչելով զնա փառաբանեմ
* և միշտ ա̅ծային օրհնաբանու
թի̅ և գովութիւն մատուցանեմ
նմա։

Այսինքն, շատ մարդիք այս զար
մանալի և ըսքանչելի հրաշքս տե

աղօթից իմոց։

Եհան զիս 'ի գբոյ
տառապանաց * 'ի
կաւոյ և 'ի տղմոյ։

Հաստատեաց 'ի վ̅ր̅
վիմի զոտս իմ * և ուղ
ղեաց զգնացս իմ։

Եւ արկ 'ի բերան իմ
զօրհնութի̅ նոր * զօր
հնութի̅ ա̅ն ա̅յ
մերոյ։

Տեսցեն բազումք և
երկիցեն և յուսաս

ցին՛ ի տր * երանեալ է այր որոյ անուն տն յոյս է նր։

Ո՛չ հայեցաւ նա ՛ի նանրութի * և ո՛չ ՛ի մոլութի սուտ։

Բազում արարեր դու տր ած իմ զսքանչելիս քո * և խոր հրդոց քոց ոչոք է որ նմանիցի քեզ։

Պատմեցի և խօսեցայ և բազում եղեն քան զթիւս * ընդ զոհս և ընդ պատարագս ոչ հաճեցար * լսելիս հաստատեցեր ինձ * զողջակէզս և զվս մեղացն ոչ խնդրեցեր։



սանելով և լսելով կու վախենան և կու դառնան յիւրեանց չար ճանապարհէն, և յած կու յուսան * ուստի շատ երանի այնպէս մարդոյն որ երկնի և երկրի ստեղծօղ ճշմարիտ այ անուննէ յուսացեր, և ապաւիներ։

Այսինքն, և նորա հրամանացն միայն հնազանդելով, չի՛ երթար ապաւինիր կռապաշտից սուտ և խաբեբայ ածներն * և չի՛ հեշտանար աշխարհիս մոլորական և փուճ վայելչութեն։

Այսինքն, Ճշմարիտ որ շատ և զարմանալի է տր ած քո արարած սքանչելիքդ որ արարիր վս փրկութեն ազգի մարդկան * և քո ծածուկ և խորուկ խորհուրդներիդ ոչ ոք չի՛ հասանիր, և քո անչափ իմաստութեանդ ոչինչ ըստեղծեալ իմաստութիւն չի՛ նմանիր։

Այսինքն, ես քանի որ քո այդ ածային խորհրդներդ պատմեցի և խօսեցայ և քարոզեցի, այն չափ շատացան աճեցան և զթիւն անցկացան, և մանաւանդ զայն մարդկային ազգիս փրկելու խորհուրդն, որ ամենևին խելք չի՛ հասանիր * քեզ մատաղներն և հրէից պտարագներն դուր չեկաւ * այլ ինձ մարդկային կերպարանք զգեցուցիր, և ականջ հաստատե

ցիր,

ցիր, իբր հնազանդութի ուսու-
ցիր, որ ես զիս քեզ պատարագ-
մատուցանեմ * զէրէ դու վայն
սաղ այրած մատաղներն, և մե-
ղաց համար մատուցած ընծայ-
ներն չուզեցիր, այլ միայն զիս
խնդրեցիր քեզ պատարագ:

Նախինքն, ես այլ այն ժամանակն
քո կամքդ տեսանելով ասացի,
թէ ահա կու գամ 'ի մարմին առ-
նուլ * զէրէ կենաց դպրութե
գրքի գլխումն յառաջ իմ անունս
է գրած, ծննդոց գրքի առաջին
խօսքն զիս կու նշանակէ, և սաղ-
մոսի գրքի գլխումն ինձ համար
կասէ հոգին սբ, թէ երանեալ է
այր որ ոչ գնաց 'ի խորհուրդս ամ-
պարշտաց:

Նախինքն, վասն որոյ եկի յօժա-
րութբ տր ած, որ քո ածային
կամքդ կատարեմ * և քո սուրբ
օրէնքդ իմ սրտիս և մտացս մէջն
պահեմ, ըստ այնմ, այլ յօրէնս
տն են կամք նորա, և յօրէնս նր
խորհեսցի նա 'ի տուէ և 'ի գի-
շերի:

Նախինքն, ես քո արդարութիդ
և շնորհակութիդ պատմեցի և քա-
րոզեցի մեծ եկեղեցներոյ մի-
ջումն, իբր ոչ միայն հրէից, այլ
և կռապաշտից ընդհանուր ժո-
ղովքներին միջումն * և յետ իմ մա-
հուանս իմ պռնկներս և իմ բե-

րանս



Յայնժամ ասացի
թէ ահաւասիկ գամ
* 'ի գլուխս գրոց
գրեալ է վս իմ:

Առնել զկամս քո
ած իմ կամեցայ * և
զօրէնս քո 'ի մէջ որո-
վայնի իմոյ:

Աւետարանեցի զար-
դարութի քո յեկե-
ղեցիս մեծս * ահա
զշրթունս իմ ոչ ար-
գելից 'ի քէն:

Տ՟ր դու գիտացեր, զի զարդարութ՟ի քո ոչ ծածկեցի ՚ի սրտի իմում * զճշմարտութ՟ի քո և զփրկութ՟ի քո։

Ասացի և ոչ թաքուցի զողորմութ՟ի քո * և զճշմարտութ՟ի քո ՚ի ժողովրդենէ մեծէ։

Դու տ՟ր մի՛ հեռի առներ զգթութ՟ի քո * զի ողորմութ՟ի քո և ճշմարտութիւն քո յ՟ամ ժամ ընկալցին զիս։

Շուրջ եղեն զինև չարք որոց ոչ գոյր թիւ * հասին ինձ



ռանս այլ քեզանից չեմ խնայեր իբր զիմ առաքեալքն և վարդապետքն որ իմ շրթունքն են, իբր իմ պռունկներն են կողարկեմ ՚ի քարոզութ՟ի, որ քո տ՟ր անունդ բոլոր աշխարհի ծանուցանեն։

Այսինքն, տ՟ր ա՟ծ դու գիտես, որ ես քո արդարութ՟իդ և շիտակութ՟իդ չի՛ գաղեցի իմ սրտիս միջումն * և քո ճշմարիտ խոստմունքն և փրկութ՟ին որ արարիր ազգի մարդկան չի՛ ծածկեցի, այլ յայտնեցի ամենեցուն։

Այսինքն, ասացի և չի՛ գաղեցի քո ողորմութիւնդ որ մարդկային բնութեան արարիր * և քո ճշմարտութ՟իդ և հաւ՟տարութ՟իդ չի ծածկեցի մեծամեծ ժողովրդներէ, իբր թէ հրէից և թէ կռապաշտից ազգերէն։

Այսինքն, ուստի կաղաչեմ զքեզ տ՟ր ա՟ծ որ քո գութքդ ինձանից չի՛ հեռացնես, իբր իմ անդամներէս որք են հաւ՟տացեալ քրիստոնեայք * այլ մանաւ՟անդ քո ողորմութ՟իդ և քո ճշմարտութ՟իդ յ՟ամ ժամ զիս ընդունի և պահպանէ, իբր զիմ հաւ՟տացեալքս, որ ինձ հետ իբրև մի մարմին միաւ՟որեալք են։

Այսինքն, իմ հաւ՟տացելոց չորս կողմն երևելի և աներևոյթ չար թշնամիքն պատեցին, և այն

չափ

չափ շատացան, որ թիւ չունին * իմ անդամների անօրէնութիւնքն ինձ հասին և զիս պաշարեցին, և ես չորս կողմն նայեցայ և չի կարացի տեսանել զայլ ոք բաց 'ի թշնամեաց և ատելեացնոցա։

Այսինքն, իմ սխալանքն մեղքն և յանցանքն, իբր իմ անդամների մեղքն և սխալանքն քան զիմ գլխիս մազերն այլ աւելել շատացան * և քանի որ միտք կանեմ, սիրտս կու թուլանայ, իբր խղճահար կու լինիմ և կու ցաւիմ նց̃ համար։

Այսինքն, ուստի կաղաչեմ զքեզ տ̃ր ա̃ծ, որ իմ չարչարանաց և մահուան միջնորդութբ̃ն զիս փրկես * և ինձ օգնական հասանիս, իբր իմ հաւատացելոցն թէ և թիկունք լինիս։

Այսինքն, որ դուք և դիւաց պաշտօնեայքն որ կու զեն զիմ անձս, իբր զիմ հաւատացեալքս խլեն իմ ձեռացն և յափշտակեն, ամաչեն և յամօթ լինին * և յետ դառնան և կրկին ամաչեն իմ թշնամիքն, որ ինձ մ̃տ չար խորհուրդ կանեն, իբր զիմ փրկական տնօրէնութիւննն կու զեն անպտուղ անեն։

Այսինքն, և շուտով նոյն ժամանակն ամաչէն և յամօթ կրեն և անաղ դառնան այնպիսի մար

անօրէնութիւնք իմ, և ես ո՛չ կարացի տեսանել։

Բազում եղեն քան զհեր գլխոյ իմոյ * և սիրտ իմ եթող զիս։

Կամեաց տ̃ր փրկել զիս * և տ̃ր յօգնել ինձ նայեաց։

Ամաչեսցեն և յամօթ լիցին ոյք խնդրեն զանձն իմ բառնալ զնա * դարձցին յետս և ամաչեսցեն ոյք խորհին ինձ չար։

Կրեսցեն զամօթ առժամայն վարձվարակի * ոյք ասեն ինձ

վաշ վաշ ։

Ցնծասցեն և ուրախ լիցին ՚ի քեզ ամենե քեան, ոյք խնդրեն զքեզ տէր ։

Ասասցեն յամ ժամ մեծ է ած, ոյք սիրեն զփրկութի քո ։

Ես աղքատ և տնանկ եմ ած * խորհեա՛ զիս * օգնական և պաշտպան իմ ես դու ած * մի՛ յամենար ։

Տունք ․ 22 ․

՚Ի կատարած սաղմոս դաւթի ։



դիքն որ ինձ վերայ ծիծաղելով հայ թէ հայ, հայ թէ հայ կասեն, իբր հայ թէ մեր մտադրածն եղաւ կասեն ։

Մաղթինքն, ցնծան և ուրախանան բովանդակ այնպիսի մարդիկքն որ զքեզ կուզեն և կու խնդրեն տէր ած, իբր այնպիսի մարդիկքն որ կուցանկան որ քո տէ կամքդ կատարվի հանապազ ։

Մաղթինքն, և այն մարդիկքն որ քո փրկութեդ կուցանկան, իբր այն փրկութեն որ անել պիտիս ազգի մարդկան հանապազ ասեն, թէ մեծ է և օրհնեալ է ած, որ արար զայս չափ բարութիս ազգի մարդկան ։

Մաղթինքն, զէրէ դու գիտես տէր ած որ ես աղքատ և չքաւոր եմ, իբր ո՛չ աշխարհի մեծութին եմ յուսացեր այլոց նման, և ո՛չ մարդկային օգնութիւնն եմ ապաւիներ, այլ քեզ միայն * վասն որոյ զիմ խղճութիս մտածէ, իբր զիմ հաւատացելոց խղճութին միտք արա՛ * զէրէ դու տէր ած իմ օգնական և պահապանն ես * և մի՛ յետանար, այլ շուտով ինձ ՚ի յօգնութի հասիր, զէրէ իմ յոյսն և ապաւէնն դու ես ։

Իբր զայս սաղմոսս մինչև ՚ի վերջն դաւիթ մարգարէն է ասացեալ ։

Մաղ

Մայս սաղմոսաւն կու խօսի մարդարէն այնպիսի մարդկանց երանութէն համար որ կու ճանաչեն և կու սիրեն զքս ոդ զած, այլ և զվ վշտաց և չարչարանացն քի, զոր կրեաց որպէս զմարդ ։



յսինքն, երանի այնպէս մարդոյն, որ իւր ծառայական կերպարանքս նայելով, և զիմ աղքատութիւն և խղճութիւն տեսանելով չէ՛ երկմնի, այլ խորհի հաւատով, և զիս ճշմարիտ որդի այ դաւանի և խոստովանի, և իմ օրինացն և պատուիրանացն հնազանդի * զերէ իւր չար օրն, իբր իւր ամէնն նեղութեան և տառապանաց միջումն, իւր կարեաց և խղճութէ միջումն իւր մահուան ժամանակումն, և իւր գործոց համարք տալու օրն զինքն կու փրկէ և կու ազատէ իմ հայրն ած ։

Պարզեալ, քս աղքատ է՛, և աշխարհիս մէջ ով որ զաղքատն կու սիրէ զքս կու սիրէ, ըստ այնմ որ ողորմի աղքատին փոխ տայ այ, և ած զայնպիսի մարդն կու ազատէ յամ փորձանաց աստ և՛ի հանդերձելումն ։

Այսինքն, տր ած զինքն կու փրկէ և կու կեցուցանէ այս կեանքումս շնորք տալով, և այն կեան





Սաղմոս · խ·



րանի որ խորհի զաղքատն և զտնանկն * յաւուր չարի փրկէ զնա տր ։

Տէր փրկէ զնա և կեցուցանէ * երանելի առնէ զնա 'ի վերայ



երկրի * և ոչ մատնէ զնա 'ի ձեռս թշնա մեաց իւրոց։

Տր օգնական է նմա 'ի մահճիս ցաւոց իւ րոց * և զա͞մ անկո ղինս նորա դարձու ցանէ 'ի հիւանդու թենէ նորա։

Ես ասացի տր ողոր մեաց ինձ * բժշկեա զանձն իմ , ես մեղայ քեզ։

Թշնամիք իմ ասա ցին ինձ չար * երբ իցէ կի մեռցի , և կորիցէ անուն նր։

քումն փառաւորելով * զինքն երանելի կանէ այս երկրիս վերայ բարեգործութբ և առաքինու թբ իմէջ մարդկան , և կենդա նեաց երկրումն , իբր 'ի յերկինս կու վարձատրէ և կու պսակէ * և զինքն կու պահպանէ և չի թողուր որ քանի կենդանի է իւր երևելի և աներևոյթ թշնամեաց ձեռն անկանի։

Այսինքն , տր ած նորա օգնական և վերանիցու կու լինի իւր տկարու թեան տեղերի միջումն և նորա ցաւն կու թեթևացնէ * և նորա հիւանդութն և տառապանաց անկողինն , առողջութն և հան գստութն անկողին կու դարձու ցանէ և կու փոխարկէ։

Այսինքն , ես մարդկային ազգի մեղքն և պատիժն իմ յանձս առ նելով ասացի իմ երկնաւոր հօրն թէ տր ած ողորմիր ինձ * և զիմ անձս բժշկէ , իբր իմ հաւատացե լոց մեղքն և յանցանքն քաւէ , զէ րէ ես մեղանչեցի քեզ , ըստ այնմ նա զմեղս մեր բառնայ և վս մեր չարչարի։

Այսինքն , իմ թշնամի հրէայքն զիս չարախօսեցին առաջի պիղա տոսի * և փոխանակ իմ բարերար ութեն որ արարի նոցա զիս ատեցին և ասացին , թէ երբ կու լինի որ այդ մարդդ մեռանի , և իւր

անունն և յիշատակն բարձվի և կորնչի այս երկրէս ։

Այսինքն , իմ մատնիչ յուդայն կու գայր առխ և կու մատնէր 'ի տուն , որ զիմ քարոզութիւն լսէր և զիմ ըսքանչելիքն տեսանէր * և ամենևին չէր հաւատայր , և փուչ և ընդունայն բաներ կու խօսէր իւր սրտի միջումն * և զանազան նենգութիւ և խորամանկութիւ կու ճնարէր իւր մտքումն հակառակ ինձ ։

Այսինքն , դուրս կու ելանէր 'ի տանէն և այլվի այնպէս դայթակղութե խօսքեր կու խօսէր * ուստի իմ թշնամի հրէից քահանայքն և քահանայապետքն ինձանից կու տրտնջէին կու բամբասէին , և ինձ վատ կասէին ։

Այսինքն , ինձ վերայ չար խորհուրդ արարին որ զիս սպանանեն և կորուսանեն * և ինձ վերայ անօրէնութեան բան դրին , իբր զիս իւրեանց միջումն դատապարտեցին , և մահապարտ արարին ։

Այսինքն , բայց վայ նոցա յիմարութենն , մի թէ այն որ քուն կու լինի , այլ չէ՛ մի արթնանայր , իբր մի թէ այն որ իւր կամօքն և յօժարութեն կու մեռանի , այլ չէ՛ կարեր մի յառնել 'ի մեռելոց * արդ զինչ և իցէ , զայս ամէն չարիքս ինձ արարին , չէ՛ թէ վ՟ ճշմարտա

սի



Մտանէր տեսանել * զնանրութիւն խօսէր 'ի սրտի իւրում * և ժողովէր զանօրէնութիւ յանձն իւր ։

Արտաքս ելանէր և զնոյն խօսէր * զինէն շշնջէին ա՟մ թշնամիք իմ ։

Խորհեցան չար 'ի վերայ իմ * բան անօրէնութե եդին 'ի վ՟ իմ ։

Մի թէ որ ննջիցէ և այլ ո՛չ և՛ս յաւելցի յառնել * քանզի և այրն խաղաղութե իմոյ * յոր եսն յուսացայ ։

Որ ուտէր զհաց իմ
* յաճախեաց առնել
ինձ զխաբէութի ։

Այլ դու տ՟ր ողոր
մեաց ինձ * և կանգ
նեա՛ զիս , և ես հա
տուցից նոցա ։

Յայսմ ծանեայ զի
հաճեցար ընդ իս *
զի մի՛ ուրախ եղիցին
յիս թշնամիք իմ ։

Այլ զիս յամբծու
թե իմում ընկալար

սիրութե՛ , այլ վասն նախանձու
և վասն ատելութեան , զերէ այն
մարդն այլ որ ինձ ընտանի և բարե
կամ կու ձևանայր , և ինձանից
այնչափ սէր և ընդունելութի
էր տեսեր , նա և ս իւր նենգու
թե և ապաշութեն համար ինձ
ձանից երես դարձոյց * և թէ
պէտ ես նորա չար սիրան կու ճա
նաչէի , բայց կու յուսայի , թէ
լինի որ երբեմն զղջաստանայ , և
ինձ հաւատարիմ դառնայ ։
Այսինքն , այն մարդն կասեմ , որ
ինձ հետ սեղան կու նստէր , և իմ
հացս կու ուտէր * նա շարժեց և մե
ծացոյց զայս խուովութիս , և խա
բէութե համբուրիւ զիս իմ թշ
նամեաց ձեռքն մատնեց ։
Այսինքն , բայց դու տ՟ր ա՟ծ տե
սանելով զիմ խղճութիւնս ողոր
միր ինձ * և զիս ոտաց վերայ կան
գնեցուր յարուցանելով 'ի մե
ռելոց , որ ես դատաստանի օրն ,
հատուցանեմ այն կամապաշտ և
անխղճմտանք մարդկանց իւրենց
գործոցն գօրայ ։
Այսինքն , այսով կու ճանաչեմ
ես որ դու ինձ կու հաճիս , և
զիս կու սիրես * որ չի՛ թողուս որ
իմ թշնամի հրէայքն ինձ վերայ
ուրախանան և ծիծաղին ։
Այսինքն , դու իմ խնդրու
ածքս լսելով իմ թշնամիքն ամօթ

արարիր և զիս իմ անմեղութե և անարատութեն համար յարուցիր 'ի մեռելոց և ընդունեցիր * այլև զիս անմահական փառօք զարդարելով քոյ աջակողմդ բազմեցուցիր և հաստատեցիր յաւիտեանս յաւիտենից ։

Այսինքն, ուստի ես միշտ փառաբանելով զքեզ կասեմ, թէ օրհնեալ է տր ած իսրայէլի յաւիտեանս յաւիտենից * և ամ երկնային զօրութիւնք և հոգիք երանելեաց պատասխանի տան և ասեն, թէ այդպէս լինի, այդպէս լինի ։

Կորխն այն է որ 'ի հակառակիլն ընդդէմ մովսէսի, պատառեցաւ երկիր և եկուլ զնա, նորանէ մնացին երեք որդիք, իբր ասիր եղկանայ, և աբիասափ, որոց զաւակքն գոլով հմուտք երգեցողութե երգէին զսաղմոսն դաւթի առաջի տապանակին այ ։

Այս սաղմոսում կուխօսի մարգարէն, այնպէս մարդկանց համար որ յաւիտենական փառացն կուցանկանան, և կուփափաքին ։

Այսինքն, ինչպէս եղն որ է ձէյրանն իւր բնական սովորութեն երբեմն օձ կուլ կուտայ, և սաստիկ ծարաւէն աղբիւրի սառն ջրերին կուցանկայ և կուփափա





* և հաստատեցեր զիս առաջի քոյ յաւիտեան ։

Օրհնեալ տր ած իսրայէլի յաւիտեանս յաւիտենից * եղիցի, եղիցի ։

Տունք. 14

'Ի կատարած վասն իմաստութե որդւոցն կորխայ ։

Սաղմոս. ԽԱ.

Որպէս փափաքի եղջերու յաղբիւրս ջուրց * այնպէս փափաքի անձն իմ առ քեզ ած ։



և ըսպանեցին ՚ի վերայ խաչին։
Այսինքն, ես ոչ մեղք ունէի և ոչ յանցանք, որ ասէի թէ նր համար զիս դատապարտեցին, և ըսպանեցին * ես նոցա միջումն միշտ անմեղութենով շուրջ եկի և ուղիղ սրտով կենցաղավարեցայ, ես նոցա մէկ վնաս մի՛ չարարի, այլ իւրեանց հոգւոյ փրկութե ճանապարհն նշանց տվի, և քարոզեցի։
Այսինքն, վասն որոյ կաղաչեմ զքեզ տէր ած, արթնացիր և ինձ դէմ եկ, իբր շուտով ինձ յօգնութի հասիր * և տես սոցա ինձ արարած անիրաւութին, դու որ տէր ես երկնային զօրութեց, և ած ես իսրայէլացւոց, իբր դու որ մինչև ցայսօր սոցա խնամք տանելով պահպաներես քո հարազատ որդւոցդ նման։
Այսինքն, այսուհետև նայիր այց արա և խեղճ եկ զանազան հեթանոսացազգերի դարձուցանելով զիւրեանք ՚ի մոլորութենէ ՚ի գիտութի ճշմարտութե * և մի՛ ողորմիր և խղճար այս անդարձ հրէիցս որ միշտ և հանապազ անօրէնութի գործելոյ յետնէ են, ած աճանաչ ենք ասելով կուպարծենան, և քո օրէնքդ և պատուիրանքդ ոտաց տակ են ձգեր։
Այսինքն, նոքա երեկուն կու





Ո՛չ մեղք իմ և ոչ յանցանք * առանց մեղաց ընթացայ և ուղիղ եղէ։

Զարթիր ընդառաջ իմ * և տես դու տէր զօրութեց ած իսրայէլի։

Նայեաց և այց արա ած հեթանոսաց * մի՛ ողորմիր ամենեցուն որք գործեն զանօրէնութի։

կոյս * սովեսցին ո՜պ
շունք * և շրջեսցին
զքաղաքաւ ։

Նոքա ղօղանջեսցեն
բերանովք իւրեանց *
և սուր է 'ի շրթունս
նոցա ։

Իսկ արդ ո՛վ լուաւ
զայս * զի դու տ̃ր
ծիծաղեսցիս զնոքօք
* և արհամարհեսցես
զա̃մ հեթանոսս ։

Զօրութի՛ իմ առ
քեզ պահեցից * զի
ա̃ծ օգնական իմ ես ։



դառնան , իբր երբոր աշխարհիս
վերջին մօտկանայ , այն ժամանակն
կու դառնան 'ի գիտութի՛ ճշմար
տութե , և զիմ ս̃բ հաւատքս կու
ընդունին * և քաղցած շների
նման քոյ երկնային հացին կու
ցանկան * և քոյ ս̃բ եկեղեցւոյ
քաղաքումն պտուտ կու գան որ
զիւրեանք կշտացնեն երկնային
հացիւն ։

Այսինքն , նք կու պօռան կու
կանչկանչեն և կու հայհոյեն իւր
եանց բերանովն ընդդէմ իմ աշա
կերտացն և առաքելոցն * զէրէ
նոցա շրթունքներումն թուր կայ
իբրնց բերանումն չար լեզու կայ ։
Այսինքն , նոքա կու հակառա
կին և կասեն , թէ այս նոր հա
ւատքս և այս նոր օրէնքս որ
դուք կու քարոզէք ով է լսեր մին
չև ցայժմ * բայց ոչինչ չեն
կարեր պաշարել , զէրէ դու տ̃ր
ա̃ծ կու ծիծաղիս և անարգ կանես
նոցա ճարտարգործութի՛ն * և
ոչ թէ նոցա միայն , այլև հեթա
նոսաց սրտմտութիւնն կու արհա
մարհես և կու փչացնես ։
Այսինքն , և ես զիմ զօրութի՛ն
և կարողութիւնն քո շնորհօքդ
անյաղթելի կու պահեմ յաղթե
լով զմահ * զէրէ դու իմ օգնա
կանն ես , և զիս պահպանող տ̃րն
և ա̃ծն ես ։

Այս

Ա՜յսինքն, ես միշտ զիս յուսադրեցի և ասացի, թէ նա իմ ա՜ծն է, նա զիս այս խղճութենս միջումն չի թողուր * նորա ողորմութին շուտով ինձ յօգնութի կուհասանի * և այն փորձանքն և պատուհասն որ իմ թշնամիքն իմ գլուխս բերին, իւրեանց գլուխն կուբերէ իմ աչաց առաջևն։

Ա՜յսինքն, բայց կաղաչեմ զքեզ հայր երկնաւոր մի՛ սպանաներ զայդ ամէն հրէայքդ, և մի՛ բնաջինջ աներ * որ չիլինի թէ իմ հաւատացեալքն յետ ժամանակաց մոռանան այդ քո ժողովրդեանդ պատմութին, և քո անդ և երկիւղդ նոցա նման իւրեանց սրտէն դէն ձգեն և անզգամ դառնան։

Ա՜յսինքն, այլ քո ամենակարող զօրութեդ ցրուէ զիւրեանք զանազան ազգերի միջումն, վայր ձգէ և ոտից կոխան արա՛ * զերէ դու իմ պահապանն ես, և իմ օգնականն ես տր ա՜ծ։

Ա՜յսինքն, նոցա բերանի մեղքն և հայհոյանքն, և նց շրթունքների նենգաւոր և զահրով լցած խօսքերն յայտնի լինի ա՜մ ազգաց * և իւրեանք իւրեանց ամբարտաւանութե և գոռոզութե միջումն ընկղմին և խեղդվին։





Ա՜ծ իմ * ողորմութի նորա կանխեսցէ առիս * և աստուած իմ ցուցցէ ինձ 'ի թշնամիս իմ։

Մ՜ի սպանաներ զնս * զի մի՛ մոռասցին զժողովուրդ քո։

Ցրուեա՛ զնոսա զօրութբ քով և ընկճեա՛ զնոսա * զի դու ես պաշտպան իմ տր։

Մ՜եղք բերանոյ նց և բանք շրթանց նց * ընկլեսցին նոքա յամբարտաւանութեան իւրեանց։

Յանէծս և ՚ի ստութիւնս մատնեսցին * ՚ի կատարածի բարկութե՟ սպառեսցին. և ոչ՟ գտցին։

Գիտասցեն զի ած՟ տիրէ յակոբայ և ամ՟ ծագաց երկրի։

Դարձցին ընդ երեկոյս * սովեսցին ոպ՟ շունք և շրջեսցին զքաղաքաւ։

Նոքա ախուեսցին յուտել * ապա թէ ոչ յագեսցին տրտնջեսցեն։



Նախնիքն, իւրեանց անիծաբանութե՟ և խղճմտութեն համար, և իւրեանց ստութեան և խաբէութեն համար մատնվին իշխանաց և դատաւորաց ձեռքն, և տանջվին և չարչարվին * և երբոր աշխարհիս կատարածն հասանի տեսանելով աստուծոյ ցասումն և բարկութին փչանան և այլ չերևին, իբր այլ հրէական օրէնօք մարդ չի մնայ, այլ ամէնքն ահիւ և դողութե՟ դառնան ՚ի ճշմարտութի հաւատոյն իմոյ։

Նախնիքն, և այն ժամանակին կուգիտենան, թէ ած՟ չէ թէ միայն յակոբայ, իբր հրէից ազգին միայն կուտիրէ և հոգաբարձութի կանէ, այլև բոլոր աշխարհիս քննամբ կուտանի, և կուպահպանէ։

Նախնիքն, ահա՛ այս էր ինչ ասացի թէ երբոր երիկունն լինի, իբր երբոր աշխարհիս վերջն հասանի հրէից ազգն կուդառնայ իդխոստութի ճշմարտութե * և սովածշան նման քո ածային հացին կուկարօտի, և սուրբ եկեղեցւոյ միջումն շուրջ կուգայ որ զինքն հոգևոր կերակրով կշտացնէ։

Նախնիքն, նք՟ այստեղ այնտեղ կուցրուին որ լինի թէ ածային քաղցրութե կերակուրն գտնուն և ճաշակեն * բայց թէ որ չի կշտա

նան,

նան, և խուրեանց կարօտն չէ լց-
նուն, թող խուրեանց թերահա-
ւատութե և թերամտութեն
վերայ տրտնջան:

Այսինքն, ես որ ած միշտ և
հանապազ քոյ սբ անուանդ օր-
հնութիւն և գովութիւն կու եր-
գեմ * և կուցնծամ առաւօտ-
ներն քոյ ողորմութեանդ վերայ,
իբր ինձ պարգևած ուրախու-
թեց և խնդութեցն վերայ:

Այսինքն, զէրէ դու ինձ խնա-
մածու և ապաւէն եղար յարու-
ցանելով զիս ՚ի մեռելոց * և իմ
նեղութեա և վշտիս միջումն ինձ
յօգնութի հասար:

Այսինքն, ուստի անդադար
փառաբանելով քո սբ անուն-
դ սաղմոսերգութիւն անեմ քոյ
առաջևդ * զէրէ դու իմ ապա-
ւէն ածն ես, և իմ ողորմած
ածն ես:

Իբր, զայս սաղմոս ինքն դա-
ւիթ է շարադրեր և անջնջելի
յիշատակ թողեր քարի վերայ փո-
րած գրի նման, որ յետ բազում
ժամանակաց անցելոց երբոր որ
դին այ գայ յաշխարհ, ճշմարիտ
հաւատացեալքն քի կարդալով
զնա ուսանին զբարերարութին
և զողորմութին այ:

Այս սաղմոսումն կու աղաչէ

մար

Ես օրհնեցից զօրհ-
նութիւնս քո * և ցն-
ծացայց առաւօտուց
յողորմութիւն քում:

Զի եղեր իմ պաշտ-
պան և տուն ապաւէ-
նի * յաւուր նեղու-
թե իմոյ օգնական իմ:

Քեզ սաղմոս ասա-
ցից * ած ապաւէն
իմ, ած ողորմութե
իմոյ:

Տունք. ԻԱ.

Սաղմոս դաւթի արձանագիր
՚ի կատարածի զառանցելոց
ժամանակաց առումանէ, ՚ի
ժամանակի զի հրձիգ արար
զմիջագէտս ասորոց, և զասո
բէստանս բանիւ, և ՚ի դար
ձին հարկանէր յովաբ զեդո
մացիս ՚ի ձորն աղեաց երկոտա
սան հազարս:

Սաղմոս. ԾԹ:



Ա՛ծ մերժեցեր և աւերեցեր զմեզ * բարկացար և գթացիս ՚ի մեզ։

Շարժեցեր զերկիր և խռովեցուցեր զնա * բժշկեա՛ զհարուածս նորա, զի սասանեցաւ։

Ցուցեր ժողովրդեան քում զխստութի * և ետուր մեզ ըմպել զգինի յիմարութեան։



մարգարէն զա՛ծ որ իւր զօրացն և զօրապետացն յօգնութի հասանի և յամօթ անէ զեդումացիս։ Կամ քս կու աղաչէ զհայրն ա՛ծ զի տացէ զօգնութի եկեղեցւոյ իւրոյ ընդդէմ սանդարամետական նաց։

Այսինքն, ո՛վ ա՛ծ դու զմեզ շատ անգամ մեր մեղացն համար յերեսաց ձգեցիր, և մեր զօրքն աւերեցիր և թշնամեաց կոխան արարիր * ուղորդ որ արդար դատաստանով բարկացար մեզ վր՟, բայց այժմ կաղաչեմ զքեզ որ մեզ գթաս, և յաղթութիւն տաս ընդդէմ մեր երևելի և աներևոյթ թշնամեացն։

Այսինքն, դու այլ անգամ այս երուսաղէմայ երկիրս մեր անիրաւ և վնասագործ թշնամեաց ձեռքովն շարժեցիր քակեցիր դողացուցիր և խռովեցուցիր * բայց այժմ կու աղաչեմ զքեզ, որ նորա խոցերն բժշկես, և նորա ցաւերն փարատես, զերէ սաստիկ ահն և երկիւղն զինքն պատերէ։

Այսինքն, դու քո ժողովրդեանդ շատ դժուար և անտանելի նեղութիւններ ցոյց տուիր * և մեզ այնպէս դառն փորձանքի և տառապանքի գինի խմացուցիր

որ

որ զմեր խելքն ցրուեց, և զմեզ
սրտակոտոր արար։

Մասինքն, դու քո անչափ բա
րութեանդ համար քոյ որդւոյդ
միածնի զօր խաչն երկրպագած և
ամենապաշտ մարդկանց յաղթու
թեան նշան և պայծառ տուիր * որ
կարենան փրկվիլ իւրեանց թշնա
մեաց թերահաւատութեան նետե
րէն և խաբէութեան աղեղներէն։

Մասինքն, արդ ինչպէս որ քո
սիրելիքդ և քո հաւատարիմ ծա
ռայքդ փրկվեցան իւրեանց թշ
նամեաց ձեռքէն * այնպէս ևս
փրկէ և ազատէ զմեզ քո աջ բազ
կովդ, և քո ամենակարող զօրու
թեամբդ, և մեր աղաչանացն և խնդր
ուածոցն ականջ արա՛ և լսէ՛։

Մասինքն, որ ես տեսանելով
քո օգնութիւնդ և նախախնամութիւնդ
յորդորեմ զիս և ասեմ, թէ ա͞ծ
յերկնից և յերկր մեր աթոռէն խօ
սեցաւ, ինձ յաղթութիւն տվեց,
և զիմ թշնամիքն յամօթ արար *
ցնծամ ուրախանամ բարձրանամ
և փառաւորիմ * այս սուքէմայ
երկրիս որ ա͞ծ ինձ է պատրաստեր
տիրապետեմ, և իմ հալալ ժա
ռանգութեան նման բաժանեմ, և
իմ հրամանաց և իշխանութեան
հնազանդեցնեմ * և յարկաց հո
վիտն, էբր չարաների ձորն իմ
բռնացած մուլքիս նման չափեմ

և այլ

Ետուր երկիւղա
ծաց քոց նշան * զի
ապրեսցին յերեսաց
աղեղան։

Որպէս փրկեսցին սի
րելիք քո * կեցո՛ աջով
քով և լուր մեզ։

Ա͞ծ խօսեցաւ ՚ի սր
բութեան իւրում * ցն
ծացայց բարձր եղէց
* բաժանեցից զսիւ
քէմ * և զհովիտն
յարկաց չափեցից։

Իմ է գաղաադ և
իմ է մանասէ * եփ
րեմ հզօրէ գլխոյ
իմոյ:

Յուդայ թագաւոր
իմ * մովաբ աւա
զան յուսոյ
իմոյ:

Յեդովմ ուղղե
ցից զգնացս իմ * ինձ
այլազգիք հնազանդք
եղեն:

Ո՞ տարցէ զիս ՚ի քա
ղաք ամուր * կամ ո՞վ
առաջնորդեսցէ ինձ
մինչև ցյեդոմ:

և յայլ երկրներէ ջոկեմ:
Այսինքն, ասեմ թէ գաղաաթու
և մանասէի երկիրն իմ է * այլև
եփրայիմայ երկիրն որ է ՚ի սահ
մանս երուսաղէմայ, իմ գլխոյս
պահապանն է, և ինձ զօրութի
և կարօղութի տուօղն է իւր քաջ
և արի և հաւատարիմ տղայ մար
դերովն:
Այսինքն, յուդայի երկիրն իմ
ամէն երկրներիս և գաւառնե
րիս թագաւորն է * և մովաբայ
երկիրն իմ յուսոյ աւազանն է,
իբր իմ լուացվելոյ հաւզէննման
իմ ձեռքիս է, զէրէ յոյս ունիմ
որ երբոր ուզեմ կարենամ տա
նուլ զնա, և իմ հրամանացն հնա
զանդեցուցանել:
Այսինքն, այժմ միայն եդոմայ
եցւոց երկիրն որ է ՚ի հարաւա
կողմն երուսաղէմայ ինձ դժուա
րութի կուտայ, բայց յոյս ունիմ
որ քո օգնութե̅ դշուտով իմ ճա
նապարհս և իմ գնացքս դէպ ՚ի
յայն ուղղեմ, և զնոսա ևս յաղ
թահարեմ և իմ ձեռաց տակն
առնում * զէրէ ինձ քան զնա այլ
ուժեղ այլազգիք և կռապաշտք
հնազանդեր են:
Այսինքն, բայց ո՞վ կու տանէ
զիս այն անառիկ բերդն, և այն
ամուր պարսպով քաղաքն * կամ
ո՞վ ինձ յառաջ կու անկանի և

զիս մինչև յեղումն երկիրն կու
հաստուցանէ։
Այսինքն, եթէ ոչ դու ո՟ր ա՟ծ
որ երբեմն զմեզ մեր մեղացն հա
մար երեսաց ձգեցիր * և մեր զօ
րացն հետ ընդդէմ մեր թշնամ
եացն պատերազմ չեկիր որ մեզ
օգնութի՟ անէիր։
Այսինքն, վասն որոյ կաղաչեմ
զքեզ, այս մեր առաջի կայ պա
տերազմուամս մեզ օգնութիւն և
կարօղութիւն տուր * զերէ ես
քեզ եմ յուսացեր, և գիտեմ
որ փուճ և ընդունայն է այն օգ
նութիւնն և փրկութի՟նն որ մար
դի ձեռքով կու լինի։
Այսինքն, ինչպէս հանապազ
կասեմ ես իմ զօրագլխացն հետ,
թէ մեք աստուծով կանենք զմեր
զօրութիւնն և յաղթութիւնն *
և նա է որ կու արհամարհէ և
կու փչացնէ զայն մարդիքն որ
մեզ նեղութի՟ կու տան, և զմեզ
կու հալածեն։

Իբր, երբոր օրէնք և մարգարէք
կու կատարվին և ք՟ս կու գայ յաշ
խարհ, այն ժամանակն օրհնու
թե՟ և գոհութե՟ կու առնի այս
սաղմոս, որ է իմաստութիւն,
այսինքն խորին և խորհրդաւոր։
Այս սաղմոսովս կու աղօթէ
մարգարէն առ ա՟ծ և շնորհակալ





Ոչ թէ ոչ դու ա՟ծ
որ մերժեցեր զմեզ *
և ոչ ելեր ա՟ծ ընդ
զօրս մեր։

Տուր մեզ զօգնու
թիւն 'ի նեղութե՟ *
զի ընդունայն է փր
կութիւն մարդոյ։

Աստուծով արաս
ցուք զզօրութիւն *
և նա արհամարհես
ցէ զայնոսիկ որք նե
ղեն զմեզ։

Տունք. 13.

՚Ի կատարած ընդ օրհնութիւ
իմաստութիւն, սաղմոս
դաւթի:

Սաղմոս. Կ.



Լուր ած աղօթից
իմոց * և նայեաց
յաղօթս իմ։

'Ի ծագաց երկրի կար
դացի առ քեզ * մինչ
'ի վաստակել սրտի
իմոյ։

'Ի վէմ բարձր արա
րեր զիս * և առաջ
նորդեցեր ինձ * և
իմ եղեր յոյս, և աշ
տարակ հզօր յերե
սաց թշնամւոյն։

Բնակեցայց 'ի յարկս
քո յաւիտեան * և
ծածկեցայց ընդ հո
վանեաւ թևոց քոց։



կուլինի գոլով փախեալ 'ի ձե
ռացն սաւուղայ և հեռացեալ
յերուսաղէմայ երկրէն։
Կամ դասք արդարոց որք էին 'ի
դժոխս ապաստեցեալ քյարութն
քի կու աղօթեն և կու գոհանան
զայ։

Այսինքն, տր ած դու քո ամէն
առատ ողորմութեամբդ լուէ զիմ
աղաչանքս * և քո հայրական
գթութեամբդ նայիր դէպ յիմ
աղօթքս։
Այսինքն, յերկրիս ծայրերէն,
երբ 'ի խորոց անդնդոց դժոխոց
այնչափ հոգւոց հանելով դէպ
քեզ աղաղակեցի * մինչև որ
սիրտս վաստակեցաւ և նուաղե
ցաւ, և 'ի կարողութէ անկաւ։
Այսինքն, դու քո միածին որ
դուդ որ է ճշմարիտ վէմ պատո
ւական, զիս ազատեցիր իմ տա
ռապանքէս, և բարձրացուցիր *
և առաջնորդեցիր դէպ 'ի յեր
կինս * դու ինձ յոյս և աշտարակ
ամուր դարձար իմ թշնամեաց
երեսին դէմ, երբ ընդէմ բռնու
թեն սատանայի։
Այսինքն, այսու հետև մինչև
յաւիտեան կու բնակիմ քոյ անե
րիդ միջումն, երբ քոյ երկնային
արքայութն միջումն * և կու
ծածկվիմ քոյ թևերի շուքի

տակուամ, իբր քոյ ածային նա
խախնամութե տակուամ, և կու
վայելեմ զանսպառ ուրախութի։

Այսինքն, զերբ դու տր ած
միջնորդութբ որդո՛յ քոյ միած
նի լսեցիր իմ աղօթքիս * և քոյ
երկիւղած ծառայիցդ ինչպէս որ
խոստացեր էիր, յաւիտենական
երանութե միջուամ ժառանգու
թիւն տուիր։

Այսինքն, մեր փրկչին և մեր թա
գաւորին քի օրերին վերայ այլ
օրեր աւելացուցիր, իբր իւրն
անմահութիւն պարգևեցիր * և
իւր տարոց օրերն յազգաց մինչև
յազգս երկայնացուցիր, իբր իւրն
յաւիտենական կեանք պարգևե
ցիր։

Այսինքն, ուստի դաւք արդա
րոց միշտ կուփառաբանեն զքեզ
քո միածին որդո՛ովդ և կասեն,
թէ կայ և կու մնայ յաւիտեանս
յաւիտենից առաջի հօր այ բաց
մեալ թագաւորն փառաց քս *
և նորա գթութին ողորմութին
և խոստմանց ճշմարտութիւնն,
ո՛վ է որ խնդրէ և չի՛ գտանէ։

Այսինքն, և ես այսպէս միշտ
յիշելով զքո անչափ բարութիդ
կուփառաբանեմ զքեզ, և քո
ան անուանդ պատուելով սաղմոս
երգութիւն կանեմ յաւիտեանս
յաւիտենից * և օր ըստ օրէ զիմ

Դու ած լուար աղօ
թից իմոց * ետուր
ժառանգութի որք
երկնչէին յանուանէ
քումմէ։

Աւուրս յաւուրս
յաւելեր թագաւորի
* ամաց նր աւուրս
յազգաց մինչև
յազգս։

Կայ և մնայ յաւիտ
եան առաջի այ * ողոր
մութի և ճշմարտու
թի որք խնդրեսցեն
ինմանէ։

Այնպէս սաղմոս սաս
ցից անուան քում
յաւիտեանս յաւիտե
նից * և տաց քեզ զա
ղօթս իմ օր ըստ օրէ։

Տունք · Գ ·

՚Ի կատարած ի վերայ իդիթումայ, սաղմոս դաւթի:

Սաղմոս. ԿԱ.

Բայց միայն ա՟յ հնազանդ լեր անձն իմ * զի՛ ՚ի նմանէ է ինձ համբերութիւն:

Նա է ա՟ծ իմ և փրկիչ իմ, ապաւէն իմ * զի մի՛ սասանեցայց առաւել:

Մինչև յերբ յառ



աղօթքս հաստատուն սրտով քեզ կու մատուցանեմ:

Իբր զայս սաղմոս մինչև ի վերջն ասացեր է դաւիթ մարգարէն ՚ի վերայ իդիթումայ, այսինքն վասն անցաւոր աշխարհիս մարդկանցն համար, որ այսօր կան և ՚ի վաղիւն չեն երևիր, զէրէ իդիթում անցաւոր թարգմանի:

Այս սաղմոսումս կու յորդորէ մարգարէն զհոգին իւր հնազանդիլ աստուծոյ, և ոչ երկնչիլ ՚ի փորձութե՟ց:

Այսինքն, բաց թող ո՛վ անձն իմ այս աշխարհիս մարդկանց կամքն և հաճութ՟ին, և միայն աստուծոյ օրինացն և պատուիրանացն հնազանդիր * զէրէ նորանէ է իմ համբերութիւնն, իբր նա միայն ինձ իմ նեղութեան միջումն կու մխիթարէ և համբերութի՟ կու տայ:

Այսինքն, նա իմ ընտեղծող ա՟ծն է, նա իմ փրկիչն և ապաւէնն է * նա չէ՛ թողուր որ այսուհետև ես իմ թշնամեացն վախենամ, և սարսափիմ:

Այսինքն, մինչև յերբ այս

խեղճ մարդիս վերայ կու վազէք
և ամէնքդ ձեր մտաց մէջն դըրե
րէք թէ զիս ըսպանանէք և փըչաց
նէք * մի թէ ես ծռուած որմ
եմ , կամ թէ փլփլած անպէտք
պատ եմ որ դիպչիլն իբրաց վայր
անկանիմ ։

Այսինքն , տես ով անձն իմ
թէ իմ թշնամեաց միտքն և դի
տաւորութիւնն ինչ է՛ , նոցա
խորհուրդն այն էր , թէ մէկ
ճար մի գտանէին որ զիմ փառքս
և պատիւս ինձանից հեռացնէին
և զիս մարդկանց առաջև տնազ
շինէին * բայց իւրեանց սրտի
ցանկութեանն չէ՛ հասանելով ,
ծարաւ մնացին , և փուչ և ըն
դունայն տեղ աստ ևանդ վազվա
զեցին և զուր աշխատեցան ։

Այսինքն , երեսահանց զիս կու
օրհնէին , և լաւ կասէին *
և իւրեանց սրտի միջումն զիս
կու անիծանէին կու բամբասէ
ին , և կու հայհոյէին անիրաւու
թեամբ ։

Այսինքն , բայց դու ով անձն
իմ թող նոցա կամքն և դիտաւո
րութիւնն , և միայն աստուծոյ
հրամանացն հնազանդիր * զէրէ
նա միայն ինձ իմ նեղութեան
միջումն համբերութիւն կու
տայ ։

Այսինքն , զէրէ նա է՛ իմ տէրն
և ա̃ծն



նէք 'ի վ̃ր մարդոյ սպա
նանել ամենեքեան *
ոպ̃ յորմոյ թիւրելոյ ,
և 'ի ցանկոյ մերժե
լոյ ։

Բայց միայն զպատիւ
իմ խորհեցան մերժել
յինէն * և ընթացան
'ի ծարաւս իւրեանց

Բերանովք իւրեանց
օրհնէին * և սրտիւք
իւրեանց անիծա
նէին ։

Բայց սակայն ա̃յ հնա
զանդ լեր անձն իմ *
զի 'ի նմանէ է՛ ինձ
համբերութի̃ ։

Զի նա է՛ ա̃ծիմ և

փրկիչ իմ, ապաւէնն իմ * զի մի՛ սասանեցայց:

Յա՟յ է՛ զօրութի իմ և փառք իմ * ա՟ծ օգնութե իմոյ * յոյս իմ առ ա՟ծ է՛:

Յուսացարուք 'ի նա ա՟մ ժողովք ժողովրդոց * սփռեցէք առաջի ն՟ր զսիրտս ձեր * զի ա՟ծ օգնական է՛ մեր յաւիտեանս ժամանակաց:

Սակայն ընդունայն են որդիք մարդկան * սուտ են որդիք մարդկան * և 'ի կշիռս իւրեանց մեղանչեն * և ինքեանք յունայնութե են 'ի միասին:



և ա՟ծն, նա է՛ իմ փրկիչն և ապաւէնն * նա չի՛ թողուր որ ես այսուհետև իմ երևելի և աներևոյթ թշնամեացն վախենամ, կամ աչ քաշեմ:

Այսինքն, իմ ուժն և կարողութիւնն, և իմ փառքն և մեծութիւնն յա՟յ է՛ * ա՟ծ է՛ որ ամէն իմ խղճութե մէջումն ինձ օգնական և պահապան կուլինի * և իմ յոյս միշտ յա՟ծ եմ դրեր, և 'ի նա միայն եմ ապաւիներ:

Այսինքն, ուստի ո՛վ ժողովք ժողովրդոց, թէ կուզէք որ յա՟մ փորձանքէ և նեղութէ ազատէք յա՟ծ յուսացէք * և ձեր սրտի խորհուրդն և ցանկութիւնն ն՟ր առաջևն բացէք և յայտնի արարէք * զէրէ ա՟ծ մեզ օգնական և ցաւակից է՛ յաւիտեանս յաւիտենից:

Այսինքն, և թէպէտ գիտեմ որ ադամայ որդիքն միշտ փուչ և ընդունայն ցանկութե յետնէ են * իւրեանց խօսքն և արարմունքն միշտ սատութենալ լի է՛ * իւրեանց չափսումն և կշեռքումն խաբէութի կանեն, և կումեղան չեն ընդէմ ա՟յ արդարութեանն * և ինչպէս իւրեանց բանն և գործն փուչ և անհաստատ է՛, այսպէս այլ ն՟ց միտքն և դիտաւորութին փուչ և ընդունայն է:

Այս

Այսինքն, բայց դուք ո՛վ ածապաշտ ժողովուրդք զգուշացէք, ձեր անիրաւութիւնն և նենգագործութին մի՛ յուսայք * և մի՛ ցանկանայք թէ այլոց ինչն և ապրանքն յափշտակէք * և թէ մեծութիւնն և հարստութիւնն առուի նման այլ ձեզ վերայ թափվի, ձեր սրտի սէրն և յօժարութիւնն ամենևին նորա վերայ մի՛ ձգէք, և մի՛ խաբիք վասն ընչից և ապրանաց:

Այսինքն, մէկ անգամ խօսեցաւ ած, երբ որ օրէնք և պատուիրանք տուեց 'ի ձեռն մովսէսի մարգարէին * և երկրորդ անգամն երբոր խօսեցաւ 'ի ձեռն այլոց մարգարէից, այլվի զնոյն խօսքն լսեցինք նոցա բերանէն:

Այսինքն, և իմացանք որ ամէն զօրութի և կարողութիւն յայ է * և գիտացինք որ քո է տր ած ողորմութին որ մարդկային սխալանացն թողութիւն շնորհես * և քո է արդարութիւնն որ ամ մարդոյ իւր գործոցն գօրայ հատուցումն անես:

Իբր, զայս սաղմոս ինքն դաւիթ է շարադրեալ:

Այս սաղմոսումն մարգարէն գոլով յանապատին զիփայի և ոչ կա

րելով



Մի՛ յուսայք յանիրաւութիւն * յափշտակութեան մի՛ ցանկայք * մեծութիւն թէ առուիւ գայցէ մի՛ յօժարեսցին սիրտք ձեր:



Մի անգամ խօսեցաւ ած * և երկուս զայս լուայք:

Զայ է զօրութի * և քո տր ողորմութի * և դու հատուցանես իւրաքանչիւր ըստ գործոց նոցա:

Տունք: 13.

Սաղմոս դաւթի մինչ դեռ էր նա յանապատի անդ 'ի հրէաստանի:

Սաղմոս. ԿԲ.



Ա՜ծ ա՜ծ իմ ես առ քեզ առաւօտ առնեմ * ծարաւեցաւ առ քեզ հոգի իմ քանի պատիկ եւս և մարմին իմ։

Որպէս երկիր անապատ և անջուր * ուր ո՛չ գոյ ՚ի նմա ճանապարհ։

Այսպէս ՚ի սուրբս երեւեցայց քեզ * տեսանել ինձ զզօրութիս



րելով գնալ ՚ի տօնախմբութին իսրայելացւոց վասն ահին սաւուղայ աղօթէ սրտի մտօք առ ա՜ծ , այլ և ա՜մ բարեպաշտ քրիստոնեայ ցանկանալով արքայութեն երկնից , աղօթէ առ ա՜ծ ։

Այսինքն , ո՜վ ա՜ծ ըստեղծող երկնի և երկրի , և ա՜ծ իմ , որ ՚ի մանկութէ իմէ այսչափ շնորք և բարերարութի արարիր ինձ ես շուտով առաւօտն արթնանալս ՚ի բաց սրտի մտօք դէպ քեզ կուգոչեմ * իմ հոգիս ծարաւ է քոյ ա՜ծային մխիթարութեդ , եւս առաւել այս խեղճ մարմինս որ միշտ կուցանկայ ազատիլ յայս խղճութէս , և գալ երկրպագանել քեզ քոյ սուրբ տաճարիդ միջումն ·

Այսինքն , ես այս տեղս անշէն և անբնակ երկիր եմ դարձեր հեռանալով ՚ի յընկերակցութէ քո հաւատացեալ ժողովրդեանդ , և ամենևին հոգևոր ուրախութե և մխիթարութե ջուր չկայ ինձնում * և ճանապարհ այլ չունիմ , իբր չեմ գիտեր թէ ուր գնամ , որ ես սաւուղայ և իւր զօրաց ձեռքէն ազատվիմ։

Այսինքն , արժանի արա զիս քո ողորմութեդ , որ ես այս փափաքանօքս գամ ՚ի քո սուրբ տա

Ճարդ, և քու սուրբ տանդ մի
ջումն երևիմ քու առաջևդ, և
քեզ երկիր պագանեմ * և տե
սանեմ մօզք քո ամենակարող զօ
րութիւնդ և քո ա̃ծային փառքդ:

Այսինքն, զերէ լաւ է ինձ քո
ողորմութիւնդ և գթութիւնդ քան
զիմ այս անցաւոր կեանքս * և
լաւ է ինձ որ իմ շրթունքս զքեզ
միայն գովեն և փառաբանեն ու
ղիղ մօզք և ուրախ սրտիւ:

Այսինքն, այս դիտաւորութեամբ
կուզեմ զքեզ օրհնել և գովել
միշտ իմ կենաց մէջն * և քո ս̃բ
անուանդ յիշելով դէպ քեզ բար
ձրացուցանել իմ ձեռքերս, զէ
րէ քեզանից է միայն իմ փրկութե
և ազատութե յոյսն:

Այսինքն, որ իմ հոգիս քո շնոր
հաց և քու երկնային մխիթարու
թե ճրագունովն և պարարտու
թեանովն լցվի և կշտանայ * և իմ
բերանս ուրախ և զուարթ շր
թունքներով զքեզ օրհնէ և փա
ռաբանէ:

Այսինքն, երբեմն երբոր գի
շերն անկողնիս մէջումն քո սուրբ
անունդ կու յիշէի, այնչափ կու
քաղցրանայի քո սիրովդ * որ շու
տով առաւօտն կանուխ վերկե
նալս 'ի բաց մօզքս քեզ հետ կու
խօսէի, և զքեզ 'ի բերանունէի:

Այսինքն, զերէ դու միշտ ինձ





քո, և զփառս քո:

Սատն զի լաւ է ինձ ողորմութիւն քո քան զկեանս իմ * և շրթունք իմ գովեսցեն զքեզ:

Այսպէս օրհնեցից զքեզ 'ի կեանս իմ * և յանուն քո համբարձից զձեռս իմ:

Ո̃պ 'ի ճարպոյ պարարտութէ լցցի անձն իմ * շրթամբք ցնծութե օրհնեսցէ զքեզ բերան իմ:

Զի թէ յիշէի զքեզ յանկողնի իմում * ընդ առաւօտս կանխեալ խօսէի ընդ քեզ:

Զի եղեր իմ օգնա

կան * 'ի հովանի
թևոց քոց ցնծա
ցայց ։

Եկն զկնի քո անձն
իմ * և զիս ընկալաւ
աջ քո իսկ Նոքա ի նա
նիր խնդրեցին զանձն
իմ ։

Մտցեն 'ի ներքոյ
անդնդոց երկրի *
մատնեսցին 'ի ձեռս
սրոյ , և բաժինք
աղուեսուց եղիցին ։

Թագաւոր յուսա
ցաւ 'ի տր * գովես
ցին ամենեքեան որք
երդնուն նովաւ *
խցցին բերանք այնո
ցիկ որք խօսին զանի
րաւութիւն ։

Տունք. II։



օգնական և պաշտպան եղար *
ես քո թևերիդ շուքի տակուն
իբր քո նախախնամութեան տա
կուն անահ և անկասկած կու
ցնծամ և կուրախանամ ։

Նայինքն , իմ անձս միշտ հաստա
տուն սիրով քո օրէնքդ և պա
տուիրանքդ կատարեց , և քեզ
յետնէ եկաւ * և քո աջ ձեռքդ
զիս այնպէս ընդունեց և պաշտպա
նեց , որ իմ թշնամեաց և ատե
լեաց դիտաւորութիւն որ կու
խնդրէին զիս ըսպանանել , փուչ
եղաւ և ոչնչացաւ ։

Նայինքն , ուստի թող իւր
եանց չարութենն գօրայ մտնուն
անդնդոց տակն , իբր 'ի դժոխս
* մատնուին այ բարկութե թրի
ձեռքն , և աղվէսներն բաժին
դառնան , իբր սատանայի բաժին
դառնան ։

Նայինքն , թագաւորն իւր տրն
է յուսացեր , իբր դաւիթ յածծ
է յուսացեր * ինչ մարդ որ թա
գաւորի անունովն երդուում կա
նէ , իբր ինչ մարդ որ թագաւո
րին հնազանդ է , գովէ զինքն և
պարծենայ * և խցվի և փակվի
այն մարդկանց բերանն որ նորա
վերայ զուր կասէին , և անիրաւ
տեղ կուդատապարտէին ։

Իբր,

Իբր, զայս սաղմոս մինչև 'ի
վերջն դաւիթ մարգարէն է ասա
ցեալ։
Նայս սաղմոսումն կու խօսի մար
գարէն վասն ՔՍի մինչ էր 'ի չար
չարանս, և ած հաւատացեալ
քրիստոնեայ կու աղօթէ առ ած
իմէջ վտանգի։

Նայինքն, ով ած ամենակարող,
լուէ իմ աղօթքիս քո հայրական
գթութեդ որ կաղաչեմ առ քեզ
այս իմ նեղութն միջումն * և իմ
թշնամեաց ահէն և երկիւղէն
զիմ անձս փրկէ և ազատէ։
Նայինքն, ծածկէ և պահէ
զիս հրէից չար ժողովքներէն *
և ազատէ զիս դպրաց և փա
րիսեցւոց բազմութենէն որ միշտ
անօրէնութի և նենգութի գոր
ծելոյ յետնէ են զիս կորուսանե
լոյ համար։
Նայինքն, սրեր են իւրեանց
լեզուն թրի նման, որ զիս չարա
խօսեն և դատապարտեն * և իւր
եանց նենգաւոր շրթունքներն
աղեղներն դառն խօսքերի նետե
րով լարեր են և պատրաստեր են։
Նայինքն, որ գաղտուկ ձգեն
և խոցոտեն այնպիսի խեղճ և ան
մեղ մարդիկն որ սրտերն ուղիղ
է * և կուզեն որ յանկարծ ձգեն

Իկատարած սաղմոս դաւթի։

Սաղմոս. ԿԳ։

Լուր ած աղօթից
իմոց յաղաչել ինձ
առ քեզ * յերկիւղէ
թշնամւոյն փրկեա
զանձն իմ։

Ծածկեցեր զիս 'ի
ժողովոց չարաց * 'ի
բազմութէ ոյք գոր
ծեն զանօրէնութի։

Որք սրեցին ոպ սու
սեր զլեզուս իւր
եանց * լարեցին զա
ղեղունս իւրեանց
իրս դառնութե։

Զգել 'ի գաղտնիս
այնոցիկ ոյք ուղիղ
են սրտիւք * յան
կարծակի ձգեսցեն



՚ի նոսա և մի՛ երկիցեն ։

Զօրացուցին յանձինս իւրեանց զբանս չարութեն * խորհեցան թագուցանել ինձ զորոգայթ * և ասացին ո՛չ տեսանէ զայս տր ։

Քննեցին զանօրէնութի * պատրաստեցան ՚ի քննել զքննութի ։

Մատիցէ այր ՚ի խորութի սրտի իւրոյ * և բարձր եղիցի ած ։



իւրեանց դառն խօսքերի նետերն , որ ինչպէս իւրեանց դիտաւորութիւննէ այնպէս վերահորեն զնոսա և ամենևին այ արդար դատաստանէն չի երկնչին ։

Այսինքն , իւրեանց սրտի միջումն զանազան չար խորհուրդներն և չար խօսքերն աճեցացուցին և հաստատեցին * և խորհուրդ արարին որ ինձ թալաք սարքեն * և իւրեանց մտքումն այնպէս կարծեցին թէ ած չի տեսաներ իւրեանց մտածմունքն և արարմունքն ։

Այսինքն , իւրեանց միջումն անօրէն խորհուրդ և քննութի արարին * և զիւրեանք պատրաստեցին որ այլոց սրտի քննութին այլ քննեն , իբր հոգևոյն սրբոյ խորին խորհուրդն , և սրբոց մարգարէից ծածուկ ասմունքն այլ քննեն որ իւրեանց ընդդէմ խօսողացն հեշտ և անհաշ ծուռ մեկնութբ կարենան պատասխանի տալ ։

Այսինքն , բայց թէ մէկ մարդ մի ուղիղ սրտիւ զիւր միտքն բարակացնէ , և իւր սրտի միջումն խորունկ միտք անէ * կու իմանայ և կու զարմանայ թէ որչափ բարձր և անհասանելի է այ խորհուրդն և իմաստութին մարդկային խորհրդոցն հետ իրուր ձգելով ։

Սայինքն, նոքա որչափ որ զուր չարախօսութիւն և անիրաւ հայ հոյութիւն աքարին, իւրեանց գլուխն եկաւ, ինչպէս որ երա խայից ձգած նետերն յետ դառ նալով իւրեանց խոց կուլինի * նց̃ լեզունե́րն տկարացաւ կապ վեցաւ և պապանձեցաւ, տեսա նելով քո ըսքանչելագործութիդ̃ որ զիս իմ չարչարանօքս և յարու թե̃մս փառաւո́րեցիր և բարձրա ցուցիր * և ինչ մարդ որ նայե ցաւ և տեսաւ նոցա կորուստն և նոցա կործանումն, զարմացաւ հիացաւ և ապշած մնաց իւր սրտի միջումն։

Սայինքն, և ամէն մարդ ըսկսաւ յայ̃ վախել, և նորա փրկագոր ծութիւն որ արար իւր միածին որդ́ւոյն ըսկսաւ պատմել և քա րոզել մարդկան * և նորա մեծա մեծ և հրաշալի արարմունքն միտք առաւ և իմացաւ։

Սայինքն, ուստի որդին այ̃ տ̃րն մեր յս̃ ք̃ս արդարն և ան մեղն կուրախանայ տէրամբ՝ իյեր կինս անմահական փառօք, և կու յուսայ իւր հօր ամենակարող զօ րութիւն * և ինչ մարդ որ ուղիղ սրտով հաւատացեր է՝ ի նա, նր̃ անուանովն զինքն կու գովէ և կու պարծենայ աստ և՝ ի հանդերձե լումն։



Նետք տղայոց եղեն վէրք նոցա * տկարա ցան՝ ի նոսա լեզուք նոցա * և խռովեցան ամենեքեան ոյք հայ էին ընդ նոսա։

Երկեաւ ա̃մ մարդ՝ ի պատմել զգործս այ̃ * և զարարածս նր̃՝ ի միտ առին։

Ուրախ եղիցի ար դար՝ ի տ̃ր և յուսաս ցի՝ ի նա * նովաւ գո վեսցին ամենեքեան ոյք ուղիղք են սր տիւք։

Տունք: Ժ

՚Ի կատարած սաղմոս դաւթի երգ երեմիայի, և եզեկիելի, և ժողովրդեանն յորժամ ՚ի պանդխտութէ անտի կամէին ելանել:

Սաղմոս. ԿԴ.


եզ վայելէ օրհնութի ա̃ծ ՚ի սիոն * և քեզ տացին աղօթք յերուսաղէմ:

Լուր աղօթից իմոց * զի առ քեզ ամ̃ մարմին եկեսցէ:

Իբր, զայս սաղմոս ինքն դաւիթ մարգարէն է ասացեր, որոյ խորհուրդն կու կատարվի երբ որ օրէնք և մարգարէք կու վերջանան, և ք̃ս կու գայ յաշխարհ:

Այս սաղմոսումս կաղաչէ մարգարէն զք̃ս ՚ի բերանոյ բոլոր մարդկային ազգիս վասն փութացուցանելոյ զդարձումն հեթանոսացս, այսինքն կուապաշտից ՚ի ձեռն մարդեղութեն իւրոյ:


յսինքն, քեզ կու վայելէ ա̃ծ օրհնութի և գովութի քոյ նոր սիոնի միջումն * և քեզ կու պատշաճի, որ քոյ հոգևոր երուսաղէմ միջումն, իբր քոյ սուրբ եկեղեցւոյդ միջումն աղօթք և երկրպագութիւն մատուցանեն քեզ մարդիկք հոգւով և ճշմարտութեամբ:

Այսինքն, վասն որոյ կաղաչեմ զքեզ լուր իմ աղօթքիս, և քո շնորքդ և ողորմութիդ սփռէ և տարածէ ի վերայ աշխարհի * որ ոչ միայն հրէայք, այլև ամ̃ մարմին դէպ քեզ գայ, իբր ամ̃ ազգք և ազինք դառնան ՚ի յա̃ծպաշտութիւն և ի գիտութիւն ճշմարտութեան:

Այս

Այսինքն, և թէպէտ անօրէն դիւաց բանքն և խօսքն մեզ վր զօրացան և ուժեղացան, և շատ մարդիք յաղթահարեցին, և քո ած պաշտութեան ճանապարհէն հեռացուցին և մոլորեցուցին * բայց դու քո ածային գթութեամբդ մեր ամբարշտութին քաւէ և քո ցանկալի և փափաքելի փրկութիւնդ որ պիտի անել ազգի մարդկան քո մարդեղութբդ, մի՛ յետացներ ։

Այսինքն, երանի այն մարդկանցն որ դու յաւիտենից ընտրեր ես, և ընդուներ ես * զէրէ նոքա կու բնակին քո երկնային գաւիթներիդ միջումն, իբր քո սուրբ արքայութեն միջումն ։

Այսինքն, յոյս ունիմք որ մեք այլ քո ընտրեալ ծառայիցն հետ լցվիմք և կշտանամք քո երկ[նայ]ին տանդ բարութբն, իբր քո ածային [ող]որմութեննդ * զէրէ քո տաճարդ, [այ]սինքն քո երկնային առագաստդ սուրբ է, և այնպէս զարմանալի է արդարութբ, որ ամենևին անիրաւութի չի եր և իր խուռնում, ըստ այնմ ոչ մտցէ անդ ամ չարակամ և պիղծ և ստութի ։

Այսինքն, ուստի կաղաչեմք զքեզ ո՛վ ած փրկիչ մեր, որ մեր խնդրուածքն լսես * զէրէ երկ

րիս



Բանք անօրինաց զօրացան ի վերայ մեր * զամբարշտութիս մեր դու քաւեսցես ։

Երանի զոր ընտրեցեր և ընկալար * և բնակեսցին 'ի գաւիթս քո ։

Լցուք մեք 'ի բարութէ տան քո * սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ ։

Լուր մեզ ած փրկիչ մեր * յոյս ամենայն ծագաց երկրի, և

որ 'ի ծով հեռի ։

Որ պատրաստէ զլե րինս զօրութեամբ իւրով * և զգեցեալ է զզօ րութիւն ։

Որ խռովեցուցանէ զմեծութիւն ծովու * և զձայն ալեաց նորա ցածուցանէ ։



րիս ամէն բոլորքներին , և բովանդակ ծովի միջի եղած հեռաւոր կղզիներին յոյսն դու ես , իբր բովանդակ երկրիս բոլորքներուն բնակող քրիստոնէից , և այս ծով աշխարհիս մէջումն եղող հաւատացեալ ժողովրդոց յոյսն դու ես ։

Այսինքն , զէրէ ով է որ կու պատրաստէ սարերն իւր զօրութենովն , իբր ով է որ կու դարդարէ առաքեալքն իւր երկնային զօրութեամբն , և նոցա գիտութիւն և ըսքանչելագործութիւն անելոյ կարողութիւն կու տայ , եթէ ոչ դու * կամ ով է որ զգեցեր է զզօրութիւն և կարողութիւն , եթէ ոչ դու որ ունիս զիշխանութիւն յերկնիս և յերկրի , և ամ արարածք քեզ երկիր կու պագանեն ։

Այսինքն , ով է որ կու խռովեցուցանէ և կու ալեկոծէ ծովի մեծութիւնն , իբր ով է որ նորելած աւետարանի քարոզութեամբն այս ահագին ծովու աշխարհիս զանազան ազգերն կու շփոթացնէ , և կու դայթակղեցնէ , եթէ ոչ դու * կամ ով է որ նոյն ծովու աշխարհիս ալեաց ձայնն կու ցածացնէ , եթէ ոչ դու , որ շուտով քո հոգևոր սրբոյ շնորհօքն բոլոր աշխարհս

կու

կուխաղաղեցուցանես դարձու
ցանելով զխուրեանք 'ի գխաութի
Ճշմարտութեան:

Ո. յսինքն, կուապաշաներն լսե
լով քոյ առաքելոց քարոզութին
կուզարմանան կուապշին և կու
խռովին * և բոլանդակ երկրիս
վերայ բնակող մարդիկքն տեսանե
լով նոցա արարած նշանքն և բս
քանչելիքն կուվախենան քեզա
նից, և զքեզ Ճշմարիտ որդի այ
և ած Ճշմարիտ կուդաւանին:

Ո. յսինքն, քո աւետարանական
Ճշմարտութե արեգակն տեսանե
լով մարդիկք թէ առաւօտեան
իւր ելանելու տեղն, և թէ երեկ
վան իւր մտանելու տեղն, իբր թէ
յարևելս և թէ յարևմուտս, պի
տի ցնծան և զուարճանան * զէ
րէ հայեցար ածային գթովդ հո
ղեղինացն վերայ, և հարբեցու
ցիր զխուրեանք քոյ երկնային գի
նովդ, և զանազան շնորհաց պար
գևներով առատացուցիր հարս
տացուցիր և մեծացուցիր զնս:

Ո. յսինքն, այ գետն լցվեցաւ
ջրով, իբր հոգւին սբ իւր եօթն
արփեան շնորքն սկսաւ առատա
պէս հեղուլ արարածոցս վերայ
* և դու ինչպէս որ յաւիտենից
խոստացեր էիր, քո կենարար մար
մնոյ հողեղինաց կերակուր պա
տրաստեցիր * զերկ այսպէս է'



Խռովեսցին հեթա
նոսք * և երկիցեն
բնակիչք երկրի 'ի
նշանաց քոց:

Ելս առաւօտու և
ընդ երեկոյս զուար
ճացին * հայեցար
յերկիր արբեցուցեր
զնա, և բազում արա
րեր զմեծութիւն
նորա:

Գետն այ լի եղև
ջուրբ * պատրաստ
արարեր զկերակուր
նորա * զի այսպէս
է պատրաստութի:

Զակօս նորա արբեցուցեր * և բազում արարեր զարմտիս նորա։

՚Ի ցօղել նո՟ զուա՟րթ եղիցի բոյս նորա * օրհնեսցի պսակ տարւոյ քաղցրութե՟ քոյ

Դաշտք քո լցցին պարարտութե՟ * պարարտասցին գեղեցկութիւք անապատի։

Ճշմարիտ պատրաստութիւնն որ զմարդիկ անմահական կենացն մասնակից կանէ։

Այսինքն , երկրիս ակօսներն, երբ առուներն գինովցուցիր , երբ եկեղեցւոյ եպիսկոպոսունքն և քահանայքն հոգւոյն սրբոյ շնորհօքն լցիր և զարդարեցիր * և նորա արմտիքն , երբ զծառն և զճուղն շատացուցիր , երբ նորա ծնին քրիստոնեայքն նոցա քարոզութե՟ն և շնորհաբաշխութե՟ն բազմացուցիր և առատացուցիր ՚ի վերայ երկրի։

Այսինքն , երբոր այ՟ դեան կու ըսկսանի ցօղել , նորա բոյսքն կու կանանչանան և կու զուարթանան երբ երբոր հոգին սուրբ կու ըսկսանի անձրևի նման կաթկաթել ՚ի վերայ արարածոցս , նորածին քրիստոնեայքն կու պայծառանան առաքինութե՟ք և բարի գործովք * և այնպէս կու օրհնվի քոյ քաղցրութե՟ տարւոյ պսակն, երբ այսպէս օրհնութե՟ և փառաբանութե՟ կու լցվի և կու առատանայ քոյ քաղցր մարդեղութե՟ ժամանակի լրումն և կատարումն։

Այսինքն , քո դաշտերդ կու լցվին պարարտութե՟ , երբ զանազան քրիստոնէից ազգերն , ինչ տեղ որ քո առաքեալքդ աւետարանական ճշմարտութեան սերմն

ցաներ են , քոյ սուրբ հոգւոյդ
շնորհաց ջրովն արբենալով կու
պարարտանան և պտղաբեր կու
լինին * և անապատի սիրունու
թիւնն կուպարարտանայ , իբր
հեթանոսաց և այլազգեաց միջի
եղած բարի և ընդունակ մար
դիկքն կուպայծառանան քրիստո
նէական բարեգործութեամբ և
առաքինութ̃բ:

Այսինքն , բլուրներն ուրախու
թիւն և ցնծութի̃ կուզգենուն
իբր այն մարդիկքն որ կատարեալք
են առաքինութ̃բ , այլոց բարե
գործութիւն և ա̃ծպաշտութիւն
տեսանելով կուցնծան և կուրա
խանան * և ոչխարներն առա
ջևէն գնացող ղօչերն բրթով
կուլցվին , իբր առաջնորդք և
իշխանք սրբութ̃բ և առաքինու
թ̃բ կուզարդարվին:

Այսինքն , ձորամէջ տեղերն և
հով տեղերն կու առատանան
ցորենով , իբր հեզ և խոնարհ և
պարզամիտ մարդիկք ընդունելով
զսերմն քարոզութե̃ կենաց բա
նին , իւրեանց բարեգործութե̃
պտուղն կու շատացնեն * և
ամէնքն միաբան կու աղաղակեն ,
կու օրհնեն և կու փառաբանեն
զա̃ծ:

Բլուրք զցնծութի̃
զգեցցին * և զգեց
ցին խոյք մաքեաց:

Հովիտք բազում ա
րասցեն ցորեան *
աղաղակեսցեն և օրհ
նեսցեն:

Տունք: 16.



՚Ի կատարած դաւթի սաղմոս յարութէ։

Սաղմոս․ ԿԵ։

Աղաղակեցէք առ ա՟ծ ա՟մ երկիր * սաղմոս ասացէք անուան ն՟ր * և տուք զփառս օրհնութե ն՟ր։

Ասացէք ա՟յ, ո՛րչափ ահեղ են գործք քո * ՚ի բազում զօրութե քում ստեցին քեզ թշնամիք քո։

Իբր, զայս սաղմոս մինչև ՚ի վերջն դաւիթ մարգարէն է ասացեր վասն յարութե, բայց ո՛չ վասն յարութեան մեռելոց մարմնով, այլ վասն յարութե մեռելոց հոգւով, իբր վասն դարձման մեղաւորաց, ազատեցելոց ՚ի գերութէն սատանայի։

Այս սաղմոսումս շնորհակալ կու լինի մարգարէն զա՟յ կամ վասն իւր, և կամ ի բերանոյ արդարոց դոլով ազատեցեալ ՚ի վտանգէ։

Այսինքն, աղաղակեցէք ուրախ սրտով դէպ առ ա՟ծ որչափ որ այս երկրիս վերայ բնակող մարդիք կայք * միշտ նորա սուրբ անուանն յիշելով սաղմոս ասացէք * և նմա օրհնութեան փառք տուէք, իբր նորա ողորմութին և բարերարութիւնն յայտնելով զանազան ազգերի միջումն, իւր օրհնութին և գովութին առատացուցէք սփռեցէք և աճեցուցէք։ Այսինքն, ասացէք ա՟յ հաստատուն սրտով, թէ ո՟ր ա՟ծ ինչպէս զարմանալի և հիանալի է քո գործքդ * որ դու քո երկայնամտութեդ կուներես և կու համբերես, որ քո թշնամիքդ ընդդէմ քոյ ամենակարողութեդ խաբեփայութի կանեն, իբր ինչպէս

կուներես, որ կեղծաւոր և թերահաւատ մարդիկ քո ամենակարող զօրութիւնդ տեսանելով, կու խչխեն քո առաջևդ խաբեփայութ՟ի անել, երեսահանց զքեզ կուպաշտեն, և սրտեհանց զքեզ կուրանան:

Այսինքն, դու արժանի ես որ ա՟մ հողածին մարդ քեզ հոգւով և ճշմարտութ՟բ երկրպագանէ * քո անչափ բարերարութ՟իդ խոստովանելով սաղմոս երգութիւն անէ, և քո ամենամեծ անունդ յիշելով ահիւ և դողութ՟բ սաղմոս ասէ:

Այսինքն, արդ ով հողածին մարդիկ եկէք և տեսէք ա՟յ մեծամեծ գործքերն * և միտք արարէք թէ ինչպէս զարմանալի և հիանալի խորհրդներով են արարած, որ կու գերազանցեն զա՟մ ըստեղծեալ խորհուրդ և զիմաստութիւն մարդկան:

Այսինքն, ով է որ կարմիր ծովն ցամաքեցոյց * և իսրայելացւոց ազգն ցամաք ոտքով յորդանան գետն անց կացոյց:

Այսինքն, այնպիսի հրաշալի բաներն յիշելով ուրախանանք և ցնծանք մեք աստուծով * զէրէ նա է որ իւր ամենակարող զօրու՟թն կու տիրէ բոլոր աշխարհիս ՚ի սկզբանէ մինչև յաւիտենս յաւիտենից

Այս

Ամենայն երկիր երկիր պագցեն քեզ * սաղմոս ասասցեն քեզ և սաղմոս ասասցեն անուան քում:

Եկայք և տեսէք զգործս ա՟յ * ո՟պ զի ահեղ են խորհրդովք քան զա՟մ որդւոց մարդկան:

Որ դարձոյց զծովն ՚ի ցամաք * և ընդ գետս անցցեն ոտանաւորք:

Անդ ուրախ եղիցուք մեք ՚ի նմա * որ տիրէ զօրութեամբ իւրով յաւիտենից:

Աչք նորա ՚ի հեթանոսս հային * որք դառնացուցին զնա մի՛ բարձրասցին յանձինս իւրեանց։

Օրհնեցէք հեթանոսք զա՟ծ մեր * լուելի արարէք զձայն օրհնութե՟ նորա։

Որ եդ զանձն իմ ՚ի կեանս * և ո՛չ ետ զդողութի՟ ոտից իմոց։

Փորձեցեր զմեզ ա՟ծ և քննեցեր * ոպ՟ և քննի արծաթ։



Այսինքն, նր՟ գթած աչքերն հեթանոսաց և կռապաշտից վր՟ կունային, որ ազատեն զիւրեանք ՚ի գերութենէն սատանայի, և դարձուցանեն ՚ի գիտութի՟ ճշմարտութե՟ * և հրէայք որ դառնացուցին և զայրացուցին զնա ատելով զիւր որդին միածին չի՛ պարծենան և ասեն, թէ մեք միայն ենք ճշմարիտ ա՟ծպաշտք և որդիք արքայութե՟։

Այսինքն, դուք ուրեմն ո՛վ կռապաշտք արթնացէք և զօրացէք, և ուղիղ սրտով օրհնեցէք զտ՟րն մեր և զերկնի և զերկրի ստեղծող ա՟ծն * և նորա օրհնութե՟ և գովութե՟ ձայնն յայտնի արարէք և քարոզեցէք ա՟մ աշխարհի։

Այսինքն, այն որ զիմ անձս ՚ի մահուանէ և զանազան փորձանք ներէ ազատեց, և կենդանութե՟ միջումն զիս հաստատեց * և չէ թող որ իմ ոտքերս դողայր, իբր չէթող որ ես այնչափ վտանգների միջումն իմ թշնամեացն վախենայի, և իւր ա՟ծային օգնութե՟ն և ողորմութե՟ն յուսահատէի։

Այսինքն, դու տ՟ր ա՟ծ զմեր հաւատոյ հաստատութի՟ն փորձեցիր և քննեցիր իձեւն այլազգեաց և անհաւատից, մեզ զանազան նեղութի՟ և վիշտ տալով * ինչպէս ոսկերիչն կու փորձէ

և կու մաքրէ զարծաթն կրակով։
Տ՟ յախնքն, դու զմեզ զանազան որոգայթների, երբ զանազան թակարդների մէջ ձգեցիր մատնելով ՚ի ձեռն այլազգեաց և կռապաշտից * մեր քամակին վերայ անտանելի վշտերի և տառապանքների բեռն բարձիր * և զմեզ այնպէս կորը ձգեցիր, որ անհաւատ և անխղճմտանք մարդիք մեր գլուխն կոխատելով անց կացան։

Տ՟ յախնքն, մեք զանազան փորձանաց հուրն, և զանազան տառապանաց ջուրն անց կացանք, երբ ոմանք կրակով այրվեցանք և ոմանք ջրով խեղդվեցանք ՚ի ձեռն անհաւատից վասն սիրոյ քո ս՟բ հաւատոյդ, և զմեր անցաւոր կեանքն մարտիրոսութ՟բ վճարեցինք * և ՚ի վերջն դու զմեզ քո ողորմութ՟բդ ազատեցիր, և հանգիստ տեղ հանեցիր, երբ քո ս՟բ արքայութեդ արժանի արարիր և հանգստացուցիր։

Տ՟ յախնքն, ուստի շնորհակալ լինելով քեզանից կու մտանեմ քո տունդ, երբ ՚ի քո սուրբ եկեղեցիդ պատարագներով և ընծայներով * և այն ուխտերն որ իմ նեղութես իմ վշտիս և իմ չարչարանացս միջումն իմ շրթունքս խոստացեր են, և իմ բերանս խօ





Իջուցեր զմեզ յորոգայթ * և եդիր զնեղութի՛ ՚ի թիկունս մեր * և անցուցեր զմարդիկ ի վերայ գլխոց մերոց։

Անցաք մեք ընդ հուր և ընդ ջուր * և հաներ զմեզ ՚ի հանգիստ։

Մտից ՚ի տուն քո պատարագօք * տաց քեզ զուխտս իմ զոր խոստացան քեզ շրթունք իմ, և զոր բերան իմ խօսեցաւ ՚ի նեղութեան։

Զողջակէզս զուղ ղալիցս մատուցից քեզ * խոյովք և խնկովք * և քեզ մատուցից զուարակս և նոխազս։

Ե կայք լուարուք ինձ * և պատմեցից ձեզ ամենեքեան ոյք երկնչիք յայ, զոր ինչ արար անձին իմոյ։

սեցերէ, քեզ կուհատուցանեմ, եթէ զիմ հոգիս և զիմ մարմինս ուղիղ սրտիւ քեզ կուընծայեմ։ Այսինքն, և ինչպէս որ դումեզ օրինակ տալոյ համար հրամայեր ես իմեան մովսէսի, քեզ անարատ և գէր մատաղներ մատուցանեմ, եթէ զիմ հոգիս և մարմինս բարեգործութեամբ և առաքինութբ զարդարեմ և քեզ ընծայ տամ * ղօչերով և խնկերով, եթէ զոր առաքեալս որք են քի ճշմարիտ ղօչերն և սուրբ եկեղեցւոյ իշխանքն, անուշահոտ աղօթից խնկօք քեզ բարեխօս ձգեմ * և քեզ եզներ և այծեր մատուցանեմ, եթէ զեպիսկոպոսս և զքահանայս որք եզների նման կուվարեն և կուսերմանեն զայ այգին, եթէ զոր եկեղեցին իւրեանց քարոզութեամբն և բարի օրինակովն քեզ միջնորդ անեմ, այլև զայծերն, եթէ զմեղաւորս որք զղջմամբ և ապաշխարութեամբ արդարացեալք և սրբեալք են, քեզ ընծայ մատուցանեմ։

Այսինքն, եկէք ո՛վ բարեպաշտ և երկիւղած հաւատացեալք լսեցէք ինձ * որ պատմեմ ձեզ, թէ որչափ բարերարութի և շնորք արաւ աստուած իմ անձինս, փրկելով զիս 'ի մեղաց և 'ի գերութենէն սատանայի, և արժանա

հորելով իւր սուրբ և երկնային
արքայութեն.

Այսինքն, ես ա՟մ նեղութե միջումն իմ մնաց բերանովն դէպ առ նա գոչեցի և աղաղակեցի * և իմ լեզուովս զիւր տ՟ր անունն ուղիղ սրտիւ փառաւորեցի և բարձրացուցի 'ի մէջ հաւատացե
լոց.

Այսինքն, թէ որ ես իմ սրտումս, կամ իմ խղճմտանքումս մէկ մեղք մի, կամ մէկ թերահաւատութե գործք մի տեսանէի * մի թէ տ՟ր ա՟ծ երեսպաշտութի կանէր և կուլսէր մի ինձ քաւլիցի, այլ նախ զիմ մեղքս 'ի ձեռն խոստովանութե լուացի, և զիմ խղճմտանքս սրբեցի, և ապա մաքուր սրտիւ առնա աղօ
թեցի.

Դարձեալ, թէ որ ես մէկ մեղաց համար, կամ մէկ չար դիտաւորութե համար աղօթէի առ ա՟ծ, որ ինձ աջողութիւն տայր այն բանումն * մի թէ ա՟ծ կուլսէր մի ինձ, քաւ լիցի, այլ միշտ բարի գործոց համար, և իմ հոգւոյս փրկութեն համար աղօ
թեցի առնա.

Այսինքն, վասն որոյ լսեց ա՟ծ իմ աղօթիցն և իմ պաղատանացն * և իմ խնդրուածոց ձայնին նայեցաւ, և ողորմեցաւ ինձ





Ես նա բերանով իմով կարդացի * և բարձր արարի զնա ընդ
լեզուաւ իմով.

Զ մեղս թէ տեսանէի 'ի սրտի իմում * մի թէ լուիցէ ինձ
տ՟ր.

Վ՟ն այսորիկ լուաւ ա՟ծ * և նայեցաւ 'ի ձայն խնդրուա
ծաց իմոց.

Օրհնեալ է ած որ ոչ 'ի բացեայ արար զաղօթս իմ * և ո́չ զողորմութիւն իւր յինէն։

Տունք. 19.

'Ի կատարած ընդ օրհնութիւ սաղմոս երգոց:

Սաղմոս. ԿԶ.



Ած ողորմեաց մեզ և օրհնեա́ զմեզ * եր և եցո́ զերեսս քո 'ի մեզ և ողորմեաց մեզ։

Ճանաչել յերկրի ըզ ճանապարհս քո * յազգինս ամ զփրկութիւնս քո։



իւր ածային գթութեամբն։ Այսինքն, օրհնեալ է ած որ մինչև ցայսօր զիմ աղօթքս դէն չի́ ձգեց * և զիւր ողորմութիւն և գթութիւն բնաւ ինձանից չի́ հեռացոյց։

Իբր, զայս սաղմոս 'ի լնանիլ օրինաց և մարգարէից և 'ի գալն քի յաշխարհ, երգել պարտին հաւատացեալք օրհնելով զած։ Այս սաղմոսումս կաղաչէ մարգարէն զած վասն գալստեանն քրիստոսի և դարձման հեթանոսաց։

Այսինքն, ո̃ր ած խղճա́ մեզ և օրհնէ զմեզ 'ի ձեռն որդւոյ քո միածնի, աղատելով զմեզ յանիծիցն ադամայ * քո աստուածային երեսդ քո փառաց ճառագայթն, և քո էութեդ նկարագիրն, իբր զտրն մեր յս քս, մեր միջումն մարդկային կերպարանքով երևեցուր, և նորա ածային անօրէնութեան մեզ ողորմիր և մեր մեղացն թողութի շնորհէ։ Այսինքն, որ հողեղէն մարդիք նր աւետարանական՝ քարոզութեան քո ածային օրինաց և պատուիրանաց ճանապարհին ճանաչեն * և ամենայն ազգ և ազինք քո փրկութիւնդ տեսանեն և

ուրա

ուրախանան հոգւով։

Այսինքն, հրէից ժողովուրդքն թողուն իւրեանց կուրութին և կամապաշտութին, և զքեզ ուղիղ սրտով ած խոստովանին * և հեթանոսաց ժողովուրդքն հեռանալով 'ի կռապաշտութենէ զքեզ միայն ճշմարիտ ած դաւանին, և քեզ հոգւով և ճշմարտութե երկիր պագանեն։

Այսինքն, և միաբան ուրախանան և ցնծան ամ ազգ և ազինք քո անչափ ողորմութեդ և քո անքննելի արդարութեդ վերայ * զի դու իմաստուն որդւոյ քո միածնի կու դատես քո հաստացեալ ժողովուրդդ ուղիղ դատաստանով, և հողածին ազգի մարդկան ճանապարհ ճշմարտութե կու ցուցանես, և դէպ 'ի յերկինս կու առաջնորդես։

Այսինքն, դու չէ թէ միայն հրէից ածն ես, այլ և հեթանոսաց տէրն և ածն ես ուստի չէ թէ միայն հրէից ժողովուրդքն զքեզ ած կու խոստովանին * այլ և ամ ժողովուրդք հեթանոսաց զքեզ ճշմարիտ ած կու դաւանին։

Այսինքն, զէրէ կոյսն մարիամ երկիրն ամէնօրհնեալ պտղաբերեցաւ, և մեզ անմահութե պտուղ տվեց * և այն պտղոյ միջնոր



Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ած * խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ամ։

Ուրախ եղիցին և ցնծասցեն ազինք * զի դու դատես զժողովուրդս յուղղութե և ազգաց երկրի դու առաջնորդես։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ած * խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ամ։

Երկիր ետ զպտուղ իւր * և օրհնեսցէ զմեզ ած ած մեր։

Ած մեր օրհնեսցէ
զմեզ * և 'ի նմանէ
երկիցեն ամ ծագք
երկրի։

Տունք: Գ·

'Ի կատարած դաւթի սաղ
մոս երգոց:

Սաղմոս · ԿԷ :

Յարիցէ ած *
և ցրուեսցին
ամ թշնամիք
նորա, փախի
ցեն ատելիք նորա
յերեսաց նր։

Ոպ պակասի ծուխ
պակասեսցին * ոպ
հալի մոմ առաջի հրոյ
այնպէս կորիցեն մե
ղաւորք յերեսաց այ։



գութէն օրհնեց զմեզ հայրն ած
որ մեր ճշմարիտ ածն է։
Այսինքն, և այսուհետև միշտ
իւր ածային օրհնութին մեզ վր
կուպահէ * և բոլոր աշխարհիս
ծայրերի բնակող մարդիկքն նորա
նէ կուվախեն և կուերկնչին, և
զնա ճշմարիտ ած և տր երկնի և
երկրի կուխոստովանին։

Իբր, զայս սաղմոս կու երգէ
դաւիթ ոչ վասն իւր ժամանա
կին, այլ վասն ժամանակի գա
լստեանն քի։
Այս սաղմոսումս կու խօսի մար
գարէն վասն յարութեն քի և
եկեղեցւոյ նորա և վս քարոզու
թեան առաքելոցն։

յսինքն, կու յարի քս ած
'ի մեռելոց անմահա
կան փառօք * և իւր
երևելի և աներևոյթ թշնամիքն
կուցրուին և իւր ատելի հրէայքն
յիւր երեսաց պայծառութենէն
կուփախչին, և ածային փառացն
կարօտ կումնան։
Այսինքն, ինչպէս որ ծուխն
կուպակասի և աներևոյթ կուլի
նի, այնպէս կուպակասին և կու
փչանան մեղաւորք * և ինչպէս
մոմն կրակի առաջեն կու հալի,

այնպէս կու հալին և կու կորն
չին առաջի երեսաց արդար դա
տաւորին տ՟յ։

Այսինքն , արդարքն մաքուր հաւատով կուրախանան , և բոր բոքեալ սիրով կուցնծան նորա առաջևն * և կուբերկրին և կու զուարձանան անմահական ուրախութե միջումն։

Այսինքն , ուրեմն օրհնեցէք զ՟քս ա՟ծ մեր ո՛վ հաւատացեալ ժողովուրդք և նորա ս՟բ անուննն յիշելով սաղմոս ասացէք * ձեր սրտի դռներն բացէք առաքինու թե՟ , և զանազան բարեգործու թե՟ ճանապարհ պատրաստեցէք այն ճշմարիտ արեգականն ք՟ի , որ կունստի և կուբազմի յարև մուտս , իբր 'իմէջ մեղաւորաց , և խաւարեցելոց հոգւով , որ զիւրեանք ա՟ծային գիտութե և ուղիղ կենցաղավարութե պայծա ռացուցանէ , և լուսաւորէ , և իւր անունն տ՟ր է՛, զէրէնա է՛ տ՟ր և ըստեղծօղ բոլոր աշխարհի։

Այսինքն , նորա առաջևն եր կիւղած և բարեպաշտ մարդիքն կուցնծան և կուրախանան հոգ ևոր ուրախութե * և անօրէն և աներկիւղ մարդիքն կու խռո վին և կուսարսափին նորա ահա ւոր երեսէն , և հալածական կու լինին ,

Այ

Արդարք ուրախ ե ղիցին , և ցնծասցեն առաջի նորա * և զուարձասցին յուրա խութե իւրեանց։

Օրհնեցէք զա՟ծ մեր և սաղմոս ասացէք անուան նորա * ճա նապարհ արարէք այն միկ որ նստի ընդ արև մուտս , և տ՟ր է՛ անուն ն՟ր։

Ցնծասցեն առաջի ն՟ր * և խռովեսցին յերեսաց ն՟ր։

Որ հայրն է որբոց, և դատաւոր այրեաց * ած 'ի տեղւոջ սրբութեան իւրոյ:

Այսինքն, նա որ և հայր է որբմարդկանց, և դատաւոր է այրիկանանց, իբր խղճից և զրկելոց ցաւակից և հոգտանող է, և նց իրաւունք և դատաստան անօղ է * և նա է ինքն ած որ կու նստի յերկինս իւր սրբութեան տեղում իբր իւր երկնային և ածային աթոռում, և կու երկրպագի 'ի հրեշտակաց և 'ի մարդկանէ:

Ած բնակեցուցանէ զմիակրօնս 'ի տան * և հանէ զկապեալս քաջութբ իւրով * նոյնպէս և զդառնացօղս որք բնակեալ են 'ի գերեզմանս:

Այսինքն, նա է այն ածն որ զանազան քրիստոնէից ազգերի ժողովուրդներն միաբան և միակրօն կու պահէ իւր սբ եկեղեցւոյ միջում, իբր միով հաւատով և միով դիտաւորութբ * նա է որ իւր ածային քաջութբն կու հանէ 'ի դժոխոց զդասս արդարոց, որ կապեալք և արգելեալք էին 'ի ներքոյ իշխանութեն սատանայի * այլ և նա է որ դառն և աղտեղի մեղաւորքն իւրեանց մեղաց գերեզմանէն կու հանէ, և 'ի յապաշխարութի կու կոչէ, և 'ի յերկինս կու հրաւիրէ 'ի փառս անմահականս:

Ած ընդ ելանելն քո առաջի ժողովրդեան քոյ * ընդ անցանելն քոյ յանապատի * երկիր շարժեցաւ:

Այսինքն, արդ ով է որ ած որ քո այդքան հրաշագործութիւնքդ կարենայ ուրանալ, դու երբոր քոյ սուրբ առաքելոց և նորահաւատ քրիստոնէից ժողովրդոց առաջևն անկար, և նոցա ճանապարհ նշանց տուիր պահե

լով

լով զիւրեանք 'ի զանազան փոր
ձութեց և 'ի հալածանաց բռնա
ւորաց * և երբոր այս անապատ
և անշէն դարձած աշխարհիս վե
րայէն անցկենալով քո աւետարա
նական ճշմարտութին նոցա ձե
ռօքն սերմանեցիր * այն ժամա
նակն աշխարհս շարժեցաւ , և
դողաց , զէրէ հրէայք գայթակ
ղեցան , և հեթանոսք յիմարե
ցան ըստ պօղոսի ։

Այսինքն , և քանզի երկինք ևս
անձրև ցօղեցին , իբր առաքեալք
այլ իւրեանց ածային քարոզու-
թե անձրևն թափեցին աշխար
հիս վերայ * բայց այն քարոզու-
թին և այն վարդապետութին
որ սերմանեցին առաքեալք իւր
եանցնէ չէր , այլ սինայի այն էր
և իսրայէլացւոց այ երեւէն էր ,
իբր քո շնորհօքդ և քո իմաստու-
թեդ էր , որ 'ի լեառն սինայ 'ի
ձեռն մովսէսի օրէնք և պատուի
րանք տուօղ այ երեւան և կերպա
րանքն ես , և նոյն իսրայէլացւոց
այ էութե նկարագիրն ես ըստ
պօղոսի ։

Այսինքն , դու տր ած զայս
քարոզութե անձրևս , որ կամաց
և հաճութե անձրևէ՛ , իբր
կամօք և յօժարութե ուղողաց
և ընդունողաց անձրևնէ՛ քոյ ժա
ռանգութեդ , և քոյ տր եկեղե



Քանզի և երկինք
ցօղեցին * յերեսաց
այ սինայի , առաջի
այ իսրայէլի ։

Անձրև կամաց պատ
րաստեցեր ած ժա
ռանգութե քում *
թէպէտ և հիւանդա
ցաւ , սակայն դու
հաստատեցեր զնա *

և գաղանք քո ընա
կեսցին ՚ի նմա։

Պատրաստ արարեր
քաղցրութբ քով աղ
քատի ած * ած տա
ցէ զբան ոյք աւետա
րանեն զօրութբ
բազմաւ։

Թագաւոր զօրութեանց
սիրելւոյ * գեղեց

ցուցդ համար պատրաստեցեր * և
թէպէտ ժամանակ մի հիւանդա
ցաւ և նուաղեցաւ ՚ի ձեռն հա
լածանաց անօրինաց , բայց դու
քաղցրութբ ոբ վարդապետաց
կրկին հաստատեցեր, և զօրացու
ցեր զնա * և այնչափ առատացու
ցեր և ճոխացուցեր քո շնորհօքդ
որ քո գաղանները այլ կուգան
և կաւբնակին նր միջումն , իբր
գաղանաբարոյ և ամբարիշտ մար
դիքն այլ որ քո ըստեղծուածքն
են , դառնալով ՚ի գիտութիւն
ճշմարտութն քոյ ոբ եկեղեցւոյդ
բնակիչ կուլինին։
Այսինքն , այս քո վարդապե
տաց քաղցրութին , այս քո երկ
նային հացն դու քո ածային քաղց
րութբդ պատրաստեցեր քոյ ոբ
եկեղեցւոյ միջումն , զէրէ դու
հոգւով աղքատաց , և ածային
ճշմարտութն ցանկացող մարդ
կանց ածն ես * և քո սուրբ
հոգիդ տրն և կենդանարարն ,
բան և իմաստութի կուտայ վար
դապետաց , որ քո աւետարանա
կան ճշմարտութիդ քարոզեն և
պատմեն բազում զօրութեամբ,
իբր մեծամեծ ըսքանչելագործու
թբ և դարձուցանեն զամենես
եան ՚ի գիտութի ճշմարտութն։
Այսինքն, դու ով թագաւորդ
երկնային զօրութեանց , և հայր

որդ

որդւոյդ քո միածնի սիրեցելոյ * զզանազան ազգս մարդկան որք են գեղեցկութիք և զարդարք քո տանդ, իբր քո սուրբ եկեղեցւոյդ, պատուական աւարի նման, իբր մեծագին խլած ապրանքի նման բաժանեցիր քո ս՟բ աշակերտացն որ գնան զիւրեանք դարձուցանեն 'ի գիտութի՟ ճշմարտութե՟ * թէ և ընդ որդւոյ քո միածնի և ընդ հոգւոյդ սրբոյ միշտ նոցա վիճակների միջումն կուննջէք, իբր նոցա վիճակ անկած դաւառների միջումն պատրաստ էք, բայց կուննջէք, զէրէ դեռ ձեր ա՟ծային դութքն և ողորմութին ն՟ց վերայ չէք թափեր, և զիւրեանք իբրև զորդիս եկեղեցւոյ դեռ չէք նախախնամեր :

Այսինքն, բայց քո աղաւնւոյդ թևերն արծաթապատ է՛, իբր քո սուրբ հոգւոյդ երկնային խորհուրդն արծաթի նման պայծառ է՛, նոցա միտքն և հոգին շուտով կուլուսաւորէ * և իւր քամակն ոսկեգոյն է՛, իբր իւր երկնային օրհնաց բեռն գեղեցիկ և ցանկալի է՛ իբրև ոսկի, ն՟ց սիրտն շուտով կուկակղացնէ և կուքարշէ 'ի սէր ա՟ծութեդ :

Այսինքն, երբոր երկնաւոր թագաւորն ք՟ս այն ժողովրդեանն





կութի տան քո բաժանեալ յաւարի * թէպէտ և ննջեսջիք 'ի մէջ վիճակաց :

Թևք աղաւնւոյ արծաթապատ * և թիկնամէջ նորա 'ի գոյն ոսկւոյ :

'Ի գումարել երկնաւորին զթագա

ւորս ՚ի վերայ նորա * ձիւնասցին ՚ի սաղմոն :

Լեառն այ, լեառն պարարտ * լեառն մածեալ և լեառն պարարտ * և զինչ կարծէք լերինք հպարտացեալք :

Լեառն ընդ որ հաճեցաւ այ բնակել ՚ի նմա * քանզի և տր իսկ բնակեսցի ՚ի նմա իսպառ :

Կառք այ բիւրապատիկ, հազարք ուղղինչք * և տր ՚ի նոսա ՚ի սինայ ՚ի սրբու



վերայ թագաւորներ կու ժողովէ, իբր որ առաքեալքն կու կոչէ և կու հաստատէ նոցա վերայ որ զիւրեանք ուղղեն և կառավարեն * ձիւնի նման կու փայլէ սակաւան ՚ի սաղմոն լեառն, իբր զանազան առաքինութե կու պայծառանան ՚ի մէջ եկեղեցւոյ :

Այսինքն, այս սաղմոն լեառս որ է եկեղեցի այ, քի սեփական լեառն է, և հոգւոյն սրբոյ շնորհօքն պարարտացած է * միութե հաւատոյ մերուած և միաւորած է, և զանազան առաքինութե հարստացած է * ինչ կու կարծէք դուք ով հպարտացած լեռներ, իբր ինչ մնաց վերայ էք դուք ով հպարտացած ազգք և ժողովուրդք անօրինաց ապստամբէից և անհաւատից :

Այսինքն, այս լեառս այն լեառն է որ որդին այ հաւանէր է որ նորա միջումն բնակի * և չէ թէ միայն որդին, այլ և ինքն հայրն ած ընդ հոգւոյն սրբոյ կու բնակի նորա միջումն յաւիտեանս յաւիտենից, ըստ այնմ, ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամ աւուրս մինչև ՚ի կատարած աշխարհի :

Այսինքն, զէրէ այ կառքն բիւրապատիկք են, իբր այ արապայքն որք են սբք և երանելիք, շատք են և անթիւք են, և նոցա ուղ

ղինչքն

զէչքն, իբր արտապաձիքն որք են Հրեշտակք, Հազարք Հազարաց են * և ինքն տրն նոցա վերայ կու բազմի վարժելով զիւրեանք զիմաստութե՟ Ճշմարտութե՟, ինչպէս բազմեցաւ 'ի սինէական լեառն մեզ օրէնք և պատուիրանք տալով և ինչպէս որ այժմ կու բազմի 'ի սրբութին սրբոց 'ի վերայ սուրբ սեղանին:

Այսինքն, այս այն տրն և ածն է', որ երբոր Համբարձաւ 'ի յերկինս, արդարոց Հոգիքն որ դերեալք էին 'ի սատանայէ, իւրն դերի արար յաւար առնելով, իբր խլելով և յափշտակելով նր ձեռքէն * և իւր Հոգւոյն սրբոյ եօթն արփեն պարգևքն բաշխեց և տուաւ որդւոց մարդկան * զէրէ շատ թերահաւատ մարդիկք որ տեսանելով զքս մարդկային կերպարանաւ երկմտեր էին և չէին Հաւատացեր թէ նա Ճշմարիտ որդի այ է', ընդունելով Հոգւոյն սրբոյ շնորքն կու Հաստատվին 'ի Հաւատս, և այլ Հաւատացելոց Հետ կու բնակին իւր տր եկեղեցւոյ միջումն:

Այսինքն, օրՀնեալ եղիցի տր ած, օրՀնեալ եղիցի տր միշտ և Հանապազ * ըստեղծօղն ած և փրկիչն մեր որ միշտ զմեզ դէպ 'ի Ճանապարհն փրկութե՟ առաջնորդէ:





թեան իւրոյ:

Ել 'ի բարձունս և գերեաց զգերութի էառ զաւար * բաշխեաց պարգևս և ետ որդւոց մարդկան * քան զի թերահաւատից ևս բնակեալք եղիցին 'ինմա:

Տր ած օրՀնեալ, օրՀնեալ տր զօր Հանապազ * առաջնորդեսցէ մեզ ած փրկիչ մեր:

Ածմեր ած կենա
րար * և 'ի տնէ են
ելք մահու։

Այսինքն, մեր ածն փրկութի
և կենդանութի տուօղ ած է *
և նորա շնորհօքն միայն կուազա
տինք 'ի հոգևոր և 'ի մարմնաւոր
մահուանէ։

Բայց սակայն ած փշ
րեսցէ զգլուխս թշ
նամեաց մերոց * և
զհերն կարձնովին
որք գնան յանօրէ
նութեան իւր
եանց։

Այսինքն, բայց ինքն տր ած
կու խորտակէ և կու փշրէ մեր թշ
նամեաց գլուխն, իբր հեթանո
սաց հպարտութիւնն և բարձրա
մտութիւն կու ցածացնէ * և այն
անզգամ հրէից որ միշտ իւրենց
անօրէնութե միջումն կամակո
րութ կու մնան, ոչ միայն գլուխն
կու ջարդէ, այլև քաքուլի ծայ
րերն կարճիկ կարճիկ կու խուզէ
և կու մանրատէ, իբր ոչ միայն
զկամապաշտութիւն և զխստասր
տութիւն կու յաղթահարէ, այլ
և նց սուտ յոյսն և ընդունայն
պարծանքն կու փշացնէ։

Ասաց տր 'ի խորոց
անդնդոց դարձու
ցից * և 'ի միջոյ ժան
եաց զայն 'ի դուրս
կորզեցից։

Այսինքն, ինչպէս որ ինքն տր
ած հոգոյն սրբով խոստացաւ
իւր միածին որդւոյն ասելով,
թէ 'ի խորոց անդնդոց դարձու
ցից, իբր որով հետև հրէայք
ատեցին զքո ճշմարտութիւդ, ես
զխառնակած ազգն հեթանոսաց
որք են 'ի խորս անդնդոց 'ի մէջ
մեղաց ծովու, դարձուցանեմ
'ի գիտութի ճշմարտութե, և
քեզ հաւատարիմ ծառայք հաս
տատեմ * և թէ դայլի բերան
ների միջումն այլ լինին, իբր թէ

Դու պատրաստեցեր զուղղութի՟ * զիրաւունս և զարդարութիւն յակոբայ դու արարեր:

Բարձր արարէք զտ՟ր ա՟ծ մեր * երկրպագէք պատուանդանի ոտից նորա զի ս՟բ է:

Մովսէս և ահարոն երիցունք նորա. և սամուէլ ընդ այնոսիկ * որք կարդային զանուն նորա:

Կարդային առ տ՟ր և նա լսէր նոցա * և 'ի սիւն ամպոյ խօսէր ընդ նոսա:



Այսինքն, դու պատրաստեցիր զուղղութի՟, իբր դու զքո աւետարանական վարդապետութի՟ն, որ կուսուցանէ զուղիղ ճանապարհ կենդանաւորութե՟, պատրաստեցիր 'ի ձեռն առաքելոց և վարդապետաց * և յակոբայ զարմին, իբր քոյ հաւատացեալ ծառայիցդ իրաւունք և արդարութի՟ արարիր, ազատելով զնոսա ի մեղաց և 'ի բռնութենէն սատանայի:

Այսինքն, վ՟ս որոյ ով հաւատացեալ ժողովուրդք բարձրացուցէք մեծարեցէք և պատուեցէք զտ՟ր ա՟ծն մեր յ՟ս ք՟ս * և երկրպագեցէք նորա պատուական խաչափայտին, զէրէ ս՟բ է գոլով աթոռ և զենարան որդւոյն ա՟յ: Այսինքն, ինչպէս որ մովսէս և ահարոն որ նորա երիցունքն էին, իբր 'ի քահանայական զարմէն ղևեայ ծնեալք, և սամուէլ որ նոյն զարմէն էր յառաջ եկեալ ըստ վկայութե՟ գրոցն մնացորդաց * մարգարէական աչօք տեսանելով զնա կու պատուէին և կու մեծարէին, և ն՟ր ամենասուրբ անուննիւրեանց յօգնութի՟ կու կոչէին: Այսինքն, սոքա ջերմացեալ սրտիւ կու աղաղակէին առ նա, իբր առ տ՟րն մեր յ՟ս ք՟ս, և նա կու լսէր խնդրուածոց նոցա * և

ծածկեալ 'ի սիւն ամպոյ կու խօսէր ընդ նոսա, նշանակելով թէ յետ ժամանակաց ծածկեալ 'ի սիւն մարմնոյ իւրոյ պիտէր խօսիլ ընդ աշխարհի, և կենցաղավարէր ընդ մարդկան։

Այսինքն, կու պահէին նորա զուխտն և զվկայութիւնն * և օրէնքն և հրամանքն որ տուեր էր նոցա, զէրէ նա է օրինադիր, և կարգադրող հին և նոր կտակարանաց։

Այսինքն, տր ած մեր յս քս, դու էիր որ կու լսէիր նոցա խնդրուածոցն * դու էիր որ նց աղօթիւքն իսրայէլացւոց ժողովրդեան յանցանքն կու քաւէիր * և դու էիր որ վրէժխնդիր լինելով նոցա գործոցն և արարմանցն զիւրեանք կու պատժէիր մարմնով, որ 'ի հանդերձելումն չէ կորնչէին հոգւով։

Այսինքն, բարձրացուցէք ուրեմն ով հաւատացեալք զտր ածն մեր յս քս * և երկրպագեցէք նորա իւր սբ լեռնումն, իբր իւր սբ եկեղեցւոյ միջումն * զէրէ սուրբ է տր ած մեր յս քս, թէ և վասն մեր ընդ անօրէնս համարեցաւ։

Իբր, զայս սաղմոսս ասել պարտ է երբոր գոհանալով զայն կու խօս





Պահէին զվկայութի նս * և զհրամանս զոր ետ նոցա։

Տր ած մեր դու լսէիր նց * ած դու քաւիչ լինէիր նց * և վրէժ խնդիր լնր ամ գործոց նոցա։

Բարձր արարէք զտր ած մեր * երկրպագէք 'ի լեառն սբ նր * զի սուրբ է տր ած մեր։

Տունք. 10.

Սաղմոս 'ի խոստովանութի։

Սաղմոս. ՂԹ:



Աղաղակեցէք առ Տր ամ երկիր * ծառայեցէք Տն ուրախութբ։

Մտէք առաջի նորա ցնծութբ * ծաներուք զի նա է Տր Ած մեր։

Նա արար զմեզ և ոչ մեք էաք * մեք ժողովուրդ և խաշն արօտի նորա։

Մտէք ընդ դրունս նր խոստովանութբ * և օրհնութբ ՚ի յարկս նր։

տովանիմք զնորա անչափ բարերարութին և ողորմութին։

Այս սաղմոսումս կու յորդորէ մարգարէն զՀաւատացեալս որ ցնծել և գովել զՔս Ած ուրախութբ և ցնծութբ։

Այսինքն, աղաղակեցէք ուղիղ սրտով առ Տրն մեր յՔս ով բնակիչք երկրի * և ծառայեցէք նոյն տեառն մերոյ յՔի ուրախութբ և յօժար սրտիւ կատարելով զպատուիրանս նորա։

Այսինքն, մտէք նորա առաջին ցնծութբ, երբ մօտկացէք առ սուրբ սեղանն Հոգեկան ցնծութբ ուր բազմի Քս, երկրպագելով, աղօթելով և պատարագելով * և գիտացէք որ նա է մեր Տր Ածն, մեք բաց ՚ի նմանէ այլ ուրիշ Ած չունինք։

Այսինքն, նա ստեղծեց զմեզ յոչնչէ, մենք յառաջ չէի կայինք, և նա զմեզ վերաստեղծեց յոչնչութէ մեղաց * մեք նր արեամբ գնեալ ժողովուրդն ենք, և նր աւետարանական քարոզութեան արօտին ոչխարներն ենք։

Այսինքն, մտէք նորա Տբ եկեղեցւոյ դռներն ՚ի ներս խոստովանելով զԱծութին նր, և զանչափ բարերարութին նորա * և մտէք նորա Տբ տաճարն օրհնու

թեամբ և գոհութք, և ոչ ցաս-
մամբ կամ խռովութք կամ բամ-
բասանօք, և կամ դատարկաբա-
նութք։

Այսինքն, խոստովանեցէք զձեր մեղքն և յանցանքն տն մերոյ յի քի ՚ի ձեռն քահանային * և զղջմամբ և արտասուօք օրհնեցէք և բարեբանեցէքնր սբ անունն։

Այսինքն, զէրէ քաղցր է տր ած մեր յս քս, և իւր ողորմութին յաւիտեանս յաւիտենից չէ պակասիր * և իւր ճշմարիտ բանն որ ասացեր է թէ ոչ կամիմ զմահ մեղաւորին, այլ զդառնալն նր ՚ի չար ճանապարհէն և զկեալն, յազգէ մինչև յազգ հաստատուն է։

Իբր, զայս սաղմոսս ինքն դաւիթ շարադրեաց և ինքն երգեաց։

Այս սաղմոսաւս աղօթելով մարգարէն առ ած կուսուցանէ մեզ թէ որպէս պարտ է թագաւորաց և իշխանաց կենցաղավարիլ։

Այսինքն, նայելով ՚ի քո անբաւելի ողորմութիդ տր ած որ ունիս ՚ի վերայ խղճից և տառապելոց, և քո անճառելի իրաւունքդ և դատաստանդ որ կանես զրկելոց և վշտանկելոց, կու օրհնեմ և կու փառաբանեմ զքեզ *





Խոստովան եղերուք տն * և օրհնեցէք զանուն նորա։

Քաղցր է տր յաւիտեան է ողորմութի նորա * յազգէ մինչև յազգ է ճշմարտութի նորա։

Տունք. Ե։

Սաղմոս ինքեան դաւթի։

Սաղմոս. Ճ.

Զողորմութիւն և զիրաւունս օրհնեցից զքեզ տր * սաղմոս ասացից և ՚ի միտ առից։



Ճանապարհս ամբիծ մինչև եկեսցէ առ իս * զի գնայի ես յամբծութն սրտի իմոյ և 'ի մէջ տան իմոյ:

Ո՛չ եդի առաջի աչաց իմոց զիրս անիրաւութեան * ոյք առնէին զանօրէնութի ատեցի:

Ո՛չ մերձեցաւ առ իս որ թիւրն էր սրտիւ * խոտորիլն յինէն անզգամին և ես ինչ ոչ փոյթ առնէի:

Որ խօսէր գաղտ զընկերէ իւրմէ * զնա 'ի բացէ իբաց հալածէի:



սաղմոս կասեմ առ քեզ անդադար, և ասացած օրհնաբանութն խօսքերս միտք կանեմ, իբր կու իմանամ թէ զով կու պաշտեմ, կամ զով կու փառաբանեմ:

Այսինքն, և այսպէս բերանովս և մտօքս այնչափ կու աղաղակեմ առ քեզ մինչև որ քոյ օրինաց և պատուիրանաց ամբիծ ճանապարհն տպաւորի իմ հոգւոյս մէջն * զէրէ ես մինչև ցայսօր, հետևելով քոյ ածային հրամանացդ ամբիծ և անարատ սրտիւ շուրջ կու գայի իմ տան միջումն, իբր իմ տէրութն և թագաւորութեան միջումն:

Այսինքն, ես բնաւ իմ աչաց առաջևն անիրաւ և անդատաստան իքմին չի՛ դրի, իբր չի ուզեցի տեսանել * և այն մարդիքն որ օրինազանցութե կու ապրէին, ատեցի և յերեսաց ձգեցի:

Այսինքն, այն մարդն որ միտքն թեք էր և սրտումն խորամանկութիւն ունէր բնաւ չէ՛ր իշխեր թէ ինձ մօտկանայր * և անզգամ և անամօթ մարդն երբոր ինձանից կու հեռանայր, ամենևին փոյթ չէի աներ:

Այսինքն, այն մարդն որ իւր ընկերիցն գաղտուկ կու զրուցէր և կու փախսայր զայլս վատաբանելով և բամբասելով * ես զնա

ինձանից 'ի բաց կու հալածէի։

Այսինքն, այն մարդն որ աչքն ամբարտաւան էր և սիրտն ագահ էր * ես նորա հետ հաց այլ չէի ուտեր։

Այսինքն, իմ աչքս միշտ դէպ 'ի յերկիւղած և հաւատարիմ մարդիքն էր * որ ինձ հետ նստէին և խօսակցութի անէին։

Այսինքն, այն մարդն որ ամ͞յ օրինաց և պատուիրանաց ուղիղ ճանապարհումն կու շրջէր * նա ինձ ըսպասաւորութիւն և ծառայութիւն կանէր միշտ և հանապազ։

Այսինքն, այն մարդն որ հպարտութիւն և ամբարտաւանութիւն կանէր իւր ընկերին վերայ, նա իմ տան մէջն չէր բնակէր * և այն որ անիրաւութիւն և անպարկեշտութիւն կու խօսէր, բնաւ իմ աչաց առաջևն աջողութիւն չէր գտանէր։

Այսինքն, առաւօտն կանուխ կու պատժէի և կու սպանանէի որ չար որ մեղաւոր և չարագործ մարդ կայր իմ երկրումս * որ կարենայի սատկացնել և փչացնել ա͞յ քաղաքումն, իբր 'ի յերուսաղէմ զամէն այնպիսի մարդիքն որ անօրէնութիւն կու գործէին։





Որ ամբարտաւան էր աչօք և ագահ սրտիւ * ընդ նմա և հաց ո՛չ ուտէի։

Աչք իմ 'ի հաւատացեալս երկրի * զի նստցին նոքա ընդ իս։

Որ գնայր 'ի ճանապարհ ամբիծ * նա պաշտէր զիս։

Ո՛չ բնակէր 'ի մէջ տան իմոյ որ առնէր զամբարտաւանութի * և որ խօսէր զանօրէնութի չէ՛ր աջողեալ նմա առաջի աչաց իմոց։

Ընդ առաւօտս սպանանէի զամենայն մեղաւորս երկրի * զի սատակէի 'ի քաղաքէ տն զամենեսեան որք գործեն զանօրէնութիւն։

Տունք. 10.

Աղօթք աղքատի իբրև ձանձրասցի և առաջի Տեառն սփռեսցէ զխնդրուածս իւր։

Սաղմոս. ՃԲ։

Տէր լուր աղօթից իմոց, և աղաղակ իմ առ քեզ եկեսցէ * մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն։

Յաւուր նեղութեան իմոյ խոնարհեցո առ իս զունկն քո * յորում աւուր կարդամ առ քեզ վաղվաղակի լուր ինձ։

Սպառեցան որպէս ծուխ աւուրք իմ * և ոսկերք իմ որպէս խուխ չորացան։



Իբր, զայս աղօթքս շարադրեաց Դաւիթ 'ի բերանոյ աղքատաց որ 'ի մէջ վշտաց և տառապանաց իւրեանց երգեն առ ա̃ծ։

Այս սաղմոսումս կու խօսի մարգարէն 'ի բերանոյ արդարոց որք տառապեալք 'ի չարչարանաց սնոտի աշխարհիս ցանկային գալստեանն քրիստոսի։

Այսինքն, ո̃վ ա̃ծ ականջ արա՛ քո գթութեամբդ իմ աղօթքիս, և արժանի արա՛ որ իմ աղաղակս առ քեզ հասանի * և վասն յանցանաց և սխալանաց իմոց զքո ամենօրհնեալ երեսդ ինձանից մի՛ դարձուցաներ։

Այսինքն, այն օրն որ սաստիկ նեղութիւն և տառապանքն զիս կու պատէ, քո ա̃ծային ականջդ դէպ ինձ խոնարհեցուր * և այն օրն որ սրտի մտօք դէպ քեզ կու աղաղակեմ, շուտով ինձ լսէ՛ քո ողորմութեամբդ։

Այսինքն, շատ արտասուելոյս և հառաչելոյս իմ օրերս ծխի նման նուաղեցան և փչացան * և 'ի պատճառս անքնութեան և պահոց բովանդակ ոսկերքս ցախի նման չորացան։

Այս

Այսինքն, անդադար տաքնապելոյս խոտի նման թարշամեցայ * և սրտիս զօրութիւն հատաւ և ցամաքեցաւ * և այնչափ տքացի և հեծեծացի, որ ղհացն և ըղջուրն մոռացայ:

Այսինքն, անսուաղ և ծոմ կենալոյս ոսկրատանքս մարմնոյս կցկեցաւ * և անապատներումն բնակող հաւալուսան հաւքին նման անտէր և անմխիթար մնացի:

Այսինքն, աւեր և քանդած տներումն բնակող բուի նման գիշերն 'ի բուն հոգւոց հանեցի և ողբացի * և տքնեցայ և անքուն մնացի ինչպէս ճնճղուկ մի որ մէն մինակ տանիքներումն կու կենայ:

Այսինքն, օրն 'ի բուն իմ թշնամիքն զիս կու հայհոյէին և կու նախատէին * և նոքա որ երբեմն զիս կու գովէին, տնազ անելոյ համար, իմ անունովս երդում կանէին:

Այսինքն, ապաշխարութեան մոխրի միջումն նստելով շատ անգամ մոխիրն հացի տեղ կու տէի * և շատ սրտիս փղձկելոյն զիմ խմելիքն արտասուօք կու խառնէի:

Այսինքն, և պատճառն է քո բարկութիւնդ և քո սրտմտութիւնդ, որ թափեցիր ինձ վերայ * զէրէ դու բարձրացուցիր զիս ըստեղ

 ծե



Հարայ որպէս խոտ * և ցամաքեցաւ սիրտ իմ * մոռացայ ուտել զհաց իմ 'ի ձայնէ հեծութեան իմոյ:

Կցեցաւ ոսկր իմ 'ի մարմին իմ * նմանեցայ ես հաւալուսան անապատի:

Եղէ ես որպէս բու աւերակի * տքնեցայ և եղէ ես որպէս ճնճղուկ միայն իտանիս:

Նախատեցին զիս թշնամիք իմ զօր հանապազ * և գովիչք իմ ինև երդնուին:

Զմոխիր որպէս հաց կերայ * և զըմպելին իմ արտասուօք խառնեցի:

Յերեսաց բարկութեան սրտմտութեան քո * զի դու բարձրացուցեր և խոնար

հեցուցեր զիս։

Աւուրք իմ ոպ̄ հո-
վանի անցին * և ես
ոպ̄ խոտ ցամաքե-
ցայ։
Դու տ̄ր յաւիտեան
կեաս * և յիշատակ
քո յազգէ մինչև
յազգ։

Դու յարուցեալ
գթասցիս իվ̄ր սիոնի
* ժամանակ գթալոյ
նորա հասեալ է
ժամ։

Հաճեցան ծառայք
քո ընդ քարինս նորա
* և 'ի հողս նո̄ գթա-
ցին։

ծելով 'ի պատկեր քո, և զարդա-
րելով անմահական փառօք, և
վասն մեղաց և անհնազանդութե
իմոյ զիս խոնարհեցուցիր անբա-
նից հաւասարելով, և մահու
հնազանդեցնելով։
Ա. յսինքն, իմ օրերս շուաքի
նման վազելով անց կացան * և
ես խոտի նման ցամաքեցայ չորա-
ցայ և հող դարձայ։
Ա. յսինքն, բայց զիմ յոյս ամե-
նևին չէ կորուսի, զէրէ թէպէտ
ես մահկանացու եմ, դու յա-
ւիտեանս յաւիտենից կենդանի
ես * և քո անունդ և յիշատակդ
յազգէ մինչև յազգ հաստատուն
կումնայ։
Ա. յսինքն, ուրեմն վեր կաց տ̄ր
ած̄ ինչպէս որ խոստացեր ես, և
գթա՛ իվ̄ր սիոնի, իբր քոյ սուրբ
եկեղեցւոյդ * զէրէ նո̄ գթալոյ
ժամանակն հասեր է, իբր շնոր-
հաց ժամանակն, քոյ մարդեղու-
թե ժամանակն, և մեր փրկու-
թե ժամանակն մօտեցեր է։
Ա. յսինքն, քո ծառայքն հաճեցան
նո̄ քարերին, իբր քո առաքեալքդ
սուրբ եկեղեցւոյ ընտրեալ հոգ-
ւոցն վերայ 'ի գութ շարժեցան
* և նորա հողերին վերայ ևս կու
գթան, իբր հասարակ հաւատաց-
եալ ժողովրդոցն ևս կու խղճան
և կուցաւակցին։

Այսինքն, և տեսանելով հեթանոսք իբր աղւեք և աղինք ըղփառս եկեղեցւոյ քոյ որքոյ կու երկնչին քո անուանէդ * որչափ որ թագաւորք կան երկրիս վրայ քո փառացդ և քո մեծութենէդ կու վախենան :

Այսինքն, մօտկացեր է ժամանակն, կու հիմնէ և կու շինէ տէր յիսուս քրիստոս զսիոն, իբր զիւր սուրբ եկեղեցին * և փառօք և պատուօք իբր հրաշիւք և ըսքանչելագործութեամբ կու երևի իւր հաստատեալ ժողովրդեան միջումն իբրև զմարդ :

Այսինքն, զէրէ հայեցաւ նա հեզ և խոնարհ մարդկանց աղօթքին, և խղճաց նոցա * և նոցա սրտի խնդրուածքն անտես չարար :

Այսինքն, այս զարմանալի մարմնանալոյ բանին Աստուծոյ տնօրէնութեան խորհուրդս կու գրուի սուրբ աւետարանի միջումն, և այլ ազգեաց երկրներումն կու քարոզուի, կու սփռուի, և կու տարածուի * և ինչ ժողովուրդ որ կու դառնայ 'ի գիտութիւն ճշմարտութեան, և Աստուծոյ ժառանգ կու լինի, իբր քրիստոսի քսակն կու անկանի, նա կու օրհնէ և կու գովաբանէ զտէր յիսուս քրիստոս, և նմա հոգւով և ճշմարտութեամբ երկիր կու պագանէ :



Երկիցեն հեթանոսք յանուանէ քումմէ * և ամենայն թագաւորք երկրի 'ի փառաց քոց :

Շինէ տէր զսիոն * և երևեսցի փառօք իւրովք 'ի նմա :

Հայեցաւ նա յաղօթս խոնարհաց * և ոչ արհամարհեաց ըզխնդրուածս նոցա :

Գրեսցի այս յազգ այլ * ժողովուրդ որ ստացեալ է օրհնեսցէ զտէր :

Հայեցաւ նա 'ի բարձանց 'ի սրբութենէ իւրմէ * Տր յերկնից յերկիր հայեցաւ։

Լսել զհեծութի կապելոց * և արձակել զորդիս մահապարտաց։

Պատմել 'ի սիոն զանուն տն * և զօրհնութիս նորա յերուսաղեմ։

Ի ժողովել ժողովրդոց 'ի միասին * և թագաւորաց ծառայել տն։



Այսինքն, զէրէ հայեցաւ նա իւր գթած աչօքն 'ի բարձանց իւր սուրբ և ածային աթոռէն * ինքն տրն և ըստեղծօղն ազգի մարդկան յերկնից 'ի յերկիր նայեցաւ։

Այսինքն, որ լսէր զաղաղակս և զհեծութիս նախահարցն մերոց որք կապեալք կային 'ի դժոխս 'ի ներքոյ բռնութենն սատանայի * և արձակէր զորդիս մահապարտաց, և կամ դատապարտելոց 'ի մահ վասն սիրոյ անուան իւրոյ, իբր զայնոսիկ, որք զինձիլով մեղաց կապեցեալք հետևէին կամացն սատանայի։

Այսինքն, որ ամենեքեան ազատեալք շնորհօք նորա քարոզէին և պատմէին 'ի սիոն զհրաշալի անուն տն յի * և նորա օրհնութի և գովութի տային 'ի յերուսաղէմ քաղաքի, իբր 'ի մէջ սուրբ եկեղեցւոյ։

Այսինքն, երբոր զանազան ժողովուրդք աշխարհիս ժողովէին իմիասին, իբր միաբանէին միով հաւատով * և իշխանք և թագաւորք հնազանդէին ճշմարտութե առ 'ի ծառայել տն մերոյ յի քի, նորին երուսաղէմ հաստատվէր խնդայր և զուարձանայր, և հինն երուսաղէմ, իբր եկեղեցին հրէից քակվէր աւերակ դառ

նայր և 'ի սուգ մտանէր։
Ս՟ալինքն, ըստ որում մարգա
րէաբար նախագուշակելով պա
տասխանեաց տ̃րն մեր յ̃ս ք̃ս. Նոյն
երուսաղեմայ իւր զօրութե ճա
նապարհուն, իբր այն ժամա
նակն որ դեռ այս աշխարհիս վր̃
կենցաղավարելով կուքարոզէր,
և զիւր զօրութիքն և ըսքանչելա
գործութիւնքն զիւր նշանքն և
արուեստքն կուցուցանէր ազգի
մարդկան, և ասաց, եթէ գիտէիր
դու ով հինգ երուսաղէմ գոնէ
յաւուր յայսմիկ զխաղաղութի
քո, բայց այժմ ծածկեցաւ յե
րեսաց քոց, զի եկեսցեն աւուրք
խլերայ քոյ, և պատեսցեն զքե
թշնամիք քո պատնէշ, և պաշա
րեսցեն զքեզ, և նեղեսցեն
զքեզ յա̃մ կողմանց, և յատակես
ցեն զքեզ, և զորդիս քո 'ի քեզ,
և ոչ թողուցուն զքար իվերայ
քարի յա̃մի 'ի քեզ * զէրէ 'ի մեր
ձենալն տ̃ն մերոյ յի̃ ք̃ի 'ի յերու
սաղէմ, այնպէս էր թէ երուսա
ղէմ նորանէ հարցանէր զիւր օրե
րի կարճութին կամ զիւր վախ
ճանն ասելով, զիմ օրերիս նուա
զութին ինձ ասա և իմացուր տ̃ր
յ̃ս ք̃ս որդի դաւթի * և զիս իմ
հասակիս կիսումն մի' հաներ 'ի
կենացս, իբր ես դեռ երախայի
նման նոր եմ ըսկսեր ճանաչել



Պատասխանի ետ նմա
'ի ճանապարհի զօրու
թե իւրոյ * զնուա
զութի աւուրց իմոց
ասա ինձ * և մի' հա
ներ զիս 'ի կէս աւ
ուրց իմոց * զի յազ
գէ յազգ են ամք քո։

Ի սկզբանէ տէր զհի-
մունս երկրի հաստա-
տեցեր * և գործք
ձեռաց քոց երկինք
են:

Նոքա անցանեն * և
դու կաս, և մնաս
յաւիտեան:

Ամենեքեան որպէս
զձորձս մաշեսցին *
և որպէս զվերար-
կուս փոխեսցես զնո

զքո փրկագործ տնօրէնութիւնդ՝
դեռ վերահաստուչեմ եղեր քո
ածային մարդեղութեդ, ուստի
դու մի՛ զրկեր զիս 'ի քոյ շնոր
հացդ, այլ արժանի արա՛ զիս որ
կատարեալ հասակաւ տեսանեմ
զքեզ, իբր կատարելապէս ճա
նաչեմ և իմանամ զքո մարդե
ղութեան խորհուրդն * զէրէ
դու ած ես ճշմարիտ, և քո տա
րիքդ յազգէ յազգ է, իբր քո
կեանքդ յաւիտենական է՝ իսկ ես
անցաւոր եմ և ապականացու և
այսօր կամ, և վաղիւն ո՛չ եր
և իմ:

Այսինքն, դու այն ես տէր ած
որ 'ի սկզբանէ զերկիրս հիմունքն
հաստատեցեր, իբր 'ի սկզբանէ
աշխարհիս քո եկեղեցւոյ հի
մունքն որք են մարգարէքն հաս
տատեցեր * և երկինք, որք են
առաքեալք քոյ ձեռաց գործ
քերն, իբր քո սուրբ հոգւոյդ
շնորհաց պտուղն են:

Այսինքն, նոքա կու անցանին,
իբր նոքա կու մեռանին և կու փո
փոխին մարմնով * բայց դու միշտ
անփոփոխ կաս, և կու մնաս 'ի
յաւիտեան:

Այսինքն, աշխարհիս մարդիկն
բոլանդակ շորի նման կու մաշ
վին մարմնով * և զգեստի նման
կու փոխես զնուրեանք 'ի պղծու

թէ մեղաց 'ի մաքրութիւն շնորհաց * և կու փոխվին քո ածային զօրութեդ 'ի կեանս յաւիտենականս ։

Այսինքն, բայց դու միշտ նոյն ինքն ես, և քո տարիքդ չեն անցանիր և չեն պակասիր * քու ծառայից որդիքն, իբր քու առաքելոց հոգևոր զաւակքն կու բնակին քու հիմնած եկեղեցւոյ միջումն * և նոցա զաւակներին այլ քո երկնային շնորհօքն մինչև յաւիտեան աջողութի կու լինի 'ի յառաքինութիւնս և յածպաշտութիւնս ։

Իբր, զայս սաղմոս ինքն դաւիթ շարադրեաց և ինքն երգեաց ։

Այս սաղմոսումս կու յորդորէ մարգարէն զամենեսեան օրհնել և գովել զած վասն իւրոյ անչափ բարերարութեն վասն ողորմութեն և վասն արդարութե նր ։

Այսինքն, օրհնէ և գովէ' ով հոգի իմ զքո ըստեղծող ածն * և դուք բովանդակ իմ ոսկրտանիքս, իբր իմ հոգւոյս զօրութիքն և կարողութիքն բարեբանեցէք նորա սբ և երկրպագելի անուննն միշտ և հանապազ ։

Այսինքն, օրհնէ և գովէ' ով հոգի իմ զքո ըստեղծող ածն *





զնոսա և փոխեսցին ։

Բայց դու նոյն ինքն ես, և ամք քո ոչ անցանեն * որդիք ծառայից քոց բնակեսցեն 'ի նմա * և զաւակի նոցա յաւիտեան աջողեսցի ։

Տունք․ 26․

Սաղմոս ինքեան դաւթի ։

Սաղմոս․ ՃԲ․



Օրհնեա անձն իմ զտր * և ամ ոսկերք իմ զանուն սբ նր ։

Օրհնեա անձն իմ զտր * և մի' մոռանար

զամ աւուրս նորա։

Ո՛ քաւէ զմեղս քո * բժշկէ զամ հիւանդութիւնս քո։

Ո՛ փրկէ յապականութենէ զկեանս քո * պսակէ զքեզ ողորմութեամբ և գթութեամբ։

Ո՛ լնու ՚ի բարութեան զցանկութիւնս քո * նորոգեսցի որպէս արծուոյ մանկութիւն քո։

Առնէ ողորմութիւնս Տր * և իրաւունս ամ զրկելոց։

Ցոյց Տր զճանա



և մի՛ մոռանար նորա տուրքն և բարերարութիւն որ քեզ արարեր է մինչև ցայսօր։

Այսինքն, նա է որ կու քաւէ և թողութիւն կու շնորհէ քու մեղացդ և անօրէնութեանցդ * և նա է որ կու բժշկէ քո ամէն հոգեկան հիւանդութիւնդ։

Այսինքն, նա է որ քո կեանքդ յապականութենէ կու փրկէ, իւր յաւիտենական մահուանէ, և ՚ի տանջանաց դժոխոց զքեզ կու ազատէ * և զքեզ իւր երկնային արքայութեան միջումն ողորմութեամբ և գթութեամբ կու պսակէ։

Այսինքն, նա է որ կու լցնու զքո խղճդ և զքո ցանկութիւնդ պարգևօք հոգևոյն սրբոյ * և ինչպէս որ արծուին իւր ծերութեան ժամանակին արեգական ճառագայթի ջերմութեամբն կու նորոգի և կու տղայանայ, այսպէս զքեզ յետ մահուան քու իւր ամենակարող զօրութեամբն կու յարուցանէ փառօք ՚ի մեռելոց, և կու զգեցուցանէ անապական մարմնով։

Այսինքն, նա է որ զանազան կերպիւ կու գթայ և կու ողորմի իւր հաւատացեալ ծառայիցն * և իրաւունք և դատաստան կանէ զրկելոցն և վշտացելոցն ՚ի սատանայէ, և կամարարաց նորին։

Այսինքն, նա է որ իւր օրինաց

և պա

և պատուիրանաց ճանապարհին
ցոյց տուեց մովսէսի * և իւր բա
րեհաճութին և կամքն յայտնեց
որդւոցն իսրայէլի:

Այսինքն, զէրէ գթած և ողոր
մած է տր ած իւր հաւատացե
լոցն վերայ * և երկայնամիտ և
բազում ողորմ է իվերայ մեղա
ւորաց դարձելոց և զղջացելոց ՚ի
չար ճանապարհէն իւրեանց:

Այսինքն, և թէպէտ կուբար
կանայ տր ած մեր անօրէնու
թեացն վերայ, բայց ամենևին
զմեզ յերեսաց չի՛ ձգեր * և թէ
պէտ կուզայրանայ մեր կամապաշ
տութեն վերայ, բայց մինչև յա
ւիտեան մեզ հետ ոխ չի՛ պահեր:

Այսինքն, մեր մեղաց և մեր
յանցանացն գօրայ զմեզ չի՛ պատ
ժեր և պատուհասեր տր ած * և
մեր անօրէնութեան և չարագոր
ծութեն դօրայ հատուցումն չի՛
աներ մեզ:

Այսինքն, այլ ինչպէս որ բարձր
է և հաստատ է երկինքն երկրիս
վերայ * այնպէս բարձրացոյց զօ
րացոյց և հաստատեց տր ած զիւր
ողորմութիւնն երկիւղած մարդ
կանց վերայ:

Այսինքն, որ չափ որ հեռի է
արևելքն յարևմտից * այնպէս
հեռացոյց մեզանից մեր մեղքն և
անօրէնութին ՚ի ձեռն շնորհաց





պարհս իւր մովսէսի
* և որդւոցն իսրայէ
լի զկամս իւր:

Գթած ողորմած է
տր * երկայնամիտ
և բազում ողորմ:

Ո՛չ իսպառ բարկա
նայ մեզ տր * և ո՛չ
յաւիտեան պահէ
ոխս:

Ո՛չ ըստ մեղաց մե
րոց արար մեզ տր *
և ո՛չ ըստ անօրէնու
թե մերում հատոյց
մեզ:

Այլ որչափ բարձր են
երկինք յերկրէ * այն
պէս զօրացոյց տր զո
ղորմութի իւր իվր
երկիւղածաց իւրոց:

Որ չափ հեռի են ար
ևելք յարևմտից *
այնպէս հեռի արար
իմէնջ զանօրէնու

թիւնս մեր ։

Որպէս գթայ հայր ՚ի վր որդւոց իւրոց * այնպէս գթասցի տր յերկիւղածս իւր ։

Զի նա գիտաց զս տեղծուածս մեր * և յիշեաց թէ հող եմք ։

Մարդոյ ոպ խոտոյ են աւուրք իւր * և ոպ ծաղիկ վայրի այնպէս ծաղկի ։

Շնչէ ՚ի նմա հողմ * և ոչ է՛ և ոչ ևս եր ևի տեղի նորա ։

Բայց ողորմութիւն տն յաւիտեանս յաւիտենից ՚ի վերայ եր կիւղածաց իւրոց * և արդարութի նորա յորդւոց մինչև յորդիս ։

Որք պահեն զուխտս նորա * յիշեն զպատուիրանս նորա , և առնեն զնա ։



իւրոց , և հրաժարեաց զմեզ ՚ի մահուանէ ՚ի կեանս ։

Այսինքն , ինչպէս որ կու գթայ հայրն իւր որդւոցն վերայ * այնպէս կու գթայ տր ած իւր երկիւղած ծառայիցն վերայ ։

Այսինքն , զէրէ նա իբրև ած գիտաց և իմացաւ զմեր ըստեղծուածն , իբր գիտաց թէ ինչ նիւթէ ենք մեք յառաջ եկած * և յիշեց թէ հող ենք և մեղանչական մարմնոյ տր ենք , և ՚ի հող պիտինք փոխարկիլ ։

Այսինքն , ճանաչեց որ մարդոյս կեանքն խոտի նման այսօր կայ , և ՚ի վաղիւն կու չորանայ * և դաշտի ծաղկի նման առաւօտն կու երևի , և իրիկունն կու թարշամի ։

Այսինքն , զէրէ շուտով երբոր քիչ մի քամի կու փչէ , կու թօթափի և կու փչանայ * և այլ չէ՛ երևիր թէ ինչ տեղ էր բուսած ։

Այսինքն , բայց այ ողորմութին յաւիտեանս յաւիտենից կու մնայ հաստատուն աստ և ՚ի հանդերձելումն իւր երկիւղածացն վերայ * և իւր արդար հատուցումն և ճշմարիտ խոստմունքն անփոփոխ է յորդւոց մինչև յորդիս ։

Այսինքն , և մանաւանդ այնպիսի մարդկանցն վերայ որ նորա ուխտն և դաշինքն կու պահեն * և նորա ածային պատուիրանքն

կու

կու յիշեն և կու կատարեն։
Այսինքն, տ՟ր ա՟ծ յաւիտենից
իւր աթոռն պատրաստեր է՝ի յեր
կինս * և ն՟ր թագաւորութ՟ին
և իշխանութ՟ին բոլոր աշխարհիս
վերայ կու տիրէ։
Այսինքն, ուստի օրհնեցէք և
գովեցէք զտ՟ր ա՟ծ որ չափ որ զօ
րութ՟ը և կարողութ՟ը ուժեղ և
հզօր հրեշտակք և հրեշտակա
պետք կայք՝ի յերկինս * որք շու
տով լսելն՝ի բաց ն՟ր պատգամաց
և խօսից ձայնն իւր ա՟ծային հրա
մանքն կու կատարէք։
Այսինքն, օրհնեցէք և գովե
ցէք զտ՟ր ա՟ծ որ չափ որ զօրութիք
կայք՝ի յերկինս * և որ չափ պաշ
տօնեայք և ըսպասաւորք կայք որ
նորա ա՟ծային կամացն կու հնա
զանդիք։
Այսինքն, օրհնեցէք և գովեցէք
զտ՟ր ա՟ծ որ չափ որ ըստեղծուածք
կայք աշխարհիս վերայ * զէրէ
նորա տէրութ՟ին և իշխանութ՟ին
յա՟մ տեղ պատրաստ է * օրհնէ
ես դու ով հոգի իմ և բարեբա
նէ զտ՟ր ա՟ծ քո անդադար։

Իբր, զայս սաղմոս շարադրեաց
դաւիթ պատմելով զա՟յ արարչա
գործութ՟ին։
Այս սաղմոսումս կու յորդորէ
մարգարէն զամենեսեան օրհնել





Տէր յերկինս պատ
րաստեաց զաթոռ իւր
* արքայութ՟ի նորա
ամենեցուն տիրէ։

Օրհնեցէք զտ՟ր ա՟մ
հրեշտակք ն՟ր հզօրք
զօրութ՟ը * ոյք առ
նէք զբան նորա՝ի լսել
ձայնի պատգամաց
նորա։

Օրհնեցէք զտ՟ր ա՟մ
զօրութիք ն՟ր * պաշ
տօնեայք և արարօղք
կամաց նորա։

Օրհնեցէք զտ՟ր ա՟մ
գործք նորա * յա՟մ
տեղիս է տ՟րութ՟ի ն՟ր
* օրհնեա՛ անձն իմ
զտ՟ր։

Տունք: 22.

Սաղմոս դաւթի իվէրայ աշ
խարհագործ արարածոց:

Սաղմոս. ՃԳ:





րհնեա՛ անձն
իմ զՏր *
Տր ած իմ
մեծ եղեր յոյժ:

Խոստովանութի և
մեծ վայելչութիւն
զգեցար * արկար ըզ
լոյս որպէս զօթոց *
ձգեցեր զերկինս ոպ
զխորան * և արկեր
իւերայ ջուրց զվեր
նայարկս նորա:

և գովել զած վասն զարմանալի
արարչագործութեցն , վս ան
բաւելի կարողութեցն , և վասն
անքննելի նախատեսութեցն:



ասինքն , օրհնէ՛ և գովէ՛ ով
հոգի իմ զքո ըստեղ
ծօղ ածն վասն անբա
ւելի զօրութե նորա , և վասն
անքննելի բարութե նորա * Տր
ած իմ մեծ և զարմանալի եղար
դու 'ի միտս մարդկան , քո ան
պատմելի արարչութեդ , և քո
ըսքանչելի ըստեղծագործութեդ:
Ասինքն , խոստովանութի և
մեծ վայելչութի զգեցար , իբր
հրեշտակաց և մարդկան խոստո
վանութեն որով զքեզ ած ամե
նակարօղ և յաւիտենական կու
խոստովանին, և գովաբանութեն
որով զքո վայելուչ ըստեղծո
ւածքն տեսանելով զքեզ կու
գովաբանեն , փառաւորեցար ,
պատուեցար , և մեծարեցար *
դու զլոյսն գոյացուցիր յոչնչէ,
և օթոցի նման , իբր զգեստի
նման քեզնով շուրջ պատեցիր ,
իբր զերկինս որ է՛ բնակութի քո
նովաւ լուսաւորեցիր , և պայ
ծառացուցիր * դու ձևակերպե
ցիր զերկինս կամարակերպ որպէս
զխորան , իբր զ հաստատութին

որ

որ է աստղալից երկինքն * և նոր
վերևի յարկերն , իբր զայս եր
կինս որք են 'ի վեր քան զ հաստա
տութին հիմնեցիր ջրի վերայ։
Այսինքն, ով է որ զիւր քայլքն
և գնացքն ամպերի վերայ է հաս
տատեր , իբր ամպերն իւրն արա
պայ է շիներ , եթէ ոչ ած, ինչ
պէս որ հին կտակարանքն կու
վկայեն , թէ ած միշտ ամպով
կու իջանէր առ որդիսն իսրայէ
լի , և կու դառնայր 'ի յերկինս
* և ով է որ կու շրջի քամոց թևե
րի վերայ , իբր կու գերազանցէ
զմիտս մարդկան , կամ իւր ած
ային զօրութեն շուտով կու հա
սանի յամ տեղիս։
Դարձեալ ով է որ ամպերի վր
է հաստատեր զիւր գնացքն, եթէ
ոչ քս , ըստ որում գործք առա
քելոց կու վկայեն, թէ մինչ դեռ
հայէին նոքա, վերացաւ, և ամպն
ընկալաւ զնա յաչաց նոցա * և
ով է որ կու բաղմի իվր թևոցն
սերովբէից և քերովբէից ընդ աջ
մէ հօր , եթէ ոչ քս։
Այսինքն, ով է որ ոգիքն իւրն
հրեշտակներ է շիներ , իբր քա
միքն իւրն էլչի է շիներ , եթէ
ոչ ած, և ով է որ այրող կրակն
իւրն պաշտօնեայ և ըսպասաւոր է
շիներ։
Դարձեալ , ով է որ իւր հրեշ

տակ



Ո՛ դնէ յամպս ըզ
գնացս իւր * և շրջի
նա 'ի վերայ թևոց
հողմոց։

Ո՛ առնէ զհրեշտակս
իւր յոգիս * և զպաշ
տօնեայս իւր 'ի հուր
կիզելոյ։

Հաստատեաց զերկիր ի վերայ հաստատութե̃ իւրոյ * զի մի՛ սասանեսցի յաւ̂իտեան։

Խորք որպէս զզգեստ վերարկու են նորա *՚ի վերայ լերանց կացցեն ջուրք։

՚Ի սաստէ քումմէ փախիցեն * և ՚ի ձայնէ որոտալոյ քումմէ սարսիցեն։



տակներն քամու և շնչի նման է շիներ որ արագ հասանին յա̃մ տեղիս * և իւր պաշտօնեայքն իբր երկնային զօրութիւքն այրող կրակի նման է շիներ, որ ջերմ սիրով զինքն պաշտեն։

Այսինքն, նա է որ հաստատեր է զերկիրս իւր հաստատութե̃ն վերայ, իբր իւր ա̃ծային զօրութե̃ և կարողութե̃ն վերայ * որ մինչև յաւ̂իտե̃ն չի՛ սասանի, իբր ամենևին յիւր տեղէն աստ և անդ չի՛ շարժի։

Այսինքն, ծովի ջրերի խորութիւնքն և անդունդքն զգեստի նման ծածկոց և վերարկու է երկրիս * և ա̃ծային հրամանաւ̂ն ծովի միջի եղած բարձր բարձր լեռներին վերայ ջուրն կու կանգնի, ինչպէս ՚ի սկզբան աշխարհիս, այլև ՚ի ժամանակս ջրհեղեղին նոյն հրամանաւ̂ն ա̃յ բոլանդակ երկրիս սարերին վերայ ջուրն կանգնած էր։

Այսինքն, բայց երբոր դու կու սաստես, շուտով նոյն ջուրքն կու հնազանդին, կու փախչին, և յետ կու քաշվին, ինչպէս որ հնազանդեցան քեզ ՚ի սկզբան աշխարհիս և ՚ի ջրհեղեղին * և երբ որ դու կու որոտաս ՚ի յերկնից, կու դողան և կու սարսին, ինչպէս սարսեցան ՚ի հրամանաց որ

դ՛ուդ քոյ մածնիտ՛ն մերոյ յի՛ քի ըստ վկայութե՛ սրբոյ աւետարանին։

Այսինքն, կու ելանեն ծովի ջրերն, և սարերի նման կու բարձրանան * և կու իջանեն 'ի վայր, և դաշտի նման կու ցածանան, և կու հանգարտին իւրեանց տեղումն, ինչտեղ որ դու խիզղեանէ հաստատեր ես զիւրեանք։

Այսինքն, վէրէ դու նոցա սահման ես դրեր, այլ դէն չեն անցանիր * և այլ յետ չեն դառնար և զերկիրս ծածկեր, ինչպէս որ ծածկեր էին 'ի սկզբան աշխարհիս զբովանդակ դունան երկրի։

Այսինքն, դու զերկիրս արբուցանելոյ համար ծովի ջրերն հողի տակի եղած երակներովն անցկացնելով կու մղքրես, կու քաղցրացնես, և կու ղարկես դէպ 'ի ձորերն, և տեղն զանազան աղբըրներ կու բխեցնես * և քո նախատեսութեամբդ լեռների միջէն գետեր և առուներ կու վազեն։

Այսինքն, որ արբուցանեն և կշտացնեն վայրի գազաններն * և վայրի էշերն յագենան ջրով, և իւրեանց ծարաւն անցկացնեն։

Այսինքն, տեղն երկնից թռչուններն կանանչ ծառերի վր բուն





Ելանեն լեառնանան * և իջանեն դաշտանան 'ի տեղի յոր հաստատեցեր զնո։

Սահման եդիր և ոչ անցանեն * և ոչ ևս դառնան 'ի ծածկել զերկիր։

Առաքեցեր զաղբիւրս 'ի ձորձորս * 'ի միջոյ լերանց գնասցեն ջուրք։

Արբուցանել զամ գազանս վայրի * յագեսցին ցիռք 'ի ծարաւս իւրեանց։

Անդ թռչունք երկնից բոյնս դիցեն *

և 'ի միջոյ վիմաց տա
ցեն զձայնս իւրեանց ։

Արբուցանէ զլերինս
'իշտեմարանաց իւրոց
* 'ի պտղոյ գործոց
իւրոց լցցի երկիր ։

Բուսուցեր զխոտ
անասնոց * և զդալա
րի 'ի ծառայութիւն
մարդկան ։
Հանել զհաց յերկ
րէ * գինի ուրախ առ
նէ իւղ զուարթ, և
հաց հաստատէ զսիրտ
մարդոյ ։
Յագեսցին ծառք
անտառի * և մայրքն
լիբանանու զորս դու
տնկեցեր ։

Անդ թռչունք երկ
նից ձագս հանցեն *
և բոյն արագլի ապա
ւէն է նոցա ։

Լերինք բարձունք
են եղջերուաց * և
վէմք ապաւէնք նա



կուդնեն * և քարերի միջերէն
զանազան ձայներ կու հանեն, և
զա̃ծ կուփառաբանեն ։
Այսինքն, կուարբուցանէ և կու
առոգէ բարձր լեռներն իւր երկ
նային ամպարների ջրովն, իբր
իւր ամպերի անձրևովն * և իւր
գործոց և արարմանց պտղովն
կու լցվի երկիրս և կու առատա
նայ ։
Այսինքն, դու բուսուցիր յերկ
րէ զխոտ վասն անասնոց * և զա
նազան կանանչեղէնս պատրաստե
ցիր վասն պիտոյից մարդկան ։
Այսինքն, դու հանեցիր զցո
րենն և զհացն յերկրէ * գինին
կուրախացնէ, իւղն կուզուար
թացնէ, բայց հացն կու հաստա
տէ և կուզօրացնէ զսիրտ մարդոյ ։
Այսինքն, քո անձրևովդ կու յա
գենան օրմանի ծառերն * և լի
բանանու սարի մայրի ծառերն
որ դու ես տնկեր և ոչ մարդիք,
կու աճին, և կու բազմանան ։
Այսինքն, տեղն երկնից թռ
չունքներն ձագ կու հանեն * և
լակլակի բունն նոցա ապաւէնն է,
իբր կու պահպանէ զիւրեանք 'ի
քամոյ և 'ի յանձրևէ և յայլ թռչ
նոց որսականաց ։
Այսինքն, բարձր սարերն եղնե
րի և ձէյրաններ ի փախչելոյ տեղ
արարիր * և ապառաժ քարերն

լապտերակներու պահվելու տեղ
պատրաստեցիր ։

Այսինքն , դու արարիր զլու-
սինն վս՟ ճանաչելոյ զժամանակս
տօնախմբութեց տարեոյն * և
արեգակն ճանաչեց ամէն օրվան
իւր մտանելոյ ժամն ։

Այսինքն , դու զարեգակն երկ
րիս մէկ երեսոյն պտուտ տալով ,
միւս երեսին վերայ եղօղ մարդ-
կանցն մութն և խաւար արա
րիր , և այն խաւարային սահաթ-
ներուն գիշերն կատարեցաւ *
յորում շրջին աստ և անդ առանց
երկիւղի մարդկան գազանք ան
տառից ։

Այսինքն , առիւծներու ձագերն
կու մռընչան , և աստ և անդ որս
կանեն * և իւրեանց ստեղծօ
ղէն կերակուր կու խնդրեն ։

Այսինքն , երբոր արեգակն կու
ծագի , շուտով կու ժողվին *
և իւրեանց բներումն կու գաղ
վին , և դադար կառնուն ։

Այսինքն , և մարդիկքն անահ
և անկասկած դուրս կու ելանեն
և իւրենց բանին և գործին յետ
նէ կու կենան * և իւրեանց ձե
ռաց վաստակովն կու աշխատին
մինչև իրիկունն , և կու ապրին ։

Այսինքն , ո՛հ թէ որչափ մեծ
և զարմանալի են քո գործքերդ
տ՟ր ա՟ծ * զամէն իքմին իմաստու





պաստակաց ։

Արարեր զլուսինն
վս՟ ժամանակի * արե
գակն ծանեաւ զժամ
մտանելոյ իւրոյ ։

Արարեր զխաւար ,
և եղև գիշեր * ՚ի
նմա գնան ա՟մ գա
զանք անտառի ։

Մորիւնք առիւծուց
մռնչեն և յափշտա
կեն * և խնդրեն յա՟յ
զկերակուրս իւրենց ։
՚Ի ծագել արևու ժո
ղովին * և ՚ի մորս
իւրեանց դադարին ։

Ելանէ մարդ ՚ի գոր
ծս իւր * և ՚ի վաս
տակս ձեռաց իւրոց
մինչև յերեկոյ ։

Որպէս զի մեծ են
գործք քո տ՟ր * զա՟մ
ինչ իմաստութեամբ

արարեր * և լցաւ երկիր ստեղծուածովք քովք ։

Այս ծով մեծ և անդորր * 'ինմա են սողունք որոց ոչ գոյ թիւ * գազանք մեծամեծք և մանունք * ինմա նաւք գնան * վիշապն զոր ստեղծեր խաղալ նովաւ ։

Ամենեքեան քեզ սպասեն * և դու տաս զկերակուր նոցա 'ի ժամու ։

Տաս դու նոցա և կերակրին * բանաս զձեռն քո և կերակրես զամենեսեան կամօք քովք ։

Դարձուցանես զերեսս քո 'ի նոցանէ, և խռովին * հանես զոգի 'ի նոցանէ, պակասին և 'ի հող դառնան

թէ ես արարեր * և երկիրս լցուեր է քո զանազան ըստեղծուածներովդ ։

Այսինքն, այս ծովս որ դու ըստեղծեր ես մեծ է և լայնատարած * սորա միջումն այնչափ զանազան սողունք կան, իբր լօղացող կենդանիք կան որ թիւ չունին * սորա միջումն զանազան մեծամեծ և մանտր գազաններ կան * սորա միջումն նաւերն յերկրէ յերկիր շուրջ կու գան * և սորա միջումն է լէվիաթան վիշապ ձուկն որ ըստեղծեր ես որ շուրջ գայ և խաղայ ծովին ալեացն հետ, խառնակելով զծովն, կլանելով զայլ ձկունս, և վնասելով զայլ կենդանիս ։

Այսինքն, ամ̃ կենդանիք քո ըստեղծուածք են, և քեզ կու ըսպասեն * և դու կու տաս նոցա հոգևոր և մարմնաւոր կերակուրն իւր ժամանակին ։

Այսինքն, դու կու տաս նոցա որ կերակրին և սնանին * դու կու բանաս քո առատ ձեռքդ, և կու կերակրես զամենեսեան քո ամէնօրհնեալ կամօքդ ։

Այսինքն, կու դարձնես քո երեսդ, իբր քո ա̃ծային խնամքդ 'ի նոցանէ, և շուտով կու նուաղին և կու տկարանան * և կու հանես զկենդանական շունչն 'ի նոցա

նէ շուտով կուպակասին և հող
կուդառնան ։ կամ կուհանես
զհոգի շնորհաց քոց 'ի նոցանէ, և
շուտով կուոչնչանան , և հողի
հաստատ կուլինին ։

Այսինքն, կուղարկես քո շնոր
հաց հոգիդ և կուստանաս զիւր
եանք, իբր կրկին կուկենդանա
ցնես զիւրեանք հոգւով * և կու
նորոգես և կուգեղեցկացնես զե
րեսս երկրի ։

Այսինքն , եղիցի օրհնեալ և
փառաւորեալ տ̅ր ա̅ծ 'ի ըստեղ
ծուածս իւր մինչև յաւիտեան,
զերէ բարի են յոյժ * և ինքն տ̅րն
ուրախանայ և զուարճանայ իւր
արարածոցն վերայ ։

Այսինքն , այն որ կուհայի յեր
կիր իւր ա̅ծային աչօքն և կուշար
ժէ և կուդողացնէ զինքն * երբ
որ մօտկանայ լեռներին 'ի վախ
ճանի աշխարհիս , շուտով կուբո
ցակիզին և կուծխան ։

Այսինքն , զայս բաներս յիշե
լով ես իմ կենացս մէջն կուօրհ
նեմ և կուփառաբանեմ զա̅ծ *
և սաղմոսերգութի̅ կանեմ ն̅ր
առաջևն քանի որ կենդանի եմ ։

Այսինքն , թէ որ իւր ողորմու
թե̅ն արժանի կանէ , որ իմ օրհ
նութի̅ս և գովութի̅ս իւրն քաղցր
թուի * իմ սիրտս կուրախանայ,
և ես կուցնծամ 'ի տ̅ր ա̅ծն իմ ։

Այս



Առաքես զոգի քո
և ստանաս զնոսա *
և նորոգես զերեսս
երկրի ։

Եղիցին փառք տ̅ն
յաւիտեան * և տ̅ր
ուրախ եղիցի յարա
րածս իւր ։

Ո' հայի յերկիր և
տայ դողալ սմա * մեր
ձեսցի 'ի լերինս , և
ծխեսցին ։

Օրհնեցից զտ̅ր 'ի
կեանս իմ * և սաղ
մոս ասացից ա̅յ իմոյ
մինչև եմ ես ։

Քաղցր եղիցի նմա
օրհնութի̅ իմ * և
ես ուրախ եղէց
'ի տ̅ր ։

Պակասեսցին մեղաւորք յերկրէ * և ամպարիշտք մի՛ ևս գտցին 'ի նմա * օրհնեա՛ անձն իմ զՏր ։

Տունք ։ 34.

Ալէլուիայ ։

Սաղմոս. ՃԴ ։

Խոստովան եղերուք Տն, և կարդացէք զանուն նր * և պատմեցէք 'ի հեթանոսս զգործս նր ։

Օրհնեցէք և սաղմոս ասացէք նմա * պատմեցէք զամ ըսքանչելիս նր, և գովեցարուք յանուն Տբ նր ։





Այսինքն, պակասին և ջնջվին մեղաւորք երկրիս երեսէն, որ նորա անչափ բարութին չեն ճանաչեր * և այսու հետև ամբարիշտ մարդ չի՛ գտնվի աշխարհիս վերայ * և դու ո՛վ հոգի իմ, ինչպէս որ ըսկսեր ես, այսպէս միշտ օրհնէ և գովէ զՏր Ածն քո ։

Իբր, զայս սաղմոս ասելով օրհնեցէք զԱծ, զի ալէլուիայն օրհնեցէք զԱծ կու թարգմանի ։
Այս սաղմոսովս կու յորդորէ մարգարէն զամենեսեան օրհնել և գովել զԱծ, վասն անչափելի բարերարութե նորա ։

Այսինքն, խոստովանեցէք Տն, իբր խոստովանեցէք Տյ անչափ գթութին և բարերարութին, և նր սուրբ անունն ձեզ 'ի յօգնութե կոչեցէք * և նորա զարմանալի և հրաշալի գործքն և արարմունքն զանազան ազգաց միջումն պատմեցէք ։
Այսինքն, օրհնեցէք և բարեբանեցէք զԱծ, և սրտի մօք սաղմոս ասացէք նմա, զի՛ որ է արժանի է՛ * պատմեցէք նորա ըսքանչելագործութիքն Տմ տեղ, և գովեցարուք յանուն սուրբ նորա, իբր նորա Տբ անուանովն պարծեցէք 'ի մէջ այլազգեաց ։

Այսինքն, խնդան և ուրախա
նան այնպիսի մարդիքն որ իւր
եանց ամէն արարմանց միջումն
Ա՟յ փառքն և պատիւն կու խնդ
րեն * խնդրեցէք զՏ՟ր Ա՟ծ, և
հաստատուն կացէք ձեր հաւատ
քումն * և խնդրեցէք ն՟ր երեսն
յ՟ամ ժամ, իբր խնդրեցէք հա
նապազ նորա խնամքն և ողորմու
թիւնն։

Այսինքն, յիշեցէք նորա զանա
զան ըսքանչելիքն որ արար 'ի յե
գիպտոս * և ն՟ր նշանքն և արու
եստքն, և բերանի իրաւունքն,
իբր ն՟ր ճշմարիտ դատաստանն։

Այսինքն, դուք որ զաւակք
էք աբրահամու, և հաւատարիմ
ծառայք նորա * և դուք որ որ
դիք էք յակոբայ, և ընտրեալ ժո
ղովուրդ նորա։

Այսինքն, զէրէ նա է' Տ՟ր Ա՟ծ
մեր * և Ա՟մ երկրիս վերայ իբրև
ըստեղծօղ և թագաւոր թագա
ւորաց իրաւունք ունի։

Այսինքն, նա իւր ճշմարիտ
ուխտն որ յաւիտենից արարեր
էր աբրահամու հետ յիշեց և չի
մոռացաւ * իբր զիւր բանն որ
պատուիրեր էր հաստատուն պա
հել մինչև 'ի հազար ամ, իբր
մինչև յաւիտեան։

Այսինքն, յիշեց զուխտն որ
դրեր էր աբրահամու հետ * և
զեր



Ուրախ եղիցին սիր
տք այնոցիկ ոյք խնդ
րեն զՏ՟ր * խնդրե
ցէք զՏ՟ր և հզօրք եղե
րուք * և խնդրեցէք
զերեսս ն՟ր յ՟ամ ժամ

Յիշեցէք զսքանչե
լիս ն՟ր զորս արար *
զարուեստս և զիրա
ւունս բերանոյ ն՟ր։

Զաւակք աբրահա
մեան ծառայք ն՟ր *
և որդիք յակոբայ
ընտրեալք ն՟ր։

Նա ինքն է' Տ՟ր Ա՟ծ
մեր * յ՟ամ երկրի են
իրաւունք ն՟ր։

Յիշեաց յաւիտենից
զուխտ իւր * և
զբանն զոր պատուիր
եաց մինչև 'ի հա
զար ամ։

Զուխտն զոր եդ
ընդ աբրահամու *

և զերդումն իւր ընդ իսահակայ։

Հաստատեաց առ յակոբ զհրաման իւր * և առ իսրայէլ զուխտ իւր յաւիտենից։

Ասէ ձեզ տաց զերկիրն քանանու * ըղ վիճակ ժառանգութե ձերոյ։

Զի էին նոքա թուով սակաւք * նուաղք և պանդուխտք 'ի նմա։

Անցին նք յազգէ յազգ * 'ի թագաւորութենէ 'ի ժողովուրդ յայլ։

Ոչ եթող մարդկան մեղանչել նոցա * և կշտամբեաց զթագաւորս վասն նոցա։

Մի՛ մերձենայք առ յօծեալս իմ * և 'ի մարգարէս իմ մի՛



զերդումն որ արարեր էր 'իսահակայ հետ։

Այսինքն, զիւր հրամանն որ հաստատեր էր յակոբայ հետ * և զիւր յաւիտենական ուխտն որ արարեր էր իսրայէլի հետ։

Այսինքն, և ասաց թէ ձեզ կու տամ զպարարտ երկիրն քանանացւոց, իբր զոմ երկիրս կռապաշտից որք բնակեալք էին 'ի սահմանս եգիպտոսի * այնպէս ինչպէս թէ ձեր ժառանգութենէն ձեզ վիճակ և բաժին անկած լինի։

Այսինքն, զերէ նոքա թուով սակաւք էին * նուաղք էին, և կռապաշտից երկրներումն օտար և պանդուխտք էին։

Այսինքն, մէկ ազգի միջէն կու ելանէին, և մէկ ուրիշ ազգի մէջ կու մտանէին * մէկ թագաւորութէ դուրս կու գային, և մէկ ուրիշ ազգ ժողովրդեան մէջ կու գնային։

Այսինքն, չի թողեց ամենևին որ մարդ նց վնաս հասուցանէր * և նոցա համար զանազան թագաւորքն կշտամբեց, իբր խրատեց և յանդիմանեց, որպէս զփարաւոն և զաբիմելէք։

Այսինքն, ասելով մի՛ մօտիկանայք իմ օծելոցն, իբր նախահարցն որք օծեալք էին շնորհօք

հոգւոյն սրբոյ * և իմ մարգա-
րէից վնաս մի՛ հասուցանէք:

Այսինքն, սով ձգեց եօթն տա-
րի քանանացւոց երկրին վերայ
իբր մորայ երկրին վերայ * և հա-
ցի զօրութիւն, իբր ցորենի ուժն
և կարողութիւն կտրեց, և չորա-
ցոյց:

Այսինքն, նոցա առաջևէն մարդ
մի ողարկեց 'ի յեգիպտոս * իբր
զյովսէփ գեղեցիկն որ վասն նա-
խանձու յեղբարց իւրոց իբրև
զծառայ վաճառվեցաւ եգիպ-
տացւոց, ըստ որում տ̃րն մեր յս̃
քս̃ ճշմարիտն յովսէփ վաճառե-
ցաւ անօրէն հրէից 'ի յուդայէ:

Այսինքն, պետափրեայ կնոջ
զուր և անիրաւ բանին համար
նորա ոտքերն 'ի կապանաս դրին
* և նորա անձն երկաթէ զընձի-
լով կապեցին և ձգեցին 'ի բանտ
խաւարային:

Այսինքն, մինչև որ եկաւ
նորա բանն հասաւ, իբր այն
բանն որ մարգարէաբար յառաջ
ասացեր էր փարաւոնի թաս տվո-
ղին * և բանն տ̃յ փորձեց զնա,
իբր նոյն բանի ճշմարտութիւն որ
յայտնութեն տ̃յ գուշակեր էր 'ի
բանտին, փարաւոնի առաջևն
փորձեց զնա իբրև այր գիտուն,
և ծածուկ իրաց գիտացող:

Այսինքն, ուստի ողարկեց շու-





մեղանչէք:

Կոչեաց զսով յեր-
կիր նոցա * և զամ̃
զօրութի հացի եբեկ:

Առաքեաց առաջի
նոցա զայր * 'ի ծա-
ռայութի վաճառե-
ցաւ յովսէփ:

Խոնարհ արարին 'ի
կապանս զոտս նր̃ *
և ճանկ ընդ երկաթ
անձն նորա:

Մինչև եկեսցէ բան
նորա * և բան տ̃ն
փորձեաց զնա:

Առաքեաց թագա

ւորն եւ ելոյծ զնա * իշխան ժողովրդեան եթող զնա ։

Կացոյց զնա տէր տան իւրոյ * եւ իշխան ամենայն ստացուածոց իւրոց ։

Խրատել զիշխանս նոցա որպէս զինքն * եւ զծերս նոցա իմաստուն արասցէ ։

Եմուտ Իսրայէլ յԵգիպտոս * եւ Յակոբ պանդխտեցաւ յերկրին Քամայ ։

Աճեցոյց զժողովուրդ իւր յոյժ * եւ զօրացոյց զնոսա քան զթշնամիս իւր ։

Դարձոյց զսիրտս նոցա յատել զժողովուրդ իւր * եւ 'ի նենգել զծառայս իւր ։



տով եգիպտացւոց թագաւորն եւ արձակեց զինքն, 'ի կապանաց * եւ հանեալ 'ի բանտէն իւր ժողովրդեանն վերայ իշխան հաստատեց զնա ։

Այսինքն, զնա իւր տանն եւ իւր սարայներին տէր կացոյց * եւ իւր ապրանաց եւ ըստացուածոցն վերայ իշխան եւ վերակացու դրեց ։

Այսինքն, որ վարժէր եւ խրատէր եգիպտացւոց իշխանքն իւր երկնային գիտութեանն եւ հանճարովն ինչպէս որ ինքն էր * եւ նոցա ծերոցն իմաստութիւն ուսուցանէր ։

Այսինքն, մտաւ Իսրայէլ եգիպտացւոց երկիրն իւր զարմօքն եւ զաւակօքն * եւ Յակոբ նահապետն պանդուխտ եւ օտարական դարձաւ եւ մնաց Քամայ երկրումն, իբր 'ի յԵգիպտոս ։

Այսինքն, բայց Աստուած տեսանելով իւր ժողովրդեան հաւատարմութիւնն աճեցոյց եւ բազմացոյց զիւրեանք որդւովք եւ դստերօք * զօրացոյց եւ ուժովացոյց քան զիւրեանց թշնամի եգիպտացիքն ։

Այսինքն, փոխարկեց եգիպտացւոց սիրտն որ ատէին զիւր ժողովուրդն, իբր իսրայէլացւոց ազգն * եւ նենգութիւն եւ խորամանկութիւն անէին իւր հաւատարիմ ծառայիցն վերայ տանջելով

և չարչարելով զնոսա։
Այսինքն, բայց տեսանելով ած
նոցա խղճութիւնն, ողարկեց
զմովսէս իւր հաւատարիմ ծա
ռայն * և զահարոն իւր ընտրեալ
քահանայն առ 'ի ազատել զնոսա
'ի գերութենէն փարաւոնի ըստ
որում առաքեաց հայրն ած զոր
դին իւր միածին առ 'ի փրկել
զազգս մարդկան 'ի գերութէն
սատանայի։
Այսինքն, նշ̃ բան և իշխանու
թեաւ որ նշանք և ըսքանչելիք
անէին * և իւր զարմանալի
արուեստքն և հրաշագործու
թիւնքն ցուցանէին քամայ երկ
րումն, իբր 'ի յեգիպտոս։
Այսինքն, ողարկեց խաւար
և խաւարեցոյց նշ̃ հոգին և մար
մինն * զէրէ ոչինչ համարեցին
զիւր ածային բանն որ մովսէսի
և ահարոնի բերանովն խօսեցաւ
վասն փրկութեն իսրայէլացւոց։
Այսինքն, նոցա գետերի ջուրն
'ի յարիւն փոխարկեց * և նոցա
ձկունքն բովանդակ սատակե
ցոյց։
Այսինքն, նոցա երկիրն եռաց
և գորշելի գորտերով լցվեցաւ
* մինչև 'ի յապարանս և 'ի սե
նեակս թագաւորաց և իշխանաց
նոցա։
Այսինքն, հրամայեց և եկաւ





Առաքեաց զմովսէս
ծառայ իւր * և զա
հարոն ընտրեալ իւր

Եդ նոցա զբան նշա
նաց իւրոց * և զա
րուեստս իւր յերկ
րին քամայ։

Առաքեաց զխաւար
և խաւարեցոյց զնն̃
* զի դառնացուցին
զբան նորա։

Դարձոյց յարիւն
զգետս նոցա * և ես
պան զամ ձկունս
նոցա։
Եռաց յերկրի նոցա
գորտ * 'ի շտեմարանս
թագաւորաց նոցա։

Ասաց և եկն շանն

ձանձ * և մժեխ ընդ
ամ սահմանս նոցա։

Դարձոյց զանձրևս
նոցա 'ի կարկուտ * և
հուր յերկրի նց բոր
բոքեցաւ։

Եհար զայգիս և զթը
զենիս նց * և փշրեաց
զամ ծառս սահմա
նաց նց։

Ասաց և եկն մարախ
և խառնիճ * զի ոչ
գոյր նց թիւ։

Եկեր զամ խոտ երկ
րի նց * և սպառեաց
զամ պտուղ անդոյ
նոցա։

Եհար զամ անդրա
նիկս եգիպտացւոց *
զսկիզբն ամ վաստա
կոց նոցա։

Եհան զնս ոսկւով
և արծաթով * և ոչ
գոյր յազգի նոցա
հիւանդ։

Ուրախ եղև եգիպ
տոս ընդ ելանելն նց



շանաձանձ և խայթեց զնոսա * և
մժեխն լցեց բովանդակ նց երկ
րի սահմանքն։

Այսինքն, նոցա անձրևն կար
կուտ փոխարկեց * և նոցա երկ
րի օդն և քամին կրակի նման բոր
բոքեցաւ։

Այսինքն, զարկեց և չորացոյց
նոցա այգիքն և թզենիքն * և
ջարդեց և փշրեց բովանդակ նո
ցա երկրի ծառերն։

Այսինքն, ասաց և եկաւ եգիպ
տացւոց երկրին վերայ մարախ,
և խառնիճ, իբր անթև որդն
որ կուծնանի 'ի մարախէն * բայց
այնչափ շատ էր, որ թիւ չունէր։

Այսինքն, կերաւ բովանդակ
նոցա երկրի դալար խոտն և բոյսն
* և փչացոյց և գլխեցոյց զամէն
նոցա արտերի բերքն և պտուղն։

Այսինքն, հարեց և զարկեց
զամէն եգիպտացւոց անդրանիկ
զաւակքն * նց երկանց և վաս
տակոց ըսկիզբն սատակեց, իբր
նոցա զառաջնածին զաւակքն մա
հացոյց։

Այսինքն, հանեց զիսրայէլա
ցիքն յեգիպտոսէ ոսկւով և ար
ծաթով * և ոչ ոք չկայր նց ազ
գի միջումն որ մէկ հիւանդութի
մի ունենայր։

Այսինքն, ուրախացան եգիպ
տացիքն իսրայէլացւոց դուրս

եղանելոյն վերայ * ղէրէ այ անձ
ընկեր էր իւրեանց վերայ ։
Այսինքն , ցերեկն ամպն կու
տարածէր և շուաք կանէր նոցա
յանապատումն * և գիշերն կրա
կով լոյս կուտայր , և ճանապարհ
կուցուցանէր ։
Այսինքն , յանապատումն միս
խնդրեցին , և այ հրամանաւն
եկաւ լորամարգի թռչունն և
թափեցաւ նոցա չատիրներին վը
* և երկնային հացովն , իբր մանա
նայիւն կշտացոյց զիւրեանք ։
Այսինքն , զարկեց քարին գա
ւազանաւն մովսէսի , և ջրեր
բխեցին * և անջուր անապա
տումն գետեր վազեցին ։
Այսինքն, ղէրէ յիշեց զիւր սբ
բանն * իբր զիւր ուխտն որ արա
րեր էր իւր հաւատարիմ ծառայ
աբրահամու հետ ասելով , բազ
մացուցից զզաւակ քո որպէս զաս
տեղս երկնից և որպ զաւազ առ
եզր ծովու ։
Այսինքն , հանեց ուրեմն յե
յեգիպտոսէ զիւր ժողովուրդն
ցնծութբ * և զիւր ընտրեալ
ծառայքն ուրախութբ ։
Այսինքն , տուեց նոցա ձեռն
զհեթանոսաց գաւառներն * և
զանազան ազգաց և ժողովրդոց
վաստակն նոցա մուլք և ժառան
գութի արաւ ։

Ա. յս



* զի անկաւ ահ նոցա
'ի վերայ նոցա ։
Սփռեաց ամպ հովա
նի առնել նց 'ի տուէ
* և հրով լոյս տայր
նոցա 'ի գիշերի ։

Խնդրեցին և եկն լօ
րամարգի * և հացիւ
երկնից լցոյց զնոսա ։

Եհար զվէմն և բղ
խեցին ջուրք * և
գնացին գետք ընդ
անջրդի ։
Յիշեաց զբանն իւր
սբ * որ ընդ աբրահա
մու ծառայի իւրոյ ։

Եհան զժողովուրդ
իւր ցնծութբ * և
զընտրեալս իւր ու
րախութբ ։
Ետ նոցա զգաւառս
հեթանոսաց * 'ի վաս
տակս ժողովրդոց ժա
ռանգեցոյց զնոսա ։

Զի պահեսցեն ըզ
վկայութիս նորա *
և զօրէնս նորա խնդ-
րեսցեն։

Տուն· 44·

Ալէլուիայ։

Սաղմոս· ՃԵ·



Խոստովան եղե-
րուք Տն զի
քաղցր է * զի
յաւիտեան է ողոր-
մութի նր։

Ո՛ խօսեսցի զզօրու-
թիս Տն * լսելի արաս-
ցէ զամ օրհնութիս
նորա։

Երանի որք պահեն
զիրաւունս * և առ-
նեն զարդարութիւն



Այսինքն, որ տեսանելով այ
բարերարութին պահեն նորա
ուխտն և վկայութին * և նորա
օրէնքն և պատուիրանքն խնդ-
րեն և կատարեն։

Իբր, զայս սաղմոս ասելով որ
ճանաչէք զած, զի ալէլուիայն որ
ճանաչէք զած կու թարգմանի։
Այս սաղմոսովս կու գովէ մար-
գարէն զած, և կու յորդորէ
զամենեսեան գովել զնա վասն
երկայնամտութե և ներողութե
նորա։

Այսինքն, խոստովանեցէք
այ անչափ բարութին
և ողորմութին ով հա-
ւատացեալ ժողովուրդք, զէրէ
քաղցր է և երկայնամիտ է * և
իւր ողորմութին յաւիտենական
է և անսպառ է իւր ծառայից
վերայ։
Այսինքն, ինչ մարդ որ կու խօ-
սի կամ կու պատմէ ժողովրդեան
նորա ամենակարող զօրութին *
թող քարոզէ և ծանուցանէ ըստ
արժանոյն նորա օրհնութիքն և
փառաբանութիքն։
Այսինքն, երանի այնպիսի մարդ-
կանց որ այ իրաւունքն կու պա-
հեն, սիրելով զնա ՚ի բոլոր սրտէ

և 'ի բովանդակ մնաց, զընկերս իւրեանց իբրև զանձինս իւրեանց * և յամ ժամ արդարութի կուգործեն կատարելով զօրէնս և զպատուիրանս նորա։

Այսինքն, յիշէ զմեզ Տէր մեծ 'ի հաճոյս ժողովրդեան քոյ, իբր կատարեա́ քոյ հաւատացեալ ծառայից փափաքն և ցանկութին * և այց արա́ մեզ քո փրկութեդ, իբր ողորմիր մեզ յիւ քիւ որդւով քով միածնիւ։

Այսինքն, որ մեք այլ տեսանենք զայն քաղցրութին որ տալոց ես քոյ ընտրեալ ծառայիցդ * և ուրախանանք քոյ ազգիդ ուրախութեն, իբր քրիստոնէական ազգին հոգևոր ուրախութեն * և պարծենանք քոյ ժառանգութեն միջումն, իբր քոյ նոր ժողովրդեան միջումն։

Այսինքն, մեղանչեցինք մեք քոյ առաջիդ մեր առաջին հարցն նման * անօրէնութիւն գործեցաք, և օրինազանց եղաք։

Այսինքն, մեր առաջին հարքն յեգիպտոս չիմացան զքո ըսքանչելիքդ, իբր ոչինչ համարեցին զքո հրաշագործութիքդ * և չէ́ յիշեցին զքո անչափ ողորմութիդ և բարերարութիդ։

Այսինքն, բարկացուցին զնա այն ժամանակն որ կու անցանէին

զծովն

յամենայն ժամ։

Յիշեա́ զմեզ Տէր ընդ հաճոյս ժողովրդեան քո * և այց արա́ մեզ 'ի փրկութեան քում։

Տեսցուք մեք զքաղցրութիւն ընտրելոց քոց * ուրախ եղիցուք մեք յուրախութե ազգի քո * և գովեսցուք մեք 'ի ժառանգութեան քում։

Մեղաք մեք ընդ հարսն մեր * անօրինեցաք և յանցեաք։

Հարքն մեր յեգիպտոս ո́չ իմացան զսքանչելիս քո * և ո́չ յիշեցին զբազում ողորմութի քո։

Բարկացուցին զնա յանցանելն իւրեանց

ընդ ծովն կարմիր * փրկեաց զնոսա վասն անուան իւրոյ , զի ծանիցեն զզօրութիս նորա ։

Սաստեաց ՚ի ծով կարմիր և ցամաքեցաւ * առաջնորդեաց նոցա ընդ անդունդս որպէս ընդ անապատս ։

Կեցոյց զնոսա ՚ի ձեռաց ատելեաց նց * և փրկեաց զնս ՚ի ձեռաց թշնամեաց նց ։ Ծածկեաց ծով զնեղիչս նց * և մի ՚ի նոցանէ ոչ ապրեցաւ ։

Հաւատացին բանի նր * և օրհնեցին զօրհնութիս նորա ։

Վաղվաղեցին և մոռացան զգործս նր * և ոչ անսացին

զծովն կարմիր , իւրեանց թերահաւատութեն , երբ որ տեսին զզօրսն փարաւոնի որ յետեւանց կու հալածէր զիւրեանք * բայց ած փրկեց զնոսա իւր անուան փառացն համար , որ զիւր ամենակարող զօրութին ճանաչեն և հաւատան ինա ։

Այսինքն , սաստեց կարմիր ծովուն և շուտով ցամաքեցաւ. * և նոցա առաջնորդ դարձաւ և ճանապարհ նշանց տվեց անդունդներին միջումն , իբր խորունկ ծովին միջումն , որ այնպէս կու թվէր թէ ցամաք և անապատ երկիր մի լինէր իւրեանց կոխած տեղն ։

Այսինքն , ազատեց զնս իւրենց ատելեաց ձեռքէն * և փրկեց զնս իւրեանց թշնամեաց ձեռքէն , իբր եգիպտացւոց գերութէն ։

Այսինքն , ծածկեց կարմիր ծովն նոցա նեղութի տւօղքն , իբր զեգիպտացիքն * և ՚ի նոցանէ մէկ մի չի կարաց պռծանիլ , և ազատիլ ։

Այսինքն , այն ժամանակն տեսանելով իսրայէլացիքն այ հրաշագործութիքն հաւատացին իւր ճշմարիտ խօսիցն * և ըսկսան օրհնել և գովել զնա ։

Այսինքն , բայց յետոյ շուտով մոռացան նորա բարերարութին * և չուզեցին ականջ դնել նր

ածային կամացն և խորհրդոցն։
Այսինքն, ցանկացան յանապա տումն մինև այլ կերակրոց չէ՛ հաճաշելով նորա ամենակարող զօրութեանն * և փորձեցին զած թերահաւատութբ այն տեղին որ ջուր չէր գտնվեր։
Այսինքն, տուեց ած նոցա իւրեանց խնդրուածքն * և ողարկեց զմեղէն կենդանիքն և կշտացուց և լիացուց զիւրեանք։
Այսինքն, բարկացուցին զմովսէս օրդուն միջումն * և զահարոն սուրբ քահանայն տն այ, որ համարհելով և ոչինչ համարելով զնոսա։
Այսինքն, բացվեցաւ երկիրն և կուլ տվեց զդադան * և ծածկեց հողն աբիրոնի օրդուն, զէրէ ժողովրդեան մէջն այլայլութն և խռովութն ձգեցին, և չէ՛ կամեցան հնազանդիլ մովսէսին և ահարոնին։
Այսինքն, հուր ելաւ յայ, և բորբոքեցաւ նոցա համախոհ ժողովրդեան միջումն * և բոցն այրեց և փչացուց մեղաւորներն, իբր զերկուհարիւր և զյիսուն հոգին, որ հաւաներ էին բանիցն դադանայ և աբիրոնի։
Այսինքն, ոսկէ հորթուկ շինեցին քորեբայ դաշտումն, և նորա պատկերքին երկրպագութն արա





խորհրդոց նորա։
Յանկացան ցցանկութի յանապատի * և փորձեցին զած յանջրդի։

Ետ նց զխնդրուածս նց * առաքեաց լրութի յանձինս նց։

Բարկացուցին զմովսէս ՚ի բանակի * և զահարօն սուրբ տն,

Բացաւ երկիր և եկուլ զդադան * և ծածկեաց զբանակն զաբիրոնի։

Հուր վառեցաւ ՚ի ժողովս նց * և բոց մաշեաց զմեղաւորս։

Արարին զորթն ՚ի քորեփ և երկիրպագին պտկերի * և փոխեցին

զփառս իւրեանց 'ի նմանութիւն որթոյն խոտակերի:

Մոռացան զա՛ծ զկենարարն իւրեանց * որ արար զմեծամեծս յեգիպտոս, և զսքանչելիս իւր յերկրին քամայ * և զահս իւր 'ի վերայ կարմիր ծովուն:

Ասաց սատակել զնս * եթէ ոչ մովսէս ընտրեալն կայր առաջի նորա:

Դարձաւ առ տր և անցոյց զբարկութի նր * զի մի՛ սատակեսցին նոքա:

Անարգեցին զերկիրն ցանկալի * և ոչ հաւատացին բանի նորա:



րին * և փոխեցին իւրեանց փառքն, իբր զա՛ծ որ նց փառքն և պարծանքն էր, թողին և մէկ խոտակեր հորթուկի պատկերքի նմանութեն երկրպագութեան արարին:

Այսինքն, մոռացան զա՛ծ որ իւրեանց կեանքն և փրկութին էր * որ այնչափ մեծամեծ հրաշք արար յեգիպտոս, այնչափ ըսքանչելիք արար քամայ երկրումն, իբր նոյն եգիպտացւոց երկրումն * և այնչափ ահաւոր և զարհուրելի գործ գործեց կարմիր ծովումն:

Այսինքն, ասաց ա՛ծ, իբր կամեցաւ ա՛ծ սատակել զնոսա, և ջնջել զնոցա յիշատակն յերկրիս երեսէն * թէ որ իւր ընտրեալ ծառայն մովսէս աղօթիւքն բաղկատարած չէ՛ր կանգներ նր առաջեւն, և վասն նոցա չէ՛ր բարեխօսէր:

Այսինքն, զէրէ շուտով աղաչանօք դարձաւ առ ա՛ծ, և անցոյց և դադարեցոյց նորա բարկութին * որ չի՛ փչացնէր զբովանդակ իսրայէլացւոց ժողովուրդն:

Այսինքն, անարգեցին և ոչինչ համարեցին զայն ցանկալի երուսաղէմայ երկիրն, որ ա՛ծ խոստացեր էր իւրեանց * և լսելով

լրտես

լրտեսների տգէտ խօսիցն , իբր չաշուշների ասացած խօսքին , այ բանիցն չի հաւատացին :

Այսինքն , տրտնջեցին զայ թերահաւատութէ օրդուի միջումն * և նր խրատին և ձայնին ականջ չի արարին :

Այսինքն , բարձրացոյց ած իւր բարկութն ձեռքն նոցա վերայ * որ հարկանէր պատժէր և պատուհասէր զիւրեանք յանապատումն :

Այսինքն , որ ցրուէր նց զարմն և զաւակն հեթանոսաց միջումն * և կորուսանէր զիւրեանց յիշատակն տըլաղեաց գաւառներումն :

Այսինքն , պղծվեցան նոքա ՚ի բեգովր մովաբացւոց կանանցն հետ , և թողելով զպաշտօնն այ երկրպագեցին բելայ այն մովաբացւոց , վասն որոյ ասէ ՚ի բէլ բեգովր , իբր երկրպագեցին բելայ պատկերքին ՚ի բեգովրայ երկրումն * զէրէ զկուոց զոհած և մեռեալ կենդանիքն կերան առանց խղճմտանաց ընդ էմ պատուիրանացն այ :

Այսինքն , բարկացուցին զած իւրեանց չարագործութբն * և ջարդումն անկաւ նոցա մէջն , և սատակեցան ՚ի նոցանէ քսան և չորս հազար մարդ :

Այսինքն , յետոյ եկաց փենէ

Տրտնջեցին ՚ի բանակս իւրեանց * և ոչ լուան ձայնի տն :

Համբարձ զձեռն իւր ի վերայ նոցա * հարկանել զնոսա յանապատի :

Ցրուեսցի զաւակ նց ընդ հեթանոսս * ցրուեսցի զաւակ նց ընդ գաւառս :

Պղծեցան նք ՚ի բէլ բեգովր * զի կերան զզոհեալ և զմեռելոյի :

Բարկացուցին զնա ՚ի գործս իւրեանց * և յաճախեցաւ իվ՟ նոցա բեկումն :

Ապա եկաց փէնէ

նէհէս և քաւեաց, և արգելաւ մահ * և համարեցաւ նմա յարդարութիւն յազգէ յազգ մինչև յաւիտեան։

Բարկացուցին զնա ի վերայ ջուրցն հակառակութեան * չարչարեցաւ մովսէս վն նց, զի դառնացուցին զհոգի նորա։

Հրամայեաց շրթամբք իւրովք * և ոչ սատակեցին զազգսն զոր ասաց նց տր։

Խառնակեցան ընդ հեթանոսս, և ուսան զգործս նոցա * ծառայեցին կռոց նց և եղև նց ՚ի գայթակղութի։

Զոհեցին զուստերս և զդստերս իւրեանց դիւաց * և հեղին զարիւն ամբիծ։



հէս քահանայն միջնորդ եղաւ, և ըսպանանելով զպոռնիկն քաւեց զմեղս ժողովրդեան, և զմահն արգելեց * և իւր արարմունքն իւրն արդարութի համարվեցաւ յազգէ յազգ մինչև յաւիտեան։

Այսինքն, բարկացուցին զած հակառակութե ջրի վր, երբոր փորձելով զնա ջուր խնդրեցին * չարչարեցաւ մովսէս նց համար, իբր զրկեցաւ ՚ի մտանելոյ յերկիրն աւետեաց, զէրէ դառնացուցին զ հոգի նր իւրեանց խստութեբն և երկբայեցուցին զնա ՚ի վր երկայնամտութեն այ։

Այսինքն, այն ազգերն որ ած իւր բերանովն ասացեր էր թէ ըսպանեցէք և փչացուցէք * նքա իւրեանց անհնազանդութեամբն խնայեցին, և չի սատակեցին զիւրեանք,

Այսինքն, խառնեցան հեթանոսաց և կռապաշտից հետ, և ուսան նց չար կենցաղավարութին * ծառայեցին և երկրպագեցին նց կուռքերին, և իւրեանց մոլորութին իւրեանց գայթակղութի և կործանումն դարձաւ։

Այսինքն, զոհեցին, իբր մատաղ արարին զիւրեանց որդիքն և դստերքն դիւերի, հետևելով մոլորութեցն կռապաշտից * և իւրեանց զաւակներին անմեղ արիւնն

թա

Թափեցին 'ի փառս սատանայի:
Այսինքն, իւրեանց տղայոց և դստերաց արիւնն կասեմ * որ քանանացւոց կռոցն զոհեցին, իբր մատաղ արարին:
Այսինքն, շաղաղվեցաւ երկիր նց անմեղ արիւնովն, և պղծվեցաւ իւրեանց ծնողաց չար գործքովն * զէրէ պոռնիկ դարձան իւրեանց արարմամբն, թողելով զճշմարիտն Ած և պաշտելով զկուռս:
Այսինքն, բարկացաւ իւր սաստիկ սրտմտութբն տր Ած իւր ժողովրդեանն վր * և գարշեցաւ և զզուեցաւ իւր ժառանգութէն, իբր խորշելացւոց ազգէն:
Այսինքն, մատնեց զիւրեանք հեթանոսաց և կռապաշտից ձեռքն * տիրեցին նց իւրեանց ատելի ազգերն * և իւրեանց թշնամիքն նեղացուցին և վշտացուցին զիւրեանք * և նոցա ձեռաց տակն խոնարհեցան, և գերի դարձան որդւովք և դստերօք:
Այսինքն, շատ անգամ խեղճ եկաւ և փրկեց զիւրեանք, և նք փոխանակ շնորհակալ լինելոյ դառնացուցին զնա իւրեանց չար խորհրդովն * և իւրեանց անօրէնութեն մեջումն կեռացան և հոզի հաստար եղան:
Այսինքն, բայց գթածն Ած հայեցաւ նց նեղութն և վշտին *

և կա



Արիւն ուստերաց և դստերաց իւրեանց * զոր զոհեցին կռոցն քանանու:
Շաղախեցաւ երկիր յարենէ նց, և պղծեցաւ 'ի գործոց նց * զի պռնկեցան 'ի գնացս իւրեանց:

Բարկցաւ սրտմտութբ տր իվր ժողովրդեան իւրոյ * և գարշեցոյց զժառանգութի իւր յոյժ:
Մատնեաց զնոսա 'ի ձեռս հեթանոսաց * տիրեցին նց ատելիք իւրեանց * և թշնամիք իւրեանց նեղեցին զնս * և խոնարհք եղեն 'ի ներքոյ ձեռաց նոցա:
Բազում անգամ փրկեաց զնոսա, և նք դառնացուցին զնա 'ի խորհուրդս իւրենց * և կորացան յանօրէնութե իւրեանց:

Հայեցաւ տր 'ի նեղութս նց * 'ի լսել ձայ

նի աղօթից նոցա ։

Յիշեաց զուխտ իւր և զղջացաւ ըստ բազում ողորմութեան իւրում * և ետ զնս 'ի գթութիւս առաջի ամ գերչաց նոցա ։

Փրկեա զմեզ տր ած մեր * և ժողովեա զմեզ 'ի հեթանոսաց ։

Խոստովան եղիցուք անուան քում սրբոյ * և պարծեսցուք յօրհնութիւս քո ։

Օրհնեալ տր ած իս րայէլի յաւիտեանս յաւիտենից ։

Եւ ասասցէ ամ ժո ղովուրդն * եղիցի եղիցի ։

Տուն ։ 44 ·



և կամեցաւ լսել նոցա աղօթից ձայնին ։

Այսինքն, յիշեաց զիւր ուխտն որ արարեր էր նախահարցն հեա, իբր աբրահամու իսահակայ և յա կոբայ և զղջացաւ իւր առատ ողորմութբն * և իւրեանց գե րողաց սիրտն նց վերայ 'ի գութ շարժեց, որ զիւրեանք չի ըսպա նանեն, այլ թողուն որ իւրեանց օրինօքն կենցաղավարին ։

Այսինքն, փրկէ զմեզ տր ած մեր յերևելի և աներևոյթ թշնա մեաց ձեռքէն * և ժողովելով զմեզ 'ի զանազան ազգաց երկր ներէն միաւորեամ միով հաւա տով 'ի մէջ քոյ սուրբ եկեղե ցւոյդ ։

Այսինքն, որ խոստովանինք քո սուրբ և երկրպագելի անունդ * և պարծենանք քո օրհնութե նովդ և քո գովութենովդ միշտ և հանապազ ։

Այսինքն, և ասենք օրհնեալ է տր ածն իսրայէլի յաւիտեանս յաւիտենից, որ զմեզ կուն ա խախնամէ իւր ողորմութբն ։

Այսինքն, և ամ ժողովուրդն պատասխանէ և ասէ * եղիցի եղիցի, իբր այդպէս լինի, այդ պէս լինի ։

Մ. ղօթք իւրաքանչիւր բարեպաշտ քրիստոնէի 'ի ժամանակի հիւանդութե իւրում, հոգեկանի և մարմնականի։



յսինքն, ես երբոր տեսայ իմ հիւանդութեան մէջն, թէ մերձ էի 'ի մեռանիլ, իմ կեանքս կու կարճանայր և կու կտրուէր, և իմ օրերս ինձանից կու վերանայր, իբր ինձանից կու բարձուէր * ասացի իմ սրտիս մէջն թէ վայ ինձ, ահա՛ կու գնամ 'ի դրունս դժոխոց, իբր 'ի դուռն գերեզմանին, կամ 'ի դժոխս ուր են նախահայրքն իմ, ուրէ դեռ քս չէր եկեր յաշխարհ, և արքայութե դուռն դեռ փակած էր։

Մ. յսինքն, թողի զամէն իմ յետագայ օրերն, իբր իմ մնացած կենաց ժամանակն, կամ թողի իմ յետամնաց խորհուրդքն և դիտաւորութիւնքն * և ասացի իմ մտաց մէջն, ես այլ չեմ տեսաներ այս կենդանեաց երկրումս, իբր այս աշխարհիս երեսին զփրկութի տն, իբր ես այլ այս հիւանդութենս չեմ ազատիլիր * և այսու հետև մարդիկ երես չեմ տեսաներ այս երկրիս բնակչացն հետ։

Մ. յս



Ա. ղօթք եզեկիայի արքայի հրէաստանի 'ի ժամանակի յորում հիւանդացաւ և յարեաւ 'ի հիւանդութենէ իւրմէ. Եսայի 38։



ս ասացի 'ի վերանալ յինէն աւուրց իմոց * թէ գնացի ես 'ի դրունս դժոխոց։

Թ. ողի զամ զյետին իմ * և ասացի թէ այլ ոչ ևս տեսից զփրկութի տն յերկրին կենդանեաց * և ոչ ևս տեսից զմարդ բնակչօք իւրովք հանդերձ.



Պակասեցայ ես յազ-գատոհմէ իմմէ * այ-սուհետեւ թողի լքի զամ զկեանս իմ։

Ել գնաց մեկնեցաւ յինէն հոգի իմ ոպ այն որ քակէ զտաղա-ւար * եւ եղէ ես ոպ զոստայն սատարաց մերձ 'ի հատանիլ։

Յաւուր յայնմիկ մաշեցայ ես յառա-ւօտէ որպէս 'ի ձեռն առիւծու * այնպէս խորտակեաց մանրեց զոսկերս իմ, զի յա-ռաւօտէ մինչ 'ի գի-շեր մաշեցայ։

Ոպ ծիծեռն այնպէս ճչեցի, եւ ոպ ղաղաւ-նի այնպէս մնչեցի * զի նուաղեցան աչք իմ 'ի տեսանելոյ։

Հայեցայ 'ի բար-ձունս առ տր ած իմ



Այսինքն, պակասեցայ ես իմ ազգականաց եւ բարեկամաց մի-ջէն * եւ այսուհետեւ թողի եւ 'ի բաց հրաժարեցայ իմ կենաց վայելչութենէն իմ փառացն իմ ժառանգութենէն, եւ իմ ամ դի-տաւորութենէս։

Այսինքն, ելաւ գնաց եւ հեռա-ցաւ ինձանից իմ հոգիս, եւ զիմ մարմինս թուլ ածեց, ինչպէս մէկ մարդ մի որ մէկ տուն մի քակէ * եւ ես այնպէս դարձայ ինչպէս ջու-լահակի հինուածքն որ մօտեցած լինի 'ի կտրվիլ։

Այսինքն, այն օրն որ սաստիկ ծանտրացայ, այնպէս կու թվէր ինձ թէ առաւօտէնց մէկ առիւ-ծի ձեռքն լինէի անկած * զէրէ հիւանդութիւն այնպէս խորտա-կեց եւ ջարդեց զիմ ոսկրտանքս, որ առաւօտէն մինչեւ 'ի գիշերն անդադար տագնապեցայ եւ տա-ռապեցայ։

Այսինքն, եւ առաւել դառնու-թենէս ինչպէս որ ծիծեռնիկն կու ճչայ այնպէս ճչացի, եւ ինչպէս աղաւնին կու մնչայ, այնպէս հա-ռաչեցի, իբր հոգւոց հանեցի * զէրէ սաստիկ ցաւէն աչքերիս լոյսն հատաւ եւ նուաղեցաւ 'ի տեսանելոյ։

Այսինքն, միտք արարի եւ տեսայ թէ այլ կողմանէ ազատութեան

յոյս չկայր , դարձայ սրտի մտօք
և հայեցայ 'ի բարձունս , իբր 'ի
յերկինս առ տր ած իմ , և աղա
ղակեցի առ նա լալով և արտա
սուելով * և նա իւր ողորմու
թբն փրկեց զիս իմ հիւանդուէս
և զիմ մարմնոյս ցաւն փարատեց ։
Մ—յսինքն , տր ած ես նորա հա
մար փղձկած սրտիւ զիմ կենաց
դառնութին քեզ պատմեցի , զէ
րէ կուՃանաչէի զքո անչափ
գթութիդ * և դու զիմ անձս
մահուան քնէն արթնացուցիր ,
և զիմ հոգիս առիս դարձուցիր
իբր առողջացուցիր * և քոյ ես
այն մարդարէի խօսքովն որ ողար
կեր էիր զիս 'ի տես , մխիթարվե
ցայ և կենդանացայ ։
Մ. յսինքն , ահա՛ կուտեսանեմ,
որ իմ դառնութիս 'ի խաղաղու
թի փոխվեցաւ * զէրէ դուքո
մարդասիրութբդ զիմ անձս փր
կեցիր 'ի մահուանէ , և չի թողիր
որ կորնչէի յաշխարհիս երեսէն
* և զիմ ամէն մեղքս և յանցանքս
յետոյդ ձգեցիր , իբր մոռացար
և անտես արարիր ։
Մ. յսինքն , զէրէ չէ թէ նոքա
որ դժոխքումն են կու խոստովա
նին զքո ամենաբարութիդ , և
չէ թէ մեռեալքն հոգւով և մար
մնով կու օրհնեն զքո սբ անունդ
* և չէ թէ նքո որ կու դատապարտ





* որ փրկեաց զիս , և
փարատեցոյց յինէն
զցաւս անձին իմոյ ։

Տր վն այսորիկ պատ
մեցաւ քեզ * զար
թուցեր զանձն իմ ,
դարձուցեր զ հոգի
իմ * մխիթարեցայ
և կեցի ։

Մ—հա՛ 'ի խաղաղու
թիւն դարձաւ դառ
նութի իմ * փրկե
ցեր զանձն իմ զի մի՛
կորեայց * և ընկե
ցեր յետոյ զամ
մեղս իմ ։

Օ ' ի ո՛չ թէ որք 'ի
դժոխս են խոստովան
լինին առ քեզ , և ո՛չ
մեռեալք օրհնեսցեն
զքեզ * և ո՛չ յուսաս
ցին 'ի Ճշմարտութիս

քո ամենեքեան ոյք
իջանեն 'ի դժոխս։

Այլ կենդանիքս որ
օրհնեսցուք զքեզ տր
* որպէս և ես այսու
հետև մանկունս ծն
այց որք պատմեսցեն
զարդարութիւնս քո
տր փրկութն իմոյ։

Ես ոչ դադարեցից
օրհնել զքեզ յօրհ
նութի նոր զամ աւ
ուրս կենաց իմոց յան
դիման տաճարիդ տյ։

Տունք. 12.



վլին 'ի դժոխս կու յուսան քոյ ճշ
մարիտ խոստմանցդ որ արարեր ես
քոյ սրբոցն և քոյ երկիւղածացն։
Այսինքն, այլ մեք որ կենդա
նի ենք աշխարհիս վերայ կու օր
հնենք զքեզ տր ած * ինչպէս
որ ես այսուհետև այս տասն և
հինգ տարէն կեանքումս որ ինձ
պարգևեցիր, հոգևոր և մար
մնաւոր որդիք կու ծնանիմ, որ
ամէնքն պատմեն և քարոզեն զքո
արդարութիդ, և ճշմարտութիդ։
Այսինքն, ես այսու հետև քա
նի որ կենդանի եմ չեմ դադա
րիր ամենևին 'ի յօրհնելոյ զքեզ
նոր օրհնութբ, յիշելով զքո ինձ
արարած նոր բարերարութիդ
և տարածելով զձեռս իմ դէպ
'ի քո սուրբ տաճարդ։

Յայս կենդանութեան յոյս և ապաւէն փրկութն տր յս
փրկիչ, փրկեա և փարատեցո զցաւս անձին իմոյ։
Արդասէր տր վասն սրբուհւոյ անարատ մօր քոյ և կու
սի, և վասն խաչի քոյ պատուականի, ընկալ զաղաչանս մեր,
և կեցո զմեզ։



Լ՛սացէ՛ն փրկեցեալք նոր իսրայէլի, Թէ տ͞րն մեր յ͞ս քաղցր է և բարի. զի զգերեալ հոգիսն ՚ի մէջ խաւարի, փրկեաց ՚ի կապանաց չար սատանայի



Իբր , զայս սաղմոս ասելով որ Օրհնեցէք զա͞ծ , զի ալէլուիայն որ Օրհնեցէք զա͞ծ կու թարգմանի ։

Այս սաղմոսումս յայտնապէս կու խօսի մարգարէն վասն բարերարութեանն ա͞յ որ արար ազգի մարդկան ողորմելով յաշխարհ զորդին իւր միածին և փրկելով զնոսա ՚ի մեղաց և ՚ի դժոխոց ։

Ազինքն , խոստովանեցէք ո՛վ հաւատացեալ ժողովուրդք զբարերարութիւն ա͞յ հօր ամենակարողի , զէրէ քաղցր և բարեգութ է՛ * զէրէ իւր ողորմութիւն յաւիտենական է , և ամենեւին չէ՛ հատնիր և չի դլխվիր ։

Այս

Ալէլուիա ։

Սաղմոս . ՃԺԶ .

Խոստովան եղերուք Տ͞ն զի քաղցր է՛ * զի յաւիտեան է՛ ողորմութի՛ն նր ։



Ասասցեն փրկեալք տն * զորս փրկեաց 'ի ձեռաց թշնամւոյն ։

Այսինքն, զայս թող ասեն և վկայեն փրկեալքն պատուական արեամբ որդւոյ նորա միածնի յի քի * զորս փրկեց և ազատեց նովաւ 'ի մեղաց և 'ի բռնութենէ սատանայի ։

Յամ գաւառաց ժողովեաց զնս * յարեւելից և յարեւմտից 'ի հիւսիսոյ և 'ի ծովէ ։

Այսինքն, ժողովեց զիւրեանք իւր սուրբ եկեղեցւոյ մէջն 'ի զանազան գաւառաց 'ի հրէից 'ի հեթանոսաց և յայլոց ազգաց * 'ի յարեւելից 'ի յարեւմտից 'ի հիւսիսոյ և 'ի ծովէ, իբր 'ի հարաւոյ ։

Մոլորեցան նոքա յանապատի * յանջրդի ճանապարհի * զքաղաք բնակութեան ոչ գտին ։

Այսինքն, մոլորեցան նոքա այս անապատ աշխարհումս հետեւելով իւրեանց մարմնական ախտիցն * և այնպիսի ճանապարհում շրջեցան որ երկնային իմաստութեան ջուրն չէր գտվեր, և ածային օրինաց և պատուիրանաց նշմարանքն չէր երեւիր * և զերկնային քաղաքն որ է յաւիտենական և ճշմարիտ բնակութիւն ընտրելոցն այ, չի կարացին գտանել ։

Քաղցեան և ծարաւեցան * և անձինք նոցա 'ի նոսին նուաղեցան ։

Այսինքն, քաղցեցան և ծարաւեցան, զէրէ չունէին զհաց բանին այ, և զջուր շնորհաց նր * և իւրեանց հոգիքն իւրեանց միջումն նուաղեցան, իբր 'ի հոգեկան կենդանութենէ զրկվեցան ։

Աղաղակեցին առ տր 'ի նեղութեան իւրեանց * 'ի վշտաց նոցա փրկեաց զնոսա ։

Այսինքն, այն դառն թշուառութեան միջումն երկնային շնորհաց օգնութեամբն դէպ յած դարձան և աղաղակեցին * և նա

իւր

իւր անհասանելի ողորմութ՟ն
լուեց նոցա խնդրուածոցն, և ազա
տեց զիւրեանս յամ՟ վշտաց և 'ի
կարեաց իւրեանց հոգեկանաց։
Այսինքն, ուղարկեց զիւրեանս
իւր հոգւոյն սրբոյ առաջնորդու
թ՟ն դէպ 'ի յուղիղ ճանապարհ,
իբր իւր օրինաց և պատուիրանաց
ճանապարհն նոցա նշանց տուեց
* որ կարենան երթալ 'ի յերկ
նային քաղաքն, և 'ի ճշմարիտ
բնակութին իւրեանց։
Այսինքն, ուստի թող խոստո
վանին օրհնեն և գովեն մարդիք
այ՟ ողորմութին, և անչափ բա
րերարութին * և նորա սքան
չելիքն և հրաշագործութիւնքն
պատմեն և քարոզեն։
Այսինքն, զէրէ կշտացոյց հեթա
նոսաց և կռապաշտից քաղցած
հոգիքն * և զայնոսիկ որք կարօտ
էին բանին այ՟, իւր բարութ՟ն
լցոյց, իբր օրինաց և պատուիրա
նաց քարոզութ՟ն և ծանօթու
թ՟ն առատացոյց և հարստացոյց։
Այսինքն, զայնոսիկ որք նստեր
էին 'ի մէջ խաւարի կռապաշտու
թ՟ե, կուրութ՟ե և մոլորութ՟ե
* և յաւիտենական մահուան
շուաքն ծածկեր էր զիւրեանս
* և զայնոսիկ որք կապեր էին
բռնութ՟ն սատանայի ոչ՟ կապա
նաք երկաթեօք 'ի մէջ հոգեկան





Առաջնորդեաց նց՟ 'ի ճանապարհ ուղիղ * զի երթիցեն 'ի քաղաք բնակութ՟ե իւրեանց։

Խոստովան եղիցին տն՟ ողորմութ՟եց նր՟ * և սքանչելեաց նր՟ որդւոց մարդկան։

Զի յագեցոյց զանձինս քաղցեալս * և զանձինս կարօտեալս լի արար բարութ՟ե։

Որք նստէին 'ի խաւարի * և 'ի ստուերս մահու * կապեալք էին յաղքատութ՟ե ոչ՟ յերկաթս։

Զի դառնացուցին զբանն այ * և զխորհուրդս բարձրելոյն բարկացուցին ։

Խոնարհ եղեն 'ի ցաւոց սիրտք նց * տկարացան, և ոչ ոք էր որ առաջնորդէր նոցա ։

Աղաղակեցին առ տր 'ի նեղութե իւրեանց * 'ի վշտաց նց եհան զնոսա ։

Փրկեաց զնս 'ի խաւարէ և 'ի ստուերաց մահու * և խզեաց զկապանս նց ։

Խոստովան եղիցին տն ողորմութեց նր * և սքանչելեաց նր որդւոց մարդկան ։

աղքատութե, զրկեալք 'ի յերկնային բարութենէն ։

Մ. յոինկքն, զերբ դառնացուցին զբանն այ, իբր արհամարհեցին զպատուիրանս նորա * և բարձրելոյն խորհուրդն բարկացուցին, իբր ոչինչ համարեցին զասացեալն նորա, թէ մի' ըսպանաներ, մի' շնար, և մի' գողանար և այլն ։

Մ. յոինկքն, զանազան ցաւերէ նոցա սիրտն անկաւ և խոնարհեցաւ, իբր մեղաց և ախտից միջոցաւն նոցա հոգին անարգ և անպիտան եղաւ * տկարացան հոգւով և մտօք, և ոչ ոք չկայր որ նոցա ճանապարհ ցուցանէր ։

Մ. յոինկքն, ուստի տեսանելով զիւրեանք խիստ թշուառութե և նեղութե աղաղակեցին առ տր ած * և նա իւր գթութեն և ողորմութեն ազատեց զնոսա իւրեանց վշտացն և տառապանացն ։

Մ. յոինկքն, փրկեց զիւրեանք 'ի խաւարէ և 'ի մահուան շուաքէ, իբր 'ի կուրութէ մտաց, և 'ի մոլորութէ * և կտրատեց նց երկաթէ կապանքն, և ազատեց զիւրեանք 'ի գերութենէ սատանայի ։

Մ. յոինկքն, վասն որոյ թող խոստովանին օրհնեն և գովեն մարդիք այ ողորմութեն և անչափ բարերարութեն * և նր ըսքան

չելիքն

չէլիքն և հրաշագործութիւնքն պատմեն և քարոզեն։

Այսինքն, զէրէ կոտրատեց և փշրեց սատանայի ճարտարագիտութեց և Թագաւորների պղնձէ դռներն * և նորա երկաթէ նիգերն, իբր նորա բռնութիւն և իշխանութիւն խորտակեց և փշացոյց։

Այսինքն, օգնական հասաւ նոցա իւրեանց անօրէն գործոց ճանապարհումն դարձուցանելով զիւրեանք ՚ի գիտութի ճշմարտութե * զէրէ զիւրեանց մեղքն և չարութիւն ճանաչելով սաստիկ խոնարհեցան և փոշիմանեցան։

Այսինքն, ամէն հոգևոր կերակրներէ զզուեր էր նոցա սիրտն, իբր յաստուածային օրինացն և պատուիրանացն դարշեր էին * և մօտեցեր էին ՚ի դրունս յաւիտենական մահու և դժոխոց։

Այսինքն, ուստի տեսանելով զիւրեանց Թշուառութիւն և նեղութիւն աղաղակեցին դէպ առ Աստուած * և նա իւր գթութեամբն և ողորմութեամբն ազատեց զնոսա իւրեանց վշտացն և տառապանացն։

Այսինքն, ողարկեց զիւր բանն, իբր զորդին իւր միածին յիսուս քրիստոս, և բժշկեց նոցա ցաւն և հիւանդութիւն * և փրկեց զիւրեանք յապականութենէ և յաւիտենական մահուանէ և ՚ի դժոխոց։

Զի փշրեաց զդրունս պղնձիս * և զնիգս երկաթիս խորտակեաց։

Օգնեաց նոցա ՚ի ճանապարհի անօրէնութե իւրեանց * զի վասն մեղաց իւրեանց խոնարհեալ եղեն յոյժ

Յամ կերակրոյ գարշեցին սիրտք նոցա * մերձեցան մինչև ՚ի դրունս մահու։

Աղաղակեցին առ Տէր ՚ի նեղութե իւրեանց * ՚ի վշտաց նոցա ապրեցոյց զնոսա։

Առաքեաց զբան իւր և բժշկեաց զնոսա * և փրկեաց զնոսա յապականութե իւրեանց։

Խոստովան եղիցին տն ողորմութեանց նր * և սքանչելեաց նր որդւոց մարդկան.

Մատուսցեն նմա ըզ պատարագ օրհնութե * և պատմեսցեն զգործս նր ցնծութբ.

Որք իջանէին 'ի ծով նաւուք * և առնէին զգործս 'ի ջուրս բազումս.

Նոքա տեսին զգործս տն * և զսքանչելիս նր 'ի խորս անդնդոց.

Ասաց և յարեաւ հողմ և մրրիկ * և բարձրացան ալիք նր.

Այսինքն, վասն որոյ թող խոստովանին օրհնեն և գովաբանեն մարդիք այ ողորմութիւնն և անչափ բարութին * և նորա ըսքանչելիքն և հրաշագործութիւնքն պատմեն և քարոզեն.

Այսինքն, նր պատարագ մատուցանեն, բայց ո՛չ պատարագ անասնոց, այլ պատարագ օրհնութեան և գովութն * և պատմեն նորա հրաշագործութիքն ուրախութբ և ցնծութբ.

Այսինքն, յիշեն թէ որք սուրբ առաքեալքն իբրև ձկնորսք իջանէին 'ի ծով աշխարհիս նաւօք մարմնոյ իւրեանց * և անչափ ըսքանչելագործութիք կանէին 'ի ջուրս բազումս, իբր 'ի մէջ զանազան ազգաց դարձուցանելով զնոսա 'ի գիտութիւն ճշմարտութեան.

Այսինքն, նոքա տեսան այ զարմանագործութիքն * և նր ըսքանչելիքն խորուկ անդնդոց միջումն, իբր նք իմացան անթուելի ազգաց միջումն, թէ ինչպէս զօրութբն քի զկոյրս կուլուսաւորէին և զհիւանդս կուբժշկէին.

Այսինքն, ասաց ած, իբր թոյլ ետ ած, և հրէից և հեթանոսաց նեղութն և հալածանաց քամին և մրրիկն վերկացաւ ընդդէմ առա

քելոցն * և այս աշխարհիս ծովե
ալէքն , իբր խռովութիւքն և հա
կառակութիւքն վերացան և բարձ
րացան ի վերայ նոցա ։

Այսինքն , երբեմն կու ելանէին
ալէքն 'ի յերկինս և առաքելոց նա
ւերն կու բարձրացուցանէին ,
և նոքա տեսանելով զմոլորութիւ
անհաւատից կու աղաչէին զԱծ
վն դարձման ազգի մարդկան * և
երբեմն կու իջանէին յանդունդս
և առաքելոց նաւերն կու ցածնաց
նէին , և նք տեսանելով զզաս
տութի նց կու րախանային * և
այսպէս նոցա հոգիքն , իբր նոցա
սիրտն , իւրեանց միջումն կու հա
լէր և կու մաշվէր այս ծով աշխար
հումս ։

Այսինքն , 'ի մէջ ըսպառնալեաց
բռնաւորացն , և 'ի մէջ անտա
նելի վշտաց և հալածանացն , խռո
վեցան և սասանեցան ինչպէս
հարբած մարդիք * և նց ամէն
իմաստութիւն ընկղմեցաւ , իբր
անօրինաց աչաց առաջև ն որպէս
յիմարք և տգէտք համարվեցան ։

Այսինքն , իւրեանց նեղութե
միջումն սրտի մօք առ Տր Ած
աղաղակեցին * և նա իւր ամենա
կարօղ զօրութբն փրկեց զնոսա
իւրեանց վշտացն և տառապա
նացն ։

Այսինքն , փոխարկեց խռովու

Ելանէին յերկինս
* և իջանէին յան
դունդս * և անձինք
նոցա յանձինս իւր
եանց մաշեցան ։

Խռովեցան սասանե
ցան որպէս արբեալք *
և ամ իմաստութի
նոցա ընկլաւ ։

Աղաղակեցին առ Տր
'ի նեղութե իւրենց
* 'ի վշտաց նոցա կե
ցոյց զնոսա ։

Դարձոյց զմրրիկն

յօդս և դադարեցան ալիք նորա * ուրախ եղեն զի դադարեցան * և առաջնորդեաց նոցա 'ի նաւահանգիստ կամաց իւրեանց։

Խոստովան եղիցին տն ողորմութեց նր * և սքանչելեաց նր որդւոց մարդկան։

Բարձր արասցեն զնա 'ի ժողովս ժողովրդոց * և յաթոռս ծերոց օրհնեսցեն զնա։

Զի դարձոյց զգետս 'ի ցամաք * և զգնացս ջուրց յերկիր ծարաւուտ։

Արար զերկիրն պտղաբեր յաղտղուտս վս չարութե բնակ



թն և հալածանաց մրրկին 'ի յանդարտ յօդս, իբր 'ի խաղաղութի * և դադարեցան աշխարհախռով ալէկոծութիւքն * և տեսանելով առաքեալք զ հանդարտութիս տարերաց իւրեանց ուրախացան, և փառաբանեցին զա * և ած առաջնորդեց և հասոյց զիւրեանս անվնաս 'իցանկալի նաւահանգիստն, իբր 'ի կատարումն գործոց իւրեանց։

Այսինքն, ուստի թող խոստովանին օրհնեն և գովաբանեն մարդիք այ ողորմութիւնն և անչափ բարերարութեն * և նորա ըսքանչելիքն և հրաշագործութիւնքն պատմեն և քարոզեն։

Այսինքն, բարձրացուցանեն և փառաւորեն զնա զանազան ազգաց ժողովրդոց ժողովքների մի ջում * և ծերոց աթոռներում, իբր առաքելոց և մարգարէից հիմնած եկեղեցներում օրհնեն և գովաբանեն զնա։

Այսինքն, զերե հրէից իմաստութեան գետերն ճշմարտութե աւետարանին ցամաքեցոյց * և մարգարէական շնորհաց ջրերն բարձաւ 'ի նոցանէ, և ծարաւ և անջուր երկիր արաւ զիւրեանք։

Այսինքն, հրէից ժողովարանն, որ յառաջ պտղաբեր երկրի նման կու ծաղկէր, ձմձմոյ և ցխոտ

երկիր դարձոյց * վասն չարու-
թեն և խստասրտութեան բնակ
չաց նորա , իբր դպրացն և փարէ
սեցւոյն։

Այսինքն , անապատ երկիրն լճե
րով և ծովակներով առատացոյց
* և այն երկիրն որ անջուր էր ,
զանազան աղբերներով պայծառա
ցոյց , իբր հեթանոսաց եկե
ղեցին որ ամենևին զրկած էր
յերկնային իմաստութէն , ած
ային գրոց մեկնութէն լցեց և
առատացոյց , և զնոյն եկեղեցին
որ կարօտ էր շնորհաց հոգւոյն
սրբոյ , եօթն խորհրդովք եկեղե
ցւոյ պայծառացոյց։

Այսինքն , նոր միջումն այնպիսի
մարդիկն միայն բնակեցոյց , որ
իւր ածային բանին քաղցեր էին
* և նոքա հիմնարկեցին զքաղաք
բնակութե իւրեանց , իբր զնոր
եկեղեցին ընդհանրական կաղմե
ցին և զարդարեցին։

Այսինքն , արտեր վարեցին ,
իբր սերմանեցին զբանն այ * այ
գիք տնկեցին , իբր զանազան
քրիստոնէից եկեղեցիք հաստատե
ցին * և արարին պտուղ իւրեանց
արմտեացն , իբր շատ մարդիք ՚ի
քս ած դարձուցին։

Այսինքն , օրհնեց ած զիւրեանք
իւր երկնային օրհնութէն , և
օր ըստ օրէ բազմացան և առա

տացան

չաց նոցա։

Արար զանապատն ՚ի
ճահիճս ջուրց * և
զերկիրն ծարաւուտ
՚ի գնացս ջուրց։

Բնակեցոյց ՚ի նմա
քաղցեալս * և շինե
ցին զքաղաք բնա
կութե իւրեանց։

Վարեցին արտս * և
անկեցին այգիս * և
արարին զպտուղ
արմտեաց իւր
եանց։

Օրհնեաց զնոսա և
բազմացան յոյժ * և
անասունք նոցա ոչ

նուաղեցան։

Նուաղեցան նք և չարչարեցան * ՚ի նեղութե չարեաց և ՚ի վշտաց։

Եհեղ անարգութի ՚ի վերայ իշխանաց նց * մոլորեցոյց զնոսա յանապատի, և ոչ ՚ի ճանապարհի։

Օգնեաց տնանկին յաղքատութե * և առաջնորդեաց ոպ խաշին ազգի նց։

Տեսցեն ուղիղք և ուրախ եղիցին * և ամ անօրէն խցցէ

տացան * և նոցա բեռատանօղ անասունքն, իբր եպիսկոպոսունքն և քահանայքն ամենեքին չի՛ պակասեցան։

Այսինքն, և թէպէտ երբեմն նուաղեցան և չարչարեցան * ՚ի պատճառս հալածանացն բռնաւորաց, և ՚ի պատճառս զանազան չարեաց և վշտաց։

Այսինքն, երբեմն անկաւ ՚ի սատանայէ անարգութի նց իշխանացն վերայ, իբր անկաւ յիմարութի ի վերայ հակառակասէր առաջնորդացն որք անարգեցին զճշմարիտ մեկնութիս գրոց սրբոց վասն իւրեանց փառասիրութեն * և այսպէս մոլորեցոյց նոքօք սատանայ զժողովուրդն ՚ի ստութե անապատին, և չեթող շրջել ճշմարտութեան ճանապարհաւն, իբր ըստ օրինաց և պատուիրանաց սբ եկեղեցւոյն։

Այսինքն, բայց ած իւր նախնամութեն իւր աղքատ ժողովրդեանն յօգնութի հասաւ * և իւր ճշմարտութեան ճանապարհն նշանց տվեց նոցա ազգին, ինչպէս հովիւ մի իւր ոչխարներին ճանապարհ նշանց կուտայ։

Այսինքն, որ ուղիղ հաւատով մարդիկքն տեսանեն և ուրախանան * և անօրէն և աներկիւղ

մար

մարդիկըն պապանձին և խփեն
զիւրեանց բերանն։
Այսինքն, ով որ իմաստուն է
իւր մտաց մէջն պահէ զայս խօս
քերս * և միտք անէ այ անչափ
ողորմութիւնն և գթութիւնն որ ունի
իւր հաւատացելոցն վերայ։

Իբր, զայս սաղմոս շարադրեաց
դաւիթ վասն օրհնելոյ զած։
Այս սաղմոսաւս կու աղօթէ
մարգարէն առ ած և կու խնդրէ
զօգնութի ընդդէմ յեդոմայեցւոց։



յսինքն, պատրաստ է միշտ
իմ սիրտս տր ած, պատ
րաստ է միշտ իմ սիրտս
* որ օրհնեմ և սաղմոս ասեմ քեզ
իմ փառօքս, իբր իմ հոգւովս և
մտօքս, և իմ ամէն զօրութենովս
և կարողութենովս։
Այսինքն, զարթիր ով պայծա
ռութիւն իմ և փառք իմ, իբր
արթնացիր ով հոգի իմ քո կարո
ղութենովդ և զօրութենովդ,
արթնացիր և զուարթացիր սաղ
մոս ասելով և օրհնելով զած * և
ես ես յաղթելով մարմնոյս թու
լութենն և ակարութենն, արթնա
նամ կանուխ առաւօտէնց։
Այսինքն, կու խոստովանիմ և
կու փառաբանեմ զքո սուրբ և



զբերան իւր։

Ով է իմաստուն որ
պահեսցէ զայս * և՚ի
միտ առցէ զողորմու
թիս տն։
Տունք. 42.

Օրհնութի սաղմոս դաւթի։

Սաղմոս. ՃԷ։



ատրաստ է
սիրտ իմ ած
պատրաստ է
սիրտ իմ * օրհնել և
սաղմոս ասել քեզ
փառօք իմովք։

Զարթիր փառք իմ
զարթիր սաղմոսիւք
և օրհնութբ * և ես
զարթեայց առաւօ
տուց։

Խոստովանեցից քեզ
՚ի ժողովուրդս տր *



և սաղմոս ասացից քեզ յազգս։

Զի մեծ եղև մինչև յերկինս ողորմութիւն քո * մինչև յամպս ճշմարտութիւն քո։

Բարձրեալ ես դու յերկինս ած * յամ երկրի են փառք քո։

Ոպ փրկեցան սիրելիք քո * կեցո աջով քով և լուր մեզ։

Ած խօսեցաւ 'ի սրբութենէ իւրմէ * բարձր եղէց * բաժանեցից զսիւքէմ * և զհովիտս յարկաց չափեցից։



երկրպագելի անուանդ տր ած ամ ժողովրդների միջումն * և ամէն ազգերի միջումն զքեզ գովելով սաղմոս կասեմ։

Այսինքն, զէրէ քո ողորմութիւնդ առատացաւ և մեծացաւ և բոլոր աշխարհս լցեց, և երկինքումն երանելի հոգիքն պակեց * և քո ճշմարտութիւնդ և համատարիմ խոստմունքդ յերկրէս մինչև 'ի յամպս, և մինչև ուր որ մարդկային աչաց տեսութին կու հասանի, զանազան նշաններով յայտնի երևեցաւ։

Այսինքն, վասն որոյ կու գոհանամ զքէն տր ած որ բարձր ես քան զերկինս * և քո փառքդ և պատիւդ ամ երկրում կու ճանաչվի։

Այսինքն, արդ ինչպէս որ քո սիրելիքդ փրկեցան իւրեանց թշնամեաց ձեռքէն * այնպէս փրկէ և ազատէ զմեզ քո աջ բազկովդ, և մեր աղաչանացն և խնդրուածոցն ականջ արա։

Այսինքն, որ տեսանելով զքո օգնութիւնդ և զքո նախախնամութիւնդ, յորդորեմ զիս և ասեմ թէ ած յերկնից և իւր սբ աթոռէն խօսեցաւ, ինձ յաղթութիւն տուեց, և զիմ թշնամիքն յամօթ արաւ * ցնծամ ուրախանամ բարձրանամ և փառաւորիմ *

այս սիւքէմայ երկրիս որ ած ինձ
է պատրաստեր տիրապետեմ , և
իմ հալող ժառանգութե նման
բաժանեմ և իմ հրամանաց և իշ
խանութենն հնազանդեցնեմ * և
յարկաց հովիտն , իբր չատրների
ձորն իմ ըստացած մուլքիս նման
չափեմ, և այլ երկրներն չոկեմ։

Այսինքն , ասեմ թէ գաղաա
թու և մանասէի երկիրն իմ է *
այլև եփրայիմայ երկիրն որ իմ
գլխոյս պահապանն է և ինձ զօրու
թի և կարօղութի տվօղ է իւր
քաջ և արի տղամարդերովն ։

Այսինքն , յուդայի երկիրն իմ
ամէն երկրներիս և գաւառներիս
թագաւորն է * և մովաբայ եր
կիրն իմ յուսոյ աւազանն է , իբր
իմ լուացվելոյ հաւզին նման
իմ ձեռքիս է , զէրէ յոյս ունիմ,
որ երբոր ուզեմ կարենամ առ
նուլ , և իմ հրամանացն հնազան
դեցնել ։

Այսինքն , այժմ միայն եդոմայե
ցւոց երկիրն ինձ դժուարութի
կուտայ , բայց յոյս ունիմ որ քո
օգնութեդ շուտով իմ ճանա
պարհս , և իմ գնացքս դէպ յայն
ուղղեմ , և զնա ևս յաղթահարեմ
և իմ ձեռաց տակն առնում *
զէրէ ինձ քան զնոսա այլ ուժեղ
այլազգիք հնազանդեր են ։

Այսինքն , բայց ով կուտանի

Իմ է գաղաաթ և
իմ է մանասէ * եփ
րեմ հզօրիչ գլխոյ
իմոյ ։

Յուդայ թագաւոր
իմ * և մովաբ աւա
զան յուսոյ իմոյ ։

Յեդովմ ուղղեցից
զգնացս իմ * և ինձ
այլազգիք հնազանդք
եղեն ։

Ո՛ տարցէ զիս ՚ի քա

ղաք ամուր * կամ ո՛ առաջնորդեսցէ ինձ մինչև յեդովմ։

Եթէ ո՛չ դու ած որ մերժեցեր զմեզ * և ո՛չ ելեր ած ընդ զօրս մեր։

Տուր մեզ զօգնութի ՚ի նեղութեան * զի սուտ է՛ փրկութի մարդոյ։

Աստուծով արասցուք զզօրութի * և նա յամօթ արասցէ զթշնամիս մեր։

Տունք. 14.

՚Ի կատարած սաղմոս դաւթի

Սաղմոս. ՃԸ.



Ած օրհնութե իմոյ մի՛ լռեր * զի բերան մեղաւորի բերան նենգաւորի բացաւ

այն անառիկ բերդն , և ամուր պարսպով քաղաքն * կամ ո՛վ ինձ յառաջ կու անկանի , և մինչև յեդոմ կու հասուցանէ։
Այսինքն , եթէ ո՛չ դու տր ած որ երբեմն զմեզ յերեսաց ձգեցիր * և մեր զօրացն հետ ընդ էմ մեր թշնամեացն պատերազմ չի ելլիր։
Այսինքն , ուստի կաղաչեմ զքեզ այս մեր առաջիկայ պատերազմուս մեզ օգնութի և կարողութիւն տուր * զէրէ ես քեզ եմ յուսացեր , և գիտեմ որ սուտ է՛ այն օգնութին և փրկութին որ մարդի ձեռքով կու լինի։
Այսինքն , ինչպէս հանապազ կասեմ ես իմ զօրագլխացն հետ, թէ մեք աստուծով կանենք մեր զօրութին և յաղթութին * և նա է՛ որ կու ամաչեցուցանէ զմեր թշնամիքն։

Իբր , իկատարիլ օրինաց և մարգարէից այս սաղմոսիս մարգարէութին պիտի կատարվի։
Այս սաղմոսումս կու խօսի մարգարէն ՚ի բերանոյ քի ընդ էմ հրէից , և յուդայի։

Այսինքն , ո՛վ ած օրհնութե իմոյ , իբր ո՛վ հայր ամենակալ որ զիմ անմեղութին տեսանելով զիս կու օրհնես կու գովես և կու

փա

փառաւորես , մի՛ լռեր , և մի՛
մոռնձ կենար * զերբ մեղաւոր
և նենգաւոր հրէից բերանն բաց
վեցաւ ինձ վերայ ։

Այսինքն , ինձ վերայ զուր ասա
ցին նենգաւոր լեզուով * և թշ
նամութե և ատելութե խօսքե
րով զիս պատեցին պաշարեցին և
վիրաւորեցին ։

Այսինքն , պատերազմեցան և
հակառակեցան ինձ հետ անիրաւ
ւեղ * և փոխանակ սիրելոյ զիս ,
կու մատնէին դատաւորաց * իսկ
ես նց համար աղօթք կանէի ։

Այսինքն , փոխանակ բարերա
րութեն որ ես նոցա արարի զհի
ւանդս բժշկելով , զբորոտս սրբե
լով և զկոյրս լուսաւորելով , ինձ
չար հատուցին * և փոխանակ
սիրոյն իմոյ որ ունէի ես առ նո
սա , ինձ ատելութի նշանց տվին ։

Այսինքն , ուստի իմ՝ մատնչին
վերայ մեղաւորն բռնանայ , իբր
բէհեղզեբուղ իշխանին դիւաց
իւր վերայ տիրապետէ * և սա
տանայ միշտ նորա աջ կողմն կանգ
նած լինի , որ զինքն մատնէ 'ի
կորուստն յաւիտենական ։

Այսինքն , իւր խղճմտանաց դա
տաստանովն դատապարտած դուրս
գայ * և նորա աղօթքն և աղա
չանքն իւրն մեղք և անօրէնու
թի համարվի ։

'ի վերայ իմ ։

Խօսեցան զինէն լե
զուաւ նենգաւո
րաւ * և բանիւ ատե
լութե պաշարեցին
զիս ։

Մարտեան ընդ իս 'ի
տարապարտուց * փո
խանակ սիրոյ իմոյ
մատնէին զիս * այլ
ես յաղօթս կայի ։

Հատուցին ինձ չար
փոխանակ ընդ բար
ւոյ * ատելութիւն
փոխանակ սիրոյ իմոյ ։

Կացցէ 'ի վերայ նր
մեղաւոր * սատանայ
կացցէ ընդ աջմէ նր ։

'Ի դատաստանէ իւր
մէ ելցէ դատապարտ
եալ * և աղօթք նր
իմեղս դարձին ։

Եղիցին աւուրք նր նուազք * և զայցելութի նորա զայն այլ առցէ։

Այսինքն, իւր օրերն նուազի և կարճանայ, և յուսահատութէն զինքն խեղդէ * և նորա այցելութին այլոք տանի, իբր նր առաքելութն և եպիսկոպոսութեան իշխանութին Մատաթիա առնու։

Եղիցին որդիք նորա որբք, և կին նր այրի * սահեսցին փոփոխեսցին որդիք նորա, մուրօղք եղիցին * և ելցեն 'ի բնակութէ իւրեանց։

Այսինքն, նորա զաւակքն որբ մնան, և կինն այրի մնայ * նորա որդիքն սահին, իբր անհաստատ լինին և տեղէ իտեղ փոփոխվին, և մուրալով շրջին * և իւրեանց տնէն և տեղէն զրկվին և թշուառական լինին։

Քննեսցէ փոխատու զա՞մ ինչս նորա * և յափշտակեսցեն օտարք զվաստակս նր

Այսինքն, քննէ և համարք ուզէ փոխատուն նորա անիրաւութբ գտած ընչիցն և ապրանացն * և օտարք յափշտակեն նր գատմունքն և վաստակն։

Մի գտցի օգնական նմա * և մի՛ ոք ողորմեսցի ի վերայ որբոց նորա։

Այսինքն, ոչոք չի՛ գտնվի որ նր աղօթիւք կամ բարեխօսութբ օգնական լինի * և ոչոք նր որբ զաւակներին վերայ խղճայ և ողորմի։

Եղիցին որդիք նր 'ի սատակումն * և յազգէ ջնջեսցի անուն նր։

Այսինքն, նորա որդիքն սատակին և փչանան աշխարհիս վերայ * և նորա անունն իւր ազգի միջէն ջնջվի և բարձվի։

Յիշեսցին մեղք հարց նր առաջի տն * և մեղք մօր նր մի՛ ջնջեսցին, և եղիցին առաջի տն յա՛մ ժամ։

Այսինքն, նորա հարց և ծնողաց մեղքն և անօրէնութիւնն յիշվի առաջի այ * և նորա մօր մեղքն ամենևին չի՛ ջնջվի, այլ միշտ առաջի տեառն պատրաստ

լինի 'ի պատիժ ինքեան։
Այսինքն, փչանայ երկրիս երե
սէն նորա յիշատակն * զերե չի
յիշեց թէ ողորմիլ և խղճալ պի
տէր այնմիկ որ իւրն ողորմէր էր
և խղճացեր էր, իբր յի ք̃ի որ
դ̂ոյն ա̃յ, որ վ̃ս փրկելոյ զնա կո
չեր էր զինքն, 'ի յառաքելութի։
Այսինքն, հալածեաց իւր չարա
խօսութբն զայր մի աղքատաց
եալ վասն փրկութե ազգի մարդ
կան * և ջանայ իւր մատնութբն
ըսպանանել զայն որ հեզ և խո
նարհ էր սրտիւ, ըստ այնմ որ
ասէ ք̃ս առէք զլուծ իմ 'ի ձեզ
և ուսարուք յինէն, զի հեզ եմ
և խոնարհ սրտիւ։
Այսինքն, սիրեաց զանէծքն,
իւր մատնութբն, թող իւրն լի
նի * չի կամեցաւ զիմ օրհնու
թիս իւր թերահաւատութբն,
թող հեռի լինի 'ի նորանէ։
Այսինքն, հագաւ զանէծքն
զգեստի նման * թող ջրի նման
իւր փորն իջանէ, և ձիթի նման
իւր ոսկերանց մէջն մտանէ, իբր
զիւր հոգին և մարմինն պատժէ
և պատուհասէ։
Այսինքն, անէծքն իւրն մէկ
զգեստի նման լինի որ կուհագնի
* և մէկ գօտու նման լինի որ հա
նապազ մէջք կուկապվի։
Այսինքն, այս գործս ինչ սա

արաւ

Սատակեսցի յերկրէ
յիշատակ նր * փոխա
նակ զի ոչ յիշեաց առ
նել զողորմութի։

Հալածեաց զայր աղ
քատ և զտնանկ * սպա
նանել զայն որ խո
նարհն է սրտիւ։

Սիրեաց զանէծս և
եկեսցէ նմա * ոչ կամե
ցաւ զօրհնութիւն,
հեռի եղիցի ինմանէ

Զգեցաւ զանէծս
որպս հանդերձ * մտցէ
որպս ջուր 'ի փոր նր,
և որպս ձէթ ընդ ոս
կերս նորա։

Եղիցի նմա որպս հան
դերձ զի ագանի * և
որպս գօտի որ ած ի հա
նապազ ընդ մէջ։
Այս գործ է այնո

ցիկ որք չարախօս կային զինէն առ Տէր * և որք խօսէին չար զանձնէ իմէ:

Այլ դու Տէր արա՛ ընդ իս ըստ անուան քում զի քաղցր է ողորմութի քո * և փրկեա՛ զիս, զի աղքատ և տնանկ եմ ես:

Սիրտ իմ խռովեցաւ ՚ի փորի իմում * և ես որպէս ստուեր ՚ի խոնարհելն իմում պակասեցայ * և թօթափեցայ որպէս մարախ:

Ծունկք իմ տկարացան ՚ի պահոց * և մարմին իմ այլագունեցաւ ՚ի յիւղոյ:

Եղէ ես նախատ նոցա * տեսին զիս և շար



արաւ, նոցա գործոցն նման է որ զիս կու չարախօսէին և կու մատաբանէին առաջի Տեառն ասելով, ոչ գոյ փրկութի սորա առ Աստուած իւր, Աստուած եթող զնա, հալածեսցուք և հասցուք նմա * նոցա կամեմ, որ միշտ ինձանից վատ խօսելով զիս կու բամբասէին:

Այսինքն, բայց դու Տէր երկնի և երկրի, և Տէր իմ ըստ մարդկութեանս, ողորմիր ինձ վասն անուանդ քոյ սրբոյ, զերե քաղցր է քո ողորմութիդ * և փրկէ զիս նոցա ճնարագիտութէն, զերե իբրև զմարդ աղքատ և տնանկ եմ ես, իբր զոչինչ չունիմ բաց իքէն ինձ օգնական:

Այսինքն, իմ սիրտս իմ փորիս մէջն խռովեցաւ, և տագնապեցաւ տեսանելով զնենգաւոր դիտաւորութիս հրէից * և ես շուաքի նման թեք տալով նուաղեցայ և պակասեցայ նոցա աչաց առաջևէն * և վնասագործ մարախի նման ՚ի նոցանէ հալածեցայ, բախեցայ և թօթափեցայ:

Այսինքն, իմ ծնկներս անուժացան և տկարացան շատ ծոմ և պաս կենալովս * և իմ մարմնոյս գոյնն փոխվեցաւ ՚ի պակասութէ գիրութե:

Այսինքն, և նոցա առաջևն տնազատեղ և նախատինք դարձայ *

զէրէ տեսին զիս, և իւրեանց գլուխն ինձ վերայ շարժեցին ատելութ̃բ:

Այսինքն, յօգնութիւն հասիր ուրեմն ինձ տ̃ր ա̃ծ իմ* և փրկէ զիս նոցա ձեռացն քո հայրական գթութ̃բդ և ողորմութ̃բդ:

Այսինքն, որ իմանան թէ քո ձեռքդ է՛ այս, իբր. քո ամենակարող զօրութ̃իդ է՛ որ զիս խոնարհեցոյց վասն ազգի մարդկան* և քո ա̃ծային հաճութ̃իդ է՛ որ զիս մահու և խաչի հնազանդեցոյց:

Այսինքն, նոքա զիս այժմ կու անիծանեն, բայց դու քոյ հայրական օրհնութ̃բդ կու օրհնես զիս յաւիտեանս յաւիտենից* նոքա որ ինձ վերայ են դարձեր կու ամաչեն յետոյ և կու փոշիմանին, բայց ծառայ քո ըստ մարմնոյ միշտ կու ուրախանայ ՚ի քեզ:

Այսինքն, հագանին զամօթն զգեստի նման այնոքիկ որք ինձանից վատ կասէին առաջի մարդկան* և իւրեանց ամօթն վերարկուի նման իւրեանցնով շուռ առնուն և հագանին:

Այսինքն, բայց ես միշտ խոստովանիմ ուղիղ սրտիւ զքո անչափ բարերարութ̃իդ* և ՚ի մէջ բազմութ̃ն հաւատացելոց իմոց օրհնեմ և գովեմ զքեզ ՚ի յաւիտեան:

Այս



ժեցին զգլուխս իւրեանց:

Օգնեա ինձ տ̃ր ա̃ծ իմ* և փրկեա զիս ըստ ողորմութ̃ն քում:

Ծանիցեն զի ձեռն քո այս է՛* և դու տ̃ր արարեր զայս:

Նոքա անիծանեն, և դու օրհնեսցես* որք յարուցեալ են ՚ի վ̃ր իմ զամօթ կրեսցեն, այլ ծառայ քո ուրախ եղիցի ՚ի քեզ:

Զգեցցին զամօթ որք չարախօս կային զանձնէ իմէ* և արկցեն ո̃պ զկրկնոց զամօթ իւրեանց զիւրեամբք:

Այլ ես խոստովան եղէց առ տ̃ր յոյժ բերանով իմով* և ՚ի մէջ բազմաց օրհնեցից զքեզ:

Զի եկաց նա ընդ աջմէ տնանկին * ՚ի փրկել զիս յայնցանէ ոյք հալածէին զանձն իմ։

Տունք. 28.

Սաղմոս Դաւթի։

Սաղմոս. ՃԹ։



Ասաց Տր ցՏէր իմ նիստ ընդ աջմէ իմէ * մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց։



Այսինքն, զէրէ կամաւորապէս աղքատացեալ և տնանկացեալ որդւոյն իւրոյ միածնի աջ կողմն միշտ պատրաստ գտանեցաւ * որ փրկէր և ազատէր զիս ՚ի նենգաւոր հրէից, որ անողորմաբար զիմ անձս կու հալածէին և կամէին զիս կորուսանել։

Իբր, զայս սաղմոս շարադրեաց Դաւիթ մարգարէն խօսելով ի բերանոյ Ճշմարիտ Դաւթին Յի Քի։ Այս սաղմոսովս կու խօսի մարգարէն վասն փառացն Քի, վասն յարութեանն, վասն նստելոյն ընդ աջմէ հօր, վասն յաւիտենական քահանայութեն և վասն դատելոյն զաշխարհս։

Այսինքն, ասաց Տր Ած հայրն ամենակալ որդւոյ իւրոյ միածնի Յի Քի, որ իմ Տրն է ըստ Ածութեն իւրոյ, և իմ որդին է ըստ մարդկութեան իւրոյ, յետ մահուան և յարութեն նորա, թէ համբարձիր ՚ի յերկինս, և նստիր իմ աջ կողմս քո Ածային փառօքդ * մինչև որ զքո թշնամիքդ թէ զհրէայս և թէ զհեթանոսս կատարելապէս ՚ի վախճանի աշխարհիս դնեմ քոյ ոտաց տակն իբրև զպատուանդան, իբր քոյ սուրբ հաւատոյդ հնազանդեցնեմ։

Այս

Ա.յսինքն, ինչպէս քոյ ազգատոհմութեան կարգն և գաւազանն ողարկեց քո հայրն ա՟ծ ՚ի հրէաստանէ, այսպէս զքոյ թագաւորական իշխանութն գաւազանն կուողարկէ ՚ի սիոնէ, իբր ՚ի յերուսաղէմէ, զէրէ տեղէն կաւ ըսկսանին ո՟ք առաքեալքն հոգ՟ոյն սր՟ քոյ գործակցուբն քարոզել զքո երկնային թագաւորութիդ, և յայտնել զքո անչափ կարողուիդ բոլոր աշխարհի * և այսպէս միջնորդութբ աւետարանական քարոզութն նոցին կուտիրես և կուտիրապետես ՚ի մէջ ա՟մ թշնամեաց քոց, իբր ՚ի մէջ անհաւատից հրէից և հեթանոսաց։

Ա.յսինքն, քեզ հետ է ըսկիզբն, իբր քեզ հետ է քո ա՟ծային մեծվայելչութիդ որ է ըսկիզբն ա՟մ ըստեղծուածոց, որով և համագոյակից և արարչակից ես ընդ հօր և ընդ հոգ՟ոյն սրբոյ, քանզի քեզնով եղև ա՟մ ինչ որ ինչ եղեն ըստ յոհաննու։

Գ.արձեալ, քեզ հետ է ըսկիզբն, իբր ՚ի քէն անբաժանելի է հայրն ա՟ծ, որ է ըսկիզբն յաւիտենական ծննդեան քոյ * քոյ զօրութն օրն, իբր յաւուր դատաստանին երբոր զօրութբ իշխանութբ և փառօք հօր գաս ՚ի դատել զկենդանիս և զմեռեալս, հատուցանելով իւրա



Գ.աւազան զօրութն առաքեսցէ քեզ տ՟ր ՚ի սիոնէ * և տիրեսցես դու ՚ի մէջ թշնամեաց քոց։

Ը.նդ քեզ է սկիզբն * յաւուրն զօրութն քոյ * ՚ի վայելչութի սրբոց քոց * յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ։

Երդուաւ տ՟ր և ո՛չ
եւս զղջասցի թէ դու
ես քահանայ յաւիտ
եան ըստ կարգին Մել
քիսեթեկի * և տ՟ր
ընդաջմէ քումէ ։



քանզ իւրոց ըստ գործոց նոցա *
՚ի վայելչութի սրբոց քոց , իբր
՚ի խնդութի և ՚ի պայծառութի
ընտրելոց քոց , զի տեսանելով
զքեզ հայրական փառօք պայծա
ռանան անըստուէր լուսով , և
փայլեն ոգ՟ զարեգակն յարքայու
թե քում * քեզ ասաց հայրն
ած՟ թէ ես իմ յարգանդէս յա
ռաջ քան զարուսեակն զքեզ
ծնայ , իբր ես ՚ի յարգանդէ բնա
կան առատութեան իմոյ յառաջ
քան զա՟մ հրեշտակս և հրեշտակա
պետս , յառաջ քան զարեգակն
և զլուսինն , և յառաջ քան զա՟մ
ըստեղծուածս ած՟ային ծննդ
եամբ իմով ծնայ զքեզ , զի դու
ես ճառագայթ փառաց և նկարա
գիր էութե իմոյ ըստ պօղոսի ։
Այսինքն , երդուաւ հայրն ած՟
իւր անփոփոխելի խոստմամբն և
ասաց քեզ , թէ դու ես քահա
նայ յաւիտենական ըստ կարգին
մելքիսեթեկի , իբր թագաւոր
և քահանայ ՚ի միասին թագաւոր
արդարութե , և իշխան խաղա
ղութե , անմայր ՚ի յաւիտենա
կան ծնելութեդ , և անհայր ՚ի
մարմնանալոյ տնօրէնութեանդ ,
առանց նախնեաց և առանց փո
խանորդից , մեծ քան զահարոն
և զղեւի , տասանորդօղ նոցին ՚ի
յանձն աբրահամու , և հաստա

տօղ սրբութեան պատարագին
հացի և գինւոյ * և նոյն ո՛րն և
հայրն ամենակալ միշտ է ընդ աջմէ
քումէ, ո՛չ և դու ես միշտ ընդ
աջմէ նո՛ր, որով յայտնապէս ցու
ցանի քո համագոյակցութիւ հա
մահանգիստութիւ համազօրու
թիւ համիշխանութիւ և համա
յաւիտենականութիւ ընդ հօր
և ընդ հոգւոյն սրբոյ միշտ և յա
ւիտեան:

Տ. յսինքն, որ և յաւուր բար
կութեան իւրոյ, իբր յաւուր
վրէժխնդրութե դատաստանին
կու յաղթահարէ կու խորտակէ
և յամօթ կանէ քեղնով և՚ի ձեռն
քո զթագաւորս զբռնաւորս, զսա
տանայ և զմարդիք * կու դատէ
և կու դատապարտէ զհեթանոսս
և զկռապաշտս * և կու բազմա
ցուցանէ և կու սաստկացուցանէ
զպատիժս և զհարուածս՚ իւրեայ
անօրինաց և անհաւատից * կու
խորտակէ և կու ջնջխէ զգլուխս
բազմաց ամբարտաւանից և հպար
տաց, կամապաշտից և կամակո
րաց զխոնարհս բարձրացուցանե
լով և զմեծատունս արձակելով
ունայնս, և զայս ՚ի յերկրին կեն
դանեաց առաջի ա՛մ հրեշտակաց
և հրեշտակապետաց, առաջի առա
քելոց և մարգարէից և առաջի ա՛մ
սրբոց:





Խորտակեսցէ յաւուր
բարկութե զթագա
ւորս * դատէ զհե
թանոսս * և բազում
առնէ զհարուածս
* և խորտակեսցէ զգ
լուխս բազմաց
յերկրի:

Զ ուղխս ՚ի ճանապար
հի արբուսցէ * վ̅ս
այսորիկ և բարձր ար
ասցէ զգլուխն:

Տուն. 6:

Ալէլուիայ:

Սաղմոս. ՃԺ.



Առուխինքն , և զի վարարած գե
տոյն ջուրն քեզ կու արբուցանէ
քո ճանապարհումդ , իբր աշխար
հիս ղանաղան փորձութեց և տա
ռապանաց դառնութիւն քո կե
նաց մէջն քեզ կու խմացնէ , քան
զի երեսուն և երեք տարի երկ
րիս վերայ իբրև զճանապարհորդ
կենցաղավարելով զմարդկային
տկարութի յանձն կառնուս , վշտից
և նեղութեց կու համբերես ,
և ՚ի վախճանի զբաժակ մահու
կու ճաշակես * վասն որոյ և կու
բարձրացուցանէ հայրն ա̅ծ զքո
գլուխդ յարուցանելով զքեզ ՚ի
մեռելոց , կու բարձրացուցանէ
և ս զքո գլուխդ յաւոր դատաս
տանին ՚ի վերայ ա̅մ ըստեղծուա
ծոց պսակելով զքեզ ա̅ծային փա
ռօք , և կացուցանելով զքեզ
թագաւոր երկնաւորաց և երկ
րաւորաց:

Իբր , զայս սաղմոս ասելով օր
հնեցէք զա̅ծ , զի ալէլուիայն օր
հնեցէք զա̅ծ կու թարգմանի:
Այս սաղմոսումս կու հրաւիրէ
մարգարէն զամենեսեան օրհնել
և գովել զա̅ծ վ̅ս զարմանագոր
ծութե նորա , վասն իմաստու
թեան բարութե և ամենակարօ
ղութե նորա:


Այսինքն, կու խոստովանիմ զքո անչափ կարողութիւդ, և զքո անչափ իմաստութիւդ տր՟ ած՟ բոլորովս որտիւ իմով ուղիղ մարդկանց խորհրդների և ժողովքների միջումն, իբր 'ի մէջ մբ՟ եկեղեցւոյ, զէրէ տեղն են խորհուրդք ուղղափառ վարդապետաց, և ժողովք ած՟ապաշտ քրիստոնէից * մեծ և զարմանալի են գործքն տյ՟, և իւր կամքն քննված է իւր ամէն գործոց և արարմանց միջումն, իբր սուրբ և բարեպաշտ մարդիք կարդալով զած՟աշունչ գիրս, ուր պատմին գործքն տյ՟ նոցանով տեղեկացեր են և վերահասու են եղեր նորա ած՟ային կամացն և բարեհաճութեանն։

Այսինքն, նր՟ արարած գործքն խոստովանութի և վայելչութի է, իբր ինչ մարդ որ նր՟ գործքն և արարմունքն կու մտածէ, շուտով կու ընկանի խոստովանիլ նր՟ անչափ բարութին և անչափ կարողութին, և կու օրհնէ և կու գովաբանէ նր՟ փառքն և մեծ վայելչութին * նորա արդար դատաստանն ամէնևին չի խափանիր, այլ կու մնայ յաւիտեանս յաւիտենից զէրէ ինչպէս որ խոստացերէ զիւր ընտրեալ ծառայքն կու պահէ,




Խոստովան եղէց քեզ տր՟ բոլորով սրտիւ իմով 'ի խորհուրդս ուղղոց, և 'ի ժողովս * մեծ են գործք տն՟, և քննեալ են յամի կամս նորա։

Խոստովանութի և վայելչութի են գործք նր՟ * արդարութին նր՟ մնայ յաւիտեանս յաւիտենից։



Յիշատակ արար սքանչելեաց իւրոց * ողորմած և գթած է տէր, կերակուր տայ երկիւղածաց իւրոց։

Յիշեաց յաւիտենից զուխտ իւր * զզօրութի գործոց իւրոց պատմեաց ժողովրդեան իւրում։



և զմեղաւորս կու պատժէ և կու պատուհասէ։

Այսինքն, իւր արարած սքանչելեացն և զարմանագործութեանցն յիշատակ թողեց զա՟ծաշունչ գիրս, որ կարդալով իմանան հաւատացեալք թէ որչափ ողորմած և գթած է տէր ա՟ծ * որ յետ ազատելոյ զիսրայէլացիքն ՚ի գերութենէն փարաւոնի, քառասուն տարի մանանայիւ կերակրեց զիւր ժողովուրդն յանապատումն, ո՟պ տէրն մեր յի՟ս ք՟ս յետ փրկելոյ զիւր հաւատացեալքն ՚ի բռնութենէն սատանայի, ետ իւր երկիւղածացն զկենարար մարմին և զարիւն իւր սուրբ ՚ի կերակուր այս անապատ աշխարհումս։

Այսինքն, յիշեց զիւր ուխտն և խոստմունքն որ յաւիտենից արարեր էր աբրահամու հետ ասելով, քեզ տաց զերկիրն քանանու, իբր զդաւառս կռապաշտ թագաւորաց որք էին ՚ի սահմանս եգիպտոսի * և իւր գործոց զօրութիւն, իբր իւր արդարութեան և իւր իրաւանց զօրութիւնն հաստատութիւն, և ճշմարտութիւն պատմեաց և հասկացոյց իւր ժողովրդեանն, ո՟պ ք՟ս իւր արդարութիւն, խաղաղութիւն, համբերութիւն, խոնար

հութե և սիրոյ զօրութին ծա
նոյց իւր հաւատացելոցն։

Այսինքն , որ նոյն արդարու
թե և իրաւանց զօրութեն տայր
խոստացելոց ժողովրդեանն ,
հեթանոսաց և կռապաշտից եր
կիրն ՚ի ժառանգութի , ով քս
միջնորդութբ վերոյգրեալ առա
քինութեցն տալոց է իւր հաւատա
ցելոցն զերկնային երուսաղէմ,
յորմէ զրկեցան և թափեցան հրեշ
տակքն հպարտացեալք * զէրէ
իւր ձեռաց գործքն և արար
մունքն արդարութիւն և իրաւ
ունք է , իւր ինչ որ արարեր է,
և կանէ ած իւր ըստեղծուա
ծոցն հետ , թէ պատժելով և
թէ պսակելով, թէ անարգելով և
թէ մեծարելով , բովանդակն
արդարութենով և իրաւունքով
կանէ ։

Այսինքն, այս օրէնքն և պատուի
րանքն հաւատարիմ և ճշմարիտ
են , և յաւիտեանս յաւիտենից
հաստատեալք են ՚ի նախահարց
մերոց յառաքելոց և մարգարէից
* և ճշմարտութբ և ուղղութբ
են արարած , զէրէ իւրանցնում
ոչ ինչ ստութի , ոչ ինչ անօրէ
նութի , և ոչ ինչ անկատարու
թի չէ գտվիր , քանզի լուծն նր
քաղցր է և բեռն փոքրոգի։

Այսինքն , փրկութի ողարկեց

տր



Տալ նոցա զժառան
գութի հեթանոսաց
* և գործք ձեռաց
նր արդարութի և
իրաւունք են։

Հաւատարիմք են
յամի պատուիրանք
նր, հաստատեալք են
յաւիտեանս յաւիտե
նից * արարեալք են
ճշմարտութբ և ուղ
ղութբ։

Փրկութի առաքեց

տ՟ր ժողովրդեան իւրում* պատուիրեաց յաւիտենից զուխտ իւր* ս՟բ և ահեղ է անուն նորա։

Սկիզբն զգօնութ՟ե երկիւղ տ՟ն* իմաստութ՟ի բարի ամենեցուն որք առնեն զնա* և օրհնութ՟ի նորա մնայ յաւիտեանս յաւիտենից։

Տունք: Ժ.

Ալէլուիայ, վերադարձութ՟ե անգեայ և զաքարեայ:



տ՟ր ա՟ծ իւր ժողովրդեանն, իբր ողարկեց զմովսէս և փրկեց զիսրայէլացիքն 'ի գերութէն փարաւոնի, որպէս ողարկեց զորդին իւր միածին և փրկեց զիւր հաւատացեալքն 'ի բռնութէն սատանայի* և պատուիրեց նոցա որ զիւր ուխտն և դաշինքն որ արարեր էր 'ի յաւիտենից աբրահամու հետ հաստատուն պահէին* զէրէ ս՟բ և ահեղ է ն՟ր անունն, և վասն սրբութեն պաշտել և պատուել պարտին զնա ա՟մ արարածք, և վասն ահեղութեանն երկնչիլ և զարհուրիլ պարտին 'ի նմանէ։

Այսինքն, ուստի սկիզբն զգօնութ՟ե ա՟յ երկիւղն է, իբր սկիզբն ա՟մ իմաստութ՟ե ա՟յ ահն և երկիւղն է* բայց այս իմաստութիս բարի է միայն այնպիսի մարդկանցն, որ յետ իմանալոյ թէ սկիզբն իմաստութ՟ե ա՟յ երկիւղն է գործով կատարեն զնոյնն* վասն որոյ և օրհնութ՟ին ա՟յ կուհանգչի նոցա վերայ յաւիտեանս յաւիտենից, իբր աստ և 'ի հանդերձելումն։

Իբր, այս սաղմոսիւս օրհնել պարտ է զա՟ծ վասն դարձմանն և ազատութ՟են անգեայ և զաքարեայ մարգարէից 'ի գերութենէ

'ի հայ

՚ի հայրենին իւրեանց։

Այս սաղմոսումս կու սուցանէ մարգարէն թէ որչափ երանութեն և բարւոյ կու տիրանան այնպիսի մարդիկն որ կու երկնչին տ̃յ, և կու ջանադրին նորա սուրբ պատուիրանացն։

Այսինքն, երանի այնպէս մարդոյն որ տ̃յ ահն և երկիւղն իւր սրտումն կու պահէ, և հարազատ որդւոյ նման հնազանդ նր̃ առաջևն պատկառանօք կու կենցաղավարի * զէրէ այնպիսի մարդն տ̃յ օրէնքն և պատուիրանքն ուղիղ սրտով կու ընդունի և զգուշութ̃բ կու կատարէ։

Այսինքն, այնպիսի երկիւղածմարդկանց հոգևոր և մարմնաւոր զաւակքն զօրեղ կու լինին ՚ի յերկրին կենդանեաց, իւր փառօք և պատուօք կու հաստատանան յարքայութեան երկնից * զէրէ ուղիղ և հաւատարիմ մարդկանց զարմն և զաւակն յ̃ոյ կու օրհնի, և արժանի կու լինի լսելոյ զերանաւէտ ձայնն որ ասէ, եկայք օրհնեալք հօր իմոյ։

Այսինքն, հոգևոր և մարմնաւոր փառքն և մեծութիւն նորա տանէն չի՛ պակասիր, թէ այս աշխարհումս և թէ ՚ի հանդերձելումն, ուր են ճշմարիտ բնակու-



Սաղմոս. ՃԺԱ։



Երանեալ է այր որ երկնչի ՚ի տ̃նէ * ըզ պատուիրանս նր̃ նա կամի յոյժ։

Հզօր եղիցի յերկրի զաւակ նորա * և ազգ ուղղոց օրհնեսցի։

Փառք և մեծութիւն են ՚ի տան նր̃ * արդարութ̃ի նորա մնայ յաւիտեանս յաւիտենից։

Ծագեաց 'ի խաւարի լոյս ուղղոց * ողորմած գթած և արդար է Տէր.

Քաղցր այր ողորմի և տայ փոխ * յօրինէ զբանս իւր 'ի դատաստանի, զի յաւիտեան նա մի՛ սասանեսցի.

Ի յիշատակ յաւիտենից եղիցի արդարն * 'ի համբաւէ չարէ նա

Թէ՛ք և օթևանք սրբոց * և նորա արդարութիւն և բարեգործութիւն յիշատակին կու մնայ յաւիտեանս յաւիտենից, որ միշտ գովելի 'ի մարդկանէ, և վարձատրի յԱստուծոյ.

Այսինքն, այսպիսի ուղիղ մարդկանց վերայ երբոր պատահմամբ կու անկանին 'ի տրտմութիւն խաւարն, կամ վասն յանաջողութիւն, կամ վասն հալածանաց, և կամ վասն այլ ուրիշ փորձութեանց շուտով կու ծագի լոյս օգնութիւն և նախախնամութիւնն Աստուծոյ * զի որ է ողորմած գթած և արդար է Տէր Աստուած, չի թողուր որ իւր հաւատարիմ ծառայքն մնան 'ի մէջ վշտաց և տառապանաց.

Այսինքն, այն մարդն որ քաղցրասիրտ է և գթած է, երբ որ կու տեսանէ զայլս 'ի մէջ կարեաց և չքաւորութեան, կու ողորմի և փոխ կու տայ նոցա յիւր բարեացն յոյս ունելով երկնային հատուցմանն * և իւր բանն և գործն այնպէս կու հոգայ և կու յօրինէ այս կեանքումս իւր խղճմտանաց դատաստանի մէջումն, որ յաւիտեանս յաւիտենից, իբր թէ աստ և թէ 'ի հանդերձելումն չի՛ սասանի.

Այսինքն, արդար մարդոյ յիշատակն յաւիտեանս յաւիտենից չի՛ կորնչիր թէ առաջի Աստուծոյ և թէ

առաջի մարդկան * և ամենևին
՚ի բամբասանաց ՚ի զուր բանից,
և ՚ի չարլեզուաց չի երկնչիր:

Այսինքն, զէրէ պատրաստ է միշտ իւր սիրտն որ ամէն նեղութե և վշտի միջումն յուսայ և ապաւինի առ ած, և յինմանէ զօգնութի խնդրէ:

Այսինքն, նորա սիրտն այնպէս հաստատվեր է յուսովն այ, որ ամենևին ՚ի ճնարագործութե մարդկան չի երկնչիր * մինչև որ տեսնու այ արդար դատաստանն և զվրէժխնդրութիւն իւր թշնամեաց և ատելեաց միջումն:

Այսինքն, զիւր բարիքն ինչպէս որ ընդուներ է յայ, այնպէս կուսփռէ և կուբաժանէ կատարելով զպատուիրանս նորա * վն որոյ իւր արդարութիւն կումնայ յաւիտեանս յաւիտենից * և իւր եղջիւրն, իբր բարի համբաւն կուբարձրանայ փառօք պատուօք և գովութբ:

Այսինքն, իսկ մեղաւոր և ամբարիշտ մարդիքն, տեսանելով զնորա բախտն և զաջողութիւնն կուբարկանան և կուսրտմտին * զիւրեանց ատամներն կուկրճտեն նորա վերայ, և սաստիկ նախանձուն կուհալին և կումաշվին * բայց ամենևին իւրեանց ցանկութեն չեն հասանիր:





մի՛ երկիցէ:

Պատրաստ է՛ սիրտ նր յուսալ առ ած:

Հաստատեալ է՛ սիրտ նր և նա մի՛ երկիցէ * մինչև տեսցէ ՚ի թշնամիս իւր:

Սփռեաց և ետ աղքատաց * արդարութի նր մնայ յաւիտեանս յաւիտենից * և եղջիւր նր բարձր եղիցի փառօք:

Մեղաւորն տեսցէ և բարկասցի * զատամունս իւր կրճտեսցէ և հալեսցի * և ցանկութի մեղաւորաց կորիցէ:

Տունք. 10.

Ալէլուիայ։

Սաղմոս. ՃԺԲ։



Օրհնեցէք մանկունք զՏ՟ր * եւ օրհնեցէք զանունն Տ՟ն։

Եղիցի անունն Տ՟ն օրհնեալ * յայսմ հետէ մինչեւ յաւիտեան։

Յարեւելից մինչեւ ՚ի մուտս արեւու օրհնեալ է անունն Տ՟ն։

Բարձր է ի վերայ ամ՟ ազգաց Տ՟ր * եւ յեր



Իբր, այս սաղմոսիւս օրհնել պարտ է զԱ՟ծ, զի ալէլուիայն օրհնեցէք զԱ՟ծ կու թարգմանի։

Այս սաղմոսումս կու հրամայէ մարգարէն ամէն հաւատարիմ և հարազատ ծառայից Ա՟յ օրհնել և գովել զՔ՟ս աստուած վասն ամենակարողութեն վ՟ս բարեգթութեն և վասն փրկագործութեան նորա։

Այսինքն, օրհնեցէք և գովեցէք զՏ՟ր յ՟ս Ք՟ս ով հաւատացեալ ժողովուրդք ամբիծ և մաքուր սրտիւ նորածին մանկանց նման * օրհնեցէք և բարեբանեցէք զանունն Տ՟ն յի՟ Ք՟ի ջերմացեալ սիրով և հաստատուն յուսով։

Այսինքն, օրհնեալ և բարեբանեալ լիցի անունն Տ՟ն յի՟ Ք՟ի * ՚ի ըսկզբանէ մարդեղութե և փրկագործ տնօրէնութե իւրոյ մինչև յաւիտեան։

Այսինքն, յարևելից մինչև ՚ի յարևմուտս օրհնեալ և փառաւորեալ է անունն Տ՟ն յի՟ Ք՟ի ամ՟ ազգաց և ամ՟ ազանց միջումն և յամ՟ տեղիս մատուցանեն նմա խունկ և պատարագ սուրբ, ըստ մաղաքեայ։

Այսինքն, բարձր է Տ՟րն մեր յ՟ս Ք՟ս ածայինն և թագաւորական

իշխանութեն ամ ազգացվերայ, ոչ միայն իվերայ հրէից, այլև իվերայ հեթանոսաց * և իւր փառքն և վայելչութին յերկինս է իւր սրբոց և ընտրելոց միջումն

Այսինքն, ով է ոպ տր ած մեր յս քս բարեգութ և ողորմած * որ 'ի բարձունս, իբր 'ի յերկինս կուբնակի, և զխոնարհս միայն կուտեսանէ թէ 'ի յերկինս և թէ 'ի յերկրի, որ զիւրեանք մեծացուցանէ բարձրացուցանէ և պսակէ երկնային փառօք։

Այսինքն, կու յարուցանէ 'ի յերկրէ զաղքատս հոգւով * և կուբարձրացուցանէ իւր խոնարհութեն զխեղճս և զտառապեալս 'ի յաղքացներէ, իբր 'իմեղաց և 'ի յապականութէ,

Այսինքն, կուբազմեցուցանէ զիւրեանք իշխանների նման իւր ժողովրդոց իշխանացն հետ, իբր ընդ հրեշտակաց ընդ հրեշտակապետաց և ընդ առաքելոց սրբոց։

Այսինքն, կուբնակեցուցանէ հեթանոսաց և կուպաշտից ժողովուրդն իւր սուրբ եկեղեցւոյ միջումն ուրախ մտօք, որ ամուլ էր յառաջ, զէրէ չէր ծնանիր զորդխուչուսայ մինչև 'ի ժամանակս քարոզութե սբ աւետարանին * և զինքն կու խնդացուցանէ ինչպէս մէկ մայր մի որ իւր

զաւա



կենս են փառք նր։

Ով է ոպ տր ած մեր * 'ի բարձունս բնակեալ, և զխոնարհս տեսանէ յերկինս և յերկրի։

Յարուցանէ զաղքատն յերկրէ * և բարձր առնէ զտառապեալս յաղբեաց։

Նստուցանէ զնոսա իշխանս ընդ իշխանս ժողովրդեան իւրոյ։

Բնակեցուցանէ զամուլն 'ի տան ուրախամիտ * ոպ մայր որ դւովք բերկրեալ։

Տունք : Ը ·



Ալէլուիայ:

Սաղմոս. ՃԺԳ:

Յելանելն իսրայէլի յեգիպտոսէ * տանն յակոբայ ՚ի ժողովրդենէ այլազգեաց։

Եղև հրէաստան սրբութի նր * և իս րայէլ իշխանութի նորա։

Ծով ետես և փախ եաւ * և յորդանան անդրէն դարձաւ։

զաւակացն վերայ խնդայ և զու արձանայ։

Իբր, այս սաղմոսիւս օրհնել պարտ է զած, զի աչէլուիայն օր հնեցէք զած թարգմանի։

Այս սաղմոսաւս կուցուցանէ մարգարէն զբարերարութին այ, թէ որպէս ազատեաց զիսրայէ լացիքն ՚ի յեգիպտոսէ, և թէ ոչ նա միայն է ճշմարիտ ած ըս տեղծօղ երկնի և երկրի։

Այսինքն, երբ որ իսրայէլա ցւոց ազգն ելաւ ՚ի յեգիպտոսէ * և յակոբայ զարմն և զաւակն ազատեցաւ ՚ի ձեռն մովսէսի ՚ի կռապաշտից և յայլազգեաց ժո ղովրդոց գերութէն։

Այսինքն, հրէաստան այ սրբու թէ տեղիք եղաւ, զէրէ զիւր ընտրեալ և սրբեալ ժողովուրդն անդ հաստատեց և բնակեցոյց * և իսրայէլ իշխանութի նորա, իբր զիսրայէլացւոց ազգն իւր իշ խանութենն հնազանդեցոյց, և յատուկ սիրով պահեց և նախախ նամեց։

Այսինքն, կարմիր ծովն տեսաւ իւր ըստեղծողի ահեղ հրամանն և փախաւ, ճանապարհ տալով իսրայէլացւոց ժողովրդեանն * և յորդանան ճանաչեց զտապա

նակ կատակարանաց նորա , և յետ
դարձաւ ։

Այսինքն , երբոր ռուկսաւ ջուրն
յետ քաշվիլ , ծովի միջի լեռ
ներն խոյերի նման , իբր որձ ոչ
խարների նման երևեցան և ցն
ծացին * և բլրներն մաքեաց գառ
ների նման , իբր էգ ոչխարների
գառների նման դուրս պռծան
և ուրախացան ։

Այսինքն , բայց ասէ ինձ ո՛վ
ահագին ծովդ , ինչ եղաւ քեզ ,
զո՛վ տեսար և փախար * կամ թէ
դու ո՛վ սարսափելի յորդանանդ
էր դարձար 'ի յետ ։

Այսինքն , լեառն սինայ և իւր
բոլորքի սարերն որձ ոչխարների
նման ցնծացին և ուրախացան *
և բլրներն էգ ոչխարների գա
ռանց նման բերկրեցան և զո՛ւար
ճացան , երբոր իջաւ ած ըսքան
չելի փառօք որ զօրէնս և զպա
տուիրանս տայր իսրայէլացւոցն ։

Այսինքն , առաջի երեսաց տն ,
իբր առաջի ահեղ հրամանաց տն
այ սասանեցաւ բովանդակ եր
կիր * առաջի երեսաց այն յակո
բայ , իբր այն իսրայէլացւոց ։

Այսինքն , ո՛վ էր այն որ զքարն
'ի հեղեղս ջրոց փոխարկեց * կամ
ո՛վ էր որ ապառաժէն աղբրներ
բխեցոյց յանապատումն ։

Այսինքն , մի՛ մեզ համար տր
ած



Լերինք ցնծացին
որպ խոյք * և բլուրք
որպ գառինք մաքեաց ։

Զի՛ է քեզ ծով ,
զի՛ տեսեր և փախեր
* կամ դու յորդա
նան զի՛ դարձար
անդրէն ։

Լերինք ցնծացին
որպ խոյք * և բլուրք
որպ գառինք մաքեաց ։

Յերեսաց տն սասա
նեցաւ երկիր * յերե
սաց այ յակոբայ ։

Որ դարձոյց զվէմն 'ի
վտակս ջուրց * և
զապառաժն յաղբե
րակունս ։

Մի՛ մեզ տր մի՛ մեզ

* այլ անո՛ւան քում տուր զփառս վասն ողորմութե և ճշմարտութե քոյ։

ած մի' մեզ համար աներ զայդ քան բարերարութիդ , զէրէ մեք ամենեւին անարժան ենք * այլ քոյ սուրբ և երկրպագելի անո՛ւանդ համար , զէրէ ողորմած ես , և քո խոստմունքդ միշտ ճշմարիտ է։

Մի երբեք ասասցեն 'ի հեթանոսս , թէ ուր է' ած նց։

Այսինքն , մի' զմեզ մեր մեղաց և յանցանացն համար յերեսաց ձգեր , որ չի' լինի թէ հեթանոսք և այլազգիք տնազ անեն զմեզ ասելով , թէ ուր է' իսրայէլացո՛ց ածն , էր չի' իւրեանց յօգնութի հասանիր։

Ած մեր յերկինս և յերկրի * զամ զորինչ կամեցաւ և արար։

Այսինքն , բայց թէ ասեն նա մեզ ոչինչ փոյթ չէ' , զէրէ մեք կու հաւատանք որ մեր ածն կու բնակի 'ի յերկինս և 'ի յերկիր , և կու իշխէ ամ իշխանութեց և պետութեց * և իւր ամենակարող զօրութեն ինչ որ կամեցաւ արար , թէ 'ի յերկինս և թէ 'ի յերկրի։

Կուռք հեթանոսաց ոսկի և արծաթ են * ձեռագործք են որդո՛ց մարդկան։

Այսինքն , գիտենք որ հեթանոսաց կուռքերն ոսկի և արծաթ են * և մարդկային ճարտարութե և ձեռաց շինո՛ւածք են։

Օ բերան ունին և ո՛չ խօսին * զաչս ունին և ո՛չ տեսանեն։

Այսինքն , բերան ունին , բայց չեն կարեր խօսիլ * աչքեր ունին բայց չեն կարեր տեսանել։

Օ ականջս ունին և ո՛չ լսեն * զռունչս ունին և ո՛չ հոտոտեն։

Այսինքն , ականջներ ունին , բայց չեն լսեր * քթի ծակեր ունին , բայց հոտ չեն առնուր։

Օ ձեռս ունին , և ո՛չ

Այսինքն , ձեռքեր ունին , բայց

չեն

չեն կարեր շօշափել, իբր չեն կարեր մին իքմին մի բռնել * ոտքեր ունին, բայց չեն կարեր քալել, և իւրեանց պօղազէն ձայն դուրս չէ՛ գար ։

Այսինքն, նց̃ նման դառնան այն մարդիկքն որ զնոսա շիներ են * և այն մարդիկքն որ ՚ի նոսա են յուսացեր և ապաւիներ ։

Այսինքն, տունն Իսրայէլի, իբր ազգն Իսրայէլացւոց իւր տր̃ ածն է յուսացեր * զէրէ միշտ իւրն օգնական ընդունող և պաշտպան է ։

Այսինքն, տունն Ահարոնի, իբր զարմն քահանայից իւր տր̃ ածն է յուսացեր * զէրէ միշտ իւրն օգնական ընկերակից և նախախնամօղ է ։

Այսինքն, երկիւղած և բարեպաշտ ժողովուրդքն իւրեանց տր̃ ածն են յուսացեր * զէրէ միշտ իւրեանց օգնական և փրկիչ է ։

Այսինքն, յիշեց զմեզ տր̃ ածն մեր վս̃ իւր անչափ ողորմութեն և իւր երկնային օրհնութեն օրհնեց զմեզ * օրհնեց տր̃ ած զազգն Իսրայէլացւոց, և օրհնեց տր̃ ած զզարմն քահանայից ։

Այսինքն, օրհնեց տր̃ ած իւր երկիւղած ծառայքն, թէ զփոքր կուռս և թէ զմեծամեծս առանց ակնառութե, իբր թէ զաղքատս և թէ զհարուստս առհասարակ ։





շօշափեն * ոտս ունին, և ո՛չ գնան, և ո՛չ գոյ բարբառ ՚ի կոկորդս նց̃ ։

Նմանն նց̃ եղիցին որք արարին զնս̃ * և ամենեքեան որք յուսացեալք են ՚ի նոսա ։

Տունն Իսրայէլի յուսացաւ ՚ի տր̃ * օգնական ընդունելի է նոցա ։

Տունն Ահարոնի յուսացաւ ՚ի տր̃ * օգնական ընկերելի է նց̃ ։

Երկիւղածք տն̃ յուսացան ՚ի տր̃ * օգնական և փրկիչ է նց̃ ։

Յիշեաց զմեզ տր̃ և օրհնեաց զմեզ * օրհնեաց տր̃ զտունն Իսրայէլի, և օրհնեաց տր̃ զտունն Ահարոնի ։

Օրհնեաց տր̃ զերկիւղածս իւր * զփոքրկունս և զմեծամեծս ։

Յաւելցէ 'ի ձեզ տր * 'ի ձեզ և յորդիս ձեր։

Օրհնեալ էք դուք 'ի տնէ, որ արար զերկինս և զերկիր։
Երկինք երկնից տն են * և զերկիրս ետ որդւոց մարդկան։

Ոչ թէ մեռեալք օրհնեսցեն զքեզ տր * և ո՛չ ամենեքեան որք իջանեն 'ի դժոխս։

Այլ կենդանիքս օրհնեսցուք զքեզ տր յայսմ հետէ մինչև յաւիտեան։





Այսինքն , կու խնդրեմ յայ որ զիւր օրհնութին և պահպանութին աւելացնէ ձեզ վերայ * ձեզ վերայ և ձեր հոգևոր և մարմնաւոր զարմին և զաւակին վր։
Այսինքն, օրհնեալ լինիք դուք 'ի տնէ այ որ արարեր է զերկինս և զերկիր։
Այսինքն , երկինք երկնից տն են, իւր հրեղէն երկինքն որ իվեր է քան զայս երկինս ըստեղծեր է ած իւր բնակութեն համար * և զերկիրս տուեր է որդւոց մարդկան , որ բնակին և վայելեն զնա 'ի փառս անուան իւրոյ , և օրհնաբանեն զինքն յաւիտեանս յաւիտենից։
Այսինքն , արդ տր ած մի՛ մատներ զմեզ 'ի ձեռս թշնամեաց մերոց , որ չի լինի թէ զմեզ ըսպանանեն և բնաջինջ անեն , զիրէ չէ՛ թէ մեռեալք կու օրհնեն զքեզ * և չէ՛ թէ այնոքիկ որք կու իջանեն 'ի դժոխս , իբր 'ի դերեզմանս կու փառաբանեն զքեզ։
Այսինքն , այլ մեք որ կենդանի ենք կու օրհնենք և կու գովենք զքեզ տր ած յայսմ հետէ մինչև յաւիտեան , յիշելով զքո անչափ կարողութիդ և զանչափ բարերարութիդ։

* յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո։

Խօսեսցի լեզու իմ զբանս քո * զի ամենայն պատուիրանք քո արդարութիւնք են։

Եղիցի ձեռն քո 'ի կեցուցանել զիս * զի զպատուիրանս քո ընտրեցի։

Յանկացայ փրկութեան քում Տէր * և օրէնք քո խօսք իմ էին։

Կեցցէ անձն իմ և օրհնեսցէ զքեզ * և իրաւունք քո օգնեսցեն ինձ։

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ * խնդրեա՛ զծառայ քո * զի զպատուիրանս քո ես ո՛չ մոռացայ։

Տունք: 176.



վութիւն կու բխեն * երբոր ուսուցանես ինձ հոգւովդ սրբով զքո իրաւունքդ և զքո արդարութիւնդ։

Այսինքն, իմ լեզուս անդադար կու պատմէ և կու քարոզէ զքո ամենայն բանքդ * զէրէ քո ամէն պատուիրանքդ արդարութիւնք և ճշմարտութիւնք են հաստատած։

Այսինքն, քո ամենայն ձեռքդ տարածէ և ինձ զկենդանութիւն պարգևէ * զէրէ ես զքո պատուիրանքդ ընտրեցի և պահեցի։

Այսինքն, ես միշտ ցանկացայ և փափաքեցայ քոյ փրկութեանդ Տէր Աստուած * և զքո ամենայն օրէնքդ հանապազ 'ի բերան ունէի։

Այսինքն, քանի իմ անձս կենդանի է՛ կու օրհնէ և կու փառաբանէ զքեզ * միայն թէ քո իրաւունքդ և քո արդարութիւնդ ինձ յօգնութիւն հասանի։

Այսինքն, թէ երբեմն մարդկային տկարութեամբ մեղանչեցի քոյ առաջևդ, և մոլորեցայ ոչխարի նման * բայց դու իբրև հովիւ բարի խնդրէ զքո ծառայդ * զէրէ ես զքո պատուիրանքդ ամենևին չի մոռացայ։

Ըմս օրհնութեան կու յորդորէ մարգարէն Եսայի զհաւատաց եալս գովել և փառաւորել զԱծ վասն փրկութեան որ արար ազգի մարդկան։


Ամենեքն, օրհնեցէք զՏր յայս քաղ սով հաւատաց եալ ժողովուրդք նոր շարադրած օրհնութեամբ, գովելով զծնունդն նր, քարոզելով զչար չարանս և զխաչելութիւն նորա, և փառաւորելով զհրաշալի յարու թիւն նր * զերէ նր աստուածային և թագաւորական իշխանութիւնն ՚յերկինս ՚ի հրեշտակաց և ՚ի հրեշ տակապետաց, ՚ի սերովբէից և ՚ի քերովբէից կու փառաւորի։
Ամենեքն, նր ցանկալի անունն որ է յայս * աշխարհիս մէկ ծայրէն մինչև ՚ի միւս ծայրն ՚ի մէջ զա նազան ազգաց քրիստոնէից պա տուած և փառաւորած է ըստ մա ղաքեայ։
Ամենեքն, նոքա որ կու իջա նեն ՚ի ծով նաւերով, եթէ ոչ առաքեալք որք կու իջանեն ՚ի ծով աշխարհիս իւրեանց մար մնոյ նաւերովն, նք կու փառաւո նեն զանունն քի իւրեանց աւե տարանական քարոզութեամբ, և





Օրհնութիւն Եսայեայ կոյծակ նամաքուր սուրբ մարգարէին: 42:


Օրհնեցէք զԱծ յորհ նութիւն նոր * զի իշխանու թի նր ՚ի բարձունս փառաւորի։

Եւ անուն նր փա ռաւորեալ է * ՚ի ծա գաց մինչև ՚ի ծագս երկրի։

Ոյք իջանեն ՚ի ծով նաւուք * կղզիք և ամ բնակիչք նոցա ընդ նոսա։



Ուրախ եղիցի անապատն և ամ բնակիչք իւր * ուրախ եղիցին բանակք և բակք կեդարու * և ուրախ եղիցին բնակիչք վիմին։

Ի գլխոց լերանց գոչեսցեն, տացեն ըղփառս այ * և զքաջութի նորա կղզիք պատմեսցեն։

զանազան ըսքանչելագործութեն * կղզիք և ամէն նոցա բնակիչքն իբր զանազան եկեղեցիք քրիստոնէից, որ կղզիներու նման այս աշխարհիս խռովութե ալեաց մի ջումն հաստատեալք են հաւատով, կու օրհնեն և կու փառաբանեն զանունն քո իւրեանց առաքինութբն և բարեգործութեամբն։

Այսինքն, կու ուրախանայ անապատն իւր ամէն բնակչօքն, իբր ազգն հեթանոսաց որ անապատ կասվի վասն ոչ ունելոյ զշնորհս այ, և վասն ոչ ունելոյ զպտուղ ածպաշտութե և բարեգործութե * կու ուրախանայ օրդուն և բակն կեդարու, իբր ազգք և ժողովուրդք արապստանայ, կամ խաւարեցելքն հոգւով, և սևացեալքն մեղօք * և կու ուրախանան և կու ցնծան հոգւով բնակիչքն վիմին, իբր նքա որ քաղաքակից են սրբոց, և ընտանիք են այ, և շինեալք են ի վերայ հիման առաքելոց և մարգարէից, որոյ անկեան գլուխն է ինքն ճշմարիտ վէմն յս քս ըստ պօղոսի։

Այսինքն, այսպիսի հաւատացեալքս քո սարերու գլխներէն կու աղաղակեն, իբր հասանելով ի ծայրս զանազան առաքինութեց հոգւով և ճշմարտութբ կու գո

չեն առ. քս ած , փառք և գոհու-
թի կումատուցանեն նմա * և նր
քաջութին որ կանէ ընդդէմ սա
տանայի յաղթահարելով զբռնու-
թի նորա , և ազատելով զազգս
մարդկան ի մեղաց և՚ի դատապար
տութէ դժոխոց կղզիներն կու-
պատմեն , իբր զանազան եկեղե
ցիք քրիստոնէից կուքարոզեն և
կուդովաբանեն։

Այսինքն , յս քս որն և ածն
երկնային զօրութեց երեւան դէպ
՚ի յերկիրս է՛ դարձուցեր և ըշտա
պելով կուգայ , որ կուխ և պա
տերազմ զարթուցանէ և բորբո
քէ ընդդէմ սատանայի և կամարա
րաց նորա * զճշմարիտ ածպաշ
տութե նախանձն յարուցանէ՚ի
սիրտս հաւատացելոց իւրոց *
և զիւր աւետարանական փողն
փչէ , և գոչէ իւր թշնամեացն
վր թէ ինքն ինքն , և թէ ՚ի ձեռն
առաքելոց բազում զօրութբ և
ըսքանչելագործութբ , և զիւր
եանք զարհուրեցուցանէ։

Այս կուխօսի մարգարէն վասն
ծննդեանն քի ՚ի մարիամայ կու-
սէն։

Այսինքն , ուրախանան և ցն
ծան երկնային զօրութիք ՚ի վե
րուստ մեծապայծառ աւետեօք

վասն



Տր ած զօրութեց
դիմեալ գայ զարթու-
ցանել զպատերազմ
* յարուցանել զնա
խանձ * փող հարկա
նել , և գոչել իվր
թշնամեաց իւրոց զօ
րութբ բազմաւ։

Նոյն Եսայեայ 45·

Ուրախ եղիցին եր
կինք ՚ի վերուստ * և
ամպք ցօղեսցեն զար



դարութիւն։

Ողխեսցէ երկիր զողորմութիւն և զարդարութիւն * առհասարակ բղխեսցէ։

Տունք. 8.

Աղօթք յուխանու մարգարէին: 2.

'Ի նեղութեան իմում ես առ Տր կարդացի * և լուաւ ինձ յանդնդոց դժոխոց աղաղակի իմում։

Լուր Տր ձայնի իմում * զի ընկեցեր

վասն փրկութեան ազգի մարդկան * և ամպերն արդարութի ցօղեն, երբ մարգարէք իւրեանց նախասացութեամբ զՔս որ է արդարութի և սրբութի մեր, 'ի միտս և 'ի սիրտս մեր տպաւորեն։

Այսինքն, բղխէ ամենօրհնեալ երկիրն մարիամ զՔս յարգանդէ իւրմէ կուսականէ, որ է ողորմութիւն և արդարութիւն մեր, ողորմութիւն մեր, զերէ նովաւ զողորմութիւն և զգթութիւն կու գտանենք առաջի հօրն երկնաւորի, և արդարութի մեր, զերէ նովաւ կու սրբվինք և կու արդարանանք 'ի մեղաց մերոց * բայց այս ողորմութիս և արդարութիս չէ թէ մէկ մարդոյ կամ երկու մարդոյ համար կու բղխէ, այլ վս ամենեցուն, թէ արդարոց և թէ մեղաւորաց։

Աղօթք Տն մերոյ յՍի Քի առ հայրն երկնաւոր։

Այսինքն, ես իմ նեղութեան և տառապանաց միջումն աղաղակեցի առ հայրն իմ երկնաւոր * և լուեց ինձ յանդնդոց դժոխոց, երբ 'ի խոր գերեզմանէն զիմ աղաչանքն և զիմ աղաղակն։

Այսինքն, լսէ հայր ինձ զիմ ձայնն և աղաղակն * զերէ դու

զիս ձգեցիր 'ի խորս ծովու, իբր
'ի մէջ վշտաց և տառապանաց աշ
խարհիս մ̃ս փրկութ̃ե ազգի մարդ
կան * և փորձութ̃ե և հալածանաց
պղտոր գետերն զիս պաշարեցին։
Այսինքն, քոյ ա̃մ ներողամտու
թ̃ե և զայրացման բորբոքմունքն
և քոյ բարկութեան ալիքն որ
պիտէիր թափել 'ի մ̃ս ազգի մարդ
կան, ինձ մ̃ս թափեցիր * և սաս
ցի իմ մնաց մէջն մի թէ ես իմ հօր
ա̃յ աչացն անկայ մի, քա՛ւ լիցի։
Այսինքն, կուլինի մի, որ միւսան
գամ ես իմ աչօքս նայիմ 'ի քո ս̃ր
տաճարդ, իբր 'ի քո ա̃ծային էու
թ̃իդ որ է տաճար և բնակութ̃ի
իմ * զերծ չարչարանաց և տառա
պանաց ջրերն մինչև իմ հոգիս
հասաւ * և անդունդք անհնա
րինք, իբր անտանելի և դառն
փորձութիւնք զիս պաշարեցին։
Այսինքն, իմ գլուխս մտաւ
լեռների ձորերն, իբր դժոխոց
դռներն 'ի ներս * իջայ ես երկրիս
խորունկ տեղերն, իբր 'ի դժոխս
* և տեսայ ն̃ր նիգերն և փակերն
իբր սատանայի հնարագործու̃իքն
և բռնութ̃իքն որ ունէր իմ̃ս հոգ
ւոց մարդկան * որ այնպէս ամուր
էին ինչպէս երկաթէ ախեր, իբր
երկաթէ փակեր որ մինչև յա՛ւիտ
եան մարդկային կարօղու̃թ չէին
կարեր կոտրել * բայց կաղաչեմ





զիս 'ի խորս ծովու *
և շրջանք գետոց պա
շարեցին զիս։

Ամենայն զբօսանք
քո և ալիք քո անցին
'ի վերայ իմ * և ասա
ցի թէ մերժեցայ ու
րեմն յերեսաց աչաց
քոց։

Արդ իցէ թէ յաւե
լից հայել 'ի տաճար ս̃ր
քո * զի հեղան զինև
ջուրք մինչև յանձն
իմ * և անդունդք
անհնարինք պաշարե
ցին զիս։

Եմուտ գլուխ իմ
ընդ փապարս լերանց
* իջի ես 'ի խորս երկ
րի * և տեսի զնիգս
ն̃ր * զի էին ո̃չ ախք
յաւիտենից * և ել
ցեն յապականութ̃է
կեանք իմ։

Առ քեզ տր ած իմ 'ի նուաղել անձին իմոյ կարդացի * և զքեզ տր յիշեցի * և մտցեն աղօթք իմ 'ի տաճար սբ քո:

Զի որք պահէին զունայնութիւն և զստութի * յողորմութենէ իւրեանց մերժեցան:

Այլ ես 'ի ձայն օրհնութե խոստովանե եղէց քեզ * մատուցից պատարագս տն * և կատարեցից զուխտ իմ 'ի փրկութի:

Տունք : Ը.



զքեզ որ հանես և ազատես զիմ կեանքս այս ապականութե միջէն, իբր 'ի դժոխոց յարուցանելով զիս 'ի մեռելոց:

Այսինքն, ես 'ի նուաղելն մարմնոյ իմոյ իմն խաչին դէպ քեզ աղաղակեցի * և զքո սբ անունդ յիշեցի ասելով, ած իմ ած իմ ընդ էր թողեր զիս * արդ խնդրեմ 'իքէն որ իմ աղօթքս մտանէ 'ի քո սուրբ տաճարդ, իբր յայտնի լինի քոյ ածային և հայրական բարեգթութեդ:

Այսինքն, զէրծ դպիրքն և փարիսեցիքն որ իւրեանց սրտի միջումն ունայնութի կուպահէին, իբր փառասիրութե աշխարհիաւոռեր էին, և զիս սուտ տեղ կուչարախօսէին * իւրեանց ողորմութենն զրկվեցան, իբր այն ողորմութենէն որ հաւատալով ինձ, կրէին ընդունել պիտէին:

Այսինքն, բայց ես երբոր յարիմ 'ի մեռելոց, և համբառնամ 'ի յերկինս, ձայնիւ օրհնութե կու խոստովանիմ զքո անչափ ողորմութիդ և զբարերարութիդ * կու մատուցանեմ քեզ զիմ մարմնանալոյ անօրէնութե պտուղն ընծայ և պատարագ հաշտութե * և կու կատարեմ զիմ ուխտս 'ի փրկութի ազգի մարդկան:

Եւ հասցեն աղօթք մեր 'ի տաճար սուրբ քո, խոնարհեսցի ունկն քո 'ի խնդրուածս մեր։
Մարդասէր տէր վասն սրբուհւոյ անարատ մօր քոյ և կուսի, և վասն խաչի քոյ պատուականի, ընկալ զաղաչանս մեր, և կեցո զմեզ։





Նա՛ ՚ի մէջ ննջողութե՛ ՚ի տէր յուսացայ և՛ ՚ի լեզուաց չարաց փրկիլ կամեցայ։
զի նետիւք հզօրն սաստիկ խոցեցայ յայսմանձն՛ որ վայրիս ուր պնդխտեցայ։





Իբր , օրհնութիք աստիճանաց
զանազան առաքինութեց և բա
րեգործութեց որովք սակաւ
սակաւ ելանէ մարդ 'ի յերկինս
'ի բնակութին յաւիտենական ,
և են թուով տասն և հինգ։
Առաջին աստիճան առաքինու
թեցն է 'ի մէջ ամ նեղութեց
սրտի մտօք աղաղակելն առ ած։
Այս սաղմոսում կու աղօթէ
մարդարէն առ ած որ զինքն պահ
պանէ 'ի չարալեզու մարդկանց։



յսինքն , ես իմ ամէն նե
ղութեան և վշտի մի
ջումն դէպ առ ած
աղաղակեցի* և նայլսեց ինձ , և
փրկեց զիմ անձս իմ թշնամեաց

նեն

Օրհնութիւնք աստիճանաց:

Սաղմոս. ՃԺԹ.



նեղութեան
իմում ես առ
տր կարդացի
* և լուաւ ինձ, տր
փրկեաց զանձն իմ

'ի շրթանց նենգաւորաց և 'ի լեզուէ չարէ։

Զի՞ տացի քեզ * կամ զինչ յաւելցի քեզ լեզու նենգաւոր։

Ոպ՟ նետք հզօրի զի մխեալք են կայծակամբք կաղնւոյ։

Վայ ինձ զի ընդ երկար եղև պանդխտութիւն իմ * բնակեցայ ես 'ի վրանս կեդարու։

Բազում անգամ բնակեցաւ անձն իմ ընդ այնոսիկ որք ատէին զողջոյն։

Ես էի խաղաղարար * յորժամ խօսէի մարտնչէին ընդ իս։





նենգաւոր շրթունքէն, և չար լեզուէն, որ զիս զուր տեղ պարտաւորելով և բամբասելով կուզէին 'ի բարի գործոյ հեռացուցանել։

Այսինքն, բայց ասէ ինձ ով նենգաւոր լեզու, ինչ կուտան քեզ մարդիկ քոյ չարալեզվութեան համար * կամ ինչ կաւելացուցանես, և կուշահիս դու քո զուր խօսքովդ և քոյ հայհոյանօքդ։

Այսինքն, քո լեզուդ զօրեղ և քաջ մարդկանց նետերին կունմանի, որ մխված են կաղնոյ փայտի կրակովն։

Այսինքն, վայ ինձ որ շատ ապրեցայ այս սուտ աշխարհիս վերայ օտարականի և պանդխտի նման * և բնակեցայ 'ի վրանս կեդարու, իբր 'ի չատիրս արաբացւոց, կամ մտօք խաւարեալ, և հոգւով սևացեալ մեղաւոր մարդկանց միջումն։

Այսինքն, շատ անգամ բնակեցայ ես այնպիսի մարդկանց հետ, որ իւրեանց չարասրտութենէն զիմ ողջոյնս կու ատէին, իբր զիմ բարևս չէին ուզեր առնուլ։

Այսինքն, ես իմ սրտիս միջումն նոցա հետ հաշտ էի, և միշտ կուզէի թէ խաղաղութիւն անէի * բայց երբոր կու ըսկսէի խօսիլ,

ինձ

ինձ հետ կուկռուէին և կու հակառակէին ։

Երկրորդ աստիճան առաքինութեանց է վերացուցանելն զմիտս առ ա̃ծ, և 'ի նմանէ միայն զօգնութիւն խնդրելն ։

Այս սաղմոսումս կու յորդորէ մարգարէն զմեզ, յուսալ և ապաւինիլ առ ա̃ծ ։

Այսինքն, ես զիմ աչքերս բարձրացուցի դէպ 'ի լեռներն, իբր դէպ 'ի յերուսաղէմ որ հիմնած էր սիոնի սարերին վերայ, և տեղն էր տապանակին կտակարանաց * և յոյս ունիմ որ այս իմ տառապանաց միջումն այն տեղէն ինձ օգնութիւն գայ ։

Այսինքն, իմ օգնութիւնս ոչ 'ի մարդկանէ, այլ յա̃յ կու գայ * այն աստուծոյն կասեմ որ զերկինս և զերկիր յոչնչէ ըստեղծեր և գոյացուցեր է ։

Այսինքն, մի՛ վախեր և մի՛ դողդողացներ զքո ոտքերդ, իբր մի՛ երկմտիր և մի՛ յուսահատիր 'ի բարեգործութենէդ * և մի՛ թողուր որ քո պահապանդ ննջէ, իբր մի՛ թողուր անհոգութե̃ որ քո խղճմտանքդ թուլանայ ։

Այսինքն, ինչպէս որ չի՛ ննջեր և չի՛ քնիր ա̃ծ, որ խորայելի պա

հա



Օրհնութիւնք աստիճանաց ։

Սաղմոս. ՃԻ ։

Համբարձի զաչս իմ 'ի լերինս * ուստի եկեսցէ ինձ օգնութիւն ։

Օգնութի̃ ինձ 'ի տ̃նէ եկեսցէ * որ արար զերկինս և զերկիր ։

Մի՛ տար 'ի սասանութի̃ զոտն քո * և մի՛ ննջեսցէ պահապան քո ։

Ա̃հ ոչ ննջէ և ոչ 'ի քուն երթայ պահա



պանն իսրայէլի։

Տէր պահեսցէ զքեզ * և Տէր ընկալցի աջոյ ձեռամբն իւրով։

Արեգակն 'ի տուէ քեզ մի՛ մեղիցէ * և մի լուսինն 'ի գիշերի։

Տէր պահեսցէ զքեզ յամ չարէ * պահեսցէ Տէր զանձն քո։

Տէր պահեսցէ զմուտ և զել քո յայսմ հե



հապանն է, իբր ինչպէս որ չի՛ մոռանար Աստուած իւր հաւատացեալ ժողովուրդն, և իւր սովորական նախախնամութենէն չի՛ թուլանար։

Այսինքն, զէրէ տեսանելով Աստուած զքո ըզգաստութիւդ կուպահպանէ զքեզ իւր երկնային շնորհօքն * Տէր Աստուած իւր աջ ձեռքովն, իբր իւր ամենակարող զօրութեան զքեզ վեր կուպատէ, և քեզ օգնական կուլինի քու ամէն տառապանաց միջումն։

Այսինքն, ցերեկն արեգակն քեզ չի՛ մեղանչէր, իբր քու աջողութեան և խնդութեան միջումն փառաւորութեան և գոռոզութեան ջերմութիւն քեզ չի՛ տիրեր * և գիշերն լուսինն քեզ վնաս չի՛ հասուցաներ, իբր քու անաջողութեան և տրտմութեան միջումն ցանկութեան ախտն զքեզ չի՛ յաղթահարեր։

Դարձեալ, աւետարանական ճշմարտութեան արեգակն զքեզ չի՛ դատեր * և մովսիսական օրինաց լուսինն զքեզ չի՛ դատապարտեր։

Այսինքն, զէրէ Տէր Աստուած կուպահէ զքեզ յամ չար հանդիպուածոց * և կուպահպանէ Տէր Աստուած զքո անձդ յամենայն փորձութենէ։

Այսինքն, Տէր Աստուած կուպահէ զքո մուտքդ և զքո ելքդ, իբր

ծնունդդ, և զքո մահդ, և զքո հոգեկան կենցաղավարութիքդ մինչև յաւիտեան։

Այս բորորդ աստիճան աւազինութեցն է ուրախանալն և զուարճանալն հոգւով 'ի տանն տ̃յ, 'ի պաշտաման նորա։

Այս սաղմոսումս կուխօսի մարգարէն վասն խնդութեան իւրոյ 'ի մտանելն 'ի յերուսաղէմ։

Այսինքն, կուրախանայի և կուզուարճանայի ես * երբոր կասէին ինձ իմ բարեկամքն թէ տ̃յ տունն կու երթանք, իբր 'ի յերուսաղէմ։

Այսինքն, սաստիկ ցնծութեա այնպէս կութվէր ինձ թէ ոտքերս քո դռներդ երհասեր ո՛վ ըը եէմ։

Պարզեալ կութվէր ինձ թէ քո երկնային դռներդ եմ հասեր ո՛վ երուսաղէմդ վերին։

Այսինքն, երուսաղէմն հրէաստանի շինած է մէկ պատուական քաղաքի նման գեղեցիկ շինուածովք * և իւր գեղերն և արտարակներն իւր բոլորքն են։

Պարզեալ վերինն երուսաղէմ աննման քաղաքի նման յօրինած և զարդարած է տ̃ծային փառօք * և իւր բնակութիքն և օթևանքն զինքն շրջապատեր են բոլորաշէնք,

տէ մինչև յաւիտեան։

Տունք. 8.

Օրհնութիւք աստիճանաց։

Սաղմոս. ՃԻԱ.



Ուրախ եղէ ես * ոյք ասէին ցիս 'ի տուն տ̃ն երթիցուք մեք։

Հաստատեալ կային ոտք մեր առ դրունս քո երուսաղէմ։

Ո՛ երուսաղէմ շինեալ որպ քաղաք * և բնակութիւն իւր շուրջ զնովաւ։

Անդ ելանեն ազգ. ազգ. տն * վկայութի իսրայելի * խոստովան. լինել անուան տն ։

Անդ արկեալ են աթոռք դատաստանի * աթոռս արկեալ են ՚ի տան դաւ-թի ։

ուր կու բնակին սբք և երանելիք ըստ իւրաքանչ իւր աստիճանի և ըստ արժանաւորութեան և կու ըղձմայլին երանական տեսութե փրկչին իւրեանց ։

Այսինքն, ՚ի յերուսաղէմ հրեշատակի կու գնան տարին երեք անգամ զանազան ազգք իսրայելացւոց * ըստ վկայութեան իսրայէլի, երբ ինչպէս որ պատուիրեր էր ած իսրայելացւոցն * որ խոստովանէին զանունն այ, և շնորհակալ լինէին վս բարերարութե նր ։

Պարձեալ ՚ի յերուսաղէմ վերին կու ելանեն զանազան ազգք հաւատացելոց, ինչպէս որ խոստացեր է ած իւր ընտրեալ ծառայիցն * որ խոստովանին, որհնեն գովեն և փառաբանեն անդադար ընդ երկնային զօրութեանց զանուն տն մերոյ յի քի ։

Այսինքն, ՚ի յերուսաղէմ հրեշատակի դատաստանի և իրաւանց աթոռներ կայ դրած առ ՚ի դատել զժողովուրդս իսրայելացւոց * և այս աթոռներս միշտ հաստատ կան դաւթի մարգարէի տան միջումն ։

Պարձեալ ՚ի յերուսաղէմ վերին երկոտասան առաքելոց աթոռքն պատրաստեալ կան, որ նստին և դատեն զերկոտասան ազգն իսրայելի * և այս աթոռներս հաս

տատած են ճշմարիտ գաւթի
տան միջուածս, իբր յի քի տան
միջուածն որ է արքայութիւն երկ
նից։

Այսինքն, հարցուցէք երուսա
ղեմայ բնակչացն թէ ողջոյն է ՚ի
յերուսաղեմ, իբր թէ ինչպէս
է խաղաղութիւն և յանդորրու
թիւն * և թէ ինչպէս է իւր շի
նութիւն և առատութիւն և իմացէք
դուք որ կուսիրէք զքեզ ած։

Պարձեալ հարցուցէք երկնայ
ին երուսաղեմայ բնակչացն,
իբր առաքելոց և մարգարէից
կարգալով զգրեանս նց, և իմա
ցէք թէ ինչպէս խաղաղութի և
խնդութի է ՚ի տեղն * և թէ ինչ
պէս լիութիւն և առատութի է
շնորհաց և երանական տեսու
թե, դուք որ հաւատացեալքդ
էք, և ուղիղ սրտիւ կուսիրէք
զքեզ ած։

Այսինքն, և ասացէք, քոյ քաղ
զինուորաց կարօղութեն խաղա
ղութիւնն և խնդութիւնն ան
պակաս լինի քեզանից ով երու
սաղէմ քաղաքդ * և շինութին
և առատութիւնն քոյ աշտարակ
ներէդ և քոյ ամրոցներէդ։

Պարձեալ ասացէք, քո նախախ
նամօղ հոգւոյդ սրբոյ հովանա
ւորութեն խաղաղութիւնն և
միաբանութիւնն անպակաս լինի





Հարցէք զողջունն
երուսաղէմի * և զշէ
նութեն որք սիրէք
զքր։

Եղիցի խաղաղութի
՚ի զօրութե քում *
և շինութիւն յաշ
տարակս յամուրս քո։

Վասն եղբարց և ընկերաց իմոց խօսեցայ զխաղաղութի * վս քոյ, և վասն տան տն այ մերոյ խնդրեցաք զբարութի 'ի քէն։

Տունք. Ց։

Օրհնութիւք աստիճանաց:

Սաղմոս. ՃԻԲ։



քեզանից ով մայր սբ եկեղեցի * առաքինական վարուց և բարեգործութեց առատութիւնն 'ի քո վարդապետացդ և առաջնորդացդ որք են աշտարակք և ամրոցք քո։

Այսինքն, զայս խաղաղութիս ես միշտ 'ի բերան ունիմ վասն իմ եղբարցն և բարեկամացն որք բնակեալ են 'ի քեզ ով երուսաղէմ քաղաքդ * և քեզ համար և այ տանն համար, իբր այ տաճարին համար քեզ միշտ զբարութիւն խնդրեցաք յայ։

Դարձեալ զայս խաղաղութիս ես միշտ 'ի բերան ունիմ վասն իմ եղբարցն և բարեկամացն, իբր վասն ամ հաւատացեալ քրիստոնէից որ բնակեր են քոյ միջումդ ով մայր եկեղեցի, և քեզ համար, որ տուն և տաճար ես այ խնդրեցաք զբարութիւն 'ի քրիստոսէ, իբր զշնորհս և զօգնութիւն։

Չորրորդ աստիճան առաքինութեանցն է հաւատալն թէ ամ շնորհք և բարութիւնք ձեռամբն այ կու պարգևին մարդկան։

Այս սաղմոսումս կու յուսայ մարգարէն առ այ գոլով 'ի մէջ վտանգի։

Այս

Այսինքն , դէպ քեզ բարձրացուցի տ̅ր ա̅ծ իմ մտաց աչքերն խնդրելով ի քէն զօգնութիւն և զողորմութի * ես 'ի մարդկանէ ակնկալութի չունիմ այլ 'ի քէն միայն , որ կու բազմիս և կու բնակիս 'ի յերկինս , իբր 'ի հրեշտակս և 'ի ս̅բս ։

Այսինքն , ինչպէս ծառայի աչքն իւր տիրոջ ձեռքն կունայի * և ինչպէս որ աղախնոյ աչքն իւր խաթունի ձեռքն կունայի որ նորանէ վարձք և պարգևք ընդունի ։

Այսինքն , այնպէս մեր մտաց աչքերն դէպ քեզ կունային հանապազ * մինչև որ քո ա̅ծային գթութե̅դ ողորմիս մեզ վերայ , և զմեզ մեր առաջին փորձութէն ազատես ։

Այսինքն , ողորմիր մեզ ուրեմն տ̅ր ա̅ծ ողորմիր մեզ * զէրէ անիրաւ և անօրէն մարդկանց արհամարհանօքն և բամբասանօքն լցվեցանք ։

Այսինքն , ևս առաւել մեր անձինքն հարուստ և մեծատուն մարդկանց նախատանօքն լցվեցան որ գիշեր և ցերեկ զմեզ կու այպանէին * և ամբարտաւան մարդկանց արհամարհանօքն , որ զմեզ ոչինչ կու համարէին ։

Դին





Առ քեզ տ̅ր համբարձի զաչս իմ * որ բնակեալդ ես 'ի յերկինս ։

Ա̅ա աչք ծառայի 'ի ձեռն տ̅ն իւրոյ * և որպէս աչք աղախնոյ 'ի ձեռն տիկնոջ իւրոյ ։

Այնպէս են աչք մեր առ քեզ տ̅ր ա̅ծ մեր * մինչև ողորմեսցիս իվերայ մեր ։

Ողորմեաց մեզ տ̅ր ողորմեաց մեզ * զի բազում լցաք արհամարհանօք ։

Եւս առաւել լցան անձինք մեր նախատանօք ոյք նախատէին զմեզ * և արհամարհանօք ամբարտաւանից ։

Տունք. 5.

Օրհնութիւն աստիճանաց:



Սաղմոս. ՃԻԳ.

Եթէ ոչ տր̃ էր առ մեզ ասասցէ Իսրայէլ * և եթէ ոչ տր̃ էր առ մեզ:

Ընդ յառնել մարդկան իվ̃ր մեր * կենդանոյն կամեցան կլանել զմեզ:

'Ի բարկանալ սրտմտութ̃ նց̃ 'ի վերայ մեր * ապա և ջուրք ուրեմն ընկղմեցին զմեզ:

Ընդ ուխս անցին անձինք մեր * անցին անձինք մեր ընդ ուխս



Հինգերորդ աստիճան առաքինութեցն է հաստատել թէ տր̃ ած̃ միշտ մերձ է մեզ և իւր նախախնամութ̃ն կու պահպանէ զմեզ: Այս սաղմոսումս գոլով ազատեալ մարգարէն 'ի փորձութենէ կու օրհնէ զա̃ծ:

Այսինքն, թող Իսրայելի ազգն իբր թող հաստատեալ ժողովուրդք միշեն զբարերարութ̃ին և զողորմութ̃ին այ̃ և միաբան ամենեքեան ասեն, թէ որ տր̃ ած̃ մեզ հետ չէ լինէր * և թէ որ տր̃ ած̃ մեզ յօգնութիւն չէր հասեր:

Այսինքն, երբոր անօրէն և ամբարիշտ մարդիք մեզ վերայ թափեցան * կու զէին զմեզ կենդանի կուլ տալ, իբր թէպէտ զմեր մարմինն կու ըսպանանէին, բայց մեր հոգւոյն վնաս չէին կարէր հասուցանել:

Այսինքն, երբոր նոցա բարկացան սրտմտութ̃ մեզ վերայ * ասացինք մեր սրտի միջումն, թէ ահա՛ տառապանաց և փորձութեց ջրերն զմեզ ընկղմեցին և խեղդեցին:

Այսինքն, մեր անձինքն մեծամեծ վշտաց և հալածանաց վարար գետերի միջումն անց կացան *

մեր

մեր անձինքն այնպէս մեծամեծ վշտաց և չարչարանաց վարար գետերի միջումն անց կացան, որ ամենևին դադար չունէին։

Այսինքն, բայց օրհնեալ է տէր որ զմեզ այնպիսի անողորմ թշնամեաց ատամներին որս և կերակուր չի տուեց, իբր զմեզ նոցա ձեռքն չի մատնեց։

Այսինքն, մեր անձինքն ճնճղուների նման պուծանէ որսորդների թակարքէն, իբր մեր թշնամեաց հնարագործութէն։

Այսինքն, նոցա թակարքներն կոտրատուեցան, իբր նոցա հնարագործութիւնքն շնորհօքն տեառն փուչ եղան * և մեք պուծանք և ազատուեցանք։

Այսինքն, զերէ մեր փրկութին և օգնութին այն տեառն անուանն է, որ զերկինս և զերկիր ստեղծեր է։

Մեցերորդ աստիճան առաքինութեանցն է հաստատուն յուսով ապաւինիլն յած վա փրկութե հոգւոյ իւրոյ։

Այս սաղմոսում կուուսուցանէ մարգարէն թէ որպէս հաստատութէ յուսալ պարտ է առ ած։

Այսինքն, ինչ մարդ որ ուղիղ սրտով յած կուապաւինի, ամե





անդադարս։

Օրհնեալ է տէր որ ոչ ետ զմեզ յորս ատամանց նոցա։

Անձինք մեր ապրեցան որպէս ճնճղուկք յորոգայթէ որսողաց։

Որոգայթք նոցա փշրեցան * և մեք ապրեցաք։

Օգնութիւն մեր յանուն տեառն, որ արար զերկինս և զերկիր։

Տունք: 8.

Օրհնութիւնք աստիճանաց։

Սաղմոս ՃԻԴ։

Որ յուսայ ի տէր որպէս լեառն սիոն * մի սա



սանեսցի յաւիտեան
որ բնակեալն է յե
րուսաղէմ։

Լերինք շուրջ են
զնովաւ * Տր շուրջ
է ժողովրդեամբ իւ
րով յայսմ հետէ
մինչեւ յաւիտ
եան։

Ո՛չ թողու Տր զգա
ւազանն մեղաւորաց 'ի
վիճակս արդարոց *
զի արդարք մի՛ ձգես
ցեն զձեռս իւր
եանց յանօրէ
նութիւն։

Բարի առնէ Տր բար
եաց, և այնոցիկ
որք ուղիղք են
սրտիւք։

նեւին չի՛ սասանիր և չի՛ վախեր 'ի
փորձութենց և 'ի հալածանաց *
ինչպէս որ լեռան սիոն որ է 'ի յե
րուսաղէմ չի՛ շարժիր և չի՛ փո
փոխվիր յիւր տեղէն։

Այսինքն, զէրէ ինչպէս որ նր
զօրքն զանազան սարեր և բլուր
ներ պատերեն և զինքն կու պա
հեն * այսպէս Տր ած իւր հաւա
տացեալ ժողովրդոց չորս կողմն
պատեր է և զիւրեանք կու պահ
պանէ մինչեւ յաւիտեան։

Այսինքն, չի՛ թողուր Տր ած որ
մեղաւոր և ամբարիշտ մարդկանց
գաւազանն 'ի արդարոց վիճակն
մտանէ, իբր չի՛ թողուր Տր ած
որ անօրէն և ամբարիշտ մարդիք
որ եկեղեցւոյ մէջն մտանեն, որ
է արդարոց վիճակն և ժառանգու
թիւն, և նց վր տիրապետեն * որ
չի՛ լինի թէ միամիտ և պարզամիտ
մարդիք տեսանելով նց օրինազան
ցութիւն գայթակղին, և յուսա
հատին, և իւրեանց ձեռքն ձգա
նեն դէպ 'ի յանօրէնութի և 'ի
մեղսագործութիւն։

Այսինքն, զէրէ Տր ած բարի
մարդկանց և ուղիղ սրտով մարդ
կանց բարի կանէ, իբր կու նա
խախնամէ, կու պահպանէ և կու
փրկէ զիւրեանք յա՛մ փորձութէ
և կու ազատէ զիւրեանք 'ի բռ
նութենէն սատանայի։

Այսինքն, իսկ այնպիսի մարդիկքն որ թողելով այ պատուիրանքն և զերկիւղն կու թեքվին յուղիղ ճանապարհէն և կու հետևին անօրինաց և ամբարշտաց, յափշտակելով զարդարս և զանմեղս, և զրկելով զորբս և զայրիս, կու տանի տր ած 'ի կորուստ յաւիտենական այնպիսի մարդկանց հետ որ անօրէնութիւն կու գործեն * և անապառ խաղաղութին այ կու մնայ իվեր իսրայելի, իբր իվեր բարեպաշտից և երկիւղածաց:

Յօթն երորդ աստիճան առաքինութեցն է խնդալն և զուարճանալն իվերայ պայծառութե հաւատոյ և բարեգործութեանցն քրիստոնէից:

Այս սաղմոսուս կու խօսի մարգարէն վասն գալստեանն քի և վասն դարձման հեթանոսաց:

Այսինքն, երբոր տրն մեր յս քս իւր չարչարանօքն և մահուամբն դարձոյց զգերութին սիոնի, իբր ազատեց զազգս մարդկան 'ի բռնութէն և 'ի գերութէն սատանայի, և դարձոյց 'ի գիտութիւն ճշմարտութե 'ի ձեռն առաքելոց իւրոց * մեք հաստատեցաւքս մխի





Իսկ զթիւրեալսն 'ի յափշտակութի տանի զնս տր ընդ այնոսիկ ոյք գործեն զանօրէնութի * խաղաղութի իվեր իսրայէլի:

Տունք: 5

Օրհնութիւնք աստիճանաց:

Սաղմոս. ՃԻԵ.

Ի դարձուցանել տն զգերութին սիոնի * եղաք մեք մխիթարեալք:





Յայնժամ լցան բերանք մեր խնդութ՟ * և լեզուք մեր ցնծութ՟։

Թարմեցանք և զուարձացանք հոգւով։

Այսինքն, այն ժամանակն մեր բերանն լցւեցաւ երկնային խնդութ՟ և ճշմարիտ օրհնաբանութ՟ * և մեր լեզուն առատացաւ և փարթամացաւ հոգեկան ցնծութ՟ և արժանաւոր փառաբանութ՟։

Յայնժամ ասասցեն ՚ի հեթանոսս, մեծարար տ՟ր զառնելն իւր ընդ նոսա * մեծարար տ՟ր զառնելն իւր ընդ մեզ, և մեք եղաք բերկրեալք։

Այսինքն, և երբոր նոյն ինքն տ՟րն մեր յս՟ քս՟ կու ազատէ զիւր հաւատացեալ ժողովուրդն ՚ի հալածանացն կռապաշտից ՚ի ժամանակս մեծին կոստանդիանոսի, կու զարմանան հրէայք և հեթանոսք և կասեն, թէ մեծ ողորմութ՟ի և բարերարութ՟ի արար ա՟ծ քրիստոնէից * և մեք կու պատասխանենք թէ ողորդ կասէք մեծ շնորհք արար մեզ ա՟ծ նորա համար ուրախացանք և զուարձացանք հոգւով։

Դարձո՛ տ՟ր զգերութիս մեր որպ՟ զուխս ՚ի հարաւոյ * որք վարէին արտասուօք ցնծութ՟ հնձեսցեն։

Այսինքն, բայց կու աղաչենք զքեզ տ՟ր յս՟ քս՟, որ զմեզ այս աշխարհիս պանդխտութ՟էն և գերութ՟էն դարձուցանես ՚ի մեր հայրենին, իբր ՚ի յերկնից արքայութիւնն հարաւային սելաւներին նման, զէրէ ինչպէս հարաւային քաղցր քամին փչելով զձիւնն և զսառնամանիքն կու հալէ և սէլաւներն կու վազեցնէ դէպ ՚ի յերկիրն երուսաղէմայ, այսպէս

դու քո հոգւոյդ սրբոյ շնորհօքն
հայէ քոյ հաստատցելոց սառուց
եալ սիրտն, և առաստացուր քո
սիրովդ, և փութացուր դէպ'ի
վերինն երուսաղէմ * և արժա
նի արա որ այն հաստատցեալքն
որ այս աշխարհիս վերայ արտասո
ւօք և հեծութբ իւրեանց բա
րեգործութե սերմանիքն կու
վարեն, 'ի յերկինս ցնծութբ
զվարձատրութե պտուղն ճնձեն։
Այսինքն, և վարդապետք և
քարոզասացք որ կու երթային
յաշխարհէ յաշխարհ լալով և հո
գւոց հանելով * և իւրեանց
քարոզութեան սերմանիքն իւր
եանց սրտի և մտաց մէջն բարձած
կու տանէին։
Այսինքն, գալով 'ի հայրենին
իւրեանց, իբր 'ի յերկնից ար
քայութիւնն ցնծան և ուրախա
նան * և իւրեանց ժողոված ցո
րենի խուրցերն, իբր զորդիս
արքայութեան բերեն և քեզ մա
տուցանեն։

Ութերորդ աստիճան. առաքի
նութեանցն է հաստատելն թէ
առանց օգնութեան աստուծոյ
ոչինչ կարէ առնել մարդ իվ̃ր
երկրի։
Այս սաղմոսումս կու նախատէ
մարգարէն այնպիսի մարդիկն որ





Երթալով երթային
և լային * ուք բարձ
եալ տանէին զսերմա
նիս իւրեանց։

Գալով եկեսցեն և
ցնծասցեն * որոց առ
եալ բերցեն զորայս
իւրեանց։

Տունք : 6

Օրհնութիւք աստիճանաց:

Սաղմոս. ՃԻԶ.



Եթէ ոչ տր շինէ զտունն * ՚ի նանիր վաստակին շինօղք նորա։

Եթէ ոչ տր պահէ զքաղաքն * ընդունայն տքնին պահապանք նորա։

՚Ի նանիր է ձեզ յառնել կանխաւ * արդ. արիք մինչեւ էք ննջեցեալք * որք ուտէք զհաց ցաւոց։

՚Ի ժամանակի ուր տացէ քուն սիրելեաց իւրոց * ժառանգութի աճ որդիքն են * որոց վարձք իւր են



կուկարծեն թէ իւրեանց համ ճարտիւ կարեն կառավարել զտունս և զընտանիս իւրեանց առանց օգնութեն այ։

Մժինքն, թէ որ տր աձ իւր ողորմութեն օգնական չի լինի մարդկային ազգիս թէ տան շինութե կողմանէ, իբր թէ որդւոց և դստերաց կողմանէ, և թէ ապրանաց և ըստացուածոց կողմանէ * փուչ տեղ կու աշխատին և կուջանան նորա շինօղքն։

Մժինքն, թէ որ տր աձ իւր ամենակարօղ զօրութեն չի պահէ մէկ քաղաք մի * փուչ տեղ անքուն կու մնան գիշերն ՚ի բուն նորա պահապանքն։

Մժինքն, անշահ և անօգուտ է ձեզ ով մարդիկք կանուխ վեր կենալն և աշխատիլն առանց ապաւինելոյ յաձ * վեր կացէք քանի կանուխ որ կուզէք առանց քնելոյ * դուք որ զձեր հացն աշխատանօք ցաւօք և հեծութեամբ կուտէք, զէրէ մինչեւ որ ուղիղ սրտով յաձ չի ապաւինիք ոչինչ կարէք շինել։

Մժինքն, դուք վեր կուկենայք այն ժամանակն, որ աձ իւր սիրելեացն, իբր իւր հաւատարիմ ծառայիցն քուն կուտայ, և կու հանգստացուցանէ, և զիւր

եանք առանց այդ չափ աշխատա
նաց հոգւոր և մարմնաւոր բա
րեօք կու առատացուցանէ * և
որդւովք և դստերովք կու ծաղ
կեցուցանէ, զէրէ մարդի ժառան
գութիւնն իւր որդիքն են * և
իւր ջանից և աշխատանաց վարձքն
և հատուցումն նոքա են * և այն
է՛ իւր որովայնի պտուղն, իբր
իւր կնոջէն ծնած զաւակն։
Այսինքն, զէրէ ինչպէս հզօր
և քաջ մարդի ձեռաց նետերն
զինքն կու պահեն և կու փրկեն 'ի
զանազան վտանգից և 'ի փորձու
թէնց * այսպէս են որդիքն թօ
թափելոց, իբր այնպիսի մարդ
կանց որ զիւրեանք թօթափեր են
իբր աղատեր են, և պածուցեր
են 'ի հոգւոց և 'ի շփոթմանց աշ
խարհիս, և միայն յած են ապաւի
նեք, զէրէ նոցա որդիքն իւր
եանց թև և թիկունք կու լինին
'ի պէտս նոցա։
Այսինքն, երանի այնպէս մարդ
կանց որ այնպէս բարի որդիք ընդ
ունելով յայ, զիւրեանց կարօտն
և ցանկութիւնն լցեր են 'ի նո
ցանէ * զէրէ չե՛ն ամաչեր երբոր
իւրեանց թշնամիքն կու խօսին
նոցա հետ դռան մօտն, իբր երբ
որ կու չարախօսեն զնոսա իւր
եանց որդւոցն կողմանէ 'ի դուռն
դատաւորին, կամ երբոր կու

չարա

* այն է՛ պտուղ որո
վայնի իւրոյ։

Որպէս նետք 'ի ձեռս
հզօրի * այնպէս են
և որդիքն թօ
թափելոց։

Երանի որ ելից ըղ
ցանկութի իւր 'ի նո
ցանէ * և ո՛չ ամա
չեսցեն յորժամ խօ
սեսցին թշնամիք
նոցա ընդ նոսա
առ դրանն։

Տունք. 6.

Օրհնութիւնք աստիճանաց.

Սաղմոս. ՃԻԷ.

Երանի ամենեցուն որք երկնչին 'ի Տեառնէ * և գնան 'ի ճանապարհս նր:

Զվաստակս ձեռաց քոց կերիցես * երանի է քեզ և բարի եղիցի:

Կին քո որպէս որթ վայելուչ յանկիւնս տան քո * որդիք քո որպէս նորատունկք ձիթենեաց շուրջ զսեղանով քով:



չարախօսեն զնոսա դուք առաջի ատենին քի:

Ինն երորդ աստիճան առաքինութեանց է երկիւղն այ և պահպանումն պատուիրանաց նր:

Այս սաղմոսումս կու խօսի մարդարէն վասն երջանկութեան այնպիսի մարդկանց որք ահիւ և դողութբ կու հնազանդին այ:

Այսինքն, երանի այնպիսի մարդկանց որ ամէն իւրեանց գործոց և արարողութեց միջումն կու երկնչին յայ * և նորա ածային օրինաց և պատուիրանաց ճանապարհումն շուրջ կու գան:

Այսինքն, զէրէ այսպէս ապրելով ոչ զքո ձեռաց վաստակն սէլաՙն կու կոխէ, և ոչ կարկուտն կու զարկէ այլ դու քո որդւովքդ և քո դստերօքդ կու տես և կու վայելես * և միշտ քո բարեկամաց և ազգականաց միջումն երանելի կու լինիս, և քո բանդ հանապազ 'ի բարին կու առաջնորդի:

Այսինքն, քո կինդ գեղեցիկ և առատ այգւոյ նման քոյ տանդ քնձերումն միշտ աշխատանաց և հոգաբարձութե վերայ կու լինի * և քո որդիքդ մատղաշ ձիթենեայ տնկերի նման քոյ սեղանիդ բոլորքն կու պատեն և քո սիրտդ

կու մխիթարեն ։

Այսինքն , ահա՛ այսպէս օրհնութիւն կու ընդունի ա՛մ մարդ որ կու երկնչի յա՛յ * և կու օրհնէ զքեզ տ՛ր ա՛ծ ՚ի վերին սիոնէն , իբր ՚ի յերկնից և ՚ի յաթոռոյ փառաց իւրոց ։

Այսինքն , և կու տեսանես դու մտաց աչօք զբարութիւն և զվայելչութիւն վերին երուսաղէմի * քանի որ կենդանի ես այս աշխարհիս վերայ , և կու ըղձալիս հոգւո՛վ ։

Այսինքն , այլև կու տեսանես քո հոգևոր և մարմնաւոր որդւոց որդիքն * զէրէ խաղաղութիւն այ իսրայէլին վերայ է , իբր բարեպաշտ և երկիւղած մարդկանց վերայ է ։

Տասներորդ աստիճան առաքինութեանց է քաջութիւն պատերազմիլն ընդէմ թշնամեաց հոգեկանաց և մարմնականաց ։

Այս սաղմոսում կու պատմէ մարգարէն թէ որչափ փորձութիւն է կրեր իւր թշնամեաց ձեռքէն ՚ի տղայութենէ իւրմէ ՚ի յօրինակ քի և հաւատացելոց նոր ։

Այսինքն , շատ անգամ պատերազմեցան և հակառակեցան ինձ հետ իմ թշնամիքն ՚ի տղայութենէս իմէր , և կամեցան զիս յուսահա





Այսպէս օրհնեսցի ա՛մ մարդ որ երկնչի ՚ի տնէ * և օրհնեսցէ զքեզ տ՛ր ՚ի սիոնէ ։

Եւ տեսցես դու զբարութիւնն երուսաղէմի * զա՛մ աւուրս կենաց քոց ։

Տեսցես դու զորդիս որդւո՛ց քոց * խաղաղութի իվերայ իսրայէլի ։

Տունք . 6.

Օրհնութիւնք աստիճանաց ։

Սաղմոս . ՃԻԸ ։

Բազում անգամ մարտեան ընդ իս ՚ի մանկութենէ իմէ * ասասցէ իէլ ։



Բ. ազում անգամ մարտեան ընդ իս 'ի մանկութէ իմէ * և ինձ ո՛չ յաղթեցին:

Զ. թիկունս իմ հարին մեղաւորք * ընդ երկար արարին զանօրէնութիս իւրեանց:

Տէր արդար է * և խորտակէ զուլն մեղաւորաց:

Ամաչեսցեն և յետս դարձցին ամենեքեան * ոյք ատեն զՍիոն:

Եղիցին նոքա որպէս խոտ տանեաց * որ



տեցուցանել և դայթակղեցուցանել * այս իմ ճշմարտութենս թող վկայէ Իսրայէլ, իբր իւրաքանչիւր հաւատարիմ և երկիւղած մարդ:

Ա. յսինքն, շատ անգամ պատերազմեցան և հակառակեցան ինձ հեռ իմ թշնամիքն 'ի տղայութենէս 'ի վեր, ինչպէս որ ասացի, և կամեցան զիս կործանել և 'ի վայր ձգել * բայց շնորհօքն այ չէ՛ կարացին յաղթահարել զիս:

Ա. յսինքն, զիմ թիկունքս թափեցին մեղաւորք, իբր ինձ վերուր և անիրաւ խօսքեր կխօսեցին, և իմ յետևէս ինձ վատ ասացին և բամբասեցին * և իւրեանց անօրէնութին և չարագործութիւնն աւելացուցին և երկարեցին:

Ա. յսինքն, բայց տէր այծ արդարադատ է՛ * այնպիսի մեղաւոր և ամբարիշտ մարդկանց վզի օսկռն կուջարդէ, և զիւրեանք յամօթ կանէ:

Ա. յսինքն, ամաչեն և ամօթով յետ դառնան ամէն այնպիսի մարդիքն * որ կու ատեն զսիոն, իբր զայն եկեղեցին որոյ գլուխն է՛ քս, և ժողովք հաւատացելոց անդամք նորա:

Ա. յսինքն, կորներուն բուսած խոտի նման անհաստատ և

անպարտատ դառնան * որ դեռ-
ձեռք չէ՛ տուած լինի կութար
շամփ և կուչորանայ։

Նայինքն, և ինչպէս այն խո
տէն ո՛չ ջնձողն զիւր բուռն լցեց
* և ո՛չ խուրձ ժողովողն զիւր
գիրկն լցեց, վասն անպիտանու-
թե՛ և անօգուտութե՛ նո՛ր, այս
պէս ո՛չ պահապան հրեշտակք որք
են իբրև ջնձողք, և ո՛չ փող-
ածօղ հրեշտակք որք են իբրև
խուրձ ժողովողք զիւրեանք ընդ-
ունին, և տանին յերկինս վասն
աղտեղութեան և ժահահոտու-
թեան նոցա։

Նայինքն, և ինչպէս այս ան
պէտք խոտիս կշտէն անցնող մար
դիկքն ամենևին չեն ասացին, թէ
օրհնութիւն ա՛յ քեզ վերայ լինի,
և օրհնեցինք զքեզ ա՛յ անունովն,
այսպէս ինչ վարդապետ և ինչ
քարոզասաց որ նոցա երկրովն և
նոցա դա՛ռ առովն անցկենայ, իւր
օրհնութե՛ն արժանի չի անէ զիւր
եանք։

Մեռասանեորրդ. ասոքնձան առա
քինութեանցն է՛ ՚ի յանկանիլն ՚ի
մեղս առանց յուսահատութեան
շուտով զ ղջալն և զթողութիւն
խնդրելն յա՛յ։

Նյս սաղմոսումս կուազաչէ մար
դարէն զա՛ծ որ ազատէ զինքն ՚ի



մինչև ՚ի բուռն եկ
եալ չորացաւ։

Ո՛ւստի ո՛չ ելից ըզ-
բուռն իւր ջնձողն *
և ո՛չ զգիրկս իւր որ
զորայն ժողո
վէր։

Ո՛չ ասացին ամենեք
եան ոյք անցանէին
առ նոքօք թէ օրհ
նութի՛ տն ընդ ձեզ
և օրհնեցաք զձեզ
յանու՛անէ տն։

Տունք. Ը;

Օրհնութիւք աստիճանաց:

Սաղմոս. ՃԻԹ:



Ի խորոց կարդացի առ քեզ տր * տր լուր ձայնի իմում։

Եղիցին ականջք քո * 'ի լսել զձայն աղօթից իմոց։

Թէ զանօրէնութիս քննես տր * տր ո՛ կարէ կալ առաջի քոյ * զի իքէն է քաւութիւն։

Վասն անուան քոյ համբերի տր * համբերէր անձն իմ բանի քում * յուսացաւ անձն իմ 'ի տր։

տառապանաց, 'ի վտանգէ, և 'ի մեղաց։

Այսինքն, 'ի խորուկ սրտէ, զանազան փորձութեց միջումն, դառն տառապանաց միջումն, և ծանր մեղաց միջումն դէպ քեզ աղաղակեցի տր * տր ած քո ողորմութբդ լուէ իմ ձայնին։

Այսինքն, պատրաստէ՛ քո բարեգութ ականջներդ * և լուէ խեղճ և տառապեալ մեղաւորիս աղօթից ձայնին և այց արա՛ ինձ։

Այսինքն, թէ որ դու տր ած մարդկային անչափ և մեծամեծ անօրէնութիքն քննելոյ յետնէ կենաս * ո՛վ կարէ քոյ առաջևդ կանգնիլ և զինքն արդարացուցանել * բայց դու կու խղճաս և կու ներես, զէրէ ամ քաւութի և թողութի քեզանից է։

Այսինքն, ես քո տբ անուանդ սիրոյն համար այնչափ հոգեկան և մարմնական փորձութեց համբերեցի տր ած * համբերեցի և ս մեծ ակնկալութբ քոյ ածային բանիդ, իբր մարդեղութեան որդւոյ քոյ միածնի։

Վամ այն բանին համար որ ասացեր թէ ո՛չ կամիմ զմահ մեղաւորին, այլ զդառնալն նորա 'ի չար ճանապարհէն և զկեալն * և իմ անձս, իբր իմ հոգիս միշտ 'ի քո

ած

ամենայն ողորմութեամբ յուսացաւ
և ապաւինեցաւ։

Այսինքն, իմ խրատովս և իմ յորդորմամբս, առաւօտեան պահէն մինչև երեկոյն, իբր՚ի տղայութէ մինչև՚ի ծերութիւն. կամ իմէջ աջողութե և անաջողութե * յառաւօտեան պահէն, իբր յելիցն եգիպտոսի, կամ յառաւօտէ յարութեն քի որդւոյ քո միածնի ըսկսաւ նոր իսրայէլն յուսալ իքեզ։

Այսինքն, զէրէ գիտաց որ նորա ողորմութիւն բազում և անչափ էր, և իմացաւ որ իւր հոգւոյ փրկութիւն նորանէ է * զէրէ նա փրկեց իւր խաչիւն և մահուամբն զնորին իսրայէլ յամ նեղութեց նորա, իբր՚ի գերութէն սատանայի, և՚ի տանջանաց դժոխոց։

Երկոտասան Երորդ աստիճան առաքինութեանցն է խոնարհութիւն, այսինքն, ոչինչ համարելն զինքն։

Այս սաղմոսումս մարգարէն կու բացայայտէ առաջի այ զիւր խոնարհութիւնն և զիւր անմեղութիւնն։

Այսինքն, տր ամ դու գիտես որ իմ սիրտս իմ գիտութե և իմ





՚Ի պահէ առաւօտու մինչև երեկոյ * ՚ի պահէ առաւօտու յուսացաւ իսրայէլ ՚ի տր։

՚Ի տնէ է ողորմութի բազում, ՚ի նմանէ է փրկութի * և նա փրկեաց զիսրայէլ յամ նեղութեց նորա։

Տունք։ 6.

Օրհնութիք աստիճանաց։

Սաղմոս ՃԼ.

Տր ոչ բարձրացաւ սիրտ իմ * և ոչ զբօ



սան աչք իմ ։

Ո՛չ գնացի ես ընդ մեծամեծս * և ո՛չ ընդ այնոսիկ որք սքանչելի եղեն քան զիս ։

Բայց թէ խոնարհեցայ ես ոպ մանուկ սարտուցեալ 'ի ստենէ մօր իւրոյ և դարձ նոցա անդրէն 'ի նոյն ։

Այլ թէ հպարտացուցի արդեօք զանձն իմ, այսպէս եղիցի հատուցումն անձին իմոյ * յուսացաւ իէլ 'ի տր յայսմ հետէ մինչև յաւիտեան ։



իմաստութեան վր, կամ իմ բարեգործութեան և առաքինութեան վր չէ՛ բարձրամտեցաւ և ուռեցաւ * և իմ աչքերս զիմ փառքն և մեծութիւն տեսանելով չի՛ գոռոզացաւ և չի՛ հպարտացաւ ։

Այսինքն, ես մեծամեծաց հետ չի՛ գնացի, իբր այնպիսի մարդկանց հետ շուրջ չի եկայ որ մեծամեծ պատուոյ և արժանաւորութեանց կուզանկային * և ո՛չ այնպիսի մարդկանց հետ նստայ և վերկացայ որ խորին և անհաս իմացուածոց յետանէ անկանելով կուզէին ըսքանչելի լինիլ, և գիտուն երևիլ 'ի մէջ մարդկան ։

Այսինքն, բայց թէ խոնարհեցայ ես հոգւով և մտօք քոյ առաջևդ, փափաքելով քոյ ա՟ծային շնորհացդ, ինչպէս որ իւր մօր ծծէն կտրած և խրտնած երախայն միշտ կուջանայ և կու փափաքի որ կրկին դառնայ առ իւր մօր ծիծն, դու զիս մի՛ անտես առներ և յերեսաց ձգեր, զէրէ միշտ իմ սիրտս դէպ առ քեզ է ։

Այսինքն, այլ թէ հպարտացուցի զիմ անձս քոյ առաջևդ, դու զիս իմ անզգամութեան գօրայ պատժէ, և այսպէս ինձ հատուցումն արա՛ * բայց զիս քոյ ա՟ծային շնորհացդ կաթէն մի՛ զրկեր, զէրէ քո սովորական ողորմութիւդ և ներո

ղու

ղութիդ տեսանելով յուսացաւ
իսրայէլն 'ի քեզ , իբր քո հաւա
տացեալ ժողովուրդն 'ի ըսկզբա
նէ մինչեւ յաւիտեան 'ի քեզ ապա
ւինեցաւ ։

Ն՝ ըէքտասան երորդ աստիճան
առաքինութեանցն է միշտ մտա
ծելն զտնօրէնութիւն քի , եւ ափ
րով պաշտելն զնա ։

Մ՝ յս սաղմոսումս կու խօսի մար
գարէն ընդ հօր այ վր որդւոյ
նր միածնի յի քի նորոյ դաւթի
եւ կու աղաչէ զնա ընուլ զխոս
տումն իւր առ նա ։

Ա յսինքն , յիշէ տր ած հայր
ամենակալ զորդիդ քո
միածին , զյս քս զնորն
դաւիթ քո հայրական գթութեդ
* եւ 'ի միտ առ նորա հեզութիւն
եւ խոնարհութիւն զ հնազանդու
թիւն եւ զ համբերութիւն , զի իբրեւ
զգառնանմեղ առաջի ըսպանչացն
անմռունչ կայ , եւ վասն խոնար
հութեն նորա դատաստան նորա
բարձաւ ըստ եսայեայ ։

Ա՝ յսինքն , յիշէ թէ ինչպէս
երդուաւ քեզ տնդ * եւ ուխտ
դրեց քեզ այդ յակոբայ , իբր
յիշէ թէ ինչպէս խոստացաւ քեզ
իւր կամաւ եւ յօժարութեամբն
'ի ձեռն չարչարանաց խաչի

եւ մա



Տուն · 4 ·

Օրհնութիւք աստիճանաց :

Սաղմոս : ՃԼԱ


իշեա՛ տր զդաւիթ * եւ
զամ հեզութիւն նորա ։

Որպէս երդուաւ
տն * եւ ուխտ եդ
այ յակոբայ ։



Թէ մտից ՚ի յարկս տան իմոյ * թէ ելից յանկողինս մահճաց իմոց ։

Թէ տաց քուն աչաց իմոց * կամ նինջ արտեւանաց իմոց * կամ հանգիստ կռանաց իմոց * մինչեւ գտից զտեղի յարկի տն̃ այ̃ յակոբայ ։



եւ մահուան իւրոյ հիմնել եւ կալմել զեկեղեցին իւր սբ̃ ։

Ո՛ւխտինքն ․ եւ ասաց ․ ես չեմ մտանել բնաւ իմ տան օթաղների մէջն ․ իբր ՚ի յանմատոյց առագաստն վերին երուսաղէմի * եւ քա՛ւ լիցի թէ ես ելանեմ իմ տեղերի անկողնոցն վերայ ․ իբր ՚ի բնակութիւն անպատմելի եւ անճառելի հանգստարանի իմոյ ։

Ո՛ւխտինքն ․ քա՛ւ լիցի թէ ես թողում որ իմ աչքերս քուն առնու ․ իբր քա՛ւ լիցի թէ ես թոյլ տամ որ իմ հովի՛ւքն եւ առաջնորդքն անհոգանան ՚ի կառավարելոյ զհաւատացեալս իմ * կամ թողում որ իմ թարթերս ննջեն եւ փակվին, իբր իմ վարդապետքն եւ քարոզատուքն լռեն ՚ի պատմելոյ զբանս աւետարանական ճշմարտութեան իմոյ * կամ թողում որ իմ քնիս երակներն հանգչին ․ իբր իմ սրբակրօն քահանայքն դադարին ՚ի յաղաղակելոյ առ քեզ վասն փրկութեան ազգի մարդկան * մինչեւ որ գտանեմ զտեղի յարկի տն̃ այ̃ յակոբայ ․ իբր մինչեւ որ կազմեմ եւ պատրաստեմ զսբ̃ եկեղեցին իմ, որ է տուն եւ բնակութի̃ տն̃ այ̃ յակոբայ ․ իբր այն տն̃ որ բարեպաշտ եւ երկիւղած հաւատացելոց տն̃ն է ։

Այսինքն, ահա լուեցինք նորա համբաւն ի յեփրաթայ, որ այլ անուամբ ասի բեթղեհեմ, զի է րէ անդ ծնաւ մարմնով, անդ երևեցաւ, և անդ հրեշտակք երգեցին զփառս ի բարձունս, այլ և յերկիր խաղաղութիւն * և գտաք զնա ի դաշտս մայրեաց, իբր ի հրէաստանի, որ երբեմն էր օրման անպտուղ ծառոց աղգին հեթանոսաց յառաջ քան զգալն իսրայէլացւոց, և յետոյ եղև դաշտ մայրեաց, իբր բնակութի մարգարէից և իշխանացն հրէից։

Այսինքն, եկեք մտանենք նորա հիմնած եկեղեցւոյ մէջն * և հոգւով և ճշմարտութեբ երկիր պագանենք նորա այն տեղն, որ իւր ոտքերն կանգներ են, իբր այն տեղն որ իւր առաքեալքն ոտք են ոտք նր զաւետարանական քարոզութիւն տարածեր են և հաստատեր են։

Այսինքն, վերկաց ուրեմն տր յս քս յետ կատարելոյ զքո մարմնանալոյ տնօրէնութիդ, և համբարձիր ի յերկինս ի քո աննմառելի հանգստարանդ * և տար քեզ հետ զքո սրբութե կտակիդ տապանակն, իբր զմարիամ մայր քո ամենօրհնեցեալ․ կամ զսբ եկեղեցին, որ քոյ աննմառելի տնօ

րէն

Ահա լուաք զնմանէ յեփրաթայ * և գտաք զնա ի դաշտս մայրեաց։

Մտցուք ի յարկս նր * երկրպագեսցուք ի տեղւոջ ուր կացեալ են ոտք նորա։

Արի տէր ի հանգիստ քո * դու և տապանակ կտակի սրբութե քոյ։

Երիցունք քո զգեցցին զարդարութիւն * և սրբք քո ցնծալով ցնծասցեն:

Վասն Դաւթի սիրելոյ քոյ * մի դարձուցաներ զերեսս քո յօծելոյ քումէ:

Երդուաւ տր Դաւթի ճշմարտութեամբ և ոչ ստեաց նմա * ՚ի պտղոյ որովայնի նորա նստուցանել յաթոռ նորա:



րէնութեան խորհրդոյդ, և քոյ ածային նոր ուխտիդ և կտակիդ տապանակն է, զոր դու սիրեցեր և մաքրեցեր քո արեամբդ:

Այսինքն, յետ քոյ համբարձմանդ քո երիցունքդ, իբր քո առաքեալքդ և հայրապետքդ արդարութիւն զգենուն ՚ի վերուստ շնորհօք հոգւոյդ սրբոյ, և քո սուրբ եկեղեցիդ արդարութեամբ և իմաստութեամբ կառավարեն * և քո ամէն սրբերդ և ընտրեալքդ, նոցա դրած կարգի և կառավարութեան տակումն ցնծան և ուրախանան:

Այսինքն, արդ վասն քոյ այդ սիրելի և ճշմարիտ Դաւթիդ կու աղաչեմ զքեզ, զի զայլոք մեծագոյն և պատուականագոյն քան զնա ոչ ունիմ որ քեզ միջնորդ և բարեխօս ձգեմ * զքո երեսդ, իբր զքո հայրական խնամքդ և ողցելութիւնդ նոյն սիրելի Դաւթէն որ է որդի քո միածին, և օծեալ քո, մի՛ դարձուցաներ, այլ յամենայնում լսելով նմա, կատարեա՛ զկամս և զբարեհաճութիւնս նր:

Այսինքն, քո ածային տէրութիւնդ երդուաւ Դաւթի որդւոյ իւրոյ ճշմարտութեամբ, և զիւր խօսքն չէ՛ ստեց * զէրէ ասաց թէ նորա որովայնի պտղէն կու նստուցանեմ իւր աթոռին վր,

իբր զաւազակաւս որք ծնանելոց
էին 'ի սերմանէ ա̄ծային վարդա
պետութեան նորա, խոստացաւ
նստուցանել իւր աթոռին վերայ
իբր 'ի մէջ սուրբ եկեղեցւոյ։

Այսինքն, թէ որ քո որդիքդ
իբր քո սուրբ առաքեալքդ զիմ
աստուածային օրէնքն և պա
տուիրանքն պահեն * և զիմ
աւետարանական վկայութիւնքն
զոր 'ի ձեռն քո ուսուցանել պի
տիմ նոցա, քարոզեն և պատմեն
բոլոր աշխարհի, և դարձուցա
նեն զմարդիկ 'ի գիտութիւն ճշ
մարտութեան։

Այսինքն, չէ թէ միայն նոքա,
այլ և որդիքն նոցա, իբր այլև
փոխանորդք նոցա նստին յետ նց
յաւիտեանս յաւիտենից քոյ աթո
ռիդ վերայ։

Այսինքն, զէրէ հաճեցաւ տ̄ր
աստուած սիոնի, իբր սուրբ
եկեղեցին իւրն դուր եկաւ, և
կամեցաւ բնակիլ նորա միջումն
* և ասաց, այս է իմ հանգս
տութեան տեղն յաւիտեանս յա
ւիտենից * ես այս տեղս կու
բնակիմ, զէրէ հաւանեցայ սո
րա վասն սիրոյ որդւոյ իմոյ միած
նի։

Այսինքն, սորա այրիքն, իբր այս
եկեղեցւոյս միջի եղած այրիքն,
իբր այնպիսի հոգիքն որ մարդ





Թէ պահեսցեն որ
դիք քո զօրէնս իմ *
և զվկայութիւնս իմ
զոր ուսուցից
նոցա։

Որդիք նոցա նստցին
յաւիտեանս յաւիտե
նից յաթոռ քո։

Հաճեցաւ տ̄ր ընդ
սիոն, և ընտրեաց
բնակել 'ի նմա * ասէ
այս է հանգիստ իմ *
յաւիտեանս յաւիտե
նից 'ի սմա բնակեցայց
զի հաճեցայ ընդ սա։

Զայրիս սորա օրհնե
լով օրհնեցից * և զաղ
քատս սորա լցուցից
հացիւ։

Երիցանց սորա զգե
ցուցից զփրկութի *
և սէք սորա ցնծա
լով ցնծասցեն:

Անդ ծագեցից զեղ
ջիւր 'ի դաւիթ *
պատրաստ արարից
զճրագ օծելոյ
իմոյ:



կային տկարութք մեղանչելով
այրի են եղեր 'ի փեսայէն իւր
եանց յոլէ քան որդւոյ 'իմոյ , և
զ զղջմամբ և արտասուօք կամին
դառնալ առնա , ես օրհնելով
կու օրհնեմ զնուրեանք և իւր
եանց սիրտն կումխիթարեմ * և
սորա միջի եղած հողւով աղ
քատներն , իբր զայնասիկ որ կարօտ
են ճշմարտութե իմ ածային բա
նիս հացովն լցուցանեմ և յագե
ցուցանեմ:

Այսինքն , սորա եպիսկոպոսացն
և քահանայից փրկութե զգեստ
հագուցանեմ , իբր զնուրեանք
արդարութք ճշմարտութք և
իմաստութք զարդարեմ , որ այ
լոց ուղղութե և փրկութեան
պատճառ լինին * և սորա սէքն
և ընտրեալքն ցնծալով ցնծան
հոգւով աստ և 'ի հանդերձե
լումն:

Այսինքն , այն եկեղեցւոյ մէջն
իմ ճշմարիտ դաւթին պող բու
սուցանեմ , իբր զնուր իշխանու
թիւն և թագաւորութիւն զօրա
ցուցանեմ և աճեցուցանեմ *
և իմ օծելոյս ճրագն պատրաս
տեմ , իբր զյովհաննէս մկրտիչն,
որ թէպէտ ոչ է լոյս , այլ զի
վկայեսցէ վասն լուսոյն , յառաջ
ընթանալով իբրև զճրագ , և ճա
նապարհ պատրաստելով նմա:

Այսինքն , և այս իմ օծելոյս թշնամեացն ամօթ զգեցուցանեմ , իսկ գլխակոր անեմ ցրուեմ և կորուսանեմ * և իւր վերայ իմ սրբութիւն ծաղկի , իսկ իմ ածային փառքս նորա վերայ յայտնի երևի , և իբրև որդի այ 'ի մէջ մարդկան պատուի և մեծարվի։

Չորեքտասաներորդ աստիճան առաքինութեանցն է միաբանութիւն և խաղաղասիրութիւն։
Այս սաղմոսում կու գովէ մարգարէն զմիաբանութի և զխաղաղութիւն։

Այսինքն , ա՜հ թէ որ չափ բարի է , որ չափ վայելուչ է , որ չափ ցանկալի է , և որ չափ օգտակար է , որ որդիքն այ , և եղբարքն քի , իսկ հաստատեալ քրիստոնեայք միաբանութբ խաղաղութբ և սիրով բնակին 'ի միասին 'ի մէջ սուրբ եկեղեցւոյ։
Այսինքն , քրիստոնէից միաբանութիւն և խաղաղութիւնն այն չափ պատուական է , որ կու նմանի այն անուշահոտ և քաղցր իւղոյն որ կու թափէին 'ի գլուխն և 'ի մորուսն Ահարոնի , նախ վասն նշանակելոյ զսրբութի և զառաքինութիւն նորին , և երկրորդ վասն նշանակելոյ զշնորհն այ հեղ





Թշնամեաց նորա զգեցուցից զամօթ * և 'ի վերայ նորա ծաղկեսցի սրբութի իմ։

Տունք. 17.

Օրհնութիւնք աստիճանաց։

Սաղմոս. ՃԼԲ.



Զի՛ բարի կամ զի՛ վայելուչ , զի բնակին եղբարք 'ի միասին։

Որպէս իւղ զի իջանէ 'ի գլուխն և 'ի մօրուսն Ահարոնի * և 'ի մորուացն իջանէ 'ի գրապանս զգեստու նորա։

Ոպ̃ ցօղ զի ցօղէ 'ի Հերմոնէ , 'ի վերայ լերին սիոնի ։

եալ իվերայ նր̃ * և այս իւղս այն չափ առատ կու թափէին , որ մորուքէն կու իջանէր իւր զգեստի եախայրին վերայ , և կու կաթկաթէր մինչև 'ի փէշերն ։

Այսինքն , այլև կու նմանի այն երկնային ցօղոյն որ կու ցօղի 'ի Հերմոն լեառն , և սիոնի լեռանն վերայ , և զիւրեանք կու պարարտացուցանէ և կու ծաղկեցուցանէ , նշանակելով զշնորհն ա̃յ ցօղեալ , 'ի վերայ առաքելոցն ք̃ի , և 'ի վերայ սուրբ եկեղեցւոյ նորա ։

Տ̃ր անդ պատրաստեաց զօրհնութի * և զկեանսն յաւիտենից ։

Տունք. 4.

Այսինքն , միաբանութիւն և խաղաղութի եղած տեղն , պատրաստեց տ̃ր ա̃ծ զիւր օրհնութին և նախախնամութին * և սիրողացն զնոյն միաբանութին , կու պարգևէ զկեանս յաւիտենականս ։

Օրհնութիւնք աստիճանաց ։

Սաղմ. ՃԼԳ.

Հնկետասան երորդ աստիճան առաքինութեցն է յա̃մ ժամ օրհնելն և գովելն զա̃ծ ։

Այս սաղմոսումս կու յորդորէ մարդարէն զհաւատացեալս օրհնել և գովել զա̃ծ ։



Աստ օրհնեցէք ա̃մ ծառայք տ̃ն զտ̃ր * ո՛կայք 'ի տան տ̃ն և 'ի գաւիթս ա̃յ մերոյ ։

Այսինքն , աստ օրհնեցէք , իբր այս ս̃բ եկեղեցւոյս մէջն օրհնեցէք և գովեցէք զտ̃ր ա̃ծ ո՛վ հաւատացեալ ժողովուրդք ա̃յ ուր

միա

միաբանութի և խաղաղութի է * և մանաւանդ դուք քահանայք և եկեղեցականք որ յանձներէք զձեզ այ, և կուբնակիք 'ի տան նորա և 'ի գաւիթս նորա, իբր 'ի վանս և յանապատս։

Այսինքն, գիշերով վեր կացէք և ձեր ձեռքն սրտի մտօք բարձրացուցէք դէպ 'ի սուրբ սեղանն * և օրհնեցէք և բարեբանեցէք զտր այծ փրկիչն ձեր յս քս։

Այսինքն, զի տեսանելով այծ զձեր հաւատն և զկատարեալ սէրն, օրհնէ զձեզ իւր երկնային օրհնութեամբքն 'ի սիոնէ, իբր 'ի վերին երուսաղէմէ * այն որ ստեղծեր է զերկինս և զերկիր 'ի յոչնչէ։

Իբր, օրհնեցէք զած, զի ալէլուիայն օրհնեցէք զած կու թարգմանի։

Այս սաղմոսումս կու յորդորէ մարգարէն օրհնել և գովել զած վասն անհուն ողորմութե նորա և վասն անչափ բարութե նր որ արար ազգի մարդկան։

Այսինքն, օրհնեցէք ով հաւատացեալ ժողովուրդք զանուն տն այ * օրհնեցէք և գովեցէք ով ընտրեալ ծառայք տն զտր այծ * և մանաւանդ դուք քահա

նայք



Ի գիշերի համբարձէք զձեռս ձեր 'ի սրբութի * և օրհնեցէք զտր։

Օրհնեսցէ զմեզ տր 'ի սիոնէ * որ արար զերկինս և զերկիր։

Տունք: 3.

Ալէլուիա:

Սաղմոս. ՃԼԴ.

Օրհնեցէք զանուն տն * օրհնեցէք ծառայք տն զտր * ո կայք 'ի տան տն, և 'ի գաւիթս այ մերոյ։



Օրհնեցէք զՏ՟ր զի բարի է * և սաղմոս ասացէք անուան Ն՟ր զի քաղցր է։

Զյակոբ ընտրեաց իւր Տ՟ր * և զիսրայէլ ժառանգութ՟ի իւր։

Ես ծանեայ զի մեծ է Տ՟ր * և Տ՟ր մեծ է քան զամենայն կուռս։

Զամ՟ զոր ինչ կամեցաւ և արար Տ՟ր յերկինս * և յերկրի * 'ի ծով * և յամ՟ խորս։



նայք և եկեղեցականք որ կայք Տ՟յ
տան միջուամ՟ և նորա գաւթի մի
ջուամ՟, իբր 'ի յեկեղեցիս 'ի վանս
և յանապատս։

Այսինքն, օրհնեցէք և բարեբա
նեցէք զՏ՟ր Ա՟ծ, զէրէ բարի է *
և սաղմոս ասացէք սրտի մտօք Ն՟ր
Տ՟ր անուանն, զէրէ քաղցր է։

Այսինքն, նա վասն իւր անճա
ռելի նախասահմանութ՟են զյա
կոբ նահապետն իւրն հաւատա
րիմ ծառայ ընտրեց, իբր զԱ՟ծա
պաշտս * և իսրայէլացւոց ազգն
իւրն ժառանգութ՟ի արար, իբր
զսուրբ եկեղեցին իւրն հարսնա
ցույց։

Այսինքն, ես 'ի տղայութենէ
իմէ ճանաչեցի և գիտացի որ մեծ
է Տ՟ր Ա՟ծ քան զամ՟ հրեշտակս
որք են 'ի յերկինս * և մեծ և
ահաւոր է քան զամ՟ հեթանոսաց
կուռքերն որք են իվերայ երկրի։

Այսինքն, ինչ իքմին որ կամե
ցաւ Տ՟ր Ա՟ծ ըստեղծեց թէ ըզ
հրեշտակս, թէ զարեգակն և
զլուսինն և թէ զայլս աստեղս
որք են 'ի յերկինս * թէ զկենդա
նիս և զանասունս, թէ զծառս
և թէ զտունկս որք են 'ի յերկրի
* թէ զձկունս և զսողունս որք
են 'ի ծովս * և թէ զայլս ըստեղ
ծուածս որք են 'ի յանդունդս,
իբր 'ի խորս երկրի։

Այսինքն, երբոր ինքն կուզէ երկրիս բոլորքէն պուղն կու հանէ, և կու բարձրացուցանէ 'ի յօդս, և ժողովելով ի միասին ամպ կու շինէ * և այս ամպերիս միջի եղած այրելի նիւթերէն կայծակունք և փայլատակունք կու հանէ * և ամպերն ցուրտ օդով կու լուծանէ և յանձև կու փոխարկէ * և երբոր ինքն կու կամի իւր ամպարներէն քամի կու շնչէ լուծանելով 'ի յօդ զզանազան նիւթս որ կան 'ի մէջ երկրի:

Այսինքն, նա պատուհասեց և սատակեց եգիպտացւոց անդրանիկ զաւակներն * ոչ միայն մարդկանց, այլև անասնոց:

Այսինքն, նա իւր զարմանալի նշանքն և արուեստքն ողարկեց քոյ մէջդ ով Եգիպտոս * և ցուցուց փարաւոնի և իւր ամէն զօրացն պատժելով զնոսա զանազան պատուհասօք:

Այսինքն, յետ ազատելոյ զիսրայէլացւոց ժողովուրդն յեգիպտոսէ, պատուհասեց այնչափ զանազան կռապաշտից ազգերն * և սատակեց այնչափ ուժեղ թագաւորներն 'ի յերկիրն քանանացւոց

Այսինքն, և մանաւանդ զսեհոն թագաւորն ամուրհացւոց երկրին, և զովգ թագաւորն բասանու երկրին * և այլ ամ

քա

Հանէ զամպս 'ի ծագաց երկրի * զփայլատակունս իւր * անձրևս արար * և հանէ զհողմ 'ի շտեմարանաց իւրոց:

Եհար զամ անդրանիկս եգիպտացւոց * 'ի մարդոյ մինչև յանասուն:

Առաքեաց զնշանս և զարուեստս իւր 'ի մէջ քոյ Եգիպտոս * 'ի փարաւոն և յամ զօրս իւր:

Եհար զազգս բազումս * և սպան զթագաւորս հզօրս:

Զսեհոն թագաւոր ամուրհացւոց զովգ թագաւոր բասանու * և զամ թագաւո

րութիւս քանանացւոց։

Ետ զերկիր նոցա ՚ի ժառանգութիւն * ժառանգութիւն իէլի ժողովրդեան իւրոյ։

Տէր անուն քո յաւիտեան * տէր յիշատակ քո յազգէ մինչև յազգ։

Դատէ տէր զժողովուրդս իւր * և՚ի ծառայս իւր մխիթարի։

Կուռք հեթանոսաց արծաթ և ոսկի են * ձեռագործք են որդւոց մարդկան։

Բերան ունին և ոչ խօսին * աչք են և ոչ տեսանեն։

Ականջք են և ոչ լսեն * և ոչ գոյ շունչ ՚ի բերանս նց։

Նման նոցա եղիցին որք արարին զնոսա *



քանանացւոց թագաւորներն։

Այսինքն, և նոցա երկրներն և գաւառներն տուաւ ՚ի ժառանգութիւն * իբր մուլք և ժառանգութիւն արաւ իսրայելացւոց ժողովրդեանն։

Այսինքն, ուստի տէր ած քո անունդ յաւիտեանս յաւիտենից կու փառաւորվի * և քոյ բարերարութիւն յիշատակն կու մնայ յազգէ մինչև յազգ ՚ի մէջ մարդկան։

Այսինքն, դու քո ածային տէրութեամբդ կու դատես զքո ժողովուրդդ արդարութեամբ առանց մատնելոյ զնոսա ՚ի ձեռս թշնամեաց նոցա * և տեսանելով զքոյ հաւատարիմ ծառայից զղջումն և զապաշխարութիւնն կու մխիթարվիս ՚ինոսա։

Այսինքն, ինչ կարեն մեզ անել հեթանոսաց կուռքերն որ ՚ի յոսկւոյ և ՚ի յարծաթոյ են շինած * և հողեղէն մարդկանց ձեռագործք են։

Այսինքն, բերան ունին և չեն խօսիր * աչք ունին և չեն տեսաներ։

Այսինքն, ականջս ունին և չեն լսեր * և իւրեանց բերանումն շունչ և խօսք չկայ որ բարբառին։

Այսինքն, նոցա նման դառնան այն մարդիկքն որ շիներ են զիւր

եանք

եանք * և ամէն այնպիսի տգէտք
և չիմարք որ յուսացեր և ապաւէի
ներ են 'ի նոսա:

Դ. արձեալ, եկն որդին մարդոյ
բանն այ մարմնացեալ, և բնա
կեցաւ 'ի մեզ, և հրէայք և հե
թանոսք ոչ ծանեան զնա. աչս
ունէին, և ոչ տեսին թէ նա է
ճշմարիտ քսն որ գալոցն էր յաշ
խարհ. ականջս ունէին, և ոչ
լսեցին նախադուշակութեց և
վկայութեցն մարգարէից. քիթս
ունէին և ոչ հոտոտեցին զան
պատմելի անուշահոտութի նր.
բերանս ունէին, և ոչ փառա
բանեցին զնա իբրև որդի այ.
ձեռս ունէին, և ոչ մատուցին
նմա պտուղ բարի ըստ արժան
եացն նորա. ոտս ունէին, և ոչ
գնացին զ հետ ուղիղ ճանապար
հաց նորա, այլ ընդդէմ այ նա
խանձեցան, և ըմբռնեցին կապա
նօք, և տարեալ 'ի մահ մատնե
ցին և խաչեցին զորդին այ, վասն
որոյ նմանեցան կռոց որք են ձե
ռագործք մարդկան:

Այսինքն, իսկ դուք ով ազգդ
իսրայէլացւոց օրհնեցէք զտր *
և դուք ահարոնի զարմդ օրհնե
ցէք և բարեբանեցէք զտր:

Այսինքն, դուք ղևեայ ազգդ
օրհնեցէք զտր * և ամ հաւա
տացեալք և երկիւղածք այ օրհ

և ամենեքեան ոյք
յուսացեալք են
'ի նոսա:

Տունն իէլի օրհնե
ցէք զտր * տունն
ահարոնի օրհնե
ցէք զտր:

Տունն ղևեայ օրհնե
ցէք զտր * երկիւ
ղածք տն օրհնեցէք զտր

Օրհնեալ տէր ՚ի սիո նէ * որ բնակեալն է յերուսաղէմ։

Տունք : 20·

Ալէլուիա:

Սաղմոս · ՃԼԵ·

Խոստովան եղեր ուք տն, զի բա րի է * զի յա ւիտեան է ողորմու թիւն նորա։

Խոստովան եղերուք այն աստուծոց * զի յաւիտեան է ողոր մութի նորա։

Խոստովան եղերուք տն տերանց * զի յաւի։



նեցէք և գովեցէք զտէր անձն բո լորից։

Այսինքն, օրհնեալ լիցի տէր աձ ՚ի սիոնէ, իբր ՚ի յիւր սուրբ եկե ղեցւոյն * այն աձն կասեմ որ բնակած կայ իվերինն եէմ։

Իբր, օրհնեցէք զած, զի ալէ լուիայն օրհնեցէք զած կութարգ մանի։

Այս սաղմոսումս կու յորդորէ մարգարէն օրհնել զած վասն իւր բարեգործութենն, վն հրաշիցն որ արար ՚ի յեգիպտոս, և վասն բարերարութենն որ արար իսրայէլացւոց ազգին։

Այսինքն, խոստովանեցէք այ անչափ բարութին և անչափ մեծութին ով հաւատացեալ ժողովուրդք, զէրէ բնութբ բարի է * և իւր ողորմութին յաւիտենական է։

Այսինքն, խոստովանեցէք այ ճշմարտութին ով հաւատացեալ ժողովուրդք, զէրէ ամ ըստեղծ եալ աստուծոց աձնէ * և իւր ողորմութին յաւիտենական է։

Այսինքն, խոստովանեցէք այ զօրութին և կարօղութին ով հաւատացեալ ժողովուրդք, զէ րէ ամ ըստեղծել տերանց տրնէ

*և

* և իւր ողորմութիւնն յաւի-
տենական է։

Այնինքն, նա այնչափ մեծա-
մեծ ըսքանչելիք արար թէ՝ 'ի յեր-
կինս և թէ 'ի յերկրի միայն իւր
անչափ կարողութեամբն * զէրէ
իւր ողորմութիւնն յաւիտենա-
կան է։

Այնինքն, նա ըստեղծեց զեր-
կինս և զերկնային զօրութիւնս ։
Կամ զառաքեալս և զմարգարէս
իւր անչափ իմաստութեամբն *. զէ-
րէ իւր ողորմութիւնն յաւիտենա-
կան է։

Այնինքն, հաստատեաց զեր-
կիրս ջրի տարերքին վերայ, իբր
նայելով յերկրէս դէպ 'ի յերկինս
այլ ոչ 'ի յերկնից դէպ 'ի յեր-
կիրս ։ Կամ հաստատեաց զեկե-
ղեցին իւր սուրբ 'ի մէջ զանազան
ազգաց և ժողովրդոց, զի ջուրն
զբազմութիւն ժողովրդեան նշանա-
կէ * զէրէ իւր ողորմութիւնն
յաւիտենական է։

Այնինքն, ըստեղծեց զմեծա-
մեծ լուսաւորքն, իբր զարե-
գակն և զլուսինն, որք առաջս
մարդկան երևին մեծագոյնք քան
զայլս աստեղս ։ Կամ սահմանեց
զնոր և զհին կտակարանքն առ 'ի
լուսաւորել զհոգիս մարդկան
* զէրէ իւր ողորմութիւնն յաւի-
տենական է։





Որ արար զսքանչելիս
մեծամեծս միայն *
զի յաւիտեան։

Զ երկինս արար
իմաստութեամբն իւրով
* զի յաւիտեան։

Հաստատեաց զերկիր
ի վերայ ջուրց * զի
յաւիտեան։

Որ արար զլուսաւորս
մեծամեծս * զի յա-
ւիտեան։

Զարեգակն արար
իշխանական տուընջ
եան * զի յաւիտեան:

Զլուսինն և զաս
տեղս իշխանական գի
շերոյ * զի յաւիտեան:

Եհար զերկիրն ե
գիպտացւոց անդրան
կօք իւրովք հան
դերձ * զի յա
ւիտեան:

Եւ եհան զիսրայէլ
'ի միջոյ նորա * զի
յաւիտեան է:



Այսինքն , զարեգակն լուսեղ
ծեց որ տիրէր և իշխէր ցերեկ
վան : Նա զնոյն կատարանքն
հաստատեց առ 'ի ուղղել զքրիս
տոնեայս 'ի ճանապարհս փրկու
թե * զէրէ իւր ողորմութիւն
յաւիտենական է,
Այսինքն , զլուսինն և զաստեղս
լուսեղծեց , որ տիրէին գիշեր
վան : Նա զ հին կատարանքն,
և զ հին օրինաց վարդապետան
հաստատեց առ 'ի ուղղել զը
հրէայս , որք շրջէին 'ի խաւարի
տգիտութե գիշերոյ * զէրէ իւր
ողորմութիւն յաւիտենական է:
Այսինքն , պատուհասեց եգիպ
տացւոց երկիրն սատակելով
զանդրանիկ զաւակս նց : Նա
պատուհասեց տէրն մեր յս քս
զմեղսագործ աշխարհս , և ջնջ
եաց զսկզբնական մեղս հաւատա
ցելոց իւրոց , քան զի եգիպտա
զաշխարհս կունշանակէ, և անդ
րանիկքն եգիպտոսի զմեղս ըզ
կզբնականս * զէրէ իւր ողորմու
թիւն յաւիտենական է:
Այսինքն , ազատեց և հանեց
իսրայէլացւոց ազգն 'ի յեգիպտո
սէ : Նա տէրն մեր յս քս , փր
կեց և ազատեց զիւր հաւատաց
եալքն 'ի խաւարէ կռապաշտութե
աշխարհիս այսորիկ * զէրէ իւր
ողորմութիւն յաւիտենական է:

Այս

Այսինքն , և զայս բարերարու-
թիս արար իւր ձեռաց բարձր և
ամենակարող զօրութին ցուցա
նելով ։ Կամ տրն մեր յս քս
զիւր հզօր բազուկն բարձրացու-
ցանելով և տարածելով իվերայ
խաչին * զերէ իւր ողորմութին
յաւիտենական է ։

'Ի ձեռն բարձր և բա
զուկ հզօր * զի յա
ւիտեան ։

Այսինքն , ճղեց զկարմիր ծովին
ահագին ջուրն , և երկու բաժին
արաւ ։ Կամ բաժանեց տրն մեր
յս քս զայս ծով աշխարհս 'ի յեր
կուս , իբր ջոկեց զ հաւատաց
եալս իւր մկրտութե սուրբ աւա
զանին 'ի յանհաւատից որք ոչ ու
նին զմկրտութի * զերէ իւր ողոր
մութին յաւիտենական է ։

Որ հերձ զծովն մեծ
և բաժանեաց յեր
կուս մասունս
* զի յաւիտ ։

Այսինքն , և անց կացոյց զիսրայ
էլացւոց ազգն կարմիր ծովն մի
ջովն ։ Կամ սրբեց և մաքրեց
տրն մեր յս քս զիւր հաւատաց
եալքն ջրով սրբոյ աւազանին ,
և առաջնորդեաց 'ի յերկինս *
զերէ իւր ողորմութին յաւիտե
նական է ։

Եւ անցոյց զիսրայէլ
ընդ մէջ նր * զի
յաւիտեան ։

Այսինքն , ընկղմեց և խեղդեց
զփարաւոն և զիւր զօրքն կարմիր
ծովն միջումն ։ Կամ հալածեց
և կործանեց տրն մեր յս քս զա
ներևոյթ փարաւոնն զսատանայ
իւր պաշտօնէիւքն 'ի խորս անդն
դոց * զերէ իւր ողորմութին
յաւիտենական է ։

Ընկղմեաց զփարա
ւոն , և զզօրս իւր
'ի ծով կարմիր
* զի յաւիտ
եան ։

Եւ եհան զժողովուրդ իւր յանապատ * զի յաւիտեան ։

Այսինքն , և զիւր ժողովուրդն տարաւ հանեց 'ի յանապատ ։ Եւ զիւր հաւատացեալքն ապատեց 'ի յախտից 'ի մեղաց և ի չարեաց տրն մեր յս քս և իբրև 'ի յանապատի յանդորրացոյց զնոսա ուր լսելով զձայնն յովհաննու մկրտչին որ ասէ պատրաստ արարէք զճանապարհս տն և ուղիղ արարէք զշաւիղս նորա , խնդան և փութան 'ի հայրենին իւրեանց երկնային * զերէ իւր ողորմութին յաւիտենական է ։

Եհար զազգս մեծամեծս * զի յաւիտ ։

Այսինքն , զանազան հեթանոսաց և կռապաշտից մեծամեծ ազգերն պատուհասեց ։ Եւ զզանազան մոլորութիս մեղաց , և զչարութիս այսոց պղծոց խափանեց տրն մեր յս քս * զերէ իւր ողորմութին յաւիտենական է ։

Եւ սպան զթագաւորս հզօրս * զի յաւիտեան ։

Այսինքն , և նոցա ուժեղ թագաւորքն սատակեց և փչացոյց ։ Եւ զեօթն մահացու մեղս որք թագաւորեր էին ի վերայ աշխարհի անուժացոյց և անզօրացոյց տրն մեր յս քս * զերէ իւր ողորմութին յաւիտենական է ։

Զսեհոն թագաւոր ամուրհացւոց * զի յաւիտեան ։

Այսինքն , ըսպանեց զսեհոն թագաւորն ամուրհացւոց երկրին ։ Եւ արգելեց զցանկութիւն աչաց տրն մեր յս քս որ դառն է առաջի այ քան զի սեհոն փորձութիւն աչաց թարգմանի և ամուր

հացի դառնութի * զերէ իւր
ողորմութին յաւիտենական է։
Այսինքն, կործուց զզօրս Թա
գաւորն բասանու երկրին։ Կամ
կորոյս զագահութին տրն մեր յս
քս, որ ուսուցանէ ժողովել և
գաղել զինչս և զդրամս և խռո
վեցուցանել զմարդիք, քան զի
զօվգ փակումն և գաղումն Թարգ
մանի և բասան շփոթումն և խռո
վութի * զերէ իւր ողորմութին
յաւիտենական է։

Այսինքն, և կռապաշտից երկր
ներն նոցա մուլք և ժառանգու
Թի տուեց * զերէ իւր ողորմու
Թին յաւիտենական է։

Այսինքն, ժառանգութիւն
տուեց իւր ծառային իսրայելի,
ինչպէս որ խոստացեր էր։ Կամ
զայն երկրներն որ յառաջ սատա
նայի իշխանութե տակումն էին,
մուլք և ժառանգութիւն տուեց
տրն մեր յս քս իւր հաւատացեալ
քրիստոնէից * զերէ իւր ողոր
մութին յաւիտենական է։

Այսինքն, յիշեց զմեզ տր ած
մեր խղճութե միջումն, քան զի դե
րի էինք եղեալ ՚ի ներքոյ բռնու
Թե մեղաց և սատանայի * զերէ
իւր ողորմութին յաւիտենական է։

Այսինքն, և փրկեց զմեզ մեր
երևելի և աներևոյթ Թշնամեաց
ձեռքեն * զերէ իւր ողորմու
Թին



Զօվգ Թագաւոր
բասանու * զի յա
ւիտեան։

Եւ ետ զերկիր նոցա ՚ի
ժառանգութի * զի
յաւիտեան։

Ժառանգութի իս
րայէլի ծառայի իւրոյ
* զի յաւիտեան։

Յիշեաց զմեզ տր ՚ի
խոնարհութեան մե
րում * զի յաւիտ
եան է։

Եւ փրկեաց զմեզ ՚ի
ձեռաց Թշնամեաց մե
րոց * զի յաւիտեան։

Ո՛ տայ կերակուր ա͞մց կենդանեաց * զի յաւիտեան։

Խոստովան եղերուք ա͞յն երկնաւորի * զի յաւիտեան։

Տուն. 26.

Սաղմոս դաւթի 'ի ձեռն երեմիայի:

Սաղմոս: ՃԼԶ.



Առ գետս բաբելացւոց անդ նստէաք և լայաք * ո͞ճ յիշեցաք մեք անդ զսիոն։

'Ի մէջ ուռեաց նո͞ց կախեցաք զկտակարանս մեր։



թ͞ին յաւիտենական է։

Այսինքն, այն որ կու նախախնամէ և կերակուր կու տայ ա͞մ կենդանեաց թէ բանականաց և թէ անբանից * զէրէ իւր ողորմութ͞ին յաւիտենական է։

Այսինքն, խոստովանեցէք զբարերարութիւնն ա͞յ երկնաւորի * զէրէ իւր ողորմութ͞ին յաւիտենական է։

Իբր, զայս սաղմոսս շարադրեաց դաւիթ խօսելով 'ի բերանոյ երեմիայ մարգարէին որ էր գերեալ ընդ այլոց իսրայէլացւոցն 'ի բաբելոն։

Այս սաղմոսովս կու խօսի մարգարէն 'ի բերանոյ քահանայիցն հրէից գերելոցն 'ի բաբելոն, այլև 'ի բերանոյ ընաւից քրիստոնէից գերելոց 'ի ձեռս այլազգեաց և կամ 'ի բռնութէ մեղաց։

Այսինքն, պաղտատ գետի ափին կու նստէինք և անմխիթար կու լայինք * երբոր կու յիշէինք զքեզ ո՛վ քաղցր սիոն, իբր ո՛վ քաղցր քաղաքդ երուսաղէմ։

Այսինքն, նոցա ուռի ծառերի միջումն կախեցինք մեր կտակարանքն և մեր սազերն, որ մեր թշնամիքն չի տեսանեն, և մեզ ուժով երգ ասել չի տան։

Այս

Այսինքն, տեղն այն կուապաշտ
ներն որ զմեզ գերերէին, կու
հարցանէին մեզ թէ դուք ձեր
այ օրհնութե և տաղերի բաներն
գիտէք մի * և այն մարդիքն որ
զմեզ գերի էին տարեր, մեզ ուժ
կանէին և կասէին։

Այսինքն, թէ երգեցէք մեզ
քիչ մի այն ձեր երուսաղէմայ օր
հնութիններէն և տաղերէն * իսկ
մեք պատասխանի կուտայինք, թէ
ինչպէս մեք մեր ճշմարիտ այ օրհ
նութին այս օտար երկրումն, և
կուապաշտից միջումն երգենք,
որ ոչ է արժան։

Այսինքն, ո՛հ թէ մոռանամ
ես զքեզ ով երուսաղէմ, երգե
լով զքո սաղերդ այս գերութես
միջումն * թող իմ աջ ձեռքս զիս
մոռանայ, իբր թուլանայ։

Այսինքն, թող իմ լեզուս չո
րանայ և 'ի քիմքս կպչի, թէ որ
ես հանապազ զքեզ չի յիշեմ *
և թէ որ այս գերութենէս ազա
տիլն 'ի բաց զքո գովասանքդ չի՛
երգեմ ով երուսաղէմ * որ իմ
ուրախութեան և ցնծութեան
ըսկիզբն ես, իբր քան զքեզ այլ
մեծ խնդութիւն չունիմ։

Այսինքն, բայց դու տէր ած յիշէ
եդոմայեցւոց ազգի նենգութին,
և պատժէ և պատուհասէ զնոր
եանք * որ այն օրերն որ երուսա





Անդ հարցանէին
գերիչք մեր զբանս
օրհնութե * գերե
վարք մեր ստիպէին
զմեզ և ասէին։

Օրհնեցէք մեզ յօրհ
նութենէն սիոնի * իսկ
զիարդ օրհնեսցուք
զօրհնութիս տն յեր
կիր օտար։

Թէ մոռացայց զքեզ
երուսաղէմ * մո
ռասցի զիս աջ
իմ։

Կցեսցի լեզու իմ 'ի
քիմս իմ թէ ոչ յիշե
ցից զքեզ * և թէ
ոչ նախ նախադասեցից
զքեզ երուսաղէմ *
սկիզբն ուրախու
թե իմոյ։

Յիշեա՛ տէր զորդիսն
եդոմայ * յաւուրսն
երուսաղէմի։

Ոյք ասէին քակե
ցէք քակեցէք * մին
չեւ 'ի հիմն հասու
ցէք։
Դ. ուստր բաբիլա
ցւոց թշուառական
* երանի որ հատոյց
զհատուցումն քո ,
զոր դու մեզ հա
տուցեր։

Երանի որ կալցէ ըզ
մանկունս քո * եւ
եհար զքարի։

Տունք · IO:

Սաղմոս դաւթի։

Սաղմոս · ՃԼԷ ·



Խոստովան եղէց.քեզ
տր բոլորով սրտի
իմով * առաջի հրեշ
տակաց սաղմոս ասա



զէմ կու քակէին , փոխանակ խղ
ճալոյ եւ ցաւակից լինելոյ մեզ
իբրեւ դրացիք , միաբաներ էին
քաղդէացւոց հետ եւ նոցա չար
խրատ տւող էին դարձեր։
Այսինքն , եւ նոցա սիրտ տալով
կասէին , քակեցէք.քակեցէք այդ
քաղաքդ * եւ մինչեւ հիմն հասու
ցէք որ այլ ձար չի լինի շինելոյ։
Այսինքն , եւ դու ո՛վ ողորմելի
զարմդ եւ զաւակդ բաբելացւոց
* երանի այն ժողովրդեանն որ
խնդրելով զվրէժ արդար դա
տաստանին այ , փոխանակ այն չար
եացն որ դու մեզ հատուցիր ,
քեզ հատուցումն անէ։
Այսինքն , երանի կասեմ այն
յաղթօղ ժողովրդեանն , որ ինչ
պէս որ դու մեզ արարիր * այն
պէս այլ նա քեզ անէ , եւ զքո
երեխայքդ բռնէ , 'ի քարն զար
կէ եւ զգլխներն ջնջխէ։

Իբր զայս սաղմոսս դաւիթ է շա
րադրեր , եւ երգեր։
Այս սաղմոսումս շնորհակալ կու
լինի մարգարէն զայ վասն բարե
րարութե նորա։

Այսինքն , կու խոստովանիմ տր
ած բոլորով սրտի՛ զքո անչափ
գթութիդ եւ բարերարութիդ
որ ինձ արարիր * եւ առաջի հրեշ

տակաց քեզ սաղմոս կասեմ, իբր առաջի քերոբէից քահութե , առաջի քահանայից , և առաջի երկնային զօրութեց ։

Տ. յսինքն , դու մինչև ցայսօր զիմ բերանիս խօսքն լսեցիր , և զիմ ամէն խնդրուածքս կատարեցիր * ուստի շնորհակալ լինելով իքէն կու երկրպագանեմ քոյ սբ տաճարիդ * և կու խոստովանիմ քո սուրբ անուանդ , վասն քոյ անչափ ողորմութեանդ , և վասն քոյ ճշմարիտ խոստմանցդ ։

Տ. յսինքն , դու փրկելով զիս 'ի ձեռն յն քի որդւոյ քոյ , զքո սուրբ անուանդ մեծացուցիր և փառաւորեցիր , ո՛չ միայն 'ի մէջ հրէից , այլև 'ի մէջ հեթանոսաց * արդ կու աղաչեմ զքեզ , որ այն օրն որ ես իմ նեղութե միջումն դէպ քեզ կու աղաղակեմ , դու շուտով ինձ ականջ արա՛ * և իմ անձինս շատ ուժ և կարողութի տուր , որ ես ուղիղ սրտով զքեզ օրհնեմ և փառաւորեմ ։

Տ. յսինքն , զքո անչափ մեծութիւդ և անչափ կարողութիւնդ աշխարհիս ամէն թագաւորքն և իշխանքն կու խոստովանին * զերէ լսեցին զքոյ բերանիդ խօսքերն , իբր զքո աւետարանական քարոզութիդ * և կու օրհնեն և կու պատուեն քոյ ածային օրինաց և



ցից քեզ ։

Զի լուար զբանս բերանոյ իմոյ * երկրպագից 'ի տաճար սբ քո * և խոստովան եղէց անուան քում վասն ողորմութե և ճշմարտութե քոյ ։

Մեծ արարեր յամի զանուն սուրբ քո * յորում աւուր կարդամ առ քեզ վաղվաղակի լուր ինձ * և բազում արասցես զօրութիւնս յանձն իմ ։

Խոստովան եղիցին առ քեզ ամ թագաւորք երկրի * զի լուան զբանս բերանոյ քո * և օրհնեսցեն զճանապարհս քո ։

Մեծ են փառք տն * բարձր է տր զխո նարհս տեսանէ * և զբարձունս՛ի հեռաս տանէ ճանաչէ :

Թէ գնացից ես ՛ի մէջ նեղութեանց * կե ցուսցես զիս ՛ի բար կութէ թշնամւոյն :

Զգեցեր զձեռն քո և փրկեաց զիս աջ քո * և տր հատուսցէ ընդ իմ :

Տր ողորմութի քո յաւիտեան * զգործս ձեռաց քոց մի՛ ան տես առներ :

Տունք : 8 ·



պատուիրանաց ճանապարհներն :

Այսինքն , և կասեն , թէ մեծ և անչափ է այ փառքն և պատիւն * թէպէտ բարձր և անհասանե լի է , բայց երկրիս վերայ եղած հոգւով խոնարհ մարդիկն կու տեսանէ , կու սիրէ և կու վար ձատրէ * և բարձրամիտ և հպարտ մարդիկն հեռու տեղաց կու ճա նաչէ , կու ատէ , և կու պատու հասէ :

Այսինքն , թէ որ մարդկային տկարութե և կամ ՛ի նենգութէ երևելի և աներևոյթ թշնամեաց ՛ի մէջ վշտից և նեղութեանց այլ անկանիմ * բայց յոյս հաստա տունէ որ դու զիս փրկես իմ թշ նամեաց բարկութենէն և նոցա ամ բարտաւան խօսքերէն :

Այսինքն , զէրէ քանի որ դու իմ փորձութեան և հալածանաց միջումն զքո պահպանողական ձեռքդ տարածեցիր , և քոյ աջ բազկովդ զիս փրկեցիր * ես զօ րացայ հաւատով և ասացի , ահա՛ ինքն տր աստուած ինձ տեղ ինքն իմ թշնամեացն վրէժ կու խնդրէ և հատուցումն կանէ՛ :

Այսինքն , տր այ քո ողորմու թիւդ յաւիտենական է * զքո ըս տեղծուածքդ և զքո հաւատաց եալ ծառայքդ մի՛ անտես առներ այլ քոյ աստուածային շնորհաց

օգնականութե՜ն 'ի թիկունս հա
սիր նոցա։

Իբր, զայս սաղմոս մինչև 'ի
վերջն դա՛ւիթ է՛ ասացեր։

Այս սաղմոսումն կու արդարա
ցուցանէ զինքն դա՛ւիթ առաջի
ա՛յ վասն իւր անմեղութեն և ու
ղիղ վարուցն։

Այսինքն, տ՛էր ա՛ծ դու զիս
փորձեցիր իմ տղայու
թե՛ն 'ի վեր, և զիմ
բարքս և բնութիս ճանաչեցիր
* դու ճանաչեցիր զիմ ամէն
գործքս և արարմունքս և զիմ
նստիլն և զիմ վերկենալն։

Այսինքն, դու զիմ խորհուրդս
և մտածմունքս 'ի հեռաստանէ,
իբր 'ի բարձրութէ երկնից իմա
ցար * զիմ շաւիղս, իբր զիմ
իզս և զիմ վիճակս, իբր զիմ ինչս
և զիմ ըստացուածս դու քննե
ցիր * և զիմ ամէն կենցաղավա
րութեան ճանապարհն յառաջա
գոյն, իբր 'ի յաւիտենից և յա
ռաջ քան զինիլն աշխարհի տե
սար * և գիտացիր որ իմ սրտումն
և իմ լեզվումն նենգութի և խա
բէութի չկայ։

Այսինքն, ահա դու տ՛էր ա՛ծ
ճանաչեցիր զիմ յետինն և զիմ

առաջ



'Ի կատարած դաւթի։

Սաղմոս. ՃԼԸ։

Տէր փորձեցեր
զիս և ծան
եար զիս *
դու ծանեար
զնստիլն իմ, և ըզ
յառնելն իմ։

'Ի միտ առեր զխոր
հուրդս իմ 'ի հեռաս
տանէ * զշաւիղս իմ
և զվիճակս իմ դու
քննեցեր * և զա՛մ
ճանապարհս իմ յառա
ջագոյն տեսեր * զի
ո՛չ գոյ նենգութի
'ի լեզուի իմում։

Ահա դու տ՛էր ծան
եար զյետինն իմ և



զառաջինն իմ * դու ստեղծեր զիս * և եդիր զձեռն քո ի վերայ իմ:

Սքանչելի եղև գիտութիւն քո յինէն * զօրացաւ, և ո՛չ հանդարտիմ սմա:

Յո՛ երթայց ես յոգւոյ քումէ * կամ յերեսաց քոց ես յո՛ փախեայց:

Թէ ելանեմ յերկինս դու անդ ես * և թէ իջանեմ 'ի դժոխս, և անդ մօտ ես:

Թէ առից զթևս իմ ընդ առաւօտս, և բնակեցայց յեզերս ծովու:

Սակայն և անդ ձեռն



առաջինն, իբր զիմ վախճանն և զիմ ըսկիզբն, զիմ վերջին արարմունքն, և զիմ առաջին գործքն * դու զիս յոչնչէ ըստեղծեցիր * և քոյ ա̃ծային և նախախնամողական ձեռքդ ինձ վերայ պահեցիր:

Այսինքն, քո ամենատեսութիւնդ և քո ամենագիտութիւնդ շատ ըսքանչելի և զարմանալի թուաց ինձ * և այնչափ զօրացաւ և բարձրացաւ, որ չեմ կարեր հասանիլ նմա, կամ զիմ միտքս հանդուցանել և հանդարտեցուցանել:

Այսինքն, ուր կարեմ ես գնալ որ քոյ տեսութեան և իմաստութ̃ն հոգիդ իմ արարմանցն և իմ խորհրդոցն վերահասու չէ լինի * կամ թէ ես քո երեսէդ ինչ տեղ կարեմ փախչիլ, որովհետև դու ա̃մ տեղ պատրաստ ես:

Այսինքն, թէ ելանեմ ես մտօք 'ի յերկինս, դու տեղն պատրաստ ես փառաւորեալ 'ի քոյ ա̃ծային աթոռումդ * և թէ իջանեմ 'ի դժոխս դու անդ մօտ ես քո արդար դատաստանովդ պատժելով զմեղաւորս:

Այսինքն, թէ որ ես թռչնոց նման թև առնում և թռչիմ առաւօտէնց յարևելից մինչև յարևմուտս, և գնամ բնակիմ յանդնդական ծովի եզերքն:

Այսինքն, սակայն տեղն ևս քո

ա՜ծային նախախնամութե՜ն ձեռքն ինձ կու առաջնորդէ 'ի ճանապարհս փրկութե՜ն * և քո ամենակարող աջդ զիս կու ընդունի և կու պահպանէ։

Այսինքն, ասացի իմ մտաց մէջն մի թէ գիշերվան խաւարն զիս ծածկեց մի, որ զիմ խորհուրդն և արարմունքն ա՜ծ չի տեսանէ * կամ թէ գիշերն փոխանակ լուսոյ, իբր գիշերն ցերեկվան նման զիմ մարմնաւոր փափկութե՜ն և հեշտութե՜ն մեղքն և յանցանքն հրապարակեց և յայտնեց մի առաջի ա՜յ։

Այսինքն, բայց խաւարն քոյ առաջևդ մութ չի կարեր անել * և գիշերն ցերեկի նման կու լուսաւորվի քո հրամանաւդ * և գիշերվան խաւարն այնպէս է քեզ ինչպէս ցերեկվան լոյսն։

Այսինքն, դու մինչև իմ սրտիս և երիկամունքներիս այլ տիրապետեցիր, իբր զիմ ամէն խորհուրդս և զմտածմունքս ճանաչեցիր * և զիս իմ մօրս փորէն ծնանիլն 'ի բաց ընկալար ընդունիլ և նախախնամել։

Այսինքն, ուստի կու խոստովանիմ զքո անչափ կարողութիդ և զքո անչափ իմաստութիդ, զէրէ ահեղ և ըսքանչելի ես * և քո գործքդ և արարմունքդ ըսքանչելի

քո առաջնորդեսցէ ինձ * և աջ քո ընկալցի զիս։

Ասացի խաւար ուրեմն արդեօք ծածկեաց զիս * կամ գիշեր փոխանակ լուսոյ փափկութե՜ն իմոյ։

Խաւարն 'ի քէն ոչ խաւարեսցի * և գիշերն որպէս զտիւ լուսաւոր եղիցի * և խաւար նո՜ր որպէս զլոյս նորա։

Զի դու ստացար զերիկամունս իմ * և ընկալար զիս յորովայնէ մօր իմոյ։

Խոստովան եղէց քեզ տէր զի ահեղ և սքանչելի ես * սքանչելիք են գործք քո * և անձն իմ սիրեաց յոյժ։

Ոչ թագեաւ ոսկր իմ ՚ի քէն զոր արարեր ՚ի ծածուկ * և կար զօրութե իմոյ ընդ ստորինս երկրի։

Զանգործս իմ տեսին աչք քո * և ՚ի գիրս քո ամենեքեան գրեցան։

՚Ի տուէ մոլորեցան * և ոչոք էր որ առաջ նորդէր նոցա։



չելի և զարմանալի են * վս որոյ իմ հոգիս սաստիկ սիրով սիրեց զքեզ։

Այսինքն, ես ոչինչ ոսկր չունիմ իմ բոլոր մարմնոյս մէջն գաղած որ քեզ յայտնի չի՛ լինի * զէրէ դու զիմ զօրութիւնն և կարողութիւնն կու ճանաչէիր երկրի տակումն, իբր քանի որ դեռ պարզ նիւթ էի հողի միջումն, և դեռ զիս չէիր կազմեր իբրև զմարդ։

Այսինքն, զիմ դեռ չի՛ խորհած և դեռ չի՛ գործած գործքն և արարմունքն քո ամենատես աչքդ տեսաւ * և ինչ որ ես արարեր եմ և առնելոց եմ, ամէնն քո առ դար դատաստանիդ գրքումն գրված է։

Այսինքն, բայց զքո ամենակարող զօրութիւնդ և զանչափ բարութիդ անգիտանալով բազումք ՚ի հրէից և ՚ի հեթանոսաց, տեսանելով զքո փրկագործութե լուսաւոր ցերեկն, իբր զմարդեղութի որդւոյ քո միածնի և ըզքարոզութի սրբոյ աւետարանին մոլորեցան կուրութե նախանձու և կամապաշտութեան * և ոչոք չի՛ կայր նոցա միջումն ածային գրոցն գիտակ և տեղեակ որ առաջնորդէր նոցա, և ցուցանէր զճանապարհն ճշմարտութե։

Այս

Այսինքն, բայց իմ մտաց մի ջումն սաստիկ մեծարելի և պա տուելի եղան քո բարեկամքդ տր ած, իբր քո սուրբ և ընտիր ծա ռայքդ * և մանաւանդ նոցա իշխանքն, իբր սբ առաքեալքն, որ սաստիկ զօրացան երկնային իշ խանութեամբ և անմահական փառօք։

Այսինքն, թուեցի զիւրեանք իմ մտաց միջումն և տեսայ որ քան զծովլի աւազն, իբր քան զմեղ սաւէր հրէայքն շատք են * զար թեցայ ՚ի յափշեցմանէս, և հաս տատեցայ յուսով * և այժմ ու ղիղ սրտով քեզ հետ կապված եմ տր ած։

Այսինքն, ո՛հ տր ած թէդու զմեղաւոր և ամբարիշտ մարդիկքն ըսպանանէիր և կորուսանէիր * ես սիրտ կառնէի և համարձակու թ̃ի կասէի նոցա, թէ ո՛վ անի րաւ և արիւնահեղ մարդիկք հե ռացէք ինձանից, այլև յայնպի սի բարի մարդկանցէն որ ուղիղ սրտով տ̃յ կուծառայեն։

Այսինքն, զէրէ այնպիսի մար դիկքն հակառակութեննով և չար նախանձով քոյ հաւատացնել ծա ռայիցդ քաղաքներն փուչ և անի րաւ տեղ կառնուն կու յափշտա կեն և կու տիրապետեն։

Այսինքն, ես տր ած զճշմա

Ինձ յոյժ մեծարուք եղեն բարեկամք քո ած * և յոյժ զօրա ցան իշխանք նոցա։

Թուեցի զնոսա և քան զաւազ բազմա ցան * զարթեայ և արդ ընդ քեզ եմ։

Թէ սպանանես զմե ղաւորս ած * արք արեան ի բաց եղե րուք յինէն։

՚Ի հակառակութիւն ՚ինախանձ առցեն ՚ի նանիր զքաղաքս քո։

Օ. ատելիս քո տր

առեցի * եւ 'ի վերայ թշնամեաց քոց մա շեցայ։

Յատելութի կատար եալ ատեցի զնոսա * եւ եղեն ինձ թշ նամիք։

Փորձեա՛ զիս ած եւ ծանիր զսիրտ իմ * քննեա՛ զիս, եւ ծանիր զշաւիղս իմ * եւ տես թէ իցեն անօրէնու թիւք 'ի ճանապարհս իմ * եւ առաջնորդեա՛ ինձ 'ի ճանապարհս քո յաւիտենից։

Տունք. 22

'Ի կատարած սաղմոս դաւթի

Սաղմոս. ՃԼԹ.



Ապրեցո՛ զիս տր 'ի մարդոյ չարէ * յառ նէ անիրաւէ փրկեա՛ զիս։

Խորհեցան զանօրէ նութի 'ի սիրտս իւր

րիտն ասեմ, միշտ զքո ատելեացդ ատեցի * եւ քոյ թշնամեաց արար մանցն վերայ հալեցայ եւ մաշեցայ նախանձով։

Այսինքն, կատարեալ ատելու թբ ատեցի զիւրեանս, վս նա խանձու ճշմարտութե * եւ նր համար ամենքն ինձ հետ թշնամի դարձան։

Այսինքն, տր ած փորձէ՛ զիս եւ ճանաչէ՛ զիմ սիրտս * քննէ՛ զիս եւ ճանաչէ՛ զիմ շաւիղս * եւ տես թէ իմ կենցաղավարութե ճանապարհումն անօրէնութիւն կայ մի * եւ այսպէս առաջնորդէ՛ ինձ 'ի քո յաւիտենական ճանա պարհն, իբր 'ի կեանսն յաւիտե նից։

Իբր, զայս սաղմոսս մինչեւ 'ի վերջն դաւիթ է՛ ասացեր։

Այս սաղմոսումս կու աղաչէ մարգարէն զած ազատիլ 'ի չա րութէ եւ 'ի զրպարտութէ մարդ կան իբր 'ի զուր խօսքէ։

Այսինքն, պահեցուր զիս տր ած 'ի նենգաւոր եւ 'ի չար մարդոյ ձեռքէն * եւ անիրաւ մարդոյ ճնարագիտութենէն փրկէ՛ եւ ազա տէ՛ զիս։

Այսինքն, զէրէ իւրեանց սրտի միջումն չարութի եւ անօրէնու

թիւն խորհեցան * և օրն 'ի բուն
զիւրեանք պատրաստեցին, որ
ինձ հետ պատերազմէին և հակա
ռակէին ։

Այսինքն, սրեցին իւրեանց
լեզուն ինձ վերայ կատաղած օձի
նման * և իւրեանց շրթունքի
տակումն իժ օձի զէհր դաղեցին,
որ զիս իւրեանց նենգաւոր խօս
քերովն վիրաւորէին ։

Այսինքն, պահէ և պահպա
նէ զիս տր ած մեղաւոր մարդ
կանց ձեռքէն * և չար մարդ
կանց չարագիտութէն և փոր
ձանքէն զիս ազատէ ։

Այսինքն, խորհեցան իւրեանց
սրտի միջումն որ զիմ բարի սովո
րութեց և կենցաղավարութեց
քայլքն և գնացքն խափանեն *
և ամբարտաւան և անխղճմտանք
մարդիկք ինձ թաքուն թալըք սար
քեցին ։

Այսինքն, իմ ոտքերիս առաջևն
լարեր և քղեր պատրաստեցին որ
զիս որսան * և իմ շուրջ եկած
ճանապարհն դար և փոս արա
րին, որ զիս 'ի վայր ձգեն և կոր
ծանեն ։

Այսինքն, զայս տեսանելով դէպ
քեզ աղաղակեցի և ասացի թէ
տր, դու իմ ածն ես * դու
ականջ արա իմ աղօթից և պաղա
տանաց ձայնին ։



եանց * զօր ամենայն
պատրաստեցան 'ի
պատերազմ ։

Սրեցին զլեզուս իւր
եանց ոպ զօձի * և
թունք իժից 'ի ներ
քոյ շրթանց նոցա ։

Պահեա զիս տր 'ի
ձեռաց մեղաւորի *
և 'ի մարդոյ չարէ փր
կեա զիս ։

Խորհեցան խափա
նել զգնացս իմ *
թաքուցին ամբար
տաւանք զորո
գայթ ինձ ։

Լարս ձգեցին յորո
գայթ ոտից իմոց *
շուրջ պշաւղք ի
մոլք եդին ինձ
զգայթակղու
թիւն ։

Ասացի տր ած իմ ես
դու * ունկն դիր տր
ձայնի աղօթից իմոց ։

Տ՟ր տ՟ր զօրութիւն փրկութ՟ե իմոյ * հովանի գլխոյ իմոյ յաւուր պատերազմի։

Մի՛ մատներ զիս տ՟ր ՚ի ցանկութի մեղաւորաց * ոյք խորհեցան վ՟ս իմ, մի՛ ընդվայր հարկաներ զիս։

Զի մի՛ երբէք բարձրասցին * և խորհուրդք ն՟ց մի՛ կատարեսցին * վախճան կատարածի ն՟ց վաստակ շրթանց իւրեանց ծածկեսցէ զն՟ս։

Արկցես ՚ի վերայ ն՟ց զկայծակունս հրոյ և կործանեսցես զն՟ս * ՚ի տառապանաց մի՛ կարասցեն կեալ։

Մարդոյ լեզուանոյ մի՛ յաջողեսցի ի վերայ երկրի * զայր մեղաւոր չարիք իւր որսասցեն ՚ի կորուստ։

Ծանեայ զի առնես տ՟ր զդատաստանս աղ



Այսինքն, տ՟ր ա՟ծ դու իմ փրկութ՟ե և ազատութ՟ե ուժն և կարողութի՟ն ես * և դու պատերազմի և կռուի օրն իմ գլխոյս երկաթէ սաղավարտն ես և պահապանն ես։

Այսինքն, դու տ՟ր ա՟ծ իմ թշնամեաց ցանկութ՟են դօրայ զիս մի՛ մատներ նոցա ձեռքն * և ն՟ց խորհրդոցն դօրայ զիս ոտաց կոխան մի՛ աներ։

Այսինքն, որ չի՛ լինի թէ բարձրամտին * և չի՛ լինի թէ ն՟ց խորհուրդն կատարվի * նոցա չար դիտաւորութ՟ե վախճանն որ է նոցա հայհոյիչ շրթանց վաստակն, զիւրեանք ծածկէ, իբր զիւրեանք յամօթ անէ և պատուհասէ։

Այսինքն, դու նոցա վերայ քոյ բարկութ՟ե կրակի կայծակներն թափէ, և կործանէ զիւրեանք * որ իւրեանց ծանր տառապանքէն չի՛ կարենան փրկվիլ և ազատվիլ։

Այսինքն, լեզուանի մարդն ամենևին երկրիս վերայ աջողութի չի՛ տեսանէ * և զմեղաւոր մարդն իւր չար գործքն և ճնարագիտութիւքն որսան և կորուսանեն հոգւով և մարմնով։

Այսինքն, զէրէ ես ճանաչեցի և իմացայ տ՟ր աստուած որ

դու աղքատ մարդոյն արդար դա
տաստան կանես * և 'ի մեծու
թէն անկած մարդոյ իրաւունքն
կու տեսանես ։

Այսինքն, քո արդար և ընտիր
եալ ծառայքն միշտ կու գոհա
նան քեզանից, և կու օրհնեն
զքո սուրբ անունդ * և ուղիղ
սրտով մարդիկք կու բնակին 'ի յեր
կինս առաջի քոյ երանական տե
սութեանդ ։

Իբր, զայս սաղմոս մինչև 'ի
վերջն դաւիթ է ասացեր ։

Այս սաղմոսումս կու աղաչէ
մարգարէն զա՟ծ որ լսէ իւր աղօթ
քին և տայ ինքեան զճանապարհս
զգաստութեան ։

Այսինքն, տ՟ր ա՟ծ ես դէպ քեզ
աղաղակեցի լսէ ինձ քոյ ողորմու
թե՟դ * և երբոր ես առ քեզ կու
գոչեմ, շուտով նայիր և ականջ
արա՛ իմ աղօթից և խնդրուածոց
ձայնին ։

Այսինքն, իմ աղօթքս անու
շահոտ խնկի նման ուղիղ դէպ
քեզ ելանէ, և քոյ առաջևդ ըն
դունելի լինի * և իմ ձեռաց տա
րածումն այնպէս քաղցր թուի
քեզ ինչպէս իրիկվան պատարագն
որ ըստ օրինացն մովսէսի քեզ կու
մատուցանէին ։

Այս



քատի * և զիրաւունս
տնանկի ։

Արդարք գոհասցեն
զանուանէ քում *
և բնակեսցեն ու
ղիղք առաջի
երեսաց
քոց ։

Տուն. 14.

'Ի կատարած սաղմոս դաւթի ։

Սաղմոս . ՃԽ ։

Տ՟ր կարդացի առ քեզ
և լուր ինձ * նայեաց
'ի ձայն աղօթից իմոց
'ի կարդալ իմում
առ քեզ ։



Ուղիղ եղիցին ա
ղօթք իմ ո՟պ խունկ
առաջի քոյ տ՟ր * համ
բարձումն ձեռաց
իմոց պատարագ
երեկոյի ։

Դիր տէր պահապան բերանոյ իմոյ * և դուռն ամուր շրթանց իմոց, զի մի՛ խոտորեսցի սիրտ իմ բանիւ չարութե։

Պատճառել զպատճառս մեղաց ընդ մարդս որք գործեն զանօրէնութի * և ոչ եղէց կցորդ ընտրելոց նոցա։

Խրատեսցէ զիս արդարն ողորմութբ, և յանդիմանն արասցէ * իւղ մեղաւորի մի՛ օծցէ զգլուխ իմ * այլ աղօթք իմ ընդ կամաց նր։

Սոյինքն, տէր ած դու իմ բերանիս գքո երկիւղդ պահապան դիր * և իմ շրթունքիս դուռն քո շնորհօքդ ամուր պահէ, որ չի լինի թէ իմ սիրտս զանազան չար խորհրդներով ծռվի ընդդէմ քոյ ածային հաճութեդ և ինձ անվայել և անպարկեշտ խօսքեր բարբառեցուցանէ։

Սոյինքն, որ պատճառեմ ընդ պատճառս մեղաց, երբ իմ յայտնի գործած մեղացն պատճառ գտանեմ և զիս քոյ առաջևդ արդարացուցանեմ, այնպիսի կեղծաւոր մարդկանց նման, որ հանապազ անօրէնութի գործելոյ յետնէ են, և զիւրեանց մեղքն և յանցանքն առաջի մարդկան իբրև արդարութի կու գովաբանեն * և չի՛ լինի թէ ես ևս նց ընտրութենն և մոլորած խորհրդոցն կցորդ և մասնակից լինիմ։

Սոյինքն, այլ մանաւանդ զիմ սխալանքս յանձն առնելով համբերեմ, երբոր քո օրէնաց արդարադատ վարդապետքն զիս խրատեն և զիմ արարած մեղքն և անօրէնութին իմ աչաց առաջեն դնեն, և զիս յանդիմանեն քաղցրութբ և ողորմութբ * բայց մեղաւոր մարդկանց իւղն զիմ գլուխս չի՛ օծէ, երբ նենգաւոր և խորամանկ մարդկանց խաբէու-

թեան

թեան և երեսպաշտութե խօս
քերն զիմ միտքս չի մոլորեցուցա
նէ, և զիմ հոգիս չի կորուսա
նէ * այլ աղօթքիմ 'ի կամս նմա,
իբր ինչպէս որ նոցա կամքն է, որ
այլք իւրեանց համար միշտ բարի
խնդրեն թէ և իւրեանք չար են,
ես զիմ աղօթքս քեզ կումատու
ցանեմ, որ նոցա ուղղութի և
զգաստութի պարգևես, ըստ բա
նի տն մերոյ յի քի որ ասէ բարի
արարէք ատելեաց ձերոց, և
աղօթս արարէք 'ի վերայ այնոցիկ
որք լլկեն զձեզ ։

Այսինքն, նոցա դատաւորքն և
վերակացուքն, իբր մովսէս և
այլք, վասն ոչ փառաւորելոյ
զած արգելվեցան և մնացին յանա
պատին առանց մտանելոյ յերկիրն
աւետեաց, իբր 'ի յերուսաղէմ
այն վիմի մօտն որ հրամանաւն այ
'ի զարկելն մովսէսի գաւազանով
հերձաւ և ջուր բխեց վասն իս
րայելացւոց ժողովրդեան. կամ
հրէից քահանայապետքն դպիրքն
և փարիսեցիքն իւրեանց կամա
պաշտութեն համար արգելվեցան
և մնացին 'ի մէջ մեղաց առանց
մտանելոյ յարքայութին երկնից,
հակառակելով ընդ քի որ էր վէմ
անկեան պատուական, և եղև
նոցա վէմ գլորման և վէմ գայ
թակղութե ըստ պետրոսի առա

քելոյն,



Արգելան մերձ առ
վիմին դատաւորք նց
* լուիցեն բանից
իմոց և քաղց
րասցին ։

Որպ̃ թանձրութ̃ի հողոյ զի ցփուեալ է 'ի վերայ երկրի ցրուեցան ոսկերք նց̃ մերձ 'ի դժոխս։

Առ քեզ տր̃ տր̃ են աչք իմ 'ի քեզ յուսացայ * մի՛ հաներ զոգի յինէն։

Պահեա զիս յորոգայթէ որ թաղուցաւ ինձ * 'ի գայթակղութէ գործողին զանօրէնութի։

Անկցին 'ի ցանցս նր̃ մեղաւորք * միայն եմ ես մինչեւ անցից։

Տուն ։ 10

քելոյն * այս իմ յանդիմանութե խօսքերիս ականջ անեն ած̃ապաշտ եւ երկիւղած մարդիք եւ քաղցրանան, իբր խնդան եւ զուարճանան։

Այսինքն, ինչպէս թանձր անվար եւ կոշտ երկիրն երբոր կու վարուի արօրով, կտոր կտոր կու լինի եւ կու սփռուի երկրիս երեսին վերայ. կամ ինչպէս աղբն որ վն̃ թանձրութե եւ պարարտութե արտերին կու սփռուի 'ի վերայ երկրի, այնպէս ցրուեցան ոսկերքն իսրայելացւոց յանապատին մերձ 'ի դժոխս, իբր մերձ 'ի դրունս գերեզմանաց։

Այսինքն, բայց իմ աչքս դէպ քեզ կու նայի տր̃ ած̃, եւ ես միայն 'ի քեզ եմ յուսացեր * դու զքո մարդարէական հոգիդ. կամ ած̃պաշտութե եւ շնորհաց հոգիդ ինձանից մի՛ հաներ, իբր ինձանից մի՛ վերառնուր։

Այսինքն, պահէ՛ զիս այն թալաքէն որ իմ աներեւոյթ թշնամին ինձ համար սարքեր է * եւ այն գայթակղութէն որ անօրէնութեան գործօղ եւ ճնարօղ սատանայն ինձ պատրաստեր է։

Այսինքն, նորա սարքած թօռին մէջն իւր համախոհ մեղաւորքն անկանին * ես միայն եմ տր̃ ած̃, իբր բաց 'ի քէն զօշօք չունիմ,

նիմ, դու ինձ յօգնութի հասիր մինչև որ անցանիմ անվնաս զայս վտանգաւոր աշխարհս, և հասանիմ 'ի հայրենին իմ երկնային, ուր մշտնջենաւոր խաղաղութի է և յարագուա՛րճ խնդութիւն։

Իբր, զայս սաղմոսս դաւիթ է ասացեր իմաստութե և շնորհօքն այ աղօթելով առ ած 'ի մէջ այրին, իբր 'ի մէջ մաղարային։
Նոյս սաղմոսաւն կու խօսի մարգարէն 'ի բերանոյ արդարոյ 'ի մէջ նեղութե, կամ 'ի բերանոյ քի 'ի վերայ խաչին։

Նոյնիքն, ես բարձր ձայնով առ տէրն իմ աղաղակեցի * և բարձր ձայնով զած հայրն իմ աղաչեցի 'ի վերայ խաչին։
Նոյնիքն, զիմ աղօթքս և պաղատանքս իմ հօր այ առաջեն կու սփռեմ և կու տարածեմ * և զիմ վիշտն և չարչարանքն նորա առաջեն կու պատմեմ։
Նոյնիքն, երբոր սաստիկ տառապանքէս իմ շունչս 'ի յիս նուաղեցաւ դու իմ չարչարանաց և անտանելի վշտաց շաւիղն և կերպն ճանաչեցիր * և իմացար որ իմ փրկագործ տնօրէնութե ճանապարհումն որ ես կու կենցաղա





Ի մաստութե դաւթի աղօթք 'ի ժամանակի զի էր նա յայրի անդ.

Սաղմոս. ՃԽԱ.



Ձայնիւ իմով ես առ տր կարդացի * ձայնիւ իմով զտր աղաչեցի։
Սփռեցից առաջի տն զաղօթս իմ * և զնեղութիս իմ առաջի նորա պատմեցից։

'Ի նուա՛ղել յինէն ոգւ՛ոյ իմոյ դու տր ծանեար զշաւ՛իղս իմ * 'ի ճանապարհի յոր գնայի թագուցին ինձ զորոգայթ։

Հայէի յաջմէ տեսա
նէի, և ոչոք էր որ ծա
նաչէր զիս * կորեաւ
յինէն փախուստ իմ
* և ո՛չ գտաւ խնդ
րող անձին իմոյ։

Աղաղակեցի առ քեզ
տ՟ր և ասացի, դու
ես յոյս և բաժին իմ
յերկրին կենդան
եաց։

Նայեաց տ՟ր յաղօթս
իմ զի ես խոնարհ
եղէ յոյժ * ապրեցո՛
զիս ’ի հալածչաց իմոց
զի հզօրք եղեն քան
զիս։

Տ՟ր հան ’ի բանտէ
զանձն իմ * գոհա
նամ զանուանէ
քում։

վարէի իվերայ երկրի, իմ թշնա
միքն ինձ նենգութ՟ե թալաք սար
քեցին։

Այսինքն, կու հայէի յաջ կողմն
իվերայ խաչին և կուտեսանէի որ
ոչոք չիկայր իմ բոլորքս որ զիս ճա
նաչէր * փախչելոյ և պրծանելոյ
յոյսն և դիտաւորութ՟ին կորաւ
և հեռացաւ ինձանից որովհետև
իմ բարեկամքն ևս չէին իշխեր
մօտկանալ առիս * և ոչոք չի գտ
վեցաւ որ իմ կողմն խօսէր, կամ
զիմ անձս խնդրէր, իբր զիս
ազատել կամենայր և կամ ինձ ցա
ւակից լինէր։

Այսինքն, ուստի առ քեզ հայրդ
իմ աղաղակեցի և ասացի, տ՟ր ա՟ծ
դու ես իմ յոյսն և իմ մխիթա
րութ՟ին յերկրին կենդանեաց,
իբր յարքայութ՟ե քում ա՟ծայնոյ։

Այսինքն, նայիր ուրեմն տ՟ր ա՟ծ
քո հայրական գթութ՟եդ իմ աղօթ
քիս, զէրէ ես սաստիկ տառապա
նաց և խղճութեան միջումն եմ
* և ազատէ զիս իմ հալածօղ
հրէից ձեռքէն, զէրէ սաստիկ
զօրացան ինձ վերայ քոյ ներողու
թեամբդ։

Այսինքն, տ՟ր ա՟ծ հանէ զիմ
հոգիս ’ի բանտէ գերեզմանին և
’ի դժոխոց * որ ես յարուցեալ
’ի մեռելոց գոհանամ ’իքո անչափ
բարերարութ՟եդ։

Այսինքն, զէրէ ինձ կու ըսպասեն ս͞բք և արդարք ամենեքեան, մինչև որ միջնորդութ͞բ չարչարանաց և մահուան իմոյ զքո երկնային օրհնութիւնդ փոխանակ վարձուց նոցա հատուցանես պսակելով զնոսա անմահական կենօք։

Իբր, զայս սաղմոսս այն ժամանակն ասաց Դաւիթ, երբոր իւր որդին աբիսողոմն զինքն կու հալածէր։

Այս սաղմոսումս կու խնդրէ մարգարէն զթողութիւն սխալանաց իւրոց։

Այսինքն, տ͞ր ա͞ծ լուր իմ աղօթքիս քո ողորմութ͞բդ * և ականջ դիր իմ խնդրուածքիս քո ճշմարիտ խոստմանցդ գօրայ։

Այսինքն, լո՛ւ ինձ քո արդարութենովդ և ներէ ինձ * և քո ծառայիդ հետ դատաստան մի՛ մտաներ, իբր զիմ մեղքս մանրամասնաբար մի՛ քններ * զէրէ քո առաջևդ ո՛չ ոք կենդանի մարդ արդարանալ չի՛ կարեր։

Այսինքն, իմ աներևոյթ թշնամին սատանայ զիմ անձս զանազան փորձութ͞բ և հնարագիտութ͞բ հալածեց * և զիմ կեանքս





Ինձ սպասեն արդարք մինչև հատուցես ինձ։

Տունք. Ը։

Սաղմոս դաւթի ՚ի ժամանակի զի հալածէաց զնա աբիսողոմ որդի նորա:

Սաղմոս. ՃԽԲ.

Տ լուր աղօթից իմոց * ունկն դիր խնդրուածոց իմոց ճշմարտութ͞բ քով։

Լուր ինձ արդարութ͞բ քով * և մի՛ մտաներ ՚ի դատաստան ընդ ծառայի քում * զի ո՛չ արդարանայ առաջի քո ա͞մ կենդանի։

Հալածեաց թշնամին զանձն իմ * խոնարհ արար յերկիր զկեանս իմ * և նստոյց



զիս 'ի խաւարի որպէս մեռեալ յաւիտենից։

Ձանձրացաւ յիս հոգի իմ * և սիրտ իմ խռովեցաւ յիս։

Յիշեցի զաւուրսն զառաջինս * խորհեցայ յամենայն գործս քո * յարարածս ձեռաց քոց խորհեցայ, և համբարձի առ քեզ զձեռս իմ։

Անձն իմ որպէս երկիր ծարաւի է առ քեզ * վաղվաղակի լուր ինձ Տէր զի նուաղեցաւ յինէն հոգի իմ։



խոնարհեցոյց դէպ 'ի յերկիր, երբ զիմ հոգիս խաբանօք աշխարհիս մարմնաւոր հեշտութեանց և վայելչութեանց հետևեցոյց * և զիս նստոյց մեղաց սգոյ և տրտմութեան խաւարի միջումն, ինչպէս մէկ մարդ մի որ յաւիտենից մեռած լինի, երբ շատ ժամանակ 'ի շնորհացն Աստուծոյ հեռացած լինի։

Այսինքն, զիմ թշուառութիւնս և տառապանքս յիշելով իմ հոգիս ինձնում ձանձրացաւ և զզուեցաւ * և իմ սիրտս սաստիկ տխրութեան խռովեցաւ, և շփոթեցաւ։

Այսինքն, բայց վասն մխիթարելոյ զիս յիշեցի անցած ժամանակի օրերն որ այնչափ սուրբք և արդարք քեզ հաւատարմութեամբ ծառայեցին * խորհեցայ քո ամէն հրաշալի գործքերդ, թէ որչափ խնամք և բարերարութիւն արարեր մարդկային ազգիս * և միտք արարի զքո զարմանալի ստեղծագործութիւնքդ, և հիանալով զիմ ձեռքս ուղիղ սրտով առ քեզ տարածեցի։

Այսինքն, իմ հոգիս քո շնորհացն կարօտ մնալով այնպէս է դարձեր ինչպէս մէկ ցամաք երկիր մի որ անձրևի կարօտ լինի * վասն որոյ կու աղաչեմ զքեզ որ շուտով զիմ խնդրուածքս լսես

զէրէ իմ հոգիս ամենևին 'ի յիս նուաղեցաւ ։

Այսինքն , քո ա՟ծային ողորմութն երեսն ինձանից մի՛ դարձուցաներ * որ չի նմանիմ այնպիսի մարդկանց որ զմեղս իւր մեղաց դնելով կու իջանեն 'ի դժոխս ։

Այսինքն , իմ մտաց ականջին լսել տուր առաւօտէնց , երբ կանուխ , զքո ողորմութիդ և զգըթութիդ * զէրէ ես 'իքեզ միայն եմ յուսացեր ։

Այսինքն , ցոյց ինձ քո ա՟ծային օրինաց և պատուիրանաց ճանապարհն , որ ես ըստ քոյ հաճութեանդ կենցաղավարիմ * զէրէ զիմ հոգիս և զիմ միտքս դէպ քեզ ուղղեցի ։

Այսինքն , փրկէ զիս քոյ ա՟ծային գթութեդ իմ աներևոյթ թշնամեաց ճարագիտութէն * զէրէ ես զքեզ ինձ յոյս և ապաւէն արարի ։

Այսինքն , ուսո՛ ինձ քո երկնային շնորհօքդ և խրատէ՛ զիս , որ ես զքո ա՟ծային կամքդ կատարեմ * զէրէ դու իմ ճշմարիտ ա՟ծն ես ։

Այսինքն , քո սուրբ և բարի հոգիդ ինձ առաջնորդէ 'ի յուղիղ երկիրն , երբ 'ի յերկիրն կենդանեաց և 'ի յուղիղ նաւահանգիստն յաւիտենական կենաց ։

Այս



Մի՛ դարձուցաներ զերես քո յինէն * նմանիցիմ այնոցիկ ոյք իջանեն 'ի գուբ ։

Լսելի արա՛ ինձ առաւօտու զողորմութիս քո * զի ես 'իքեզ տ՟ր յուսացայ ։

Ցոյց ինձ ճանապարհ յոր գնացից * զի առ քեզ տ՟ր համբարձի զանձն իմ ։

Փրկեա՛ զիս 'ի թշնամեաց իմոց տ՟ր * զի զքեզ ապաւէն ինձ արարի ։

Ուսո՛ ինձ առնել զկամս քո * զի դու ես ա՟ծ իմ ։

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ 'ի յերկիր ուղիղ ։

Վասն անուան քոյ Տր կեցուսցես զիս * արդարութբ քով հանցես 'ի նեղութե զանձն իմ։

Ողորմութբ քով սատակեսցես զթշնամիս իմ * և կորուսցես զամ նեղիչս անձին իմոյ * զի ես ծառայ քո եմ։

Տունք: 14

Սաղմոս դաւթի առ գողիաթ



Սաղմոս. ՃԽԳ.

Օրհնեալ Տր Այ իմ որ ուսոյց զձեռս իմ 'ի պատերազմ * և զմատունս իմ 'ի ճակատամարտ։

Ողորմութի իմ և ապաւէն իմ, օգնա



Այսինքն, Տր Այ կեցո՛ զիմ հոգիս քոյ սուրբ անուան փառացն համար * և քոյ արդար դատաստանիդ համար զիս որ զղջացեալս եմ, պահեցուր իմ աներևոյթ թշնամեաց նեղութենէն։

Այսինքն, քո անչափ ողորմութեդ սատակէ և մահացուր զիմ մոլորութիքն որ ինձ թշնամիքեն * և կորցուր այնպիսի չար ախտերն և չար սովորութիքն որ զիս կու տառապեցուցանեն * զէրէ ես 'ի մանկութենէ իմէ քո ծառայդ եմ։

Իբր զայս սաղմոսս ասաց դաւիթ վասն յաղթահարելոյն իւրոյ զգողիաթ։

Այս սաղմոսուս շնորհակալ կու լինի մարգարէն զԱյ 'ի բերանոյ եկեղեցւոյն պատերազմողի ընդդէմ սատանայի։

Այսինքն, օրհնեալ և բարեբանեալ լինի իմ Տրն և Այն, որ ուսոյց զիմ ձեռքս, իբր զիմ բանականութիս իպատերազմ ընդդէմ սատանայի * և վարժեց զիմ մատներս, իբր զիմ միտքս 'ի կռվարարութի ընդ էմ փորձութեց և ճնարադիտութեց նորա։

Այսինքն, նա է իմ ողորմութին, իբր նա է որ ինձ կուգթայ

և կու

և կու ողորմի, նա է իմ ապաւէնն, նա է իմ օգնականն, և նա է իմ փրկիչն * ես 'ի նա եմ ապաւինեալ և յուսացեալ, որ զանազան ժողովուրդս աշխարհի իմ սուրբ հաւատոյս կու հնազանդեցուցանէ։

Այսինքն, տէր աստուած ինչ է մարդս որ դու զքո աստուածութիւնդ նմա յայտնեցիր և իմացուցիր * կամ թէ ինչ է հողեղէն մարդոյ զարմն որ դու զնա կու սիրես, կու պատուես, և այդ չափ բարերարութիւն կանես։

Դարձեալ ինչ է մահկանացու մարդս, որ դու 'ի ձեռն մարդեղութեան որդւոյ քոյ միածնի նորա յայտնեցար * կամ թէ ինչ է մեղսասէր մարդոյս զարմն, որ դու զնոյն միածին որդիդ քո վասն փրկութեան նոցա 'ի մահ մատնեցիր։

Այսինքն, մարդս ոչնչութեան և ունայնութեան նմանեցաւ վասն իւր հպարտութեանն և անհնազանդութեանն և անբանից հաւասարեցաւ * և իւր կենաց օրերն շուաքի նման շուտ շուտ փուչ և անպէտք մտածմանց միջումն անց կացին։

Այսինքն, տէր աստուած խոնարհեցուր զերկինս, իբր զքո աստուածային փառքդ և փայելչութիւնդ առնելով զկերպարանս ծառայի և իջիր



կան իմ և փրկիչ իմ * ապաւէն իմ և ես յուսամ 'ի նա, ո՛ հնազանդ առնէ զժողովուրդս ընդ ինև։

Տէր ո՞վ է մարդ զի յայտնեցար դու նմա * կամ որդի մարդոյ թէ համարիս ինչ զնա։

Մարդ նանրութեան նմանեցաւ * և աւուրք նորա որպէս հովանի անցին։

Տէր խոնարհեցո՛ զերկինս և էջ * մերձեցի՛ր 'ի լերինս և ծխեսցին։

Փայլատակեա՛ զփայլատակունս քո եւ խռովեա՛ զնո՛ * առաքեա՛ զնետս քո եւ ցրուեա՛ զնոսա։

Առաքեա՛ զձեռն քո ՚ի բարձանց, եւ փրկեա՛ զիս ՚ի ջրոց բազմաց * եւ ՚ի ձեռաց որդւոց օտարաց։

Որոց բերանք իւրեանց խօսեցան զնանրու՛թի * եւ աջ նոցա աջ է մեղաց։

Ած յօրհնութիւն

՚ի յերկնէ առ ՚ի փրկել զազգ մարդկային ՚ի յունայնութէ մեղաց * եւ քո ամենատարածական քարոզութիւդ տարածելով ՚ի վերայ երկրի, մերձեցիր ՚ի լերինս, իբր բորբոքէ զդայթակղող քահանայապետսն հրէից եւ զախմարացած իշխանքն հեթանոսաց, որ իւրեանց նախանձու եւ սրտմտութե միջումն այրվին եւ ծխան։

Այսինքն, փայլատակէ՛ զքո փայլակներդ, իբր երեւեցուր զքո հրաշքդ եւ ըսքանչելիքդ եւ խռովեցուր եւ սասանեցուր զիւրեանք * ողարկէ՛ քոյ բարկութե կայծակներն եւ նետերն եւ ցրուէ՛ եւ փչացուր զիւրեանք վասն իւրեանց կամապաշտութե՛ն։

Այսինքն, ողարկէ՛ զքո ձեռքդ ՚ի յերկնից, իբր զքո սուրբ հոգւոյդ շնորքն զօգնութիւն եւ փրկէ զիս եւ ՚ի շատ ջրերէն, իբր աշխարհիս շփոթմանցն եւ փորձութեցն * եւ յայնպիսի մարդկանց ձեռքէն ազատէ զիս որ օտարաց որդիք են, իբր սատանայի եւ մեղաց ծնունդք են։

Այսինքն, նոցա բերանքն միշտ ստութի եւ խաբէութիւն խօսեցան * եւ նոցա ձեռքն մեղսագործութե եւ խորամանկութեան յետնէ են։

Այսինքն, որ ես ազատվելով

՚ի ձեռն

՚ի ձեռն յի՛ ք՛ի որդւո՛յ քոյ ՚ի սատանայէ ՚ի մեղաց և ՚ի բռնութե՛է անօրինաց զնոր օրհնութի երգեմ քեզ, իբր քրիստոնէական եր գովք բարեբանեմ զքեզ * և տասն թելէ սաղմով քեզ սաղմոսասեմ, կատարելով զտասն պատուիրանս օրինաց քոց:

Այսինքն, զերէ ով է որ մեր թագաւորացն փրկութի կուտայ, իբր ով է որ զմե՛ առաքեալքն կու փրկէ ՚ի հնարագիտութենէն սատանայի և կամարարաց նորա, եթէ ո՛չ դու * կամ ով է որ փրկեցո՛ զդաւիթ ծառայ իւր ՚ի չար թրէ, իբր ով է որ կու ազատէ զհմարիտ դաւիթն յի՛ ք՛ս ՚ի չար լեզուէն հրեից, և ՚ի բռնութենէն սատանայի, եթէ ո՛չ դու:

Այսինքն, ուրեմն փրկէ զիս, և ազատէ յայնպիսի մարդկանց ձեռքէն, որ օտարաց որդիք են, իբր սատանայի և մեղաց ծնունդք են:

Այսինքն, նոցա բերանքն միշտ ստութի և խաբէութիւն խօսեցան * և նոցա ձեռքն մեղագործութեան և խորամանկութեան ցետնէ են:

Այսինքն, նոցա որդիքն նորատունկ ծառերի նման աճողութե և ուրախութե միջումն մեծացեր են իւրեանց 'տղայութենէն իվեր



նոր օրհնեցից զքեզ * տասնաղեաւ սաղմոսարանաւ սաղմոս ասացից քեզ:

Ո՛ տացէ զփրկութի թագաւորաց մերոց * որ փրկեցեր զդաւիթ ծառայ իւր ՚ի սրոյ չարէ:

Փրկեա՛ զիս և ապրեցո՛ զիս ՚ի ձեռաց որդւոց օտարաց:

Որոց բերանք իւրեանց խօսեցան զնանրութի * և աջ նոցա աջ է մեղաց:

Որոց ուստերք իւրեանց ոպ նորատունկք հաստատեալք են ՚ի մանկութէ իւրեանց

* դստերք նոցա զարդարեալք և պաճուճեալք ՚ի նմանութի տաճարի:

Շտեմարանք նց լի են և բղխեն ՚ի միմեանս * խաշինք նց բազմածինք են և բազմանան ՚ի գնացս իւրեանց * և անդեայք նց պարարտք են:

Ոչ գոյ խրամատութի ցանկոյ նց * և ոչ աղաղակ ՚ի հրապարակս նոցա:

Արդ երանեցին ժողովրդեան որոյ այս այսպէս է * երանի ժողովրդեան որոյ տր ած է նց:

Տունք: 16.

Օրհնութէնց սաղմոս դաւթի

Սաղմոս: ՃԽԴ.



* նոցա դստերքն զարդարած և պաճուճած են, իբր ոսկեթել և մարգարտաշար շորեր են հագած կուսոց տաճարների նման:

Այսինքն, նոցա ամբարներն և մառաններն այնչափ լցվեր են աշխարհիս բարութէն և առատութէն, որ միկէն ՚ի միւսն կու կրեն իքմինն * նոցա ոչխարներն միշտ ծնանելոյ յետնէ են, և երբոր արօտ կու ելանեն կու բազմանան * և նոցա եզներն գէր և պարարտ են:

Այսինքն, նոցա պարտէզների և այգեաց պատերումն ամենևին փլած տեղ չէկայ * և նոցա քաղաքի միջումն աղաղակ և կռիւ չի լսվեր:

Այսինքն, արդ երանի տամ միես այնպիսի ժողովրդեան, քաւ լիցի * այլ մանաւանդ երանի այնպիսի ժողովրդեան կասեմ որ զտր ածն երկնի և երկրի կու պաշտէ, և զնորա օրէնքն և պատուիրանքն կու կատարէ:

Իբր զայս սաղմոս ասաց դաւիթ վասն օրհնելոյ զած:

Այս սաղմոսումս կու օրհնէ և կու փառաբանէ մարգարէն զած վասն անչափ բարերարութեան նորա:



Այսինքն, կու բարձրացուցանեմ և կու փառաւորեմ զքեզ պատմելով և քարոզելով զքո բարեգթութիդ բոլոր աշխարհի, ած իմ, զէրէ դու ես որ ըստեղծեր ես զիս 'ի յոչնչէ, և թագաւոր իմ, զէրէ դու ես որ կու կառավարես զհոգի և զմարմին իմ * և կու օրհնեմ և կու գովեմ զքո սուրբ անունդ յաւիտեանս յաւիտենից, իբր միշտ և հանապազ ։

Բարձր առնեմ զքեզ ած իմ և թագաւոր իմ * և օրհնեմ զանուն քո յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից ։

Այսինքն, ես զօրն 'ի բուն հանապազ պարտական եմ որ օրհնեմ զքեզ * և գովաբանեմ զքո ըսքանչելի անունդ, վասն քոյ անչափ բարերարութեդ և անդյի շաչարութեդ յաւիտեանս և յաւիտեանս յաւիտենից ։

Զօր հանապազ օրհնեցից զքեզ * և գովեցից զանուն քո յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից ։

Այսինքն, զէրէ մեծ է ամենակարողութին և ամենաբարութին ած և օրհնեալ է յամ արարածոց յերևելեաց և յաներևութից * և նորա մեծութենն չափ չկայ, զէրէ բոլոր աշխարհս իւր մի ջուռն պարունակեր է, իբր ընդ ամ տեղիս է տրութի նորա ։

Մեծ է տր և օրհնեալ է յոյժ * և մեծութե նորա ոչ գոյ չափ ։

Այսինքն, ամ ազգ և ազինք երկրի կու գովեն զքո զարմանալի ըստեղծագործութիքդ և բարերարութիքդ * և քո ամենակարող զօրութիդ միշտ կու պատմեն ։

Ազգ և ազգ գովեսցեն զգործս քո * և զզօրութիս քո պատմեսցեն ։

Զմեծ վայելչութիւն փառաց սրբութեան քո խօսեսցին * և զսքանչելիս քո պատմեսցեն։

Զզօրութիւն ահի քո ասասցեն * և զմեծութիւնս քո պատմեսցեն։

Զյիշատակ բազում քաղցրութեան քո բղխեսցեն * և արդարութեամբ քով ցնծասցեն։

Գթած ողորմած է Տէր * երկայնամիտ և բազումողորմ։

Քաղցր է Տէր ամենեսեան * և գթութիւն նորա ի վերայ ամենայն արարածոց իւրոց։

Խոստովան եղիցին առ քեզ Տէր ամենայն գործք քո * և սուրբք քո օրհնեսցեն զքեզ։



Այսինքն, զքո սրբութեան փառաց մեծ վայելչութիւնն հանապազ՝ ի բերան կու ունենան և կու խօսին * և զքո ըսքանչելագործութիւնքդ անդադար կու պատմեն աշխարհի։

Այսինքն, քո ահիդ և քո երկիւղիդ սարսափելի զօրութիւնն՝ ի բերան կու ունենան և կասեն ամենեցուն * և զքո անչափ մեծութիւնդ և կարողութիւնդ հանապազ կու պատմեն։

Այսինքն, քո առատ ողորմութեանդ և քաղցրութեանդ յիշատակն կու բխեն յիւրեանց բերանէն և կու քարոզեն * և զքո արդար դատաստանդ մտածելով միշտ կու ցնծան։

Այսինքն, և կասեն, թէ գթած ողորմած է Տէր Աստուած * երկայնամիտ է և բազումողորմ։

Այսինքն, քաղցր է Տէր Աստուած ամենայն մարդկանց որ ուղիղ սրտով կու աղաղակեն առ նա * և նորա գթութիւնն միշտ իւր ըստեղծուածոցն վերայ է։

Այսինքն, քո ամէն գործքդ և արարմունքդ Տէր Աստուած, զքո անչափ բարութիւնդ և իմաստութիւնդ կու յայտնեն և կու խոստովանին * և քո սուրբքդ և ընտրեալքդ զքեզ կու օրհնեն և կու գովաբանեն։

Այսինքն, քո երկնային թագա
ւորութեամբ փառքն և վայելչու
թիւն միշտ 'ի բերան ունին և կա
սեն միմեանց հետ * և քո ան
չափ զօրութեամբ կու պատմեն և
կու քարոզեն։

Այսինքն, որ յորդւոց յորդիս
ճանաչեն մարդիկ զքո ա՟ծային
զօրութիւն * և զքո թագաւո
րութեամբ մեծ վայելչութիւն և
զանճառելի պատիւն։

Այսինքն, և իմանան որ քո թա
գաւորութիւն ամենայն յաւի
տենից թագաւորութիւն է, իբր
յաւիտենական և անվախճան թա
գաւորութիւնն է * և քո տէրու
թիւն և իշխանութիւն յազգէ մին
չև յազգ է։

Այսինքն, և ասեն իւրեանց
մտաց միջումն, թէ հաւատարիմ
է տ՟ր աստուած իւր խօսքումն
և իւր խոստմունքումն * և իւր
ամէն գործքումն սուրբ և ար
դար է, իբր իւր արարմանց մի
ջումն ամենևին անիրաւութիւն
չի գտնիր։

Այսինքն, նա է որ կու հաստա
տէ զմեզ գայթակղելու, իբր նա
է որ կու յուսադրէ և կու մխի
թարէ զթերացեալս, և զյուսա
հատեալս * և նա է որ կու կանգնե
ցուցանէ զմեզ գլորելու, իբր
նա է որ իւր երկնային շնորհաց





Զփառս արքայու
թեան քո ասասցեն *
և զզօրութիւնս քո
պատմեսցեն։

Ճանաչել որդւոց
մարդկան զզօրութիւս
քո * և զփառս մեծ
վայելչութեան արքայ
ութեան քո։

Արքայութիւն քո ար
քայութիւն ա՟մ յաւի
տենից * և տէրու
թիւն քո յազգէ մինչև
յազգ։

Հաւատարիմ է տ՟ր
յա՟մ բանս իւր * և
արդար է յա՟մ գործս
իւր։

Հաստատէ տ՟ր զա՟մ
գայթակղեալս * և
կանգնէ զա՟մ գլոր
եալս։

Աչք ամենեցուն 'ի քեզ յուսան * և դու տաս կերակուր նոցա 'ի ժամու:

Բանաս զձեռն քո * և լցուցանես զամենեսեան քաղցրութ՟բ կամօք քովք:

Արդար է Տ՟ր յա՟մ ճանապարհս իւր * և ուրբ է յա՟մ գործս իւր:

Մերձ է Տ՟ր առամենեսեան որք կարդան առնա * առ ամենեսեան որք կարդան առնա ճշմարտութ՟բ:

Զկամս երկիւղածաց իւրոց առնէ Տ՟ր * աղօթից նոցա լսէ և կեցուցանէ զն՟ս:

Պահէ Տ՟ր զամենեսեան որք սիրեն զնա * և զա՟մ մեղաւորս

օգնութեամբ կու զօրացուցանէ զանկեալս 'ի մեղս, և կու առաջնորդէ նոցա 'ի ճանապարհս փրկութե՟:

Այսինքն, ամենեցուն աչքն դէպ քեզ կու նայի և 'ի քեզ է յուսացեր * և դու կու տաս նց՟ հոգևոր և մարմնաւոր կերակուրն իւր ժամանակին:

Այսինքն, դու քո Ա՟ծային և հայրական ձեռքդ կու բանաս * և կու կերակրես զամենեսեան քո քաղցրութ՟եդ և քո օրհնութ՟եդ ըստ կամաց քոց:

Այսինքն, արդար է Տ՟ր Ա՟ծ իւր ամէն օրինաց և պատուիրանաց ճանապարհումն * և սուրբ է իւր ամէն գործոց և արարմանց միջումն:

Այսինքն, մերձ է Տ՟ր Ա՟ծ իւր օգնութ՟են ա՟մ մարդկանց որ դէպ առնա կու աղաղակեն * բայց մանաւանդ այնպիսի մարդկանց որ կու աղաղակեն առնա ուղիղ սրտիւ և ճշմարտութ՟բ:

Այսինքն, Ա՟ծ միշտ իւր երկիւղած ծառայից կամքն կու կատարէ * և նոցա աղօթիցն և խնդրուածոցն կու լսէ, և զիւրեանց հոգին կու կեցուցանէ:

Այսինքն, Տ՟ր Ա՟ծ կու պահէ և կու պաշտպանէ այնպիսի մարդիկն որ ուղիղ սրտով կու սիրեն

զինքն

զինքն * և ամբարիշտ և մեղաւոր
մարդիկքն կուսատակեցուցանէ և
կուկորուսանէ ։

Այսինքն, ուստի իմ բերանս
միշտ այ օրհնութիւն կուխօսի և
կուբարբառի * և ամ կենդա
նիք կուգովեն և կուփառաբա
նեն զնորա սուրբ և երկրպագե
լի անուննն յաւիտեան և յաւիտ
եանս յաւիտենից, իբր միշտ և
հանապազ ։

Իբր այս սաղմոսիւս օրհնեցէք զած
վասն ազատութեն անգեայ և
փաքարեայ ՚ի գերութենէն իւր
եանց ։

Այս սաղմոսումս կու խրատէ
մարգարէն զհաւատացեալս դնել
զյոյս իւր առ ած և ոչ ՚ի մարդիկք ։



Այսինքն, ով անձն իմ որչափ
որ քո ուժդ և կարո
ղութիդ է՛ օրհնէ՛ զտր
ած * զէրէ ես դրի իմ մտաց մէջն
որ քանի կենդանի եմ, օրհնեմ
և փառաբանեմ զած * և քանի
որ կամ այս աշխարհիս վր սրտի
մտօք իմ այ առաջեւն սաղմոսեր
գութի անեմ ։

Այսինքն, և դուք ով մարդիկք
մի՛ յուսայք իշխանաց և թագա
ւորաց յօգնութեն * և մի՛ ապա

ւինիք



սատակէ տր ։

Օ օրհնութիւս տն
խօսեսցի բերան իմ *
օրհնեսցէ ամ կենդա
նի զանուն սուրբ նր
յաւիտեան և յաւիտ
եանս յաւիտենից ։

Տունք. 22.

Ալէլուիա անգեայ և զա
քարեայ ։

Սաղմոս. ՃԽԵ.



րհնեա անձն
իմ զտր * օր
հնեցից զտր
՚ի կեանս իմ * սաղ
մոս ասացից այ իմոյ
մինչև եմ ես ։

Մի յուսայք յիշխանս
* և մի՛ յորդիս մարդ
կան * զի ոչ գոյ փր



կութիւն 'ի նոսա ։

Ելցէ հոգի 'ի նոցա
նէ և դարձցին անդ
րէն 'ի հող * և յայնմ
աւուր կորիցեն ամ
խորհուրդք նց ։

Երանի ազգի որոյ Տր
Ած յակոբայ օգնա
կան է նմա * և յոյս
նր 'ի Տր Ած է ։

Որ արար զերկինս և
զերկիր զծով * և զամ
որ է 'ի նոսա ։

Որ պահէ զճշմար
տութի յաւիտեան *
և առնէ իրաւունս
զրկելոց ։

Տայ հաց քաղցելոց *
և արձակէ զկապեալս
Տր ։



ւինիք հողեղէն և մահկանացու
մարդկանց յուսադրութին * զէ
րէ 'ի նոցանէ ոչ իւրեանց և ոչ
ձեզ փրկութի չկայ ։

Այսինքն, կու ելանէ նոցա հո
գին հրամանաւն այ 'ի մարմնոց
նց և ինչպէս որ 'ի հողէ են ըստեղ
ծած այնպէս 'ի հող կու դառ
նան * և այն օրն կու կորնչի նոցա
ամէն խորհուրդն և դիտաւո
րութիւնն ։

Այսինքն, երանի այնպէս ազգին
որ Տր Ածն յակոբայ, իբր ըստեղ
ծօղն երկնի և երկրի իւրն օգնա
կան և պահապան է * և իւր յոյսն
միայն յԱծ է դրեր, և ոչ 'ի մարդ ։

Այսինքն, 'ի յայն Ածն կասեմ
որ արարեր է զերկինս և զերկիր
և զծով 'ի յոչնչէ * և զամ ինչ
որ 'ի յերկնքումն 'ի յերկրումն
և 'ի ծովում կու գտնվին, թէ կեն
դանիք և թէ անկենդանք, թէ
մարմնաւորք և թէ անմարմինք ։

Այսինքն, 'ի յայն Ածն կասեմ
որ զիւր բանից և խոստմանց ճշ
մարտութին յաւիտեանս յաւի
տենից հաստատուն կու պահէ * և
խղճերի և զրկածների իրաւունք
և արդար դատաստան կանէ ։

Այսինքն, նա է որ աղքատաց և
կարօտելոց հոգևոր և մարմնա
ւոր հաց կու տայ * և կապված
և գերի անկած մարդիկն թէ 'ի

բռնու

բունութենէ մարմնաւոր իշխանաց, և թէ 'ի բունութէն սատանայի կու արձակէ և կու ազատէ։

Մ՚յսինքն, նա է այն տէրն որ հոգւով և մարմնով կուրացելոց աչքն կու բանայ և նոցա ճանապարհ ճշմարտութե կուցուցանէ * նա է այն տէրն որ գայթակղութե գլորած և 'ի մէջ մեղաց խրոււած մարդիկքն 'ի ձեռն ապաշխարութե ոտից վերայ կու կանգնեցուցանէ։

Մ՚յսինքն, նա է այն տէրն որ կու սիրէ արդար և միամիտ մարդիկքն * կու պահէ և կու պահպանէ ըղպանդուխտս, իբր զօտարականս * զորբերն և զայրիքն կու ընդունի և կու նախախնամէ * և ամբարիշտ և անօրէն մարդկանց չարաճնարութե ճանապարհն կու կորուսանէ։

Մ՚յսինքն, վասն որոյ ուրախ լեր ով սիոն մայր եկեղեցի զէրէ քո ճշմարիտ տէր և փրկիչդ յաւիտեանս յաւիտենից թագաւորութի կանէ յազգէ մինչև յազգ և թագաւորութի նր վախճան չի ունենար։

Իբր, այս սաղմոսիւս օրհնեցէք զտէր վասն ազատութե և դարձմանն անգեայ և զաքարեայ 'ի յերուսաղէմ։





Տէր բանայ զաչս կուրաց * և կանգնէ զգլորեալս տէր։

Տէր սիրէ զարդարս * տէր պահէ զպանդուխտս * զորբս և զայրիս ընդունի տէր * և զճանապարհս ամպարշտաց կորուսանէ։

Թագաւորեսցէ տէր յաւիտեան տէր քո սիոն յազգէ մինչև յազգ։

Տունք: ԺԹ·

Ալէլուիայ անգեայ և զաքարեայ։

Սաղմոս · ՃԽԶ·



Օրհնեցէք զՏէր զի բարի են սաղմոսք * այ մերում քաղցր եղիցի օրհնութիւն։

Շինէ զԵրուսաղէմ տր * և զցրուեալսն Իսրայէլի ժողովէ։

Բժշկէ զբեկեալս սրտս * և պատէ զամ վէրս նոցա։

Ո՛ թուէ զբազմութի աստեղաց * և զամենեսեան զնոսա յանուանէ կոչէ։

Այս սաղմոսումս կու յորդորէ մարգարէն զհաւատացեալս օրհնել զած։

Այսինքն, օրհնեցէք զՏէր ով հաւատացեալ ժողովուրդք սաղմոսերգութբ, զէրէ խիստ լաւ կու թուի այ առաջին սաղմոսերգութին * և ձեր օրհնութին և գովութին այ առաջին քաղցր և հաճելի կու լինի։

Այսինքն, զէրէ կու շինէ տր ած զԵրուսաղէմ, իբր զոբ եկեղեցի 'ի կենդանի և 'ի բանական քարանց * և զցրուեալ Իսրայելացւոց ժողովուրդքն, իբր զիւր հաւատարիմ և ընտրեալ ծառայքն կու ժողովէ նորա մէջն։

Այսինքն, կու բժշկէ զփղձկած սիրտս, իբր զզղջացած և զխղճահար եղած մարդիկքն * և նոցա խոցերին վերայ դեղ կու դնէ, և կու կապէ, իբր նոցա սրտի տխրութիւնն կու փարատէ և կու մխիթարէ։

Այսինքն, նա կու թուէ զբազմութի ընտրելոցն որք կու փայլեն իբրև զաստեղս արքայութեն երկնից * և իւր անչափ իմաստութեն նոցա ամենեցուն անունն գիտէ, և ըստ իւրաքանչ իւրոց արժանաւորութեցն նոցա վարձ կու տայ յարքայութեն իւրում։

Այս

Մ.յսինքն, զէրբ մեծ է տր ած և մեծ է նորա ամենակարող զօրութին * և նորա իմաստութեն չափ չկայ.

Մ.յսինքն, կու ընդունի և կու սիրէ տր ած հեզ և խոնարհ մարդիքն * և կու խոնարհեցուցանէ և կու ցածացուցանէ զհպարտ և զամբարտաւան մարդիքն մինչև յերկիր.

Մ.յսինքն, արդ ով հաւատացեալք օրհնեցէք զտր ած խոստովանելով նորա անչափ բարութին * և սաղմոս ասացէք նմա օրհնութե և գովութե.

Մ.յսինքն, այն այն կասեմ որ զդեցոյց զերկինս, իբր զաւաք եալքն ածային գիտութե ամպերովն * և պատրաստեց զանձրև իւր յերկիր, իբր զանձրև աւետարանական քարոզութե եկեղեցւոյ իւրոյ սրբոյ.

Մ.յսինքն, այն որ լեռներումն խոտ բուսոյց, իբր եկեղեցւոյ վարդապետքն ածային օրինաց և պատուիրանաց գիտութեն հարստացոյց * և աւետարանական կանանչ և դալար քարոզութեն առատացոյց 'ի պէտս փրկութե ազգի մարդկան.

Մ.յսինքն, այն որ անասնոց կերակուր կուտայ, իբր զյիմարս և զտգէտս աշխարհիս կու կոչէ 'ի

Մեծ է տր մեր և մեծ է զօրութի նր * իմաստութե նորա ոչ գոյ թիւ.

Ընդունի զհեզս տր * և խոնարհ առնէ զամբարտաւանս մինչև յերկիր.

Օրհնեցէք զած խոստովանութե * սաղմոս ասացէք նմա օրհնութե.

Ո' զդեցոյց զերկինս ամպովք * և պատրաստարար զանձրև իւր յերկիր.

Բուսոյց զխոտ 'ի լերինս * և զդալարի 'ի ծառայութի մարդկան.

Ո' տայ անասնոց կերակուր * ձագուց ագռաւուց որք կար

դան առ նա ։

Ո՛չ թէ ընդ զօրու-
թեա ձիոյ կամեցաւ
տր * և ո՛չ ընդ երանս
առն հսկայի հա
ճեցաւ ։

Այլ հաճեցաւ տր
ընդ երկիւղածս իւր
* և ընդ այնոսիկ որք
յուսան յողորմութի
նորա ։

Տունք. 12.

Ալէլուիայ անգեայ և զա
քարեայ :

Սաղմոս. ՃԽԷ.

Գովեա երուսաղէմ
զտր ։





գիտութի ճշմարտութե , և իւր
ածային քաղցրութեն կու կե
րակրէ զիւրեանք * և ագռաւնե
րի ձագերին , իբր մեղք սևաց
եալ մարդկանց զարմն և զաւակն
'ի ձեռն ապաշխարութե կու ըն
դունի , և իւր ածային շնորհացն
մասնակից կանէ ։

Այսինքն , զէրէ չէ թէ ձիոյ
ուժն և կարօղութին , իբր ամ
բարիշտ մարդկանց գոռոզութին
և հպարտութին դուր կու գայ
ած * կամ թէ հսկայ և քաջ մարդ
կանց հաստ երաներին և անդամնե
րին , իբր մեծահամբաւ մարդ
կանց քաջութեց և զարմանալի
գործոցն հաճեցաւ ած ։

Այսինքն , այլ հաճեցաւ իւր
երկիւղած և ջնազանդ ծառայիցն
* և այնպիսի մարդկանցն որ
միայն յիւր ողորմութին են յու
սացեր և ապաւիներ ։

Իբր , այս սաղմոսիւս օրհնեցէք
զած 'ի բեբրանոյ անգեայ և զաքա
րեայ մարգարէից , զի ալէլուիայն
օրհնեցէք զած կու թարգմանի ։
Այս սաղմոսուս կու յորդորէ
մարգարէն զհին և զնորն երու
սաղէմ օրհնել և գովել զած ։

Այսինքն , գովէ՛ ո՛վ երուղէմ հրէ
աստանի զտրն և զստեղծօղն քո ։

Այս

Այսօր, և օրհնէ և փառաբա
նէ սբ նորոգ սիոն մայր եկեղեցի
զքս ած փրկիչն քո։

Այսօր, զէրէ ամրացոյց ած
սբ երուսաղէմդ հրէաստանի զքո
դռներիդ նգերն և փակերն *
և օրհնեց և բազմացոյց զքո հա
ւատացեալ որդիքդ և զդստերքդ
քոյ միջումդ։

Պարծեալ զօրացոյց և հաստա
տեց սբ մայր եկեղեցի զքոյ առա
քելոց և վարդապետաց երկնային
իշխանութին * և օրհնեց և բազ
մացոյց զքո հաւատացեալ որ
դիքդ ՚ի քեզ։

Այսօր, այն որ քոյ սահմանք
ներիդ և քոյ գաւառներիդ բո
լորքն խաղաղացոյց սբ երուսա
ղէմդ հրէաստանի, և զքեզ քոյ
թշնամեաց պատերազմէն և բռ
նութէն ազատեց * նոյնն զքեզ
հարստացոյց առատութբ ցորենոյ
և հացի։

Պարծեալ այն որ քո բովանդակ
հնազանդեալ ազգքդ և ազինքդ
հաշտեցոյց ընդ հօրն երկնաւորի
սբ մայր եկեղեցի * նոյնն պարար
տութբ ածայնոյ հացի մարմնոյն
իւրոյ յագեցոյց զքեզ։

Այսօր, նա կու ողարկէ զիւր
խօսքն յերկիր սբ երուսաղէմդ
հրէաստանի, իբր կու յայտնէ զիւր
բարեհաճութին երկրի և երկրայնոց

և շու

Նու օրհնեա զած քո
սիոն։

Զի զօրացոյց զնիգս
դրանց քոց * և օրհն
եաց զորդիս քո
՚ի քեզ։

Որ եդ զսահմանս քո
՚ի խաղաղութի * պա
րարտութբ ցորենոյ
լցոյց զքեզ։

Առաքէ զբան իւր
յերկիր * վաղվաղ ըն
թասցի պատգամք
նորա։

Օրհնեցէք սբք եւ խոնարհք սրտիւք զՏր * օրհնեցէք։

Օրհնեցէք Անանիա, Ազարիա, եւ Միսայէլ զՏր * օրհնեցէք։

Տունք : 48.



Այսինքն , օրհնեցէք ով սբք եւ խոնարհք սրտով մարդիկք զՏր , վասն անչափ բարութեն նորա , որով խոստացեալ է ձեզ զտեսութին իւր ածային * օրհնեցէք։ Այսինքն , օրհնեցէք ով Անանիա , Ազարիա , եւ Միսայէլ զՏր , վասն անչափ գթութեան նորա , որով փրկեաց զձեզ 'ի հնոցէն բորբոքելոյ * օրհնեցէք եւ այլն։ Պարզել , օրհնեցէք ով հովիւք եւ առաջնորդք զՏր , որք իբրեւ զամպս հովանի եւ պահապան էք հօտին քի , քան զի անանիային ամպք ածն Թարգմանի ։ Օրհնեցէք ով ածաբան վարդապետք զՏր , որք բարի խրատիւք ձերովք 'ի յօգնութին կու հասանիք հօտին քի , փրկելով զնոսա 'ի փորձութենէ դայլին սատանայի , քան զի ազարիային օգնութին ածն Թարգմանի ։ Օրհնեցէք եւ դուք ով հաւատացեալ քրիստոնեայք զՏր , որք էք ոչխարք խնդրեցեալք 'ի քէն քաջ հովուէն ձերմէ , քանզի միսայէլն ով խնդրեցեալ Թարգմանի * օրհնեցէք եւ այլ։

Իբր զայս օրհնութիս երգեաց
երանելի կոյսն մարիամ առ հայրն
երկնաւոր, երբոր գնաց՚ի տես սր
բոյն եղիսաբեթի որ էր դուստր
սաբէի քրոջն աննայի մօր իւրոյ։



Այսինքն, որով հետեւ ամե
նակարող եւ ողորմածն
ած յայտնեաց քեզ
հոգւովն սրբով զանքննելի խոր
հուրդ մարդեղութեն բանին իւ
րոյ ով եղիսաբեթ ազգականդ
իմ, զոր աւետեօք հրեշտակա
պետին գաբրիէլի, եւ եկաւորու
թբ հոգւոյն սրբոյ տնօրինեաց
՚ի յիս, բանամ եւ ես զբերան իմ,
քան զի ոչ կարեմ թագուցանել
զանչափ բարերարութի նորա որ
արար ինձ եւ ոչ միայն ինձ, այլ եւ հա
սարակ բնութեն ազգի մարդկան
եւ կասեմ թէ իմ անձս, իբր իմ
հոգիս լցեալ երկնային խնդու
թբ, եւ իմ լեզուս շարժեալ հո
գւովն սրբով կու մեծացուցա
նէ, կու գոհանայ եւ կու փառաբա
նէ զած եւ զտրն բոլորից, կու մե
ծացուցանէ վն ամենառատ բա
րութեն նր, կու գոհանայ վն մե
ծի բարերարութեն նորա, եւ կու
փառաբանէ վասն օգնականու
թեան շնորհաց նորա * եւ իմ հո
գիս, իբր իմ միտքս, եւ իմ բա



Օրհնութի մարիամու ած
ածնին։ Ղուկաս։ I.



Մեծացուս
ցէ անձն իմ
զտր * եւ ցն
ծասցէ հո
գի իմ ած փրկչաւ
իմով։



Այց արար ի վերայ խոնարհութե աղախնոյ իւրոյ * այսու հետև երանեսցեն ինձ ամ ազգք։

նական իմացողութիւս կուցնծայ կուրախանայ, և կուզուարճանայ իմ կուսական արգանդիս ամէն օրհնեալ պտղովս, որ է ած իմ և փրկիչն իմ, և ած և փրկիչ տանն նոր իսրայէլի։

Այսինքն, նայեցաւ և ետես ած զիւր աղախնոյ սրտի խոնարհութիւն, որ ամենևին չէր մեծամտիր իւր համբերութեանն վերայ, իւր բարեպաշտութեն վերայ, իւր անմեղութեն վերայ և իւր անարատութեն վերայ, այլ զինքն քան զամ կանայս, և քան զամ կուսանս անարգ կուհամարէր, և ընտրեաց զնա 'ի մայրութի որդւոյ իւրոյ միածնի, և համեցաւ 'ի նա, ըստ այնմ որ ասէ եսայի, ես յո՛ հանգեայց, եթէ ո՛չ 'ի հեզս և 'ի խոնարհս, և որք դողան 'ի բանից իմոց, և ըստ այնմ որ ասէ դաւիթ, ո՛վ է որպէս տր ած մեր, 'ի բարձունս բնակեալ, և զխոնարհս տեսանէ յերկինս և յերկրի։ Քանզի և որդին իւր միածին որ ծնանելոցն է յինէն մարմնով, հեզ է և խոնարհ, ըստ այնմ որ ասէ եսայի, ուրախ լեր դուստր սիոնի, քարոզեա՛ դուստր երուսաղէմի, ահա՛ թագաւոր քո գայ առ քեզ արդար և փրկիչ, նոյնն հեզ, և հեծեալ 'ի վերայ

իշոյ,

իշայ, և յաւանակի նորայ * ուս
տի այսուհետև ամենայն ազգք և
ազինք ինձ երանի պիտին տալ,
քան զի ըստեղծօղն ամ՟ի զիս ազա
խինս թագուհի երկնի և երկրի
հաստատեաց, ինձնով զանէծս
Եւայի եբարձ, և ամ՟ դստերաց
նոր սիոնի զօրհնութիւն շնորհ
եաց, իմ խոնարհութ՟բս ըզ
հպարտութիւն բելիարայ յաղթա
հարեաց, և իմ միածին որդւովս
զազգս մարդկան 'ի դերութենէ
նորին ազատեաց։

Այսինքն, ած՟ զիս մեծամեծ և ըս
քանչելի շնորհօք զարդարեաց և
դերագոյն փառօք պատուեաց և
մեծարեաց, քան զի զխորհուրդս
փրկութե՟ տանն իսրայելի զոր յա
ռաջագոյն յայտնեալ էր աբրա
համու ասելով թէ 'ի չորրորդում
ծննդոց դարձցին այսր, 'ի յիս
կատարեաց, զի առաջին ծնունդն
որ էր ադամայ, եղև առանց մար
դոյ և առանց կնոջ, երկրորդն
որ էր Եւայի, եղև 'ի մարդոյ
առանց կնոջ, երրորդն որ էր հա
սարակաց, եղև 'ի մարդոյ և 'ի
կնոջէ, իսկ չորրորդն որ էր որդ
ւոյն այ՟, եղև 'ի կնոջէ առանց
մարդոյ, իբր յինէն, բայց գոր
ծակցութե՟ սուրբ հոգւոյն և
այս զարմանալի և հրաշալի ծննդ
եամբս ճշմարիտ որդիքն հօրն հա

ւա

Արար ընդ իս մեծա
մեծս * հզօրն * և ս՟բ
է՛ անուն նորա։

Ողորմութի արար յազգաց յազգս եր
կիւղածաց իւրոց * և արար զզօրութի
բազկաւ իւրով։

ւատոյ աբրահամու , ազատելոց
են 'ի յեգիպտոսէ , իբր 'ի դժո
խոց և 'ի գերութենէ սատանայի
և մտանելոց են 'ի յերկիրն աւետ
եաց , իբր 'ի յերկիրն կենդան
եաց և 'ի վերինն երուսաղէմ *
և զայս շնորհս և բարերարութիս
արար ինձ այն որ հզօրն է , իբր
այն որ ամենակարող է և առաջի
նորա ո՛չ տկարանայ ա՟մ բան * և
իւր անուննն սուրբ է՛ ըստ այնմ
որ ասէ եսայի , սբ սբ սբ տր զօ
րութեց , լի են երկինք և երկիր
փառօք նորա և ըստ այնմ որ ասէ
յոհաննէս , սբ սբ սբ տր ամենա
կալ , որ էնն և որ էս և որ գա
լոց էս ։

Այսինքն , ողորմեցաւ ա՟ծ և
'ի գութ շարժեցաւ իւր երկիւ
ղած և հաւատարիմ ծառայիցն
վր , իբր թէ նախահարց և թէ
նոցին յետնէ եկած զարմից և
զաւակացն , որք 'ի միտ ածելով
հանապազ զբանս սրբոց մարգա
րէից հաստատուն յուսով և կա
տարեալ հաւատով կու ըսպա
սէին գալստեան որդւոյ նր միած
նի և կամեցաւ փրկել և ազատել
զնոսա 'ի տառապանաց իւրեանց,
իբր 'ի կապանաց և 'ի պարտաւո
րութենէ մեղաց առաջնոյ մար
դոյն , 'ի յիշխանութէ խաւարին
և 'ի բռնութենէ սատանայի յազ

դէ յազգ մինչև յաւիտեան * և
զայս զօրութիւնս, իբր զայս յաղ
թութիս արար բազկաւ իւրով,
իբր յի՟ւ ք՟իւ , որ է զօրութի և
բազուկ տ՟ն , ըստ այնմ որ ասէ
պօղոս , իսկ զ ք՟ս ա՟յ զօրութի և
ա՟յ իմաստութի, և ըստ այնմ որ ասէ
եսայի , տ՟ր ո՛ հաւատաց լրոյ մե
րում և բազուկ տ՟ն, իբր տ՟րն մեր
յ՟ս ք՟ս ում յայտնեցաւ ։

Այսինքն , ցրուեց փչացոյց և
յամօթ արար զամբարտաւանս
իւրեանց մտաց նենգաւոր և խո
րամանկ դիտաւորութ՟քն , իբր
թէ զ հրէայս որք յուսացեր էին
՚ի յերևելի օրինապահութիւնս
իւրեանց և թէ զ հեթանոսս ,
որք կու պարծենային ՚ի բնական
գիտութիս իւրեանց , ըստ այնմ
որ ասէ պետրոս , տ՟ր ամբարտա
ւանից հակառակ կայ * քակեց
կործանեց և ՚ի վայր ձգեց ՚ի յիշ
խանութէ և յաթոռոց իւրեանց
զզօրացեալս չարութ՟բ , իբր զբե
լիար և զ համախոհս նորա , ըստ
այնմ որ ասէ եսայի , զի արդ ան
կաւ յերկնից արուսեակն որ ընդ
առաւօտն ծագէր , անկաւ յեր
կիր և խորտակեցաւ որ առաքէր
առ ա՟մ ազգս, և ըստ այնմ որ ասէ
դանիէլ և յորժամ բարձրացաւ
սիրտ նորա և հոգի ն՟ր զօրացաւ
՚ի յամբարտաւանիլ , անկաւ յա





Ցրուեաց զամբար
տաւանս ՚ի մտաց սր
տից * և քակեաց ըզ
հզօրս յաթոռոց ։

Զ խոնարհս բարձ րացոյց * զկարօտս ելից բարութբ̃ * և զմեծատունս արձակ եաց ունայնս:

Պաշտպանեաց իսրայ ելի ծառայի իւրոյ * յիշելով զողորմու թի̃ իւր:





թուոյ թագաւորութե̃ իւրոյ, և պատիւն նր̃ բարձաւ 'ինմանէ:

Ո՜յսինքն, զխոնարհս և զհեզս աղքատացելոյ և անկելոյ բնութես մարդկայնոյ, բարձրացոյց պատուեց և փառաւորեց 'ի ձեռն մարդեղութե̃ և շնորհաց որդւոյ իւրոյ միածնի * զկարօտս և զփափաքօղս երկնային հացին և անմահական ջրոյն, իբր իմաստութե̃ և շնորհաց իւրոց ածայնոց, յագեցոյց լիացոյց և առատացոյց աւետարանական ճշմարտութե̃ * իսկ զմեծատունս որք հեշտացեր էին 'ի վայելչութիս աշխարհի և հպարտութե̃ և ամբարտաւանութե̃ կու անարգէին զբանն այ̃, դատարկ և ունայն 'ի բաց արձակեց, ըստ այնմ որ ասէ դաւիթ մեծամեծք աղքատացան և քաղցեան, և ըստ այնմ որ ասէ յակոբոս, մեծատունն հանդերձ շահիւքն իւրովք թարշամեսցի:

Ո՜յսինքն, պահպանեց նախախնամեց սիրեց և ընդունեց զհաւատարիմ և զճշմարիտ ծառայն իւր զնորին իսրայէլ, իբր զհաւատացեալս 'ի քս̃ միջնորդութե̃ փրկագործ տնօրէնութե̃ որդւոյ իւրոյ միածնի, պահպանեց իբրև հովիւ, նախախնամեց իբրև զտր̃ սիրեց իբրև զհայր, և ընդունեց իբրև զբարեկամս * յիշելով

զհուր առաջին ողորմութիւնն և
զգթութիւն որ արարեր էր նց նա
խահարցն հետ , փրկելով զնոսա
'ի զանազան փորձութեանց և 'ի
վտանգից , և ազատելով զնոսա
'ի ձեռաց թշնամեաց նոցին և այս
է այն ողորմութիւնն զորմէ խօ
սի դաւիթ ասելով , զողորմու
թիս տն յաւիտեան օրհնեցից ,
և ողորմութէ տն լի եղև երկիր ։
Այսինքն , և զայս ողորմութիս
և նախախնամութիս արար ած
որդւոցն նոր իսրայէլի ինչպէս
որ յառաջ խօսեցեր էր մեր նա
խահարցն հետ թէ աբրահամու
թէ իսահակայ և թէ նոցա զար
մից և զաւակացն հետ մինչև յա
ւիտեան , ըստ այնմ որ վկայէ
ծննդոց գիրքն ասելով , ել յերկ
րէ քումմէ և յազգէ քումմէ և 'ի
տանէ հօր քո և եկ յերկիր զոր
ցուցից քեզ և արարից զքեզ
յազգ մեծ և օրհնեցից զքեզ , և
մեծացուցից զանուն քո , և եղի
ցիս օրհնեալ , օրհնեցից զօրհ
նիչս քո և անիծեցից զանիծիչս
քո , և յայլում տեղւոջ ժառան
գեսցէ զաւակ քո զդրունս թշ
նամեաց իւրոց , և 'ի զաւակի
քում օրհնեսցին ամ ազգք երկ
րի , իբր 'ի քս յս , որ է 'ի զարմէ
և 'ի զաւակէ աբրահամու ։

Որպէս խօսեցաւ
առ հարսն մեր , ընդ
աբրահամու և զա
ւակի նորա յա
ւիտեան ։

Օրհնութի զաքարեայ հօրն յովհաննու մկրտչի։
Ղուկաս. Ա.


րհնեալ տր ած իսրայէլի, որ յայց ել * և արար զփրկութի ժողովրդեան իւրոյ։

Օրհնութի և շնորհակալութի երկիւղած և բարեպաշտ քրիստոնէից, որք յիշելով և 'ի միտ ածելով զկանխասաց բանս մարգարէից, ծնան 'ի յինքեանս զ հնազանդութի օրինաց և պատուիրանաց աւետարանական ճշմարտութե, քան զի զաքարիայն յիշատակ տն թարգմանի և յովհաննէս հնազանդութի։


յսինքն, օրհնեալ և բարեբանեալ լեցի տն և այն իսրայէլացւոց ամենառատ գթութիւնն և բարերարութիւնն, որ մոռանալով զմեր անօրէնութիւնն և զանհաւատութիւնն և տեսանելով զմեր հոգեկան խղճութիւնն և թշուառութիւնն, մեզ այց արար և ողորմեցաւ * քան զի մեք վասն կամապաշտութե և անհնազանդութե մերոյ, հեռացեալք 'ի յօրինաց և 'ի պատուիրանաց նորա, անկեալք կայաք 'ի մեղս և յուսահատութիս և մոլորեալք շրջէաք 'ի վերայ աշխարհի, երբեմն ծառայելով մարմնոյ և երբեմն սատանայի, իսկ նա ոչ կամելով զկորուստ մեր, փրկեաց զմեզ 'ի ձեռն շնորհաց որդւոյ իւրոյ միա

ծնի, 'ի խաւարէ տգիտութեան և 'ի դատապարտութենէ դժոխոց և արար զմեզ ինքեան նոր ժողովուրդ ընտիր և հաւատարիմ, ըստ որում ասէ դաւիթ, աստուած թագաւոր մեր յառաջ քան ըզ յաւիտեանս որ արարեր զփրկութիւն 'ի մէջ երկրի:

Այսինքն, յորոյ, իբր բուսոյց ծաղկեցոյց և ետուր մեզ զորդին իւր միածին զտէրն մեր յիսուս քրիստոս եղջիւր փրկութեան, իբր զօրութիւն և կարողութիւն փրկութեան, ըստ որում երդուաւ դաւթի ասելով, անդ ծագեցից եղջիւր 'ի դաւիթ, պատրաստ արարից զճրագ օծելոյ իմոյ, քան զի նորա շնորհաց օգնականութեան փրկեցաք և ազատեցաք 'ի մեղաց և 'ի գերութենէն սատանայի * 'ի տանէ դաւթի, իբր 'ի զարմէ և 'ի զաւակէ հաւատարիմ ծառայի իւրոյ դաւթի մարգարէին, ըստ մարդկային ծննդեան իւրոյ, ըստ որում ասէ պօղոս, վասն որդւոյ իւրոյ եղելոյ 'ի զաւակէ դաւթի ըստ մարմնոյ * ինչպէս որ խօսեցեր էր հոգւովն սրբով իւր յաւիտենից, իբր իւր առաջին սրբոց մարգարէից բերանովն, և նախ աբրահամու ըստ որում ասէ ծննդոց գիրքն, 'ի զաւակի քում օրհնեսցին ամենայն ազգք երկ



Յարոյց մեզ 'զեղջիւր փրկութեան * 'ի տանէ դաւթի ծառայի իւրոյ * որպէս խօսեցաւ բերանով սրբոցն, որք յաւիտենից մարգարէքն էին:

Փրկութի ՚ի թշնա
մեաց մերոց * և ՚ի
ձեռաց ամ ատել
եաց մերոց։

ըի, երկրորդ մովսէսի, ըստ որում ասէ երկրորդ օրինաց դիրքն, մարգարէ յարուսցէ ձեզ տր ած ձեր յեղբարց ձերոց իբրև զիս, նմա լուիջիք, և երրորդ եսայեայ, որ ասէ և յարուցից դաւթի ծագումն արդարութն և թագաւորեսցէ թագաւոր, և ՚ի միտ առցէ և արասցէ զիրաւունս և զարդարութի ՚ի մէջ երկրի, յաւուրս նորա փրկեսցի յուդայ և իսրայէլ
բնակեսցի յուսով։

Մ. յսինքն, և զայս փրկութն եղջիւրս, իբր զտրն մեր յս քս ետ մեզ ամենողորմ հայրն երկնաւոր առ ՚ի փրկել զմեզ ՚ի թշնամեաց մերոց հոգեկանաց և մարմնականաց և նախ ՚ի սատանայէ, ըստ այնմ որ ասէ պետրոս, արթուն լերուք և հսկեցէք, զի ոսոխն ձեր, իբր թշնամին ձեր սատանայ իբրև զառիւծ գոչէ, շրջի և խնդրէ թէ զո կլանիցէ, երկրորդ յաշխարհէ, զի ամ ինչ որ է յաշխարհի, ցանկութի է մարմնոյ, ցանկութի է աչաց և ամբարտաւանութիւն աստի կենաց ըստ յոհաննու, և երրորդ ՚ի մարմնոյ, ըստ այնմ որ ասէ պօղոս, մարմին ցանկայ հակառակ հոգւոյ, զի խորհուրդ մարմնոյ թշնամութի է առ ած * այլև առ ՚ի ազատել զմեզ ՚ի ձեռաց

ատելեաց մերոց, հրէից, հեթա
նոսաց և աշխարհասէր մարդկանց
ըստ այնմ որ ասէ տ՟րն մեր յ՟ս ք՟ս
եթէ աշխարհս զձեզ ատեայ, գի
տասջիք զի նախ զիս ատեաց, եթէ
յաշխարհէ աստի էիք, աշխարհս
զիւրն սիրէր արդեօք, բայց զի
չէք յաշխարհէ, վասն այնորիկ
ատեայ զձեզ աշխարհս:

Այսինքն, այլև ետ մեզ զայս
փրկութե եղջիւրս, իբր զտ՟րն
մեր յ՟ս ք՟ս, ողորմելով և խղճա
լով մեր առաջին նախահարցն,
թէ աբրահամու, թէ իսահակայ
թէ մովսէսի և թէ դաւթի, որք
ամենեքեան կային գրաւեալք ՚ի
ներքոյ պարտուց և անիծից նա
խահօրն ադամայ և ըսպասէին
գալստեան որդւոյն ա՟յ, զի ՚ի
ձեռն շնորհաց և օրհնութե նո
րին արժանի լինէին մտանել յար
քայութիւնն երկնից * և յիշե
լով զիւր սուրբ ուխտն և կտակն
որ արարեր էր աբրահամու հետ
ասելով, ՚ի զաւակի քում օրհ
նեսցին ա՟մ ազգք երկրի, իբր
յ՟իւ ք՟իւ որ ծնանելոց է ՚ի զարմէ
և ՚ի զաւակէ քումէ:

Այսինքն, այլև յիշելով զայն
երդումն որ արարեր էր ընդ աբ
րահամու հօրն մերում * որ զմեզ
անահ և աներկիւղ պահէր և
ազատէր մեր երևելի և աներև

Առնել զողորմութի
ւն հարս մեր * և յի
շել զկտակարանս սր
բութե իւրոյ:

Զ երդումն զոր եր
դուաւ աբրահամու
հօր մերում * տալ մեզ
առանց երկիւղ զի ըղ
փրկութիւն ՚ի թշնա

մեաց մերոց։

Պաշտել զնա * սր բութ՟բ և արդարու թ՟բ առաջի ն՟ր, զա՟մ աւուրս կենաց մերոց։

Եւ դու մանուկ, մարգարէ բարձրե լոյն կոչեսջիր * գնաս ցես առաջի տ՟ն պատ րաստել զճանա պարհս ն՟ր։



զյթ թշնամեաց ձեռքէն ըստ այնմ որ ասէ ծննդոց գիրքն յանձն իմ երդուայ ասէ տ՟ր, որով հետև արարեր դու զայդ և ոչ խնայե ցեր յորդւոյ քո միածնէ վասն իմ օրհնելով օրհնեցից զքեզ և բազ մացուցից զզաւակ քո ո՟պ զաս տեղս երկնից, և որպէս զաւազ առափն ծովու, և ժառանգեսցէ զաւակ քո զդրունս թշնամեաց իւրոց, իբր տ՟րն մեր յ՟ս ք՟ս, որ խորտակեաց զդրունս դժոխոց, ելոյծ զբռնութիւն մահու և կենա գործեաց զերամս արդարոց։
Այսինքն, որ մեք հաւատաց եալ ժողովուրդքս փրկեալք պատ ուական արեամբ նորա, և լու սաւորեալք լուսով աւետարա նական ճշմարտութ՟ն, պաշտենք և պատուենք զնա իբրև որդի ա՟յ * և կենցաղավարինք առաջի ն՟ր սրբութ՟բ և արդարութ՟բ զա՟մ աւուրս կենաց մերոց։
Այսինքն, բայց դու ով մա նուկդ յովհաննէս, որ յարգան դի մօր քո աչօք մտացդ տեսանե լով զմարմնացեալ բանն ա՟ծ երկր պագեցիր նմա, բարձրելոյն ա՟յ մարգարէ պիտիս կոչվիլ * և ն՟ր առաջևէն պիտիս գնալ իբրև աւետաբեր, որ իւրն հոգեկան ճանապարհ պատրաստես, ըստ այնմ որ ասէ մատթէոս, ձայն

բարբառոյ յանապատի պատրաստ արարէք զճանապարհ տն, և ուղիղ արարէք զշաւիղս նր, իբր որբեցէք զսիրտս և զխղճմտանս ձեր զղջմամբ և ապաշխարութբ որ քս գայ և բնակի 'ի ձեզ։

Այսինքն ըքո քաղցրութբդ և քո մկրտութբդ նր հաւատացեալ ժողովրդեանն, հոգւոյ փրկութն գիտութի պխտիս տալ, իբր հոգւոյ փրկութն ճանապարհն պխտիս ուսուցանել * որ նչ տմ մեղացն 'ի ձեռն շնորհացն քի թողութի լինի ըստ այնմ որ ասէ մարկոս, և եղև զի յովհաննէս մկրտէր յանապատի և քարոզէր զմկրտութի ապաշխարութն 'ի թողութի մեղաց։

Այսինքն, և զայս թողութիս կուշնորհէ մեզ տծ, ոչ թէ վա մեր արժանաւորութեն, այլ վասն իւր անչափ ողորմութեն և գթութեն * զերէ նոյն ողորմութեամբն երևեցաւ մեզ մարմնով ծնեալ 'ի մարիամայ կուսէն արեգակն արդարութեան քս 'ի բարձանց, իբր կամօք հօր և հաճութբ սուրբ հոգւոյն, որ զմեր մեղօք խաւարեալ հոգիքն լուսաւորէր, ըստ այնմ որ ասէ յոհաննէս, ես եմ լոյս աշխարհի, որ գայ զինի իմ, ընդ խաւար մի գնասցէ, այլ ընկալցի զլոյսն կենաց։

Տալ գիտութի փրկութն ժողովրդեան իւրոյ * 'ի թողութի տմ մեղաց մերոց։

Վասն գթոյ ողորմութն տն այ մերոյ * որով երևեցաւ մեզ արեգակն 'ի բարձանց լուսաւոր առնել զխաւար մեր։

Ծագել զլոյս 'ի վե՛ր
այսոցիկ որք նստեալք
'ի խաւարի և 'ի ստուե
րս մահու * ուղղել
զոտս մեր 'ի ճանա
պարհս խաղա
ղութե :

Տունք. 10.



Այսինքն, և նոյն արեգակն ար
դարութե ծագէր զլոյս ածգի
տութե 'ի սիրտս մեր, որք նստ
եալ կայաք 'ի մէջ խաւարի կռա
պաշտութե, և 'ի մէջ շուաքի
մահուան, իբր 'ի մէջ մահացու
մեղաց, ըստ այնմ որ ասէ եսայի
ժողովուրդ որ գնայր ընդ խա
ւարն ետես զլոյս մեծ, և որք
բնակեալ քդ էք յաշխարհիդ և 'ի
ստուերս մահու, լոյս ծագես
ցի ձեզ * և ուղղէր զմեր ոտքն
'ի ճանապարհս խաղաղութեան,
իբր հնազանդեցուցանէր զմեր
միտքն օրինաց և պատուիրանաց
աւետարանական ճշմարտութեն:



Իբր զայս աղօթքս ասաց սիմէոն
ծերունին 'ի տաճարին , երբ որ
առաւ զմանուկն յս 'ի գիրկն
իւր , զէրէ հրաման էր առեր 'ի
հոգւոյն սրբոյ որ այնչափ կենդա
նի մնայր մինչև որ տեսանէր զօծ
եալն տն , իբր զքս։

Այսինքն , ահա՛ ով ըստեղ
ծօղդ երկնի և երկրի,
ահա՛ ով ճշմարիտ ածդ
նոր իսրայէլի , լցվեցաւ իմ սր
տիս կարօտութիւնն , և հասի իմ
փափաքանացն , զոր աղօթիւք և
պահօք , ողբովք և արտասուօք
կուխնդրէի իքէն , ասելով ըստ
դաւթի , ցոյց մեզ տր զողորմու
թիւն քո և զփրկութի քո տուր
մեզ , և զայս ոչ միայն վասն իմ,
այլև վասն ընդհանուր տանն իս
րայէլի , արդ ահա՛ այժմ ժամա
նակ է որ արձակես զքո ծառայդ
քո ածային հրամանաւդ 'ի խաղա
ղութի , իբր լուծես զիս 'ի կա
պանաց տառապեալ մարմնոյս, և
ազատես զիս 'ի վշտաց և 'ի դառ
նութենէ անցաւոր աշխարհիս ,
ինչպէս որ հոգւովդ քով սրբով
խոստացար ինձ * զէրէ տեսի ես
աչօք մարմնոյս զփրկութիւն քո,
իբր զորդիդ քո միածին , զբանն



Աղօթք Սիմէոնի ծերունւոյն
Ղուկաս: բ.

Արդ արձակես
զծառայ
քո տր ըստ
բանի քում 'ի խաղա
ղութի * զի տեսին
աչք իմ զփրկութի
քո * զոր պատրաստե
ցեր առաջի ամ ժո
ղովրդոց։



Լոյս 'ի յայտնութի հեթանոսաց * և փառք ժողովրդեան քում իս րայէլի։

Ղուկ. 2:

ած մարմնացեալ 'ի կուսէն, ըղ
դուշակեալն 'ի մարգարէից, զքա
րոզեալն 'ի հրեշտակաց, զբարե
բանեալն 'ի հովուաց և զերկր
պագեալն 'ի մոգուց, տեսի
աչօք մարմնոյս, գրկեցի, համբու
րեցի, և երկրպագեցի, և մաս
նակից եղէ երանութեն որ տա
լոց է սա ասելով, երանի աչաց
որք տեսանիցեն զոր տեսանէքդ
* զայս փրկութիւնս կասեմ,
որ դու քո ած ային ողորմութեդ
պատրաստեցիր առաջի ամ ազ
գաց և ժողովրդոց, իբր ոչ միայն
հրէից, այլև հեթանոսաց, զի
ամենեքեան ազատեսցին նովաւ
'ի մեղաց և 'ի մոլորութենէ իւր
եանց, և ընկալցին զկեանս յա
ւիտենականս, ըստ այնմ որ ասէ
յոհաննէս, զի այնպէս սիրեաց
ած զաշխարհ, մինչ զի զորդին
իւր միածին ետ, զի ամ որ հա
ւատայ 'ի նա մի' կորիցէ, այլ ըն
կալցի զկեանս յաւիտենականս։
Լուսինքն, զէրէ սա է լոյսն ճշմա
րիտ լուսաւորող հոգւոց մարդ
կան, ըստ այնմ որ ասէ յոհան
նէս, էր լոյսն ճշմարիտ որ լու
սաւորէ առնէ զամ մարդ որ գա
լոց է յաշխարհ, սա է լոյսն իմա
նալի և անստեղծ, և սա է լոյս
փառաց ածութե քոյ, ըստ այնմ
որ ասէ պօղոս, որ է լոյս փա

-ուաց և նկարագիր էութեն նորա, սա է՛ լոյսն որ ծագի 'ի յանսկզբնական լուսոյդ, և յայտնի լինի հեթանոսաց, որք նստէին 'ի խաւարի կռապաշտութեան, և 'ի մէջ ըստուերաց մահու, ըստ այնմ որ ասէ եսայի, ժողովուրդ որ գնայր ընդ խաւարն ետես ըզլոյս մեծ, և որք բնակեալ քդ էք յաշխարհիդ և 'ի ըստուերս մահու լոյս ծագեսցի ձեզ * սա է՛ փառք և պարծանք, խնդութի և խաղաղութիւն, զօրութիւն և կարօղութիւն, անմահութի և երջանկութիւն, սրբութի և արդարութիւն, յոյս և ապաւէն քոյ հաւատարիմ ժողովրդեանդ նոր իսրայէլի, քան զի սովաւ կարեն պատերազմել ընդդէմ ամ փորձութեանց հոգեկանաց և մարմնականաց, սովաւ կարեն յաղթահարել զերևելին և զաներևոյթ թշնամիս իւրեանց, և սովաւ կարեն համարձակապէս տեսանել զերեսս աստուծոյդ կենդանւոյ յարքայութեան քում 'ի յերկինս։



Մաղթանք զօրաւորք ընդդէմ արհաւիրաց գիշերայնոց, որ սրբոյն գրիգորի նարեկացւոյն : ժբ .

Ընկալ քաղցրութն տր ած հզօր զդառնացողիս զաղաչանս * մատիր գթութն առ պատկառելս դիմօք :

Փարատեա ամենապարգև զամօթական տխրութիս * բարձ յինէն ողորմած զանըմբերելի ծանրութիւնս :



Իբր այս աղօթքս զոր ասացեր է սուրբն գրիգոր նարեկացին, է յոյժ զօրաւոր և պահապան ընդդէմ ճնարագիտութեցն սատանայի, որ գիշերն զանազան մտածմունքներով, և ազգի ազգի երազներով կու ահացուցանէ և կու զարհուրեցուցանէ զհաւատացեալսն քի :

Այսինքն, դու ով զօրեղ տր իմ և ած իմ յս քս որ ըղբենուն մահու և դժոխոց խորտակեցիր, մեղօք և յանցանօք դառնացելոյս և անհամացելոյս աղաչանքն քաղցրութեն լսէ և ընդունիր * քո ամենառատ գթութեդ ինձ յօգնութի հասիր, և զիս մխիթարէ, զի ես վս իմ երեսխս ամօթոյն իբրև անպիտան ծառայ չեմ համարձակիր նայիլ դէպ ՚ի քո ածային մեծ վայելչութիդ :

Այսինքն, դու որ ամ բարութեց տուօղ և պարգևօղ ես, քո շնորհօքդ ցրուէ և փարատէ զիմ ընդունայն տխրութիս, որ սաստիկ ամաչելոյս ՚ի յիս կուծը նանի, և զիս ՚ի քոյ սիրոյդ կուհովացուցանէ * և դու որ ողորմած ես և գթած, վերաւ ինձա

նից թեթեւացո՛ւր զիմ անտանելի ծանրութիւնս, որ 'ի թուլութենէ մարմնոյս եւ 'ի փորձութենէ սատանայի ինձ վերայ կու անկանի, եւ զիս սաստիկ կու վշտացուցանէ։

Ո՜վ յոյսն, դու որ ա̃մ իրաց ճարն եւ ճնարն գիտես, հեռացո՛ւր ինձանից այնպիսի չար շարժմունքն եւ սովորութիւնքն, որ մահացու մեղաց պատճառ կու լինին * եւ դու որ միշտ զօրեղ եւ յաղթող ես, թալան արա՛ եւ ոչնչացո՛ւր իմ մտաց միջէն ճնարագէտ եւ խաբեբայ սատանայի կամքն եւ հաճութիւնքն, իբր ն̃ր ինձ տուն տուած չար խորհուրդքն եւ չար դիտաւորութիւնքն։

Ո՜վ յոյսն, դու որ զօրութի̃ եւ իմաստութի̃ 'ի վեր ես քան զա̃մ ճնարագիտութիւնս ըստեղծուածոց, պարզէ եւ ցրուէ զայն մութն եւ խաւարն որ կապուած եւ շեթացած սատանայն իմ մտացն վր̃ կու թափէ * եւ դու որ փրկիչ եւ կեցուցիչ ես ազգի մարդկան, խաչակնքէ եւ խափանէ հոգւոց մարդկան կորուսանօղ սատանայի քայլքն եւ գնացքն, որ չի կարենայ, զիւր նենգաւոր դիտաւորութիւն 'ի կատար հասուցանել եւ յառաջ տանիլ։

Ո՜վ յոյսն, դու որ ա̃մ ըստեղ



Ո՜վ ընջրապետեա՛ ճնարաւոր զմահացու կրթութիւս * աւարեա՛ միշտ յաղթօղ զխաբողին հաճութիւս։

Ո՜ ճարեա՛ վերնային զմոլելոյն մարախուղ * կնքեա՛ կեցուցիչ զկորուսչին ընթացմունս։

Ցրուեա՛ ծածկա

տես , զըմբռնողին
չար դժմունս * խոր
տակեա՛ անքըննին , ըզ
մարտողին դիմեց
մունս ։

Տեառնագրեա՛ քո
անուամբդ , զլուսան
ցոյց երդ յարկիս *
պարփակեա՛ քո ձե
ռամբդ զառաս
տաղ տա
ճարիս ։

Գծագրեա՛ քո ար
եամբդ , զմուտ սե
մոց սենեկիս * կեր
պացո՛ զքո նշանդ 'ի
հետս ելից մաղ
թողիս ։

Ամրացո՛ քո աջովդ
զհանգստեանս իշ
տիս * մաքրեացես 'ի



ծո՛ւածոց ծածուկ խորհրդոյն
տեսանօղն ես , ցրո՛ւէ և փչա
ցո՛ւր ըմբռնօղ և որսարար սատա
նայի չար թակարդներն , որ չի կա
րենայ իւր ճնարագիտութիւն զիս
խախտել և 'ի վայր ձգել * և
դու որ քոյ մարդեղութեան խոր
հրդովն անքննելի ես , խորտակէ
և ոչնչացուր պատերազմօղ սատա
նայի ճնարագիտութիւքն որ զա
նազան կերպիւ ինձ վերայ կու
վազէ իբրև գգաղան ։

Այսինքն , դու քո սուրբ անո
ւամբդ խաչակնքէ և օրհնէ զայս
տանս լուսամուտն և զդռնակն ,
որ սատանայի խաբէութիւն չի կա
րենայ մտանել 'ի ներս * և անա
րատ ձեռօքդ փակէ այս տաճա
րիս ո՛ճռուքի բոլորքն , որ քո հա
ւատացեալ ծառայքդ անահ կա
րենան բնակիլ 'ի սմա ։

Այսինքն , դու քո պատուա
կան արեամբդ գրէ զքո սուրբ
անունդ այս սենեկիս շեմքերին
վերայ , որ չար սատանայն չի հա
մարձակի մտանել 'ի սա * և քոյ
սուրբ խաչիդ նշանն կերպարանո
րէ խնդրողիս շուրջ եկած ճա
նապարհուն , որ չի մոլորիմ 'ի
քո ա̄ծային պատուիրանացդ ։

Այսինքն , դու քո ա̄ծային
աջովդ ամուր պահէ զիմ հանգս
տանալոյ և քնելոյ տեղերս * և

դու

դու մաքրէ և սրբէ զիմ ծած-
կոցս և զանկողինս 'ի խաբէու-
թէն և 'ի խորամանկութէն սա
տանայի ։

Այսինքն , դու քո ամէնօրհն
եալ կամօքդ անփորձ պահէ զիմ
խեղճ և տառապեալ հոգիս * և
զայս կենդանական շունչս որ իմ
մարմնոյս պարգևեր ես , առանց
նենգութեան առանց խաբէու-
թեան և առանց թերահաւատու-
թեան պահէ ։

Այսինքն , դու քո երկնային
զօրաց դասքն իմ բոլորքս կանգ-
նեցուր , որ պատրաստ լինին 'ի
պահպանել զիս * և զքո պահպան
հրեշտակքդ կարգէ և հաստատէ ,
որ միշտ պատերազմին վասն իմ
ընդդէմ դիւացն դասուց ։

Այսինքն , իմ քնոյս որ մահուան
օրինակ է և զմահ կու նշանակէ ,
հանգստութիւն տուր այս խոր
գիշերումս , որ հանգչիմ և դա
դարիմ 'ի փառս անուան քոյ սր
բոյ * բարեխօսութեամբ և հայ
ցուածովք սրբուհւոյ ածած-
նին , և միջնորդութբ ամենայն
սրբոց քոց ընտրելոցն որք են յար
քայութեան ։

Այսինքն , քո շնորհօքդ ծած-
կէ և քող ձգէ իմ մտաց աչաց
պատուհաններին վերայ , իբր
իմ հոգւոյս ներքին զօրութեց



հաղբից զծածկարան
անկողնոյս ։

Պահեսցես քո կա
մաւդ զտառապեալ
անձն հոգւոյս * ան
խարդախ արասցես
զքո շնորհեալ շունչ
մարմնոյս ։

Կացուսցես շրջա
փակ զպար զօրուդ
երկնայնոյ * կարգես
ցես 'ի դիմի , ընդդէմ
դիւացն դասու ։

Տուր հանգիստ բեր
կրութն մահահան
գոյն նիրհման 'ի խո
րութն գիշերիս *
բարեխօսութբ և հայ
ցուածովք սրբուհ
ւոյ ածածնին և
ամէց ընտրելոց ։

Ամփոփեալ պարուր
եա՛ զպատուհան տե
սութեց զգայարա
նացս իմաստից * ան

զարհուրելի զետեղ
մամբ 'ի ծփական խռո
վութեց կենցաղա
կան զբաղմանց։

Անրջական երազոց,
խուլականաց ցնորից
յիշատակաւ քոյ յու
սոյդ, անվնասելի
պաշտպանեալ։

Եւ սթափեալ վերս
տին 'ի ննջմանէ ծան
րութե * ամենազ
դաստ արթնութե *
հոգենորոգ զուար
թութե 'ի քեզ ար
ձանացեալ զայս ձայն
մաղթանաց բուր
մամբ հաւատոց։
Քեզ ամենօրհնեալ
Թագաւոր փառաց *
անճառից փառաբանո
ղաց երկնապումար
խմբից երգակցեալ



բնակութեցն վերայ որ զդայա
րանք իմաստից կասվին * որ չէ
վախենամ և չէ զարհուրիմ, երբ
որ տեսանեմ զիս վշտացեալ և
տառապեալ 'ի մէջ զանազան խռո
վութեց և աղէկոծութեց, և
'ի մէջ ազգի ազգի հոգոց և շը
փոթմանց աշխարհիս այլ հաստա
տուն մնամ 'ի հաւատս և 'ի սէր
քո սուրբ։
Այսինքն, ուշս մ̄տ չէ եղած ժա
մանակի խոր քնոյ երազներէն և
գիշերվան առանձնական երևոյթ
ներէն, որ զմարդոյ խելքն կու
ցրուեն, և զականջներն կու
ձնչեցուցանեն, յիշելով զքո
հաստատուն յոյսն փրկութե որ
տուեալ ես ինձ, անվնաս պահ
վիմ, և անփորձ մնամ։
Այսինքն, և երբոր ուշս վերայ
բերեմ, և 'ի ծանր քնոյս ազատ
վիմ * և ամենևին զգաստանամ
և զարթնանամ * կրկին ուրախ
սրտիւ և զուարթ հոգւով դէպ
քեզ վերացուցանեմ և տարա
ծեմ զայս ձայնս աղօթից և մաղ
թանաց, կատարեալ սիրով և
ուղիղ հաւատով։
Այսինքն, քեզ ով ամենօրհն
եալ Թագաւոր փառաց * ընդ
ամ երկնային դասուցն հրեշտա
կաց և հրեշտակապետաց, զքո
անճառելի և անպատմելի բարու

թեդ և իմաստութեդ փառաւբա
նողաց համաձայնելով, զնոյնն յեր
կինս առաքեմ։

Սյախինքն, զի դու օրհնեալ և
փառաւորեալ ես յամ արարա
ծոց, երբ 'ի յանմարմնոց և 'ի
մարմնականաց վս քոյ անչափ բա
րերարութեդ, յաւիտեանս յա
ւիտենից ամէն։

Երբ, այս աղօթքս զոր ասացեր
է սուրբն գրիգոր նարեկացին է
յոյժ զօրաւոր ընդէմ ամ փոր
ձութեանց երևելեաց և աներև
ութից։



Սյախինքն, ով ած իմ յաքս
որ որդի ես այն ճշմա
րիտ այն որ միշտ կեն
դանի է * և օրհնեալ ես և բա
րեբանեալ ես քո փրկագործ անօ
րէնութեդ 'ի յերկինս և 'ի յերկ
րի * և այն ահաւոր և ամենա
մեծ հօրն երկնաւորի անքննելի
ծնունդն ես, երբ քոյ յաւիտե
նական ծննդեանդ կերպն և եղա
նակն 'ի ըստեղծական մտաց ան
հասանելի է։

Ս. յախինքն, դու ամենակարող
ես, և ոչինչ է որ դու կամե
նաս, և ոչ կարենաս անել, քան
զի ամ ինչ որ 'ի մարդկանէ անհը
նարին է, քեզ հնարաւոր է։





յերկինս առաքել։

Զի դու փառաւոր
եալ ես յամ արարա
ծոց յաւիտեանս յա
ւիտենից ամէն։

Տունք․ 16

Աղօթք զօրաւորք սրբոյն գրի
գորի նարեկացւոյն։ խա․



Որդի այ կեն
դանւոյ * օրհ
նեալդ յամ
* հօրդ ահաւորի ան
քննելի ծնունդ։

Որ տկարանաս առ 'ի
քէն և ոչինչ։



Որ 'ի ծագիլ անստուեր նշուլից ողորմութեան քոյ փառաց * հալին մեղք, հալածին դեւք, ջնջին յանցանք։

Ո՜ սխինքն, և ինչ տեղ որ քոյ աստուածային փառաց ողորմութեան և շնորհաց անշուէաք ձառագայթն կու ծագի * շուտով կու հալին և կու քաւվին մեղք, կու հալածին դևք, և կու ջնջվին յանցանք, ոպ՟ եղև մարիամու մագդաղենացւոյն, և դիւահարին այնմիկ որ ունէր զլէգէոն դևն, ըստ այնմ որ վկայէ մարկոս աւետարանիչն։

Խզին կապանք, խորտակին շղթայք։

Ո՜ սխինքն, կու կտրատվին կապանք, երբ երկաթէ պրխավք, և կու ջարդվին զինձիրք, ոպ՟ եղև պետրոսի առաքելոյն 'ի բանտին, ըստ այնմ որ վկայէ ղուկաս 'ի գործս առաքելոց։

Կենդանածնին մահացեալք։

Ո՜ սխինքն, կու կենդանանան մեռեալք, ոպ՟ եղև որդւոյ այրւոյն այնորիկ որ էր 'ի նային քաղաքէ, ըստ այնմ որ վկայէ ղուկաս, և ղազարու եղբօրն մարիամու և մարթայի, ըստ այնմ որ վկայէ յոհաննէս։

Բժշկին հարուածք ողջանան վէրք։

Ո՜ սխինքն, կու բժշկին հարուածք, երբ. եարայք, և կու առողջանան խոցք, ոպ՟ եղև մարդոյն այնորիկ որ կու երթայր յերուսաղէմէ 'յերիքով, և անկաւ 'ի ձեռս աւազակաց, և կու նշանակէր զադամ, և նոյնաւ զբոլոր մարդկային բնութիւն, ըստ այնմ որ վկայէ ղուկաս, և սրբու-

հնոյն ապօղինեայ, և ագաթեայ, և այլ բազում սրբոց, ըստ այնմ որ վկայեն գիրք այսմաւուրաց։

Նայինքն, կու բարձլին և կու ոչնչանան պիղծ և գարշելի խորհուրդք, և արարմունք, որպէս եղև սրբոյ հնոյն յուստիանեայ, և սրբոյ հնոյն լուկիայ, և այլոց սրբոց կուսանաց և մարտիրոսաց ըստ այնմ որ վկայեն գիրք հարանց վարուց։

Նայինքն, կու հեռանան տխրութիք, և յետ կու դառնան սուգք և տրտմութիք, ոպ̃ եղև առաքելոցն, որք յետ յարութեն ժողովեալք էին 'ի միասին վասն ահին հրէից, և կային տրտում, և 'ի տեսանելն զՔս̃ մխիթարվեցան ըստ այնմ որ պատմեն ղուկաս և յոհաննէս։

Նայինքն, կու փախչի խաւարն կու հեռանայ մէգն կու ցրուի մառախուղն, կու փարատի սև ամպն կու փչանայ խոր խաւարն, կու վերանայ մութն, և կու գնայ գիշերն, որպէս եղև մարդկային բնութեան որ կայր 'ի մէջ խաւարի մեղաց և կռապաշտութեան յառաջ քան զգալուստն Քի̃, ըստ այնմ որ վկայէ եսայի ասելով, ժողովուրդ որ գնայր ընդ խաւար ետես զլոյս մեծ, և որք բնակ

եալք

Բառնին ապաշխարութիւնք։

Տեղի տան տխրութիք, նահանջին հեծութիք։

Փախնու խաւարն, մեկնի մէգն, մերժի մառախուղն, փարատի մուայլն, սպառի աղջամուղջն, վերանայ մութն, գնայ գիշերն։

Տարագրի տագնապն չքանան չարիքն, հալածին յուսահատութիւնք։

Այսինքն, կու կորի ահն և երկիւղն, կու չքանան չար պատահմունք, և կու հալածին յուսահատութիւնք, որպէս եղև առաքելոցն որք տեսանելով զծովն ալէկոծեալ վ՟ս մեծի երկիւղին իւրեանց կային յուսահատեալ ՚ի մէջ նավին, և ՚ի զարթնանալն ք՟ի ա՟մ ինչ ՚ի բարին փոխարկեցաւ, ըստ այնմ որ վկայէ մարկոս աւետարանիչն։

Ու Թագաւորէ ձեռն քո ամենակալ քաւիչդ ա՟մի։

Այսինքն, և կու թագաւորէ քո ամենակալ ձեռքդ, իբր քո ամենակարող իշխանութիւնդ ՚ի յերկինս և ՚ի յերկրի, ով քաւիչդ ա՟մի, իբր ով բարձողդ մեղաց աշխարհի։

Որ ոչ եկիր կորուսանել զմարդկան հոգիս, այլ կեցուցանել։

Այսինքն, զէրէ դու չի եկիր յայս աշխարհս որ զմարդկային հոգիքն կորուսանես, այլ կեցուցանես, փրկելով զնոսա ի մեղաց և ՚ի դատապարտութ՟է դժոխոց, ըստ այնմ որ ասէ յոհաննէս, այս են կամք հօր իմոյ որ առաքեացն զիս, զի զա՟մ որ ետ ցիս հայր ոչ կորուսից ՚ի նմանէ, այլ յարուցից զնա յաւուրն յետնում։

Թող ինձ զանթիւ չարիսն իմ բազում ողորմութ՟էդ * զի դու միայն ես երկնի.

Այսինքն, թողութի շնորհեա՛ ուրեմն իմ անթիւ չարութեցն և անօրէնութեցն, քո բազում ողորմու՟էդ և ամենառատ գթու

թեդ * զերէ դու միայն ես սուրբ
և դու միայն ես տէր, զոր երկնային
զօրութիւնք ոչ կարեն պատմել,
և հողեղէն բնութիւնք ոչ կարեն
քննել։

Մ— յսինքն, դու հեռի ես 'ի ըս
տեղծական գոյից, իբր 'ի ըստեղ
ծական իրաց քո աներ բնութեդ
* և եզր և կատարումն ես ծագաց
աշխարհի քո ամենամեծութեդ։
Մ. յսինքն, դու ըսկիզբն ես ամ
էակաց քո արարչագործութեդ
* և յամ ուրեք, իբր յամ տեղ
պատրաստ ես քո անչափութեդ։
Մ. յսինքն, ամ բարութե և ամե
նայն բարերարութե, ամ իմաս
տութե և ամ կարօղութե որհ
նեալ և բարեբանեալ ես 'ի բար
ձունս, իբր 'ի յերկինս * և քեզ
ընդ հօր և ընդ հոգւոյդ սրբոյ
վայելեն փառք պատիւ և երկր
պագութի յաւիտեանս յաւիտե
նից ամէն։

անձառ և երկրի ան
զննին։

Դ տար գոյից * և
յեզր ծագաց աշ
խարհի։

Սկիզբն ամի * և յա
մենայնի։

Մ— մենայնի լրման
օրհնելդ 'ի բարձունս
* և քեզ ընդ հօր և
հոգւոյդ սրբոյ վայե
լեն փառք յաւիտ
եանս ամէն։

Տուն: 16.



Իբր զայս աղօթքս ասաց մանասէ
թագաւորն վասն ընդունելոյ
զթողութի մեղաց իւրոց, քան
զի ոչ կամելով նորա հետևիլ հա
ւատոյ և այ պաշտութե հօրն
իւրոյ եզեկիայի արքայի հրէաստա
նի, անկաւ 'ի կռապաշտութի,
և արար զչարութի և զանօրէնու
թի առաջի այ, և այ բարկացեալ
ի վերայ նորա առաքեաց զզօրա
գլուխս ասորւոց որք կալեալ զնա
կապեցին երկաթէ կապանօք և
տարան 'ի բաբելոն, և անդ առե
եալ զինքն 'ի մէջ գերութե և
թշուառութե ըսկսաւ զղջալ
զմեղս իւր աղաղակել առ այ
ասելով, տր ամենակալ այ ա
բրահամու, և այ հանձեալ 'ի յա
պաշխարութի նորա գթացաւ 'ի
նա, և ազատեաց զնա 'ի գերու
թէն, և դարձոյց վերստին 'ի յե
րուսաղէմ։

Ամենքն, դու տր այ որ
'ի վերայ բոլոր աշխար
հի իշխանութի ու
նիս, և զամ արարածս քո այ
այլէն հրամանաւդ կու կառավա
րես * և նախահարցն մերոց ար
դարոց և բարեպաշտից աբրահա
մու, իսահակայ, և յակոբայ,
և նոցա զարմից և զաւակաց պաշ

Mmmmm տած



Աղօթք մանասէի թագա
ւորին։

Տ ամենակալ
* այ աբրա
համու իսա
հակայ յակո
բայ և զաւակի նոցա
արդարոց * ամենա
կալ տր թող
զմեղս իմ։





Որ արարեր զերկինս
և զերկիր * և զմ̃
զարդ նշ̃ * ամէ :

Որ կապեցեր զծով
բանիւ հրամանի քո
* փակեցեր զխորս *
և կնքեցեր ահաւոր
և փառաւորեալ
անուամբ քով
սրբով *
ամէ :



տած տ̃ծն ես * կու աղաչեմ զքեզ ասելով, ամենակալ տ̃ր ; և թագաւոր երկնի և երկրի թող զմեղս իմ զոր գործեցի առաջի քո :

Այսինքն, դու տ̃ր տ̃ծ որ քո ամենակարող զօրութ̃բ̃դ ըստեղծեցիր զերկինս և զերկիր 'ի յոչնչէ * և զարդարեցիր զնոսա քո անքննելի իմաստութ̃բ̃դ, զ հրեշտակս և զայլ տ̃մ երկնային զօրութ̃իս, զարեգակն զլուսին և զայլ տ̃մ աստեղս 'ի յերկինս տեղաւորելով, և զմարդիք և զանասունս, զծառս և զտունկս 'ի յերկրի * կու աղաչեմ զքեզ ասե :

Այսինքն, դու տ̃ր տ̃ծ որ քո ահեղ հրամանաց բանիւն կապեցիր զծով̃, իբր սահման դրիր իւրն որ այլ յառաջ չի անցանի, և չի ծածկէ զերկիրս, ըստ այնմ որ ասէ ծննդոց գիրքն ժողովեսցին ջուրքդ որք 'ի ներքոյ երկնից 'ի ժողով մի, և երևեսցի ցամաքն * փակեցիր զխորս, իբր ծովու անդունդքն և խորուկ ջրերն ինչպէս մէկ ամանի մէջումն տեղաւորեցիր, ըստ այնմ որ ասէ դաւիթ, ժողովեաց որպէս 'ի տիկ զջուրս ծովու * կնքեցիր, իբր մըհրեցիր քո ահաւոր և փառաւորեալ սուրբ անուամբդ, որ իւր տեղումն անշարժ մնայ *

կու աղաչեմ զքեզ ասելով։

Լ. յափինքն , դու տր ած այնպէս ահաւոր ես , որ ամ ըստեղծու ածք թէ 'ի յերկինս և թէ 'ի յերկրի 'ի յաշէ և յերկիւղէ քո ամենակարող զօրութեդ կու դո ղան և կու սարսափին , ըստ այնմ որ ասէ դաւիթ , ո՛ հայի յերկիր և տայ դողալ սմա , մերձի 'ի լե րինս և ծխեսցին * կու աղաչեմ զքեզ։

Լ. յափինքն , դու տր ած այնպէս ամենազօր ես , որ քո սրբութե փառաց մեծութին և վայելչու թին անբաւ է՛ , իբր անհասանե լի և անպատմելի է՛ , ըստ այնմ որ ասէ պօղոս , ո՛վ խորք մեծութե և իմաստութեան և գիտութեն այ , որպէս զի առանց քննելոյ են դատաստանք նորա , և առանց զննելոյ են ճանապարհք նորա * քո ըսպառնալեաց բարկութին և սրտմտութին սաստիկ է՛ 'ի վե մեղաւորաց և չարագործաց , զէ րէ արդարադատ ես , ըստ այնմ որ ասէ դաւիթ , երեսք տն 'ի վերայ չարագործաց , սատակել յերկրէ զյիշատակս նոցա * քո աւետեաց ողորմութիքն , իբր քո հաշտութե և խաղաղութե շնորհաբաշխութիքն անչափ և անքննելի են , զէրէ գթած ես, ըստ այնմ որ ասէ դաւիթ , գթած



Որ ամ ինչ սարսի և դողայ յերեսաց ահի զօրութե քո * ամէ։

Լ. նքաւ է՛ մեծ վայել չութիւն փառաց սր բութե քո * և սաստիկ է՛ բարկութե սպառ նալեաց քոց իվերայ մեղաւորաց * անչափ և անքննին են ողոր մութիք աւետեաց քոց * ամէ։

Դու Տր բարձրեալ * գթած * երկայնամիտ * բազումողորմ * և զղջանաս ի վերայ չարեաց մարդկան * ամէն ։

Դու Ած ոչ եդիր ապաշխարութի վն արդարոցն աբրահամու իսահակայ և յակոբայ * որք ոչ մեղան քեզ * ամէն ։

Այլ եդիր ապաշխա

ողորմած է Տր երկայնամիտ և բազումողորմ * կու աղաչեմ։

Այսինքն, դու Տր Ած բարձր և անհասանելի ես մարդկային մտաց * գթած ես, զէրէ իբրև հայր և ծնօղ կու ողորմիս ի վերայ նոցա * երկայնամիտ ես, զէրէ ճանաչելով նց բնութն տկարութիւն կու համբերես սխալանաց նոցին * բազում ողորմ ես, զէրէ Ամ վշտի և նեղութն միջում ցաւակից կու լինիս նց * և թէ կու պատժես զիւրեանք երբեմն վն մեղաց իւրեանց, շուտով կու զղջաս, իբր դարձեալ կու ողորմիս և կու փրկես զիւրեանք՝ ի տառապանաց ըստ այնմ որ ասէ պօղոս, այլ հաւատարիմ է Ած որ ոչ արկցէ զձեզ՝ ի փորձութիւն առաւել քան զկարն ձեր, այլ արասցէ ընդ փորձութն և զելս, զի համբերել կարասջիք * կու աղաչեմ զքեզ։

Այսինքն, դու Տր Ած ոչ ինչ ապաշխարանք չի դրիր քու արդար ծառայիցդ աբրահամու իսահակայ և յակոբայ, մէկ սխալանաց և կամ մէկ պակասութեան համար * զէրէ ամենևին ընդդէմ քու Ածային օրինացդ և պատուիրանացդ չի մեղանչեցին * կու աղաչեմ զքեզ։

Այսինքն, այլ դրիր ապաշխա

րանք ինձ մեղաւորիս վասն մեծի
չարագործութեան իմոյ, մատ
նելով զիս 'ի ձեռս ատորոց, և
դերի անելով 'ի յերկիրս այլազգ
եաց * զերէ քան զծովու աւազն
այլ առաւել մեղք գործեցի, և
իմ անօրէնութիս, չափէն դուրս
բազմացաւ քոյ առաջևդ * կու
աղաչեմ զքեզ:

Տ՟ յսինքն, արժանի չեմ որ հայ
իմ և տեսանեմ զբարձրութիս
երկնից, և զքո անքննելի իմաս
տութիդ և զանչափ բարութիդ
'ի միտ ածեմ * 'ի բազմութենէ
չարութեց և անօրէնութեանց
իմոց * կու աղաչեմ զքեզ:

Տ՟ յսինքն, կեռացեր եմ ես դէպ
'ի յերկիր, և հողի հաւասար եմ
եղեր, վասն ծանրութեան և
սաստկութեան երկաթէ կապա
նացս * և ամենևին մտաց և մար
մնոյ հանգստութի չունիմ * կու
աղաչեմ զքեզ:

Տ՟ յսինքն, զերէ բարկացուցի
զքո սրտմտութիդ, և քոյ առա
ջևդ չարութի գործեցի, մո
ռանալով զքո պ̃ծային օրէնքդ,
և զպատուիրանքդ * քարէ և
փայտէ պատկերքներ կանգնե
ցուցի, և նոցա երկրպագութի
արարի, և այսպէս բազմացուցի
զքո բարկութիդ ինձ վերայ *
կու աղաչեմ զքեզ:

Տ՟ յս

րութի վասն իմ մե
ղաւորիս * զի մեղայ
աւելի քան զաւազ
ծովու և բազմացան
անօրէնութիք իմ
* ամե:

Չեմ արժանի հայիլ
և տեսանել զբարձ
րութիս երկնից * 'ի
բազմութէ անօրէ
նութե իմոյ
* ամե:

Կորացեալ եմ ես 'ի
բռնութենէ կապա
նաց երկաթից * և
ոչ գոյ ինձ հանգիստ
* ամե:

Բարկացուցի զսրտ
մտութի, և չար առա
ջի քոյ արարի * կանգ
նեցի զպատկեր, և
բազմացուցի զցա
սումն * ամե:

Եւ արդ տր խոնարհեցցնեմ զծունկս սրտի իմոյ * և հայցեմ 'ի քաղցրութենէ քումմէ * ամէն ։

Մեղայ տր մեղայ * և զանօրէնութիս իմ ես ինքնին գիտեմ * ամէն ։

Աղաչեմ և խնդրեմ 'ի քէն թող ինձ տր, թող ինձ * և մի՛ կորուսաներ զիս ըստ անօրէնութե իմոյ * ամէն ։

Մի յաւիտեան բարկանար ինձ տր * և մի՛ յիշեր զչարիսն իմ * և մի՛ պարտաւորեր զիս ընդ իջեալսն 'ի ներքոյ երկրի չարեօք * ամէն ։



Այսինքն, բայց այժմ տր ած իմ սրտիս ծնկներն կու խոնարհեցուցանեմ քոյ առաջևդ, իբր զիմ միտքս և զիմ կամքս քեզ կու հնազանդեցուցանեմ * և կու խնդրեմ քո քաղցր բնութէդ, որ իմ յանցանացն թողութիւն շնորհես * կու աղաչեմ զքեզ ։

Այսինքն, մեղայ տր ած մեղայ ընդդէմ քոյ ածային հրամանացդ և մոլորեցայ 'ի քոյ տր պատուիրանացդ * և զիմ անօրէնութիս ես ինքնին գիտեմ, իբր իմ խղճմտանքովս կու ճանաչեմ * կու աղաչեմ զքեզ ։

Այսինքն, կու աղաչեմ զքեզ տր ած, և կու խնդրեմ 'ի քէն, թող ինձ զմեղս իմ վասն փառաց անուան քոյ սրբոյ, և թող ինձ զմեղս իմ վն անչափ ողորմութեդ քոյ * և մի՛ թողուր զիս կորնչել, իբր զրկիլ 'ի յածային շնորհաց քոց աստ և 'ի հանդերձեալ կումն վասն անօրէնութե իմոյ * կու աղաչեմ զքեզ ։

Այսինքն, մի՛ երկայնացներ զքո բարկութիդ ինձ վերայ մինչև յաւիտեան, որ չի լինի թէ մնամ 'ի մէջ պատժի և պատուհասի * մի՛ յիշեր քո անոխակալութեդ զչարիսն իմ զոր գործեցի առաջի քոյ * և մի՛ պարտաւորեր զիս յաւիտենական տանջանացն այն դա

տապարտեալ մարդկանցն հետ որ առանց ապաշխարելոյ զմեղս իւրեանց իջեր են 'ի գերեզմանս մահու * կու աղաչեմ զքեզ։

Ո՛ յսինքն, զէրէ դու ո՛չ միայն ա՟ծ ես արդարոց և բարեգործաց, այլև ա՟ծ ես ապաշխարողաց զմեղս իւրեանց * արդ ո՜վ որ զքո ա՟ծային խնամքդ և ողորմութիւնդ կու ցուցանես ն՟ց, այսպէս և ցոյց ինձ զքո բարերարութիւնդ թէև անարժան եմ * կու աղաչեմ զքեզ։

Ո՛ յսինքն, փրկէ և ազատէ զիս տ՟ր ա՟ծ քո առատ ողորմութեամբդ 'ի յայս անտանելի տառապանքէս որ կու քաշեմ 'ի մէջ գերութեան * և ես քանի որ կենդանի եմ, օրհնեմ և փառաբանեմ զքո ս՟բ անունդ * կու աղաչեմ զքեզ։

Ո՛ յսինքն, քանզի զքեզ ո՛չ միայն ա՟մ զո՛ւարթունք, իբր հրեշտակք և հրեշտակապետք կու օրհնաբանեն, այլև հողեղէն մարդիկք կու փառաբանեն * զէրէ դու ես միայն ճշմարիտ ա՟ծ արժանի օրհնաբանութեան և փառաբանութեան յաւիտեանս յաւիտենից ամէն։

Զի դու ա՟ծ, ա՟ծ ապաշխարողաց ես * և յիս ցոյց զբարերարութիւնդ քո, զի անարժան եմ * ամէն։

Կեցուսցես զիս ըստ բազում ողորմութեան քում * և ես օրհնեցից զքեզ զամենայն աւուրս կենաց իմոց * ամէն։

Զքեզ տ՟ր օրհնեն ա՟մ զո՛ւարթունք երկնից * և քո են փառք յաւիտեանս ամէն։

Փառք հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ։

Այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից։ ամէն։

Աղաչեմ և խնդրեմ 'ի քէն տր թող ինձ զմեղս իմ։

Բազում ողորմ տր ողորմեաց ինձ։

Ած քաւեա զիս զմեղաւորս։

Արարիչ իմ և յոյս ած գթա' զիս 'ի մեղուցեալ ծառայս
և ողորմեաց ինձ բազմամեղիս։

Ամենօրհնեալ սրբուհի և միշտ կոյս ածածին մարիամ,
բարեխօսեա առ տր վասն իմ մեղաւորիս։

Ամենայն սուրբք այ բարեխօսեցէք առ հայր 'ի յերկինս,
վասն մեր մեղաւորացս։

Յս որդի այ անոխակալ ընկալ զաղաչանս մեր, զի 'ի քեզ
են ապաւինեալք անձինք մեր։

Յաղթող զօրութեամբ սուրբ և կենդանարար և պատուա
կան խաչիւ քով տր պահպանեա զմեզ։

Առաքեա տր զհրեշտակ խաղաղութե քո, որ եկեալ պա
հեսցէ զմեզ անխռով 'ի տուէ և 'ի գիշերի։

Եւ մարդասիրութբ քով յիշեա զմեզ տր յիշեա զմեզ, յոր
ժամ գաս արքայութբ քով և ողորմեաց մեզ։



# ԱՂՕԹՔ ՎԱՍՆ ԽՈՍՏՈՎԱՆԵԼՈՑ

անձանց հաւատացելոց ՚ի Քս ։ Զոր արարեալ է տեառն Ներսէսի հայոց կաթուղիկոսի ։



աւատով խոստովանիմ և երկիրպագանեմ քեզ Հայր և որդի և սուրբ հոգի, անեղ և անմահ բնութի, արարիչ հրեշտակաց և մարդկան և ամենից եղելոց, և ողորմեա քո արարածոց ։

Հաւատով խոստովանիմ և երկիր պագանեմ քեզ անբաժանելի լոյս միանական սուրբ երրորդութի և մի ածութի, արարիչ լուսոյ և հալածիչ խաւարի, հալածեա՛ ՚ի հոգւո՛յ իմմէ զխաւար մեղաց և զանգիտութեան, և լուսաւորեա՛ զմիտս իմ ՚ի ժամուս յայսմիկ, աղօթել քեզ ՚ի հաճոյս և ընդունիլ ՚ի քէն զխնդրուածս իմ, և ողորմեա ինձ բազմամեղիս ։

Հայր երկնաւոր ած ճշմարիտ, որ առաքեցեր զորդիդ քո սիրելի ՚ի խնդիր մոլորեալ ոչխարին, մեղայ յերկինս և առաջի քո, ընկալ զիս որպէս զանառակ որդին, և զգեցո՛ ինձ զպատմուճանն զառաջին, զոր մերկացայ մեղօք, և ողորմեա քո արարածոց ։

Որդի այ ած ճշմարիտ որ խոնարհեցար ՚ի հայրական ծոցոյ, և առեր զմարմին ՚ի սրբոյ կուսէն մարիամայ, վասն մերոյ փրկութեան, խաչեցար և թաղեցար և յարեար ՚ի մեռելոց և համբարձար առ հայր, մեղայ յերկինս և առաջի քո, յիշեա՛ զիս որպէս զաւազակն յորժամ գաս արքայութեամբ քով, և ողորմեա ։

Հոգի այ ած ճշմարիտ, որ իջեր ՚ի յորդանան և ՚ի վերնատունն, և լուսաւորեցեր զիս մկրտութեամբ սրբոյ աւազանին, մեղայ յերկինս և առաջի քո մաքրեա՛ զիս վերստին ածային հրով քով, որպէս հրեղէն լեզուօք զառաքեալսն, և ողորմեա ։

Անեղ բնութիւն մեղայ քեզ մտօք իմովք հոգւով և մար

մնով

